կրօղումն նուագին ոչ ինչ վնասեաց նոցա. այլ մանաւանդ զինքեանք զանօ-րէնքն կոտորեցին Թօրերն: Իսկ նոքա բնաւ չի շարժեցան զօրքն Տեսրոթին. և էին ի միում տեղւոջն հաւաքեալ: Եւ յետոյ հրամայեաց զի ելանիցէ իւր մաքսաւորն, և խաղալ երիվարաւ, որպէս օրէն է հեծելոց. և ի նոյն ժամ ել և անկաւ երիվարէ և զարկաւ զգետնի, և ոլորեցաւ պարանոցն նորա: Զոր այդ անօրէնն այլ բաղում նեղութիւնս յարոյց ի վերայ եղկելի ազգին մերոյ. վասն որոյ պատուհասեցաւ ի Տեառնէ: Եւ յաւել եւս երկրորդումն ղորիչ ոմն հանել զի խաղասցէ. և նորա գտակն անկաւ ի գլխոյ իւրմէ:

Յետ այսց բանից ապա սկսաւ քաջալերել զզօրքն իւր և ասել. Ո՛ արք մեծամեծք և իշխանք, լերուք քաջ, և դիմեցէք ի վերայ այս անհաւատից, զի կոտորեսցուք զդոսա, և մի՛ ապրեսցի ի նոցանէ և ոչ ոք: Եւ հպարտացաւ իւր ամբարտաւանութեամբն. և ահա առհասարակ զօրովք իւրովք դիմեցին ի վերայ նոցա, որպէս երբեմն Գողիաթ ի վերայ Դաւթի: Եւ յորժամ հարին ճակատամարտն նորա, ի նոյն ժամն կոտորեցաւ անօրէնք զօրքն նորա. և Տեսրոթին զօրքն ամենայն էր 1200 հոգի. և նոքա էին իբրեւ 40,000 արք պատերազմողք և հմուտ կռուոյ. և աստուածային կարողութեամբ զօրացան և կոտորեցին մինչեւ իսպառ. բայց որք խանարհեցան և հնազանդեցան՝ զնոսա բնաւ չի կոտորեց: Եւ յորժամ այս եղեւ, ինքն պիղծն անկաւ փախստական. վասն զի ոչ կարացին ըմբռնել զամբարիշտն. և ելաւ ի բարձր բլուր մի, և նայեցաւ ի վերայ զօրաց իւրոց, եթէ որպէս կորեաւ ինքն և զօրքն իւր. և սկսաւ լալ դառնապէս, և ի միտ ածել զիւր անօրէնութիւն, եթէ այս պատուհաս ի Տեառնէ է, և Տէրն ինքնին ետ պատերազմ, և իւր հզօր ձեռամբ սատակեաց զիս և զօրքն իմ, որ ոչ կարացի զդէմ ունել 40,000աւ զայսչափ սակաւ զօրքն: Եւ ի սոյն խորհուրդ ընկաւ փախստական, և հալածական. ելաւ գնաց յերկրէն իւրմէ՝ ի Թուրքաց աշխարհն:

Եւ այս Տեսրոթն եկն առ Սեչովն և մերձեցաւ. և ահա դարձեալ ազդեցին նմա, եթէ այդ պիղծն դարձեալ կրկին զօրքն ժողովել է, և ահա կամի գալ: Իբրեւ լուաւ Տեսրոթն՝ դարձաւ և գնաց ի վրայ նորա. և կրկին անկամ պատերազմեցան, և դարձեալ կոտորեցին զնոսա, և հազար Թուրք ընդ նոսա, զոր բերել էր ի Ազքերմանէն՝ որ օգնէին նմա: Յետ այսորիկ դարձաւ մեծաւ ուրախութեամբ և եկն ի Սեչով քաղաքն ի դախտն իւր. և զամենայն մեծամեծ և զիշխանքն փոխեց, և որիչ կացոյց ի վերայ ամենայն իշխանութեանց. և որք հնազանդեցան՝ նոցա ետ դարձեալ զիշխանութիւն նոցա: Եւ խոդինա բերդին զպռկալապան (բերդապահ) եհան, և ի նոցա տեղի զոմն զՖռանգ եդիր ի բերդն, որ կոչիւր Բիոսցքիյէ: Եւ այլ որիչ քաղաքոն և բերդ որչափ կայ յերկիրն այն, զամենեսեան իշխանութենէ փոխեաց, և Լատինացիք կացոյց Օլախաց տեղն: Եւ յետ այսորիկ նստաւ իւր պարոնութիւնն. և Թուրքին ղրկեց որ դրուլ (Թաղրա?. կնիք) բերեն, որ նմա խարած տայ, զայս առաջին ամն. և յետոյ որպէս Տէրն տայ՝ այնպէս

լինի. վասն զի բազում տեսութիւն ունի նորա նատելն ի այդ երկիրն. զոր Տէր Յիսուս օգնեսցէ նմա իւր կարողութեամբն։ Եւ Քրիստոսի մարգարիքին փառք յաւիտեանս. ամէն։

(Աղաչեմ զամենեսեան վասն խորտակեալ եղջերիս նորոգելոյ աղաչել զՏէր։ – Ձծովյլս ի բարիս և զարագս ի չարիս, զմեղաներկ և զթշուառականս և զանվարժս, աղաչեմ յիշել ի Տէր. բայց վասն գրին անմեղադիր լերուք վասն Աստուծոյ, զի թանաքս ոչ էր բարի)։

Եւ որպէս գրեալ կայ յառաջագոյն ի գրիս այսմիկ՝ զհալածումն և զնեղութիւն և զաւերումն ողորմելի Հայ ազգիս մերում, եթէ որպէս բռնութեամբ ուրացուցին և հաւատոյ հանին, և զեկեղեցիքն քանդեցին ի հիմանէ, և զամենայն սպասք և զանօթք եկեղեցոյ ափշտակեցին. զոր այդ պեղծ անօրէն Աղեքչանտրին հրամանաւն գործեցին զայս չափ ինչ, զոր ոչ կարեմ (ընդ) գրով արկանել այժմ զնոցա ամբարշտութիւն և զանօրէնութիւն։ Զոր մարգարէքն և բարեգութն Աստուած յարոյց ի վերայ նոցա զայս արագահասպատուհասն, որ երկոտասան աւուր մէջն կորեան և անյայտ եղեն իբրեւ զծուխ հրոյ. և թէպէտ փոքր մի ժամանակ բարձրացան այդ անօրէնքն իբրեւ զմայրսն Լիբանանու, այլ իբրեւ զփոշի անցան. զոր տարաւ մրրիկ հողմոյ։ Վասն որոյ գոհութիւն և փառք Աստուծոյ։ Բայց Լուսաւորչին ողորմելի ազգն փոքր ի շատէ մխիթարեցան Աստուծոյ ողորմութեամբն՝ զոր ետ նոցա Տէր Աստուած զայս ինչ մխիթարութիւն, զոր տեսին իւրեանց թշնամիքն ցրուեալք և փախստականք, և տուն նոցա կործանեալ։ Եւ զի հրամանաւն Աստուծոյ այս բարեպաշտ Տեարոթն հաստատեցաւ իւր իշխանութիւնն ի վերայ երկրին այնմիկ. և զՀայ ազգն դարձոյց, և շնորհեաց նոցա զիւրեանց օրէնքն, որ Հայոց օրինօքն լինին համարձակ. և ոչ ոք նոցա բան չխօսէ և կամ դատէ. ով ոք զՀայ ազգն դատէ և կամ նախատէ վասն օրինացն, նայ [1]... գլխով պատժեն։

1562 Հայոց թվ. ՌԺ. Իլովի արհի եպիսկոպոսն Գժէօնց Թարլոյ եկաւ ի Կամենից. և մեք Հայոց քահանայքս գնացաք ի մօտն՝ ընծայիւք. և քան զչափն աւելի ընդունեց զմեզ։

Եւ ապա եկն մեր արհի եպիսկոպոսն Տէր Գրիգոր ի Կամենիցս, որ է աթոռակալ ամենայն Հայոց, որչափ մեն է Նեմեչի երկիր։ (Ամենայն Հայոց մերազգեաց որք ի Գերմանիա)։

1562 Հայոց թվ. ՌԺ. Նոյեմբ. ԺԳ. Փառք Աստուծոյ Հօր անմահի, և Որդւոյն Աստուծոյ Միածնի, և Ս. Հոգոյն Աստուծոյ ճշմարտի։

1562 թվ. ՌԺԱ. Սարգիս տամղաճին առ Աստուած փոխեցաւ, Աստուած ինքն զիւր մեղքն զոր գործեալ է կամաւ և ակամայ։ — Եւ ի նոյն ամին պարոն Դուկալ պէկն ի Աստուած փոխեցաւ. և ի նոյն ամին զորդին իւր

1. Բառ մի կամ երկու պակաս պատճառաւ թղթին պատառման. թերեւս բլղայ ոչնչանալն։

զՅեղրէն սպանեցին. Աստուած ողորմի իւրեանց հոգին։ — Եւ ի սոյն ամին Թան Եանկինդարն (առ) Աստուած փոխեցաւ, և Զրխն Սդանիալա ?

1562. Թվ. ՌԺԱ. ի օրն Երկրորդ Ծաղկազարդին Ֆրանգի եպիսկոպոսն Գժեօնց Լենարդն, քաջ հռետոր և բանիբուն վարդապետ, փոխեցաւ առ Աստուած. զոր մարդասէրն Աստուած զիւր հոգին դասեսցէ ընդ արդարսն և ընդ աստուածաբան սուրբ վարդապետսն. քանզի երախտաւոր էր ընդ Հայոց ազգին. և քան զնափն աւելի ընդունելով ընդունէր, միշտ ու հանապազ ի սեղանս կոչելով և հացակից առնելով. և 16 ամ կալաւ զաթոռ Կամենից վիճակի զաթոռն։

1562. Հայոց Թվ. ՌԺԱ. Մայիս ամսոյ Ժ. օրն կիրակի Երկրորդ Ծաղկազարդին, Ֆրանգի եպիսկոպոսն Գժոնց Լենարդ Սլունչովսքիյ առ Աստուած փոխեցաւ ի Կամենիցս. զոր էր ազնիւ բանիբուն վարդապետ և քաջ հռետոր. Աստուած ողորմի հոգոյ նորա։

1562. Հայոց Թվ. ՌԺԱ, և Օգոստոսի ԺԵ, օրն շաբաթն. զոր էր տօնն հռչակելի և հրաշալի Տիրամօրն Սրբոյ Կուսի Աստուածածնին։ Այս դուքս որ կոչի Տեսբաթն, զոր կացոյց տէրն իշխան ի վերայ այդ խուժադուժ երկրին Օլախաց, զոր ամենազօրն Աստուած իւր մարդասիրութեամբն հաստատեսցէ զնա ի վերայ իշխանութեան իւրոյ՝ մինչեւ ի խոր ծերութիւն անսասանելի և անշարժելի, յաղագս ողորմելի և եղկելի անտիրացեալ ազգիս Հայոց. զի խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեսցեն զկեանս իւրեանց ի վերայ Հայկազեան և յաքեթածին օրինացն. զոր ունին կարգեալ ի հօրէ իւրեանց Սրբոյ Գրիգորէ Հայաստանեաց սուրբ Լուսաւորչին։ Ի ամին աւուր զոր առաջագոյն գրեցաք, Աստուծոյ հրամանաւն և քրիստոնէից կայսիր հրամանաւ՝ իւր իշխանութեան վերայ Թագ կապեաց և պսակեցաւ որպէս օրէնն է, օծեալ և Թագաւզարդ Թագաւորացն, և ի նոյն օրն քարոզ կարդալ ետ, որ ամենայն ոք Թագաւոր անուն կոչեսցէ զնա. զոր բնաւ այսպիսի ինչ երբեք ոչ էր լեալ ի այդ երկիրն, ի սկզբանէ իշխանաց մինչեւ ի նա, և ոչ ունէր օրինակ նախ քան զինքն ի այդ երկիրն, և ոչ ի նախնեաց և ի ծնողաց իւրոց. Թէպէտ զինքն որդի իշխանի անուանել ետ, բայց ոչ էր յայտնապէս և ճշգրտիւ՝ եթէ իցէ որդի օծեալ և Թագապսակ Թագաւորի, որպէս օրէն է Թագաւորաց՝ որդիս յորդիս յազգէ յազգ յաւիտեանս՝ պսակել ըստ ժամանակի իւրեանց. այլ սա իւր իշխան կամօք և բարձր հրամանաւն սահմանեց և հաստատեցաւ ամենազօր երկնաւոր Թագաւորին կարողութեամբ. զոր Տէր Յիսուս պահեսցէ զնա խաղաղական կենօք, և աջն Աստուծոյ ամենակալին եղիցի ի վերայ նորա պահապան, զի փրկեսցէ զնա յամենայն Թշնամեաց իւրոց և ի ձեռաց ատելեացն, և հաստատեսցէ զնա ի վերայ իշխանութեան իւրոյ անխախտելի. խորհելով զհաճոյսն Աստուծոյ և զբարին յԱստուծոյ՝ առ ամենայն ազգս, նա առաւել առ ողորմելի Հայոց ազգն. զի փոքր մի ժամանակ հանգիստ գտցեն իւրեանց հալածանաց և նեղութեանց. զոր ի անձն ատին անօրէն և անհա-

ւաստ ազգէն, որք են սուտ քրիստոնեայք, պիղծ Օլախ ազգն, զոր են Մակեդոնեցիք և արիոսեանք, (ըստ կարծեաց գրողին)։

1562. Հայոց Թվ. ՌԺԱ, Մայիս ամսոյ ԺԲ. Հրամանաւն Թագաւորին բարեպաշտ Ջիկմոնդի, որ կոչի Ակուստուս, Կամենից քաղաքին իշխանին հրամայեաց գալ առ ինքն արագահաս և փութանակի. վասն զի չարախօսքն նորա մատնել էին Թագաւորին. եթէ, ի քում Թագաւորական հրամանի ոչ հնազանդի, և ոչ ունի երկիւղ, և զամենայն Թշնամիքն զՕլախաց երկրին զիշխանին՝ Թողել է որ ել և մուտ են ի Կամենից բերդն. զոր բնաւ այդպիսի ոմանք բերդ ոչ էին մտեալ. և այլ բազում չարախօսութիւն ունէին առ Թագաւորն՝ վասն այդ իշխանին. զոր անունն իւր կոչի Վլոտէք Բան Մացէյ։ Եւ էին չարախօսքն երկու մեծամեծ իշխանք. մինն Վոյվոտա Բոտոլսքէյ (գաւառի), զոր Բան Ողարոխովսքիյ կոչեն, և միւսն Բան Եազլովէցքիյ։ Եւ յորժամ այս չարախօսութիւն եղեւ առ Թագաւորն, և ահա Թագաւորն հրամայեաց գալ նմա փութանակի առ իւր. և յորժամ ել և գնաց առ Թագաւորն, ահա այդ ոմն Եազլովեցքին եկն ի Կամենիցն, և կամեցաւ գնալ առ բերդն, զի նստցի փոխանակ Բան Վլոտքսին իշխանութեան. և արքն որք էին ի մէջ բերդին՝ և նոքա եւս էին մեծարարք, զոր անձնեալ էր նոցա զբերդն այս իշխանն Բան Վլոտքս. ընդդէմ կացին նմա, և ոչ ետուն Թոյլ մտանել և նստել իշխանութիւն ի մէջ բերդին. և ապա նկուն եղեւ, և ամօթալից դարձաւ և գնաց։ Իսկ այս բարէհոգի իշխանն որ կոչի Վլոտէք Բան Մացէ, գնաց առ Թագաւորն, և զամենայն Թշնամեաց իւրոց զբերանն պապանձեցոյց և ամօթ արար զնոսա. և ինքն ի Թագաւորէն պատուեցաւ և գովեցաւ, և դարձեալ եկն և նստաւ իւր իշխանութեան վերայ յայտնի և համարձակ, ի պարծանս իւրայնոց և ի յամօթ ներհակաց իւրոց։ Այսքան առ այս։

1562. Հայոց Թվ. ՌԺԱ. Գնեազ Վիշնովսքիյ ոմն Լաուզ իշխանն՝ մի անկամ զԹագաւորն ուրացաւ, և ապստամբ ինչ գործեաց, և փախեաւ ի Թուրքի խոնդկեարն, և դարձեալ եկն. որպէս կայ առաջագոյն գրեալ ի մէջ Թղթիս զնորա պատմութիւն. և ոչ ինչ չար արար նմա Թագաւորն. այլ մանաւանդ ետ ի նա զամենայն զգաւառն իւր, որչափ ինչ ունէր բերդ և գիւղ։ Յետ փոքր մի ժամանակի դարձեալ ապստամբութեամբ գնաց փախստական առ Մոսկովի գնեազն. և ոչինչ բազում ժամանակ եկաց առ նա. և դարձաւ եկն յետ երկուց ամաց իւր գաւառն. և բարեպաշտ Թագաւորն Ջիկմունդ ոչ ինչ չար արար նմա։ Բայց այս ոչ է հիանալի. զի երկու անկամ խաբեաց և ուրացաւ զԹագաւորն. վասն զի նոցա ազգին սովորութիւն է ամենայն՝ ուրեք զայս գործել, մինչեւ որ անձամբ զանձն իւրեանց դատապարտեն։ Այսքան և առ այս։

1562. Հայոց Թվ. ՌԺԱ. Սեպտեմ. ԺԵ. Բարեպաշտ Թագաւորն մեր Ջիկմունդ Ակուստուս՝ Մոսկովի վերայ հեծելազօր ղրկեց. և աստուածային օգնակա-

նութեամբ պատահեցան Մոսկովի զօրքն մեր Թագաւորի զօրացն․ և էին Մոսքովցիքն 30,000 հոգի, և սոքա 16,000 հոգի, և հարին ընդ միմեանս․ և իսկոյն ժամու սոքա զնոսա կոտորեցին մինչև իսպառ․ զոր ոչ ոք փախեաւ ի Մոսքովի զօրաց․ զամենեսեան սատակեցին։ Եւ աստ կատարեցաւ մարգարէութիւն պարագլուխ մարգարէին Մովսէսի, եթէ, մինն զհազարս և երկուքն զբիւրս․ ի փառս Աստուծոյ։ Եւ յորժամ այս բարի քաջ և յաղթող համբաւն եկաւ ի Կամենից, նայ մեծ ուրախութիւն և ցնծութիւն կատարեցին քաղաքս, ամենայն քաղաքացիքն առ հասարակ զԱստուած օրհնեցին․ և նմա փառք և գոհութիւն մատուցին, որ տայ հաւատարիմ ծառայիցն այսպիսի քաջայաղթութիւն։ Բայց Ըռուս ազգն լցան նախանձու, և ոչ կատարեցին զայս ցնծութիւն, և նա և ոչ Աստուծոյ գոհութիւն մատուցին․ վասն զի Թագաւորին մերոյ թշնամիք են և ամենայն հաւատացեալ քրիստոնէից։ Բայց հատուսցէ նոցա Տէր ըստ չարութեան սրտից նոցա։

1562․ Թվ․ ՌԺԱ․ Դեկտ․ ԺԸ․ Ի ժամանակին Տեսրօթին երկրորդում ամի պարոնութեան նմին, զԼաքին ուրացաւ և զիւր երդումն ստեց, զոր բազում անգամ երդուաւ նմա ի վերայ Խաչելութեանն Քրիստոսի․ զոր խոստացել էր նմա զիւր երկրին զկէս պարոնութիւն, վասն նորա երախտաւորութեան համար։ Եթէ որչափ ինչ արար ընդ նմա Բան Լաքյն, զոր գրեալ է ի մէջ այսմ թղթիս առաջագոյն․ զոր կարող են հաւատարիմ ընթերցողքն ի միտ առնուլ զամենայն ինչն Բան Լաքյին։ Իսկ նա իբրև ապստամբ ոք ուրացաւ զնա․ և զԽողինու բերդն էառ ի նմանէ․ և զԹիսցքին՝ զոր իշխանութեամբ Լաքիին էր նստեալ ի մէջ բերդին՝ եհան․ և զՕլախ պռկալապներն եդիր ընդ իւր իշխանութեամբն։ Եւ այսպիսի նորա ապստամբութիւն իւր գլխոյ կորստեան նշանակ է․ զոր անձամբ իւրով զանձն իւր դատապարտեաց։

1562․ Թվ․ ՌԺԱ․ Հայոց ազգիս Տէր Ստեփաննոս Արընձեցի կաթողիկոսն եկաւ ի Կամենից, ստոյգ և ճշմարիտ ճանապարհաւ․ և եկաց ի Կամենից՝ ի Հրեշտակապետացն մինչև ի Տնօրէնութիւն Քրիստոսի․ և ապա գնաց յԻլով քաղաքն, և անդ ընդունելի և պատուելի եղաւ քրիստոնէից․ և ապա դարձեալ եկն ի Կամենից։ Եւ էին ընդ նմա Տէր Զաքարեայ եպիսկոպոս, և Տէր Դաւիթ վարդապետ, և Լուսիկ անուն սարկաւագ մի․ զոր մեզ եկին, և զՍ․ Լուսաւորչին օրհնութիւն ետուն։ Բայց մեծ զարմանք զմեզ կալաւ, որ ի յայս աշխարհս զՍ․ Էջմիածնայ զկաթողիկոս տեսաք․ վասն զի յօրէ յորմէ հետէ զՍ․ Էջմիածնայ աթոռն կարգել է Ս․ Լուսաւորիչն մեր Հայոց ազգիս՝ մինչև ցայժմ կաթողիկոս ի այս աշխարհս բնաւ ոք չէր տեսեալ, զոր մերոյ տեսեալ, և Աստուծոյ փառս մատուցեալ․ որ զմեզ այնպիսի ճշմարիտ քահանայապետին տեսոյն արժանացոյց։

1563․ Թվ․ ՌԺԲ․ Եկաւ Մոսքովի գնացն ի Թագաւորի աշխարհն, և զԹոլոցքա քաղաքն էառ․ բայց ոչ իւրով կարողութեամբ, այլ չար և վատ Ը-

առուր ազգին ապստամբութեամբ. զոր նոքա ի մէջ բերդին հինգ վեց տեղ հրով այրեցին, և ապա ամենայն քաղաքն և բերդն չէւարեցան, և ինքեանք ե-տուն զբերդն Թշնամեաց, և գերեցան ամենեքեան ի ձեռն Մոսկովցոցն։ Զոր Տէր Յիսուս երկնաւոր Թագաւորն զվրէժն նոցա ի բարին դարձուսցէ. և զՉիկմունդ Թագաւորն զօրացուսցէ ի վերայ Թշնամեաց իւրոց։

1563. Թվ. ՌԺԲ. և յուլիս ամսոյ ԺԳ. Ըռուզ գնեազ Վիշնովեցքին՝ գնաց ի Օլախաց երկիրն, զի լինէր պարոն ի վերայ երկրին. և ընդ իւր ունէր 3000 հոգի հեծելազօր։ Եւ անհաւատ ազգն Օլախաց Թոյլ ետուն որ մտաւ և եկաւ ի Սեչով հասաւ. և եկաց անդ երկու շաբաթ. և զՏեսարոթն կամե-ցաւ ի բերդէն հանել, զի փոխանակ նորա ինքն նստցի պարոն. Եւ այս Տեսարոթն չի հնազանդեցաւ նմա. այլ աղաչէր զնա ի խաղաղութիւն, զի Թոյլ տացէ նմա՝ զի երթիցէ իւրովի ուր և կամենայ. իսկ նա բնաւ չընդ-ունեց զաղաչանքն նորա. այլ ուժգնութեամբ կամէր զինքն հանել և սպա-նանել։ Յետոյ բազմացան անօրինաց ազգն այն Օլախն, և դիմեցին ի վերայ գնեազին, և յաղթահարեալ կոտորեցին զամենեսեան առ հասարակ. և զինքն զՎիշնովեցքին կենդանի ձերբակալ առին, և ընդ նմա զԹիտոցքին և զայլս բոլորս. զոմանց զքիթն և զականջս հատին, և զոմանս ի հետ գնեազին և Թիտոցքիին ի խոնդիքարն ղրկեցին կապանօք։ Եւ այսպէս կորեաւ ունայնու-թեամբ, և ընդ իւր կորոյս զամենեսեան առ հասարակ։

Եւ յորժամ զՏեսարոթն կամեցան սպանանել անհաւատ ազգն Օլախաց, և նա զերծաւ ի նոցանէ, և փախեաւ ի բերդն Սեչովին, և փակեցաւ յամ-րոցին։ Եւ այս անօրէնքն ընտրեցին ի մէջ իւրեանց զոմն Տոմշա անուն, զոր էր փանաքի ծառայ այս Տեսարոթին. և զնա փոխանակ նորա հաստա-տեցին պարոն ի վերայ երկրին, և մինչեւ երեք ամիս ոչինչ կարացին առնել չար՝ Տեսարոթին, այլ մանաւանդ զբազումս ի յանհաւատիցն կոտորեց ի բեր-դէն այդ Տեսարոթն. զի ունէր ընդ իւր ի մէջ բերդին 500 հոգի՝ զոր ընդ նմա փախեան, միաբանեցան ի մէջ բերդին։ Եւ այս ամբարիշտն Տոմշա պեղծ և անիրաւ ոմն եղեւ, զոր և զբազումս կորոյս չարաչար մահուամբ զանմեղ զոմանս. ընդ որս էր ոմն կրօնաւոր Յովանէս, զոր մականուն Ծուռգտակ ա-նուանէին. և զնա անպարտ և անմեղ գոլով՝ ետ կախել զփայտէ. և զՀայոց Վոյթն լաւ և անմեղ ոմն Խաչերես անուն՝ և զնա կախել ետ ընդ նմա. և զերեք կինն Հայոց փոքր զաւակօք իւրեանց՝ ետ կախել անողորմ և անիրաւ դատաստանաւ։ Զոր Տէր հատուսցէ չարին ըստ չարութեան իւրում և խնդ-րեսցէ վրէժ ի նմանէ՝ այդ անմեղ և անպարտ արեանց նոցա վասն։

Յետոյ ոմն իշխան Լասքի անուն, զոր առաջագոյն գրեալ է պատմութիւն նորա ի մէջ գրքիս, Թէ որպիսի ինչ առաւ նա այս Տեսարոթին, և սա իբրեւ լուաւ զբանն Տեսարոթին, ահա փութանակի եհաս զօրովքն ի Կամենիցս. բայց կարի շատ ոչ ունէր զօրս. և համբերեալ մնաց երկու ամիս, մինչ որ բազմանայցէ զօրքն, յետոյ եմուտ այդ խուժդուժն յերկիրն սակաւ զօրօք։

Եւ անօրէն Օլախն, իբրեւ զմարախ անթիւ բազում էին. և մինչ Լասքին եհաս ի Մեչոմէ, ահա զուժ հասուցին նմա՝ եթէ զՏեսպոտն սպանեցին, և նա իբրեւ լուաւ՝ այլ ոչ գնաց, և դարձաւ ելաւ երկրէն անմիտ։

1564. Թվ. ՌԺԳ. Պիղծ և անօրէն Օլէքշանտր՝ զոր էր փախստական, ելեալ գնաց ի Ցանկաստան, և անդ եկաց մինչեւ երկու ամ. և յորժամ զՏեսպոտն այս անիրաւ Տոմշան սպանեց իւր ձեռամբ, համբաւն գնաց այս Ալեքշանտրին, անդ ուր էր բնակեալ ի Ցանկաստան. և խնդրեաց եւ և եկն առ խոնդկեարն. և խոնդկեարի որդոյ միջնորդութեամբ աղաչեց որ կրկին նստուցանէ զինքն ի վերայ իշխանութեան Օլախաց երկրի վրայ. և խոնդկեարն վասն որդոյն խնդրուածոցն՝ հրամայեաց նմա. որ գայ և նստի ի պարոնութիւն իւր։ Եւ յորժամ եկն և եհաս յԻպրայիլ՝ եզրն Տունային, և թխտեր ղրկեց այդ անիրաւ Տոմշաին և իշխանացն ամենին, եթէ, Ահա եկայ, առ իս եկէք ընդ առաջ իմ, զի լինիմ ձեզ պարոն։ Եւ նոքա ընդդէմ նորա պատասխանի ետուն, եթէ, Մեզ պէտք չես, և ոչ զքեզ կամի երկիրն ի պարոնութիւն. ընդ որ եկեալ ես՝ դարձեալ ընդ նոյն ճանապարհ գնա։ Եւ նա դարձեալ ղրկեց ի խոնդկեարն, եթէ Օլախաց պարոնայք զիս չեն կամենար ի պարոնութիւն. և խոնդկեարն հրաման ետուր Դաթրի (Թաթարաց) խանին, որ գայ իւր հեծելով, և առնու զնա տանի և նստուցանէ ի պարոնութիւն։ Եւ Դաթրի խանն եկաւ 50,000 հոգով, և էառ զայդ պիղծ Ալեքշանտրն և եմուտ ի երկիրն. և նստոյց զնա ի պարոնութիւն, և ինքն դարձաւ, զբազումս գերի վարելով և աւար առնելով զանասունս զամենայն, զարջառ և զոչխար, զձի և զմատակ երամով, բազում և անթիւ, մինչ որ զկէս երկրին զբարութիւն և զմարդիկ եհան և տարաւ. վասն զի խոստացեալ էր այս զառաջ Դաթրի խանին, եթէ որչափ լինիս գերի առնուլ և տանել, հրաման քո լինի, բայց զիս հասո իմ պարոնութեանս։ Եւ յորժամ եմուտ Դաթարն ի երկիր, նայ այս միւս պարոն Տոմշա անուն կամեցաւ ընդդէմ դնալ և պատերազմել ի հետ Դաթրին. յետոյ իւր իշխանքն ցրուեցին զՏոմշաին զխորհուրդն, և չպատերազմեցան. և ելեալ ի երկրէն իւրեանց՝ փախստական գնացին ի Պուչաչ (Buchaczow?) ի Նեմիչի աշխարհն, ամենայն բարութեամբն իւրեանց, կանամբ և ընդանեօք, զաւակօք. բայց եթէ կռիւ տվել էին ի հետ Դաթրին՝ նա պիտի յաղթէին զԴաթարն։ Եւ յորժամ եկին ի վերադայն գրեալ քաղաքն ի Պուչաչ, նա այդ քաղաքին իշխանն զնոցա զամենայն ինչ որ ունէին ընդ ինքեանս՝ էառ, և ի բերդն մտոյց, և զինքեանս ետ ի պահապանաց ձեռն, մինչ որ ազդեցուցէ զբանն Թագաւորին։ Եւ յորժամ ազդեցին Թագաւորին՝ ի նոյն ժամ Թագաւորն հրամայեց, զի զամենեսեան տանիցեն Իլով քաղաքն, զոր և տարան և փակեցին զնոսա ի մէջ բերդին։ Յետոյ ի խոնդկեարէ չաւուշ եկաւ ի Թագաւորն՝ վասն նոցա, զի կենդանի տաս զնոսա ի չաւուշն՝ որ տանի ի խոնդկեարն։ Եւ Թագաւորն ոչ կամեցաւ. վասն զի այդ սահմանք ոչ գոյ ի այս Թագաւորութիւն, զի զայնպիսի չարագործն

կենդանի տայցեն ի աշխարհէն Նեմիչաց. և յաղագս այնորիկ հրամայեաց Թագաւորն զի գլխատեսցեն զնոսա յիլով քաղաքն. զի չաւուշն տեսցէ աչօք իւրովք. զոր և արարին ըստ հրամանի Թագաւորին, ի ապրիլի 28, օրն ուրբաթ, գլխատեցին զայդ պիղծ զՏոմշան, որ էր իշխան ի վերայ երկրին Օլախաց, ընդ նմա և զիւր մեծարարքն. զոմն Մոցոք անուն, և Սփանչօքն, զոր էին առաջակայ պարոնայք. և էր այդ Մոցոք անձամբն մեծ իբրև զմսարլուրն Գողիաթ, և այսպէս չարաչար մահուամբն սատակեցան ըստ արժանեաց իւրոց: Եւ յետոյ այդ Օլեքչանտրն հաստատեցաւ ի պարոնութիւն: Եւ յաւուր միում ի կիրակի ի մէջ Ասպազարն (Եաշ քաղաք) կոչեց զամենայն մեծամեծքն իւր ի սեղան, զի հացակից լինիցին ընդ նմա. և խաբէութեամբ զամենեսեան առ հասարակ ի սուր մաշեաց անխնայ, ըստ արժանեաց իւրեանց. և էին թուով 47, և ամէն ոմն մեծ իշխան. և զայլսն ետ ի Տաճկաց ձեռն, զի չարաչար մահուամբ սատակեսցեն զնոսա:

1564. Թվ. ՌԺԳ. Նոյեմբեր ամսեան Գ. Ոմն Լեհարդ Հռոմայ փարայէն եկաւ ի Կամենից, յաղագս նուիրակութեան համար. և էր ինքն գրասէր ոմն և կատարեալ գիտուն. և զՀայոց գրեանք ուր և որչափ գտաւ, զամենեցուն զխորագիրն նոտրեց և գիր էառ. և էր ինքն տղահասակ ոմն:

1564. Թվ. ՌԺԳ, և ի նոյեմբ. ամսեանն ԺԷ. Կամենից քաղաքիս նոր եպիսկոպոս եկաւ, անուն կոչի Գժեօնծ Տեւուշ, այսինքն որ թարգմանի Տեւնիաս. և է ինքն խոնարհ և հեզ ոմն, և կատարեալ հասակաւ. բայց մականուն՝ այսինքն նախնեաց անուն Զեցենովսքիյ է.

Եւ զարձեալ ի նոյն ամին չարժ եղաւ ի Կամենից. զոր էր Թվ. ՌԺԳ, և դեկտեմբեր ամսոյ ԻԱ. և էր ԺԱ ժամու վերայ գիշերով. բայց գոհութիւն Աստուծոյ որ անվնաս եղեւ, բնաւ ինչ չի վնասեաց. զոր Տէր Աստուած զվերջն ի բարին կատարէ, և զչարն խափանէ:

1564. Թվ. ՌԺԳ. Զիկմունդ Ակուստոս բարեպաշտ Թագաւորն մեր ի Թուրքն խոնդկեարին էլչի խրկեց՝ զոմն Եաւլովեցքիյ անուն գիշխանն. և խոնդկեարին որդոյն այլ գնացեալ էր ի էլչիութիւն. և քան զչափն աւելի հարկեցին ու պատուեցին, և բազում պարգեւք և ընծայք ետուն հայրն և որդին ի Գոթայն (Քիւթահեա ?), այն կոյս ծովուն եօթն աւուր ճանապարհ:

1565. Թվ. ՌԺԴ. փետրուար ամսոյ Ի. Հրամանաւն Թագաւորին Զիկմունդ Ակուստոսի, երեք իշխանք մեծազգայնք ի յամենայն Լեհաց աշխարհն, որչափ և է Թագաւորին իշխանութիւն, շրջեցան և աշխարհագիր արարին. և էին անուանք՝ Եան Տրեվիցքիյ, Եան Տեմպիցքիյ, և Եան Սաքօլովսքիյ, և եկին ի Կամենից, և կացին երկոտասան օր, և ելին գնացին:

1565. Թվ. ՌԺԴ. Ի այս ամին ոմն պարոնացոյ Օլախի երկրէն՝ եկաւ ի այս երկիրս, և Օլախցիքն կամեցան զինքն առնուլ իւրեանց ի պարոնութիւն, բայց ոչ ունէր բազում մարդիկ. և մինչ նա կամէր անցանել ի Օլա-

*խայց երկիրն, ոմն մեծ իշխան Բան Հարպուրդ գնաց ի վերայ նորա և կալաւ զնա. և կապանօք զրկեցաւ առ Թագաւորն Զիկմունդ Ակուստոս, և Թագաւորն չարչարանօք եսպան զինքն: Եւ էր ինքն ասայգ Շտեֆան պարոնին որդին. զոր և Նշան այլ գտին ի վերայ նորա:*

1565. *Թվ. ՌԺԴ. Ապրիլի ամսոյ Գ. Վաղճանեցաւ պարոն Հրիհօրն՝ որդի Զատիկի, որ էր գլուխ ժողովրդեանն և առաջադէմ ամենեցուն. և էր սիրեցեալ յաչս Թագաւորաց և ամենայն իշխանաց և մեծամեծաց. զոր բազում բարութիւնս և երախտիք Թողեալ Հայոց ազգին իւրոյ. զոր* 25 *անգամ ի Թագաւորի արքունի դուռն գնացեալ վասն դատաստանի իրաց, զոր կամէին Իլախ ազգն ափշտակել ի ձեռաց Հայոց, և նորա գնացեալ ամրացոյց և հաստատեաց զԴատաստանն (Դատաստանագիրք կամ Օրինագիրք), զոր այժմ ունին Հայոց ազգ, և խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեն զկեանս իւրեանց, ողորմութեամբն Աստուծոյ և Թագաւորին, և պարոն Հրիհորին ջանիւ և հոգաբարձութեամբ: Զոր ողորմածն Աստուած ողորմի իւր հոգւոյն և զմեղքն ջնջէ, զկամայ և զակամայ. և իւր սուրբ արքայութեան արժանի արասցէ հանդերձ իւրովք արեան մերձաւորօք. ամէն:*

1566. *Հայոց Թվ. ՌԺԵ. Յուլիս ամսոյ ԺԵ. փառք Աստուծոյ Հօր անմահի, և Որդւոյն Աստուծոյ միածնի, և Հոգւոյն Աստուծոյ ճշմարտի. այժմ և յաւէտ յաւիտեանս. ամէն: Եւ արդ պարտ է և արժան է մեզ՝ զայսպիսի ամենայն ինչ գրով աւանդել. զի առ ապա եկեալքն ընթեռնլով փառս տացեն Աստուծոյ: Եթէ որպէս հրամանն Աստուծոյ եկն ի վերայ մեր՝ վասն ծանացեալ մեղաց մերոց. այս ինքն է զոր եղաւ յայսմ ամի ի Կամենից քաղաքիս, մեծ և անողորմելի ցասումն մահուն. ոչ թէ միայն ի վերայ մանկանց տղայոց, այլ ի վերայ երիտասարդաց և ծերոց, զոր ամենայն օր ի մէջ Հայոց ազգիս ութ և ինն և մինչև ի տասն հոգի ի հողն թաղէաք. և այս երկարեցաւ ի յուլիս ամսոյ մինչև հոկտեմբեր: Եւ այլազգիքն Ֆռանգ և Ըռուզն՝ ամենայն օրն մինչև ի* 60 *հոգի թաղելով ի հող դնէին: Եւ զի էր դառն և դժար ժամանակ, զի ոչ ոք ի քաղաքս ոչ գայր, և բնաւ ի քաղաքացոյն զոք ուրեք չէին Թողուլ. մինչ որ քաղցրութիւն Աստուծոյ յայտնեցաւ ի վերայ մեղաւոր ծառայից իւրոց: Եւ զի էր ահագին ցասումն, որ մինչև երկրորդում և երրորդում օր ողջ և առողջ գոլով մարդիքն՝ ի հողն դնէին. բայց Աստուծոյ կամքն օրհնեալ եղիցի. զոր Նմա փառք ի յամենայն արարածոց և ի մէնջ: Զոր ինչ եկն ի վերայ մեր՝ վասն մեր չար գործոց և անթիւ մեղաց մերոց եկն. զի զոր ինչ ետուր և զոր տալով է, գոհութեամբ ընդունեմք և ընդունելոց եմք:*

1566. *Թվ. ՌԺԵ. և սեպտեմ. ԻԴ. Աստուած ամենակալ ողորմի Պար. Հրիհորին հոգոյ. զոր նորա արդեամբք բարեպաշտ կինն իւր Բանի Ազիզբ՝ զհրաշալի տաճարն Սրբոյ Նիկօլա մեծացոյց, և այլ վայելչապէս զարդարեցոյց և գեղեցկացոյց, ի փառս անհաս աստուածութեան Տեառն մերոյ Յի-*

տեան Քրիստոսի. զոր ամենակարող Փրկիչն աշխարհացն՝ փրկեսցէ ի չար հերձուածողաց և ի չարաբարոյ թշնամեացն. և յիշատակ անջնջելի պահեսցէ մինչև ի կատարած աշխարհի, և Գր. Հրիհորին և իւր ամենայն արեան մերձաւորացն. և զիւր պարկեշտ տիկնոջն Ազիզքօին ղհոգին և զիւրայնոցն ամէնին՝ արժանաւորեսցէ յերկնային խորանին, անմահական սեղանին, և լուսեղէն պասմուճանին և անթառամ պսակին. լսել տայ զերանաւէտ ձայնն, եթէ, Եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զպատրաստեալն ի սկզբանէ աշխարհի. ամէն: Հայր մեր որ յերկինս: — Եւ ինքն վախճանեցաւ Թվ. ՌԺԴ Գր. Հրիհորն:

1566. Թվ. ՌԺԵ. Սեպտ. ամսոյ ԻԵ. Խոնդիքարն Թուրքին մեռաւ ի մէջ զօրացն իւրոց, զոր էր գնացեալ ի վերայ քրիստոնէից, ի վերայ Ֆռանգաց աշխարհին, ի վերայ հռչակելի և անուանի մեծ և ամուր քաղաքի՝ որ կոչեն Վիատնեայ (Վիտին), և Թուրքի լեզուով Պէչ. և զի երկու անգամ գնացել էր և ոչինչ կարաց առնել, այս երրորդում էր գնացեր. և այնպէս ուխտ եդեալ էր, զի կամ զքաղաքն առցէ և կամ մեռցի. զոր իսկ կատարեցաւ իւր խոստումն, որպէս ի բերանոյ իւրմէ ելեալ: Եւ էր թագաւորութիւն նորա որչափ թագաւորեաց՝ 47 ամ, և փոխանակ նորա նստաւ որդին սուլտան Սէլիմ անուն:

1567. Թվ. ՌԺԶ. Հոկտ. 1. Թաղարն եկաւ ի Ըռուսաց աշխարհն, ի կողմանան Խմելնիքին, և էին հազար հոգի անօրէնք. և Ֆռանգ ազգն որ կոչին Իլախ՝ էին և նոքա արք իբրև 600. և էր գլխաւոր նոցա Ադրոււս, որ էր սդարօսդայ Խմելնիքն. և էր ընդ նմա այլ իշխանք իւրեանց գնդաւն. ընդ որս էր Օլեքսանդր Խօրուժիին վոյվոդային եղբայր, և այլքն հարիւրապետք: Եւ իբրև դիմեցին ի վերայ Դաթրին, կոտորեցին ի նոցանէ իբրև արք 600, զքաջ և զօրեղ զմարդիկն. յետոյ մնացեալքն ի անօրինացն կրկին քաջալերեցան և դարանակալեցան, և դիմեցին ի վերայ Ֆռանգաց. և նոքա ցրուեալք էին և ոչ էին ի միում տեղոջ. և ընկան փախստական. և անօրէնք Դաթարն յետս նոցա չոգան և հասին Ադրոււսին, որ էր գլուխ զօրացն, և սպանին, և զայլսն ընդ նոսա քաջ և արի մարդիկն, և գերեցին 80 հոգի կենդանի, և զայլս փախստական արարին, և ինքեանք ելին և գնացին ի երկրէն:

1568. Հայոց Թվ. ՌԺԶ. Դեկտ. Ի, Այլազգեաց Ծննդեան ժամանակն: Եկաւ Դաղարն, և բազում զօրքն, զոր ոմանքասէին եթէ 40,000, և եմուտ ի գաւառն Բռոոլեաին, և զամենայն գաւառն և քաղաքն և զգիւղն աւարեց եւ գերի տարաւ, և զամենայն բարութիւն, զոչխար և զարջառն և զամենայն հացն և ստացուածն հրկիզ արար: Եւ զի երկու շաբաթ շրջեցան անօրէնքն ի երկիրս այս, և ոչ ոք ի նոցանէ կորեաւ. քանզի մեր իշխանքն և մեծամեծքն թուլասիրտ են դարձել և ձեռքն լքեալ և ծունկքն կթոցեալք, մանաւանդ յուռել և ի ըմպել և արբենալ, և զմիմեանս սպանանել և զաղ-

բագործելն՝ պատրաստագոյն են, քան զԹշնամիսն հալածել և կամ կոտորել։ Զոր և ինքն վոյվոտա Ռուսքին զոր Խոտանմին կու անուանեն, փախեաւ ի բերդն եմուտ և փակեցաւ, ընդ նմա և երկու որդիքն իւր և այլ մեծամեծք. և զամենայն զգամիկս և զիղջս (?) Թոյլ ետուն անօրինացն, որ աւարեցին և գերեցին. բայց ինքեանքն այլ ի մէջ այդ բերդին՝ հազիւ զերծան. զոր եԹէ մի օր այլ կացեալ էին, Աստուածն ամենազօր զիւրենք ի ձեռս նոցա մատնեալ էր, բայց դարձեալ ողորմեցաւ և ոչ մատնեաց. զի բազմագութ է և ողորմած։ Եւ հանին զերի իբրեւ 30,000 հոգի, և այլ աւելի։

1567–8. Թվ. ՌԺԶ. Վաղճանեցաւ Կիւրեղ վոյԹն. Աստուած ողորմի հոգուն։

1567–8. Թվ. ՌԺԶ. Ցանկի դատաւորքն սկսան քաղքի բոլորն քարէ պարիսպ շինելոյ, բայց բազմաց հաճոյ չԹվեցաւ. քանզի մեծ և ծանր գործ սկսան. և զի զքաղաքացիսն յոյժ նեղելով բանեցնէին. և նոքա անմռունչ յօգւոց հանելով գործէին զգործն զայն. և էին ի մէջ գերուԹեան իբրեւ զիսրայելացիսն առ Փարաւոնիւն երբեմն։

1568. Թվ. ՌԺԷ. Պիղծ և անհաւատ Դաղարն ազգն եկաւ, և բազում գիւղք և զաւառ աւերից և գերեցոյց, և մեծ իշխան ոմն անուն Լասքին՝ էառ ընդ իւր զօրս ոչինչ բազում, իբրեւ 5,000, և չոգաւ յետ նոցա, և եհաս և կոտորեց զԴաղարն. և բազում գերիք և աւարս ազատեաց և դարձոյց։ Բայց ի իւրոց անտի հեծելոց սակաւ մի կոտորեցան ի ԴաԹարէն. քանզի անօրէնքն այն բազում էին քան զնոքա։ Եւ այս ոչինչ է զարմանալի, զի կավոյ է բանս. զի ով ոք զնոյն խաղն խաղասցէ՝ այնպէս լինելով է։ Աստուած զվերջն ի բարին փոխէ և տայ զօրուԹիւն քրիստոնէիցն։

1569. Թվ. ՌԺԸ. Բարեպաշտ Թագաւոր մեր Զիկմունդ Ակուստոս՝ մեծ ժողովք արար ի քաղաքն Լուպլին, զոր ամենայն աշխարհն Իլախից անդ կային ժողովեալ. և զի վաղուց հետէ ժողովք բազում լեալ էին վասն Իլախից և Լիդվայի երկրին միաբանուԹեան, այսինքն է որ կոչի յունիա (union). և Թարգմանի զայս, զի այս երկու երկիրս զոր վերոյ ասացաւ՝ Իլախի և Լիդվայի, Թէպէտ տէրուԹիւն և ԹագաւորուԹիւն մի է, բայց առանձին էին Իլախի երկրին դատաստանն և դատակնիք. զոր ի յայսմ ժողովքիս եղեւ խաղաղուԹիւն և միաբանուԹիւն ի վերայ ամենայն աշխարհի Իլախից. զի մի դատաստան լիցի և մի դատակնիք յաւիտեան, և այլ չփոփոխվի այս սահմանքս և կարգս։

1570. Թվ. ՌԺԸ. Նոյեմբ. ամսոյ ԺԲ. Իլովի արհի եպիսկոպոսն Գժոնց Սլոմովսքին եկաւ ի Կամենից. և ամենայն քաղաքիս բազմուԹիւն ել ընդ առաջ նորա, Ցանկ ազգ և Հայք. և Ըռուզ ազգն լցան նախանձու և ոչ ելին, վասն երեք պատճառի. զի մեք Հայոց ազգս Ցանկի առաջն էաք, և նոքա ի մեր առաջն էին. և վասն այսպիսի հակառակուԹեանց նոցա չելին,

և ամօթալից մեռցին։ Եւ այս եպիսկոպոս և Կամենիցի եպիսկոպոսն Գժոնց Ֆեւոյ՝ եկին ի եկեղեցին մեր, և տեսին զպատարագն մատչելն, և զմկըր-տութեան կարգն և զխորհուրդն. և բազում հարցաքննութիւն արարին ի մէնջ, և մեք ազգս Հայոց ըստ պատշաճի իւրի պատասխանի արաք նոցա. զոր և փառս տալով գոհացան զԱստուծոյ, որ է օրհնեալ։

1571. Թվ. ՌԺԹ. Փետրուարի Զ, օրն երկուշաբթի Բուն բարեկենդանի. ի քաղաքս Կամենիցս ի յայսմ ամին՝ մեծ գետյարուց եղեւ, զոր քաղաքին զխապախներն կոտրեց, և զջրաղացքներն աւերեց, և զկարմունջներն տա-րաւ. և զդեղանքն հացի (համբարք ցորենոյ) և խոտք շատ տարաւ. և բա-զում պակասութիւն արար քաղաքիս և ամենեցուն։ Զոր այս ամենայն եղեւ վասն բազում և զանազան մեղաց մերոց. զոր Տէր Աստուած զվերջն ի բա-րին դարձուսցէ, և ամենեցուն մեղաց թողութիւն պարգևեսցէ. ամէն։

1571. Թվ. ՌԺԹ. Օգոստոսի ԺԵ. Հրամանաւ թագաւորին երեք իշխանք եկին ի Կամենիցս, որք էին Լիւստրատորներ (քննիչք), և շրջեցան ընդ ամենայն աշխարհն և ընդ քաղաքսն թագաւորական, և զամենայն ինչ հարցաքննեցին՝ զկարգն և զսահմանքն, և ի գիր առին, և գնացին. և կացին երեք շաբաթ. և մինն ի նոցանէ եկաւ ի եկեղեցին Հայոց, որ էր թագաւորին սեգրըդար (խորհրդական կամ դպիր)։

1571. Թվին. ՌԺԹ. Հոկտ. ԺԵ. Բան Վլոտքո Մացէյ՝ որ էր իշխան քաղաքիս, առ Աստուած փոխեցաւ. զոր Տէր Աստուած ողորմի իւր հոգոյն, և ընդ բարեպաշտ իշխանսն դասեսցէ, և երկնից արքայութեան արժանի ա-րասցէ. քանզի յոյժ բարեհոգի ոմն էր, հեզ և խոնարհ. մանաւանդ զՀա-յոց ազգն քան զամենեսեան առաւել սիրէր և ընդունէր. և էր սդարոս-դայութեան (աւագութեան) նորա ամք 28[1]։

1571. Թվ. ՌԺԹ. Դեկտ. ԻԱ, օրն է հինգշաբթի։ Բան Բոդացքիյ, Բան Միքօլայ նստաւ իշխանութիւն Կամենից քաղաքիս, հրամանաւ թագաւորին. զոր Տէր Յիսուս տացէ նմա հոգի հեզութեան և երկիւղի և աստուածպաշ-տութեան, զի լիցի ըստ հրամանի սրբոց պատուիրանացն Աստուծոյ։

1571. Թվ. ՌԺԹ. Բարեպաշտ թագաւորն մեր Զիկմունդ Ակուստուս խառվեցաւ ի վերայ քաղաքիս Կամենիցոյ, և զտամղան (ազատագիր մաքսի) որ շնորհել էր քաղաքացոց՝ որ չէին ի տալ տամղա Իլաֆի աշխարհ, նայ հիմիկ յայլվի հրաման առաւ՝ զի տայցեն. բայց յոյս ունին քաղաքացիքն՝ զի այլվի գթասցի և ողորմեսցի ի վերայ այս աղքատ քաղաքիս, և կրկին ա-զատութիւն շնորհիցէ, որպէս առաջ քան զայս. զի թէ ըստ պատշաճի իրացն երթայցեն և հայցեսցեն ի նմանէ, կարող է նոցա զայդ առնել, որպէս քրիս-տոսասէր թագաւորն։

1. Զայն բան գրէ և այլուր, յաւելլով, «հաստատ է բարի և խորին ծերութիւն»։

1572. Թվ. ՌԻ. Սեպտ. ԺԲ, օրն երկուշաբթի։ Օլախաց երկրին պարոնն որ կոչի Պոկտան վոյվոտայ, եկաւ ի Կամենիցն, մանուկ տիօք, ամաց իբրեւ եօթնեւտասնից, բայց հասակաւն էր կատարեալ, և պատկերօք գեղեցիկ, և եկաց երեք օր ի քաղաքս. և իջեալ էր ի տունն Քարափչովաքիյին։



Պատկեր Հրաշագործ Տիրամօր Կամենիցայ.

և քաղաքին իշխանն՝ այսինքն ստարոստան՝ Բոթոցքիյ, մեծաւ պատուով զինքն ընդունեց. և պատուելով մեծարեցին, և կոչեցին զնա ի պատիւ ի Հայոց Դատաստանատունն, և մեծ ուրախութիւն կատարեցին կերակրովք և ըմ-

տօնելով բազմածախուք, և ազգի ազգի երգովք և նուագարանօք զուարճացուցին զախրան։ Եւ զայս ամենայն պատիւ արարին նմա վասն այնր, զի ունէր Թագաւորէն Չինմունդէն իշխանութիւն և պատուէր, զի ուր և կամիցէ երթալ և շրջել ի այս Թագաւորութիւն, հրաման լիցի նմա, և ոչ ոք ի մարդկանէ նմա բան չասիցէ։ Եւ ի գնալն ի քաղաքէն մեծաւ հանդիսիւ



Նոյն Պատկեր զարդարեալ.

ուղարկեցին զնա. որ և գնաց ի Խոդին. զի անդ եկեալ էր և դադարեալ էր, Թողլով զերկիրն իւր և պարտանիստ զքաղաքն Ջիւր. Վասն զի կասկած ունէր իւրոց մեծաւորաց, զի կամէին զնա սպանանել. որպէս սովորութիւն է նոցա միշտ. և նա յաղագս այնորիկ իջեալ էր ի Խոդինն։ Եւ զիւր իշ-

խանք. հեռացուցանելով յիւրմէ և չհաւատալով նոցա զանձն իւր, չոգրլ և բոլորն իւր ժողովեց զիլախացն ազգն, և նաքաք չրջէր. և ընդ նոսա զամենայն ինչ և պէտս կատարէր և հոգայր։ Եւ եկաց այս կերպիւ ի խոզինն չորս ամիս. և յետոյ եկին մեծարարքն իւր և եպիսկոպոսն իւրեանց. և երեք անկամ երդուան նմա, զի մի նիւթ մահուան խորհեսցին նմա. և ապա առեալ գնացին ի գաւառն (աթոռ) իւր՝ ուր միշտ նստեալ կայր. որ կոչի Յասն (Եաշ)։

1572. Թվ. ՌԻԱ. Օլախի պարոն Պոկտան վոյվոտան և իւր եղբայրն Բեդրան ելին իւրեանց երկրէն և եկին ի այս Իլախի աշխարհն, և կացին ոչինչ բազում ժամանակս. յետոյ կրկին կամեցան գնալ իւրեանց երկիրն. և Օլախի մեծամեծք չընդունեցին զնոսա. և ի Թուրքի խոնդիքարէն բերին իւրեանց այլ ուրիշ պարոն ոմն Իւոն անուն, զոր ի Մոսկովու եղեր է ժամանակաւ։ Եւ երբ տեսին այս երկու եղբայրքն՝ որ ատեցան և անարգ թեացին և ունայն իւրեանց պարոնութենէն, յետոյ հնարք գտին և գնացին առ զօրավարն Եագլովեցքին, որ նոցա ձեռնտու և օգնական լիցի, և տանի զիւրենք հեծելազօրովք, և նստուցանէ ի պարոնութիւն իւրեանց. և խոստացան նմա պարգևս մեծամեծս։ Եւ նա հրամայեաց հարիւրապետաց, զի իւրեանց գնդաւն երթիցեն և մուցեն ի երկիրն Օլախաց, և տարեալ նստուցեն զնոքա ի պարոնութիւն։ Եւ իբրև մտին ի երկիրն այն, ահա և նոքա պատրաստեցան և քաջացան, և հեծելովք ընդդէմ կացին, և ոչ ետուն թոյլ զի մըտանիցեն. և ոչ կամեցան զնոքա ի պարոնութիւն. այլ մանաւանդ բազում և շատ կորուստ եղաւ երկու կողմանէ, սոցա և նոցա, զի փոքր ի շատէ պատերազմեցան ընդ միմեանս. և Թուրք ազգն այլ կայր ի հետ Օլախի։ Եւ ապա դարձան ունայն և նկուն և ատեցեալք եկին դարձեալ ի աշխարհս այս։ Եւ այդ Իւան պարոն շատ իշխանք և մեծամեծք ջնջեց և կորոյս ի Օլախաց ազգէն, դառն և չարաչար մահուամբ. որպէս երբեմն ի կռապաշտից ժամանակն։ Եւ յայն ժամանակի զխոդինն այրեցին բովանդակ։ Եւ էր գլուխ զօրաց վոյվոտայ Բոտոլեքիյ։

1572. Թվ. ՌԻԱ. Տէր Պետրոս ծեր քահանայն առ Աստուած փոխեցաւ. 52 ամ քահանայագործութիւն արաւ ի Ս. Աստուածածնին եկեղեցին, զոր Տէր Աստուած դասակից և պսակակից արասցէ զնա ընդ սուրբ քահանայսն և ընդ արդարոն. ամէն։

1572–3 Թվ. ՌԻԱ. Եկաւ Տէր Մարտիրոսն Համթեցի եպիսկոպոս ի այս աշխարհս՝ նուիրակ. և ընդ նմա Տէր Յովանէս անուն երէց մի, զոր ի Լիովու վաղճանեցաւ. և Տէր Մարտիրոսն նուիրկեց զԼիովու և զԿամենիցն, և ելաւ գնաց փառօք և պատուով։

1572. Թվ. ՌԻԱ. Յուլիս ԺԵ. Բան Միքօլայ Գրիպքիյ նստաւ ի Կամենիցս ստարօստայութիւն, հրամանաւ թագաւորին Զիկմանդ Ա.

կուսդոսի. զոր Տէր Յիսուս տացէ նմա սիրտ սուրբ, և հոգի ուղիղ նորոգեսցէ ի փորի իւրում. զի լիցի ըստ օրինացն և ըստ պատուիրանացն Աստուծոյ անարատութեամբ, առանց ակն առնելոյ և կաշառաց. սիրել զամենեսին, և միապէս խնամել զմեծն և զփոքրն, և քաղցրութեամբ վարել և հովուել զիշխանութիւն իւր, ի փառս Աստուծոյ. ամէն. ամէն. և եղիցի:

1572. Թվ. ՌԻԱ. Բոլորապաշտ Թագաւորն Զիկմունտ Ակուստոս առ Աստուած փոխեցաւ, առ յոյսն ամենեցուն: Յետ փոխելոյն նորա բազում տարակոյս եղեւ ի մէջ իշխանաց. վասն զի ոչ գոյր յետնորդք այս Թագաւորիս՝ որ ժառանգէր զաթոռ իւրոյ հայրենի. և եղեւ անիշխանութիւն աշխարհիս այս երկու ամ. յետոյ մեծ ժողովք եղեւ ի մէջ իշխանաց և ամենայն մեծամեծաց, և բազում խորհուրդ և քննութիւն արարին ի մէջ իւրեանց, թէ ուստից և կամ զո՞ ոք դիցեն Թագաւոր. վասն զի հակառակութիւն կայր ի մէջ նոցա, ոմն այս կոյս և ոմն այն կոյս խորհէին. ոմանք զՃեսարին (կայսեր) որդին կամէին, ոմանք զՄոսքովին իշխանն կամէին. և ոմանք այլ և այլ իշխանացն կամէին. և այսպիսի հակառակութեամբ ոչ կարէին հաստատել զխորհուրդ իւրեանց: Յետոյ Ֆրանցուզի (Փռանկաց) Թագաւորն զիւր դեսպանն առաքեաց եպիսկոպոս մի, այսինքն է էլչի՝ ի ժողովս նոցա. և նա եկեալ հնարիւք և մեծաւ ճարտարութեամբ և իմաստ(ուն) բանիւք հաւանեցոյց զամենեսեան և հաճեցոյց, զի զԹագաւորն իւր ընդունիցեն ի Թագաւորութիւն, զոր և եղեւ իսկ. ամենեցուն հաճոյ թվեցաւ, մեծի և փոքու, զի Ֆրանցուզին Թագաւորեսցէ ի վերայ նոցա: Զոր և իսկոյն առաքեցին (ի) մեծամեծ իշխանաց և արքունի խորհրդով առ նա, զի եկեալ Թագաւորեսցէ ի վերայ նոցա. ուր (որ) և կամակից եղեւ նոցա և հաւանեցաւ Թագաւորել նոցա՛ այսմ աշխարհի, որ կոչի Լէհիչնոց, այսինքն է Բօլաքայ (Լեհաստան): Ուր և առաքեցին նմա զԹագաւորական զտօմարն և զհրամանսն Թագաւորական և զիշխանութիւնս ի վերայ ամենայնի, ըստ օրէնի սահմանաց և կարգաց նոցա, նա և զերդումն և զուխտն իւրեանց. զի որպէս նախնոյն Թագաւորաց կարգաւ և սահմանաւ վարէին զիւրեանց երկրին զԹագաւորութիւն և զիշխանութիւն, նոյն կարգաւ և սահմանաւ և սա Թագաւորեսցէ և տիրեսցէ ի վերայ նոցա և ամենայն երկրի նոցա: Ըստ նմին օրինակի և Թագաւորն նոցա ուխտադիր և դաշնադիր եղեւ նոցա. և երդուաւ նոցա, զի որպէս նախ քան զինքն Թագաւորք իշխեցին և տիրեցին ի վերայ նոցա և ի վերայ աշխարհի նոցա, նոյն օրինակաւ և կարգաւ և ինքն տիրեսցէ, և ըստ հասարակաց կարգաց հովուեսցէ և տիրեսցէ ի վերայ նոցա. և ոչ մի ինչ փոխեսցէ և նորաձեւ սահմանս կարգիցէ. այլ ըստ հնոյն և առաջնոյն սահմանաւ վարեսցէ զնոսա:

1573. Եւ էր Թիւ Հայոց ՌԻԳ (ՌԻԲ) յորժամ նստաւ ի Թագաւորութիւն. և փետրուար ամսոյ ԻԲ աւուրն բուն բարեկենդանին կիրակին հաստատեցաւ ի վերայ աթոռոյ Թագաւորութեան իւրոյ. և է 25 ամաց երիտա-

տարդ գոլով. բայց անձամբ է վայելուչ և հաստական կատարեալ, և իմաստութեամբն զարդարեալ և հետեւեալ։ Եւ կոչի անուն նորա Հեններիքոս Թագաւոր. զոր Տէր Աստուած Թագաւորն Թագաւորաց փրկիչ ամենայն աշխարհաց՝ փրկեսցէ զինքն ամենայն փորձանաց հոգեկան և մարմնական. և շնորհեսցէ նմա բազում ամօք թագաւորել. և տացէ նմա միրտ սուրբ և հոգի ուղիղ, նորոգեսցէ ի նմա և բեւեռեսցէ զերկիւղ իւր սուրբ ի սրտի իւրոյ, միշտ խորհել զբարին և զհաճոյսն ըստ Աստուծոյ կամաց, զի խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեսցէ զկեանս իւր. զի և մեզ ընդ նմա լիցի խաղաղութիւն, և հանդարտութեամբ ի թշնամեաց պատերազմէ և յորոգայթից թշնամոյն. ամէն։ Նա և տացէ նմա Թագաւորն անմահ Քրիստոս Աստուած զիւր ամենակարող և յաղթող զզօրութիւն և զքաջութիւն, յաղթող լինել ի պատերազմի. վանել զթշնամիսն իւր և խոնարհեցուցանել ի ներքոյ ոտից իւրոց. որպէս երբեմն Թագաւորն սուրբն Դաւիթ՝ զանօրէն զմսաբլուրն զԳողիաթ։ Եւ ամենազօրն Աստուած միշտ հովանի լիցի ի վերայ նորա. և իւր հզօր ձեռամբ և բարձր բազկաւ վերակացու եղիցի նմա զամենայն աւուրս կենաց իւրոց. ամէն. Եւ զհանգուցեալն զքրիստոսասէր Թագաւորն մեր Զիկմունդ Ակուստուս՝ դասեսցէ ընդ բարեպաշտ Թագաւորսն, և հանգուսցէ ընդ արդարսն յանանց փառսն և յերկնից Թագաւորութիւն. տացէ նմա վայելել և ժառանգել, Քրիստոս անմահ Թագաւորն Թագաւորաց. զոր նմա փառք և գոհութիւն ի յամենայնէ, այժմ և յաւէտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։ Եւ էր ի Թագաւորութեան նորա ամք 25. և յորժամ վաղճանեցաւ՝ էր ամաց 52։ Հայր մեր որ յերկինս։

1574. Թվ. ՌԻԳ. Մարտի ամսոյ Ի, Աղուհացիցն։ Եղաւ այսպիսի բան, զի Օլախաց երկիրն նոր ուրիշ պարոն կու բերէին միւս պարոնի վերայ. և երբ լսեց այս Օլախաց պարոնն՝ որ կոչէր Իւոն վոյվոտայ, իսկոյն պատրաստելով զզօրս իւր գնաց ընդդէմ իւր թշնամոյն. և եհաս ի Մինդանին երկիրն, և եգիտ զինքն անպատրաստ. զի նստել էին ճաշոյ ուտելոյն. և եհաս ի վերայ նոցա և կոտորեց. և փախեան ի Պրայիլն, և փակուեցան ի բերդն այս նոր պարոնն։ Եւ այս հին պարոնն Իւոն կատղեցաւ և բարկութեամբ բորբոքեցաւ և եկն ի Պրայիլն, և զքաղաքն զամենայն հրով այրեց և թալանեց. և զքաղաքացիսն՝ զոմն ի սուր մաշեց, զոմն ի Տունան (Դանուբ գետ) ընկղմեց անողորմ, մինչեւ բուն երեխայքն. և զամենայն բարութիւն երկրին և քաղքին աւար առնելով դարձաւ ի տեղի իւր։ Ցետոյ այդ գաւառին Թուրքերն ժողովեցան և պատերազմեցան ի հետ նորա, և ընոսա կոտորեցին 2000 անձն։ Ցետոյ զբանն խոնտիքարին ազդեցին, եթէ Պողտանի պարոնն քեզ խային (թշնամի) դարձաւ, և ուրացաւ զքեզ և զլուխ քաշեց, և այսչափ չարիք գործեց և վնաս։ Եւ խոնդիքարն իբրեւ զկատաղի գազան մեծաւ ցասմամբ և սրտմտութեամբ հրամայեց սանճախներաց և Դադրի խանին, զի գայցեն ի վերայ Օլախի պարոնին, և զերկիրն զամենայն

ընչեացն անողորմ։ Եւ զամենայն Դաւրի խանն իւր գլխով և եօթն որդովն
և շատ հեծելովն և Թուրքի սանձախններն ի մի վայր ժողովելով, մտին յեր-
կիրն, և զամենայն երկիրն հրձիգ արարին, և ի սուր մաշեցան, և գերի
տարան, և աւար առին զամենայն մարդիք և զանասուն. և ոչ թողին բնաւ
ինչ. բայց միայն Մեչովն ազատեցաւ և Սերաթն. այլ ամենայն ինչ մաս-
նեցաւ ի ձեռս անօրինաց, վասն ծովացեալ մեղաց մերոց։ Եւ զինքն զիւրն
պարոնն կենդանի կալան և սպանին չարաչար։ Յետոյ դարձեալ զնոյն պարոն
բերեալ Նասուցին ի երկիրն, զոր յառաջագոյն էին բերեալ ի վերայ այս Ի-
ւանին։ Այդքան է առ այս։

1574. Թվ. ՌԻԳ. Յունիս ամսոյ ԺԸ, օրն վեցշաբթի (ուրբաթ)։ Թագա-
ւորն Ենրիքոս ելաւ գիշերով ի Կրաքովին բերդէն, որ է թախթն իւր, և
փախաւ յերկիրն իւր ի Ֆրանցիա, ուր թագաւորութիւն էր իւր. և զայս
ոչ ոք չգիտաց իւր բոլոր իշխանաց. միայն երեք արամբ ելաւ ի բերդէն,
յետոյ գիտացին թէ թագաւորն գնաց ի բերդէն, և իսկոյն ընթացեալ այսր
և անդր՝ ոչ ուրեք գտան։ Եւ մին իշխան Վոյնիցքիյ ընթացաւ յետ նորա և
եհաս նմա ի Հրանիցան, երկու միլ, և եկն անկաւ առաջի թագաւորին ի
վերայ ճանապարհի, և թագաւորն զտեղի էառ և եկաց. և այս իշխանին
ասաց՝ զի կացցէ ի վերայ ոտից իւրոց. և ասաց նմա, Զի՞ ես եկեալ. զի՞նչ
կամիս։ Եւ այս իշխանն ասաց, եթէ, Թագաւոր, ողջ լեր. դարձիր վասն
Աստուծոյ, քանզի թէ չդառնաս՝ իմ գլխոյ կորուստ առնես։ Եւ թագաւորն
պատասխանի տուեալ նմա, եթէ, Դարձիր գնա ի բանդ. ոչ թէ դու միայն
եկեալ ես, թէպէտ ամենայն Բոլցքայ և ամենայն իշխանք գային և զիս
կոտորէին յօդ յօդ՝ չիկայ հնար ինձ դառնալոյ. վասն զի պարտ է ինձ գնալ
և տեսանել զմայրն իմ և զհայրենի ժառանգութեան աթոռն իմ. զի ահա
զեղբայրն իմ մեռուցին մահադեղ արբուցանելով. և մայր իմ միայն գլխով
է, և ոչ ոք չունի իւր ձեռնտու կամ օգնական. և միւս կրսեր եղբայրս կա-
տարելութիւն ոչ ունի, և իշխանք և մեծամեծք ընդդիմակցութեամբ հակա-
ռակին նմա, և ոչ կամին հնազանդել. երկնչիմ, գուցէ զերկիրս չիտան տուր
թշնամեացն. վասն որոյ անպատճառ պիտի երթամ. և մինչեւ չորս ամիս
այլուի կու գամ առձեզ. ոչ թողից զձեզ ի մէջ տարակուսութեան և անիշ-
խանութեան։ Բայց զամենայն ինչ գրով թողել եմ ի սենեակս իմ՝ խաղաս
(կապերտ ?) յետեւ. ի անդ կու գտնուք և կու իմանայք զամենայն ուղի-
տութիւն և զպատճառն գնալոյ իմոյ ի ձէնջ։ Զայս ասելով ուղի անկեալ
գնաց ի ճանապարհն իւր։ Եւ զամենայն ինչ զոր բերել էր ի հետ իւր ի
Ֆրանցիայէն, զայդ ամենայն յառաջագոյն հանել էր ի բերդէն և ուղար-
կել էր, անտես ի մարդկանէ՝ յաշխարհն իւր. և երբ եկել են ի սրահն իւր՝
ոչ ինչ գտել են, բայց միայն երկու բարձ գլխոյն։ Եւ այս եղեւ վասն ան-
հնազանդութեան իշխանացն և մեծամեծացն, զոր այսպիսի բան բնաւ ոչ էր
եղել այս աշխարհս։ Աստուած դաւարտն ի բարին առնէ. ամէն։

1574. Թվ. ՌԻԳ. Օգոստ. Գ. Նեմիչի դատաստանին դատաւորքն զՀայոց դատաստանն անփոյթ առնելով, և ոչինչ համարելով զԹագաւորական ավեալ զուռմարն և զհրամանն, և կալան զմի Հայ երիտասարդ և գլխատեցին։ Պատճառն այս եղև, զի այս երիտասարդն Եղգուղ անուն՝ որ էր Միխայլին Թոռն, զմի առնակին սեղեխ ունելով՝ մտեալ էր առ կինն ի գիշերի. և այրն կնոջն կալաւ ի միատեղ, և բերեալ ի բաԹուշն (դատաստանարան), զերկուքն այլ՝ զկինն և զերիտասարդն գլխատեցին։ Զոր այսպիսի բան բնաւ չէր եղեր, որ զՀայն՝ Նեմիչն դատէր կամ ի մահ դատապարտէր. և այս եղև վասն անԹիւ մեղաց մերոց, մանաւանդ վասն անհոգութեան դատաւորացն։

1574. Թվ. ՌԻԳ. Թուրքի խոնտքարն սուլտան Սէլիմ մեռաւ. ինն ամ Թագաւորութիւն վարելեց, և փոխանակ նորա նստաւ որդին իւր սուլտան Մուրատն։

1574. Թվ. ՌԻԳ. Տէր Գրիգոր եպիսկոպոսն՝ որ էր Վանեցի, առ Աստուած փոխեցաւ ի յԸստամպօլն. զոր խռովեցաւ վերայ յԻլովցոց, և գընաց ի այս աշխարհէս. և էր եպիսկոպոսութեան նորա ամք 22, զոր եղև աԹոռակալ այս աշխարհս, ի վերայ Իլովին և Կամենիցոյ։

1575. Թվ. ՌԻԴ. Հոկտ. ԺԹ, օրն երեքշաբթի։ Կամենից քաղաքն Թաթար եկաւ, և շուրջ զքաղաքաւն շրջեցան ամբարիշտքն. և զամենայն գեղանսն այրեցին հրով, զՏօլչքան և զՆովասելիցան և զԳօպոչամն, և զՍ. Լուսաւորչին զեկեղեցին Հայոց, և այլ շատ գեղանք. զոր և իսկոյն եկել էին բերդին ներքև և շուրջ զլերամբք ապաստակեալք, և ի մէջ քաղաքին նեղաձիգ լինէին, անահ և աներկիւղ շրջելով։ Զոր էին հասեալ մինչև յԻլովն. և հազիւ ազատեցաւ քաղաքն. զի Թէ Թօբերով չընդդիմանային ընդդէմ նոցա, այլ և յԻլովին յետ անցել էին, շուրջ զգաւառաւն զամենայն ինչ հրով այրեցին. յԻլովէն մինչև ի Կամենից՝ տեղ ոչ Թողին որ չգերեցան. և աւարեցին զմարդիկ և զանասունս, որչափ ինչ կայր՝ զամէն սրբեցին, և հանին զերկրի բարութիւնս. այլ և մինչև ի Լուցքան՝ զԼիդվայի գաւառաւն և Վոլնին գաւառաւն և Բոտոլեային գաւառաւն, որչափ կարաց և ձեռն բաւեց՝ զամենայն ինչ տարաւ, անԹիւ և անբաւ։ Եւ ելեալք գնացին և անցին զՏուրլուն, Խոտինէն ի վայր, անմնաս զամենայն գերեալսն և զաւարն անցուցանելով այնկոյս գետոյն. այսպէս ելեալ գնացին անօրէնքն անահ և անկասկած։ Զոր այսպիսի համարձակութիւն անբարշտաց ոչ էր լեալ՝ որչափ Կամենից քաղաքն կանգնեցեալ կայր. զոր և ի մէջ քաղաքին շիւարեցան և տարակուսեցան. ամենեցուն ձեռքն լքան, և ամենայն անձն մարդոյ դողացան. և ոչ ոք իշխանաց կամ մեծամեծաց հնարք և ճարտարութիւն և կամ փոքր ի շատէ քաջութիւն ոչ ցուցին. և ոչ բնաւ ի անօրինաց կալան կամ սպանին, որպէս յերեկն և եռանդն կային այնպիսի ոմանք արք պատերազմողք և քաջասիրտք։

Բայց ոչ է պարտ հիանալ. զի ամենեցուն Տէրն եբարձ ի սոցանէ զամենայն որպիսութիւն. ըստ մարգարէութեան Եսայեայ, զոր կու հրամայէ ի բերանոյ Աստուծոյ այսպէս. եթէ, « Եբարձ Տէր յԻսրայէլէ զգլուխն և զվերջն, զմեծն և զփոքրն ի միում աւուր. այսուհետև ժողովուրդն ի գերութիւն վարեցաւ վասն ոչ ճանաչելոյ նոցա զՏէր. և բազում եղեն գիակունք նոցա վասն սովոյ հացի և ծարաւոյ ջրոյ։ Եւ ի վերայ այսր ամենայնի ժողովուրդն ոչ դարձաւ, և զՏէր զօրութեանց ոչ խնդրեցին, մինչև վիրաւորեցաւ. վասն այնորիկ ի վերայ երիտասարդաց նոցա ոչ եղիցի ուրախ Աստուած, և այրեաց և որբոց նոցա մի՛ ողորմեսցի, զի չարք են և անօրէնք. և ամենայն բերան խօսի զանիրաւութիւն ». և այլն ըստ կարգի։ Ուր և այժմ մարգարէութիւնս կատարեցաւ ի վերայ այսմ երկրի իշխանացս. զի ոչ ունին միաբանութիւն ի միջի իւրեանց, և ոչ պատիւ և ոչ հնազանդութիւն, և ոչ սէրն Աստուծոյ իւրեանց սրտի. վասն որոյ Տէր զօրութեանց կամի եղծանել զերկիրս նոցա, և զինքեանս ջնջել ի մեծութենէ և ամբարտաւանութենէ բարձր իշխանութենէ, վասն ծովացեալ մեղաց մերոց։ Զոր Տէր Աստուած տացէ նոցա հոգի զգաստութեան և զօրութեան և իմաստութեան, զի մի տանիցեն անփոյթ զայսպիսի տեսութիւն և զզուշակումն, անհաւատից և ամբարշտաց, զոր ոչ էր եղեալ երբէք նախ քան զայս այսպիսի ինչ՝ զոր այժմ եղեւ։

1576. Թվ. ՌԻԵ. Հանգեաւ առ Աստուած Կամենից քաղաքիս Ցուանգի եպիսկոպոսն Գժօնծ Տեւուշ Սեցենովսքիյ. 13 ամ կալեալ զաթոռ եպիսկոպոսութեան այս վիճակիս. զոր Տէր Աստուած ողորմի հոգուն. և էր հեզ և խոնարհ ոմն և պարզամիտ և երախտաւոր առ Հայոց ազգիս, միշտ ընդունելով զնոսա, ի սեղանս միշտ հացակից առնելով, և մեծարելով քան զչափն աւելի զեպիսկոպոսն մեր և զքահանայսն։ Թողցէ նմա Տէր զմեղս՝ զկամայն և զակամայ. ամէն։

1577. Հայոց Թվ. ՌԻԵ. Մայիս ամսոյ Ա, օրն երեքշաբթի։ Ի յայսմ ամի ի Լեհից աշխարհս նոր թագաւոր նստաւ, որոյ անուն կոչի Պաթօրիյ Ըշտեֆան, որպէս առաջագոյն գրեալ կայ ի այսմ թխտիս՝ զպատմութիւն թագաւորացն, ողորմած հոգոյ Զիկմունտ Ակուստոսի և զվախճանն նմին. և յետ նորա միւս թագաւորին Ֆրանցուզքիյ աշխարհէն, զոր էին բերեալ, անուն նորա Եէնիրիքուս. զոր վասն անհնազանդութեան իշխանացն այսմ երկրի՝ ելաւ, և փախստական գիշերով գնաց յաշխարհն իւր, և այլ ոչ դարձաւ, յաղագս անկարգ և անսահման գնացից սոցայ։ Եւ յետ երկուց ամաց բազում անկամ ժողովեցան և քննութեամբ ընտրեցին իւրեանց երկրի վերայ զայս վերոյգրեալ թագաւորն, և բերեալ նստուցին ի յաթոռ թագաւորութեան ի քաղաքն թագաւորանիստ ի Կրաքովն. և մայիսի առաջին օրն երեքշաբթի օծեցին, և թագագրեալ պսակեցին ըստ օրինի թագաւորութեան։ — Եւ հանգուցեալ թագաւորիս Ակուստոսին քոյր մի կայր ժառանգ աշխարհիս այս՝ ի բնական հայրենեաց իւրոց, զնա ետուն նմա այս

Թագաւորիս ի կնութիւն. և զհարսանիքն այլ պատրաստեցին և կատարեցին. Բայց այս Թագաւորս զոր առաջ ասացաք՝ ոչ էր ի Թագաւորական զարմէն, և ոչ ինքն էր օծեալ Թագաւորին որդի, այլ էր ի արքունի իշխանացն, այսինքն զինուոր. որ և վասն քաջութեան և հմտութեան պատերազմաց՝ զոր ցուցեալ (էր) ի Մանրաց երկիրն, և համբաւ և լուր նորա հասեալ էր բազում աշխարհն. առաքեցին առ նա պատգամաւորս և նուիրակս և զխոստումն իւրեանց. մինչ հաւանեցուցանելով զնա բերին ի Մանրաց երկրէն Գողտանայ երկրումն, և տարեալ նստուցին ըստ առաջ ասացելոցն՝ ի Թագաւորութիւն: Զոր ամենազօրն երկնաւոր Թագաւորն Թագաւորաց՝ տացէ նմա սիրտ սուրբ և զհոգի ուղիղ նորոգեսցէ ի նմա. և տացէ նմա միշտ խորհել զկամս Աստուծոյ և գնալ ի պատուիրանս նորա, և առնել զհաճոյսն Աստուծոյ, ըստ օրինի բարեպաշտ Թագաւորաց. և ուղղափառութեամբ վարեսցէ զկեանս իւր. զի մի խոտորեսցի երբէք ի պատուիրանաց Աստուծոյ աջ կամ ահեակ. այլ միշտ բեւեռեալ ունիցի զերկիւղն և զսէրն Աստուծոյ ի սրտի իւրում. և ամենազօր Թագաւորն անմահ տացէ նմա հոգի իմաստութեան և գիտութեան, հոգի երկիւղի աստուածպաշտութեան, հոգի հանճարոյ և զօրութեան. զի վարեսցէ զաշխարհս զայս խաղաղութեամբ և հանդարտութեամբ, ի չար պատերազմաց Թշնամեաց անօրինաց. և զօրքն իւր ի վերայ Թշնամեացն միշտ մխեցուսցէ կայծակամբ կաղնոյ. ամէն: — Եւ մեք Թշուառացեալքս ազգս Հայոց՝ զոր կամք զրկեալ ի Թագաւորութենէ գահոյից և ի պերճութենէ իշխանացն, և մնացեալ կամք իբրև ճնճղուկ մի ի տանիս և իբրև բու աւերակի. և տարագիր եղեալ պանդխտեալ և նժդեհեալ կամք ի այսմ օտար աշխարհս և օտար ջուրս և ի հողս, յաղագս օրինազանց և անկարգ գնացից մերոց. վասն որոյ աղաչեսցուք զմարդասէրն Աստուած և խնդրեսցուք զողորմութիւն նորա, զի տացէ այս Թագաւորիս սիրտ մարմնեղէն և հոգի արդարութեան, զի միշտ քաղցր աչօք հայեսցէ ի վերայ ողորմելի և անտիրացեալ ազգիս մերոյ. զի խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեսցուք զկեանս մեր ամենայն աստուածպաշտութեամբ. զի այս է հաճոյ և ընդունելի առաջի Աստուծոյ փրկչին մերոյ, որ կամի զի ամենայն մարդ կեցցէ, և ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցէ: Զոր նմա փառք և գոհութիւն ի յամենայն առ և ի տուր չնչոյ, այժմ (և) յաւիտեանս. ամէն:

1577. Թվ. ՌԻԵ. Այս Թագաւորիս հրամանաւն եկին երկու իշխանքն որ կոչին Ռեվիզօրներն (քննիչք), և երկու օր կացին ի Կամենիցս, և գնացին:

1577–8. Հայոց Թվ. ՌԻԶ. Ի այս ամին Օլախաց երկիրն նոր պարոն մտաւ, Բոգդիովա Իւոն անուն նորա. վասն զի հին պարոն Բեդրա լցեր էր զերկիրն հռոմ ազգաւ և Թուրք ազգաւ. և երկրցիք խիստ մեծ նեղութեան մէջ էին հռոմին և Թուրքին ձեռն, որպէս երբեմն Իսրայելացիքն առ Փարաւոնի յԵգիպտոս. վասն այն պատճառի ատեցին զինքն, և չկամեցան

գնա ի պարոնութիւն։ Եւ այս Բոդքովս Իւռնն երբեմն լեալ էր ի երկիրն, և յետոյ ելեալ ի յերկրէն գնացեալ էր ի Մաճարք, և յետոյ եկեալ Իլախաց երկիրս այս, ժամանակաւ ժամանակաւ կացեալ էր և առ մեծամեծս. և երկրի պարոնայք գաղտաբար սմա թղթեր առաքելով իւրեանց ձեռնագրով և մոհրովն, կոչէին զինքն ի պարոնութիւն. և նա նոցա զորդութեան վերայ ելեալ և ժողովեց զխազախներն 400, և ընդ նոցա եմուտ ի երկիրն Օլախաց. և եկաւ ուղղորդ ի յԱսն (Եաշ) ուր պարոնանիստ քաղաք է. և զմիւսն հին պարոն փախստական արարեալ ի երկրէն, ինքն նստաւ փոխանակ նորա ի պարոնութիւն։ Յետոյ դարձեալ այդ հին պարոնն՝ որ է Բեդրա, ժողովեց զթուրքն և զՄէնդանն, և դարձեալ եկաւ ի այս Բոդքովային վրայ, և զինքն եհան ի պարոնանիստ ապարանիցն ի յԱսն, և արար փախստական. և ինքն դարձեալ նստաւ ի պարոնութիւն։ Եւ զայս Բոդքովանն հրամանաւ թագաւորին մերոյ Ստեփանոսին՝ կամեցաւ վոյվոտան ղրկել ի թագաւորն՝ կապանօք. և աղաչեաց զվոյվոտան որ թոյլ տայ նմա, զի ինքն իւր կամաւ երթայցէ առ թագաւորն. և նա եթող զնա զի երթիցէ։ Եւ իբրև գնաց առ թագաւորն՝ ի նոյն ժամն զինքն կապել ետ երկաթի կապանօք, և առ իւր պահել. և յետ փոքր ժամանակի հրամայեաց գլխատել ի Լովն։ — Յետոյ դարձեալ յետ երկուց շաբաթուցն՝ այլ ոմն ուրիշ պարոն մտաւ ի յերկիրն՝ խազախներովն. զոր ոմանք ասացին, եթէ այդ Բոդքովային եղբայրն է. և դարձեալ եկն ի պարոնանիստ քաղաքն. և զհին պարոն զԲեդրա եհան ի ապարանիցն՝ որ է ամրոցն, և ինքն եմուտ և նստաւ ի տեղի նորա, և փակուեցաւ ի ամրոցին։ Եւ ունէր ընդ իւր 1000 խազախ՝ դըֆանքչիք, և թոփեր այլ ունէր ի հետ իւր։ Եւ այս պարոն Բեդրն չկարեցաւ տարակուսեցաւ, թէ զինչ առնիցէ. և զատեցաւ ի Եաշէն՝ ուր դախտն էր. և հեծելովն իւրով հեռագոյն շրջէր. մինչ դարձեալ ետ բերել զթուրքերն, և ընդ նոսա սկսաւ կռիւ առնել ի հետ այս նոր պարոնին. և որչափ մարտնչէին և կռուէին՝ այդչափ կոտորէր զնոսա այդ նոր պարոնն. և բազում թուրքն կոտորեց և զՕլախցիքն այլ ընդ նոսա։ Եւ այս ընդերկարեցաւ մինչև երկու ամիս. և հանապազ պատերազմէին, և միշտ յաղթուէին և կոտորուէին այս հին պարոնին մարդիքն։ Բայց վասն այս պատճառի մեծ նեղութիւն և հալածումն եհաս այդ երկրի բնակչաց ամենայն ազգի, եթէ Հայոց և եթէ Օլախի. զոր զքաղաքս նոցա այրեց զԱսն, և զամենայն ինչսն զոր ունէին՝ թալանեցին և աւարեցին, և զինքեանոն լաւ ի պատուաւոր մարդկանէ սպանանէին։ Բայց այս ամենայն եղև վասն ծուլացեալ մեղաց մերոց. զոր Աստուած ողորմի ամենայն աշխարհի, և բառնայ զայսպիսի պատուհասն ի յամենայն երկրէ և ի սահմանացն, նա և ի մերում քաղաքէ և ի սահմանաց մերոց. ազատէ ի ձեռաց անօրինաց՝ խստաց և ապստամբողաց. և զամենայն թշնամեաց զկարողութիւն և զզօրութիւն խափանէ, և կործանէ զնոսա մինչ ի սպառ։ Նա և մեզ տացէ զգաստութիւն և արթնութիւն. զի լիցուք ըստ պատուիրանի նորա, և գտցուք զթողութիւն մեղաց մերոց. և միշտ բեւե-

ռեսցուք զսէրն և զերկիւղն Աստուծոյ ի սիրտս մեր. գնալ յամենայն օրէնս անարատութեամբ և արդարութեամբ և ամենայն աստուածպաշտութեամբ. զի այն է հաճոյ և ընդունելի առաջի Աստուծոյ. որ կամի զի ամենայն մարդ կեցցէ և ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցէ: Զոր նմա փառք և գոհութիւն ի յամենայնէ, յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1577. Հայոց Թվ. ՌԻԶ. Եկաւ Էջմիածնին Տէր Թադէոս կաթողիկոսն՝ ի Կամենիցս. ընդ նմա երկու եպիսկոպոսք. մինն Տէր Յոհանէս, և միւսն Տէր Փիլիպոս, և աբեղայ մի, որոյ անունն Վարպետ կոչէին, որ է Տէր Աւետիս:

1578. Հայոց Թվ. ՌԻԷ. Աղուհացիցն: Թաթարն եկաւ և շատ վնաս արար այս երկրիս, և անհամար գերի տարաւ զմարդիկն, և շատ սահմանացն զքաղաքն և զգեղն այրեց և թալանեց, մանաւանդ բազում արս և զկանայսն և զաղայս ի սուր մաշեց. վասն զի ցրտային էր և ձմեռնային էր ժամանակս, և ձիւն սաստիկ կայր, որ ոչ կարացին փախչել ազատել. և զՕստրոհն (Ostrog ի Վոլինիա) քաղաքն այրեց բովանդակ, և զամենայն բարութիւնս էառ. զոր զբերդն այլ հազիւ կարացին ազատել: Այլ այս ամենայն եղեւ վասն Թուլասրտութեան և անհոգութեան Թագաւորիս իշխանացն ամենայն. զոր Տէր Աստուած զաւարտն ի բարին առնէ, և զմեզ ազատէ ի ձեռաց անօրինաց և անհաւատից. և մեր բազում յանցանաց թողութիւն շնորհեսցէ:

1578. Հայոց Թվ. ՌԻԷ. ի Կամենից քաղաք նոր եպիսկոպոս նստաւ. անունն Գժենց Մարցին Օրաթ Մոկիլաքիյ:

1578–9. Թվ. ՌԻԷ. ի Կամենիցս Հայտուքներն եկին ի Մաճարք, որք էին Թագաւորին Ստեփանոսին չրջակայ և բոլորովի զօրականք. և էին թվով 800, ընդ հեծեալս և ընդ հետեւակս. և կացին ի քաղաքս երկու շաբաթ. դարձեալ գնացին առ Թագաւորն:

1579. Թվ. ՌԻԸ, մարտի ԺԵ. Մեծ գետյարոյց եղեւ ի Կամենիցս, և բազում նեղութիւն և պակասութիւն հասոյց քաղաքիս, զխապախսն կոտորելով, և զայլ շինութիւնս աւերելով, զմարդիկն ընկղմելով: Զոր վասն այսմ ամենայնի փառք Աստուծոյ:

1579. Թվ. ՌԻԸ. Հոկտ. ԺԴ. Թագաւորն Ստեփանոս մեծ և բազում զօրաքն գնաց ի Մոսքովի երկիրն, պատերազմել ընդ Մոսքովի քնազին. և աստուածային կարողութեամբ զԲոլոցքան էառ, զոր այս Բոլոցքան մեծ և անչափելի քաղաք կու անուանի, զոր Մոսկովցիքն առել էին ի այս Թագաւորէս. և էր ի յայն ժամանակէն մինչեւ ցայժմ 17 ամ: Եւ վասն այս պատճառի քաղաքիս իշխանն որ կոչի Բերդի սդարոստան, մեծ ուրախութիւն և ցնծութիւն կատարեցին քաղաքիս մեծամեծք և դատաւորք. և զՀայ ազգն մեծարեցին, և հայցեցին զի ընդ նոսին կատարեսցեն զայս ուրախութիւնս.

զոր և քահանայք և միաբան ժողովուրդք մեծաւ խնդութեամբ զգեստաւորելով, խաչիւ և աւետարանաւ շրջեցան զբոլոր քաղաքն և զեկեղեցիք Նոցա։ Բայց Ըռուզ ազգն չմիաբանեցան, և ոչ կամեցան զայս ուրախութիւնս կատարել. վասն Նախանձու սրտից իւրեանց, զոր ի սկզբանէ Թշնամիք են Թագաւորիս և ամենայն քրիստոնէից ազգին. զոր հատուսցէ Տէր ըստ սրտից Նոցա։

1579. Թվ. ՌԻԸ, և օգոստոսի ԻԲ. Բազում և անթիւ մարախ եկաւ, վասն ծովացեալ մեղաց իմոց։

1581–2. Թվ. ՌԼ. Շինեցաւ պլանքաններն, Ըռզի խապախն։

1581–2. Թվ. ՌԼ. Տէր Օքսենդն ծեր քահանայ առ Աստուած փոխեցաւ. զոր Աստուած արժանի առնէ ընդ սուրբ քահանայիցն դասս, և էր 90 ամաց. և 58 ամ քահանայութեան արաւ ի Ս. Նիկոլայ եկեղեցի։

1582. Թվ. ՌԼԱ. Մարտի ԺԵ. օրն երկուշաբթի։ Ի Կամինից քաղաքն մեծ ուրախութիւն կատարեցին. այսինքն է որ կոչի Լեկտամուս (լատին. lætamus, ուրախ լիցուք). վասն զի Թագաւորն մեր Ստեփանոս՝ Աստուծոյ կարող զօրութեամբ հնազանդեցոյց զՄոսկովի.քնազն. որ և զամենայն աշխարհն Մոսկովի հրկիզ արար և ջնջեաց, և բազում բերդ էառ ի Մոսքովէն։ Ցետոյ ոչինչ չկարաց առնել Մոսքովի գնեազն. այլ հրեշտակութիւն առաքելով զմեծ փափան զՀռոմայ, զի հաշտեսցի Թագաւորն Ստեփանոս ընդ քնեազին Մոսկովի. և մեծ փափն Հռոմայ՝ փոխանակ իւր առաքեաց զմեծ Կարտնալն իւր՝ մեծաւ փարթամութեամբ, զի եկն և խաղաղացոյց զերկու Թագաւորն, որ հաշտեցան ընդ միմեանս, և երդմամբ ուխտիւ հաստատեցին զյաւիտենական խաղաղութիւն յորդեաց որդիս և ազգաց յազգս։ Եւ որչափ այս Թագաւորն Ստեփանոս այս հեծելութեան վերայ խազնա և մալ խարճել էր, զայդ ամենայն Նմա վճարեց այս Մոսքովի քնեազն. և զիֆլանդն՝ որ է մամըլքադն (վիճակ, գաւառ) Նեմեցին, զամենայն բովանդակն դարձոյց Ստեփանոս Թագաւորին. և էր Թուով 130 բերդ. զայդ ամենայն էառ ընդ իշխանութեամբ Թագաւորն Ստեփանոս։ Վասն որոյ Քրիստոսի Աստուծոյ մարդասիրին փառք և պատիւ յաւիտեանս. ամէն։

1582–3. Թվ. ՌԼԱ. Եանգով պարոն Օլախաց երկրին՝ հպարտացաւ ընդդէմ Թագաւորին Ստեփանոսին, և զծածուկ Թղթերն ուժով էառ ի չավուշին ձեռացէն, և եբաց և ընթերցաւ. վասն այն պատճառի համար զինքն եհան ի յերկրէն՝ խոնդիքարի հրամանաւն, և Նա եկն ի Լով քաղաքն. և Թագաւորն Ստեփանոս զնա գլխատել ետ։

1582–3. Հայոց Թվ. ՌԼԱ. Նոյեմբեր ամսոյն. Բեթր Օլախի երկրի պարոն՝ զոր հանել էին ի տէրութենէն զինքն, այս վերագոյն գրեալ Եանկուլ պարոնին պատճառաւ, զոր հայցել էր ի խոնդիքարէն, որ փոխանակ Բեդրի Նստցի այս Եանգուլս. զոր և խոնտիքարն յաղագս խնդրելոյ Նորա կոչեաց

*առ ինքն զԲեգրան. և նա Թողեալ զպարոնութիւնն գնաց առ խոնտկարն, և հրամայեաց տանել զնա ի Հալապն. և ապա յուղարկեց զԾանդուլն, որ եկաւ Նստաւ Օլախաց երկիրն ի պարոնութիւն։ Եւ որպէս վերագոյն կայ գրեալ զԾանդուլին կորուստն, զոր հպարտացաւ ընդդէմ Թագաւորին մերոյ Ստեփանոսին, և զնորա ծածուկ Թագաւորական խորհուրդն կամեցաւ իմա-*



*Ս. Ստեփանոս* [1]։

1. *Ս. Նիկողայոս եկեղեցւոյ մէջ. Ս. Ստեփանոսի պատկերն է, որոյ քովերը գրուած է.* Յիշատակ է պատկերքըս Նուրիճանի որդի փիրզաաա՞ մըղտէսին եւ իւր կենակցո եւս մըղտեսին, ի դուռն Սուրբ Նիկօլա եկեղեցին. Թվ. ՌՃԲ։

նալ. ընդդէմ ապիրատութեան նորա զայս հնարք խորհեցաւ, և յուղարկեաց առ խոնտկարն՝ որ զինքն հանէ ի պարոնութենէ, և զպարոնութիւնն տայ ի Բեթրան, զոր և արար այնպէս. և եկաւ նստաւ ի պարոնութիւնն, այս երրորդում անգամ։

1582–3. Հայոց Թվ. ՌԼԱ. Մեծ և զարմանալի բան եղաւ ի մէջ Լաթինացոց ազգին. զի մեծ Պապն Հռոմայ փոփոխեց զիւրեանց բնական և առաջնլադիր տօնան, զոր ունէին կարգեալ երեք սուրբ ժողովոյն հայրապետաց. այսինքն է, Նիկիայի, Կոստանդնուպօլսի և Եփեսոսի Բ ժողովոյն. քանզի օրէ յայնմանէ վարէին մինչեւ ցայժմ, և ոչ էին խոտորեալ ոչ աջ և ոչ յահեակ. զոր այժմ խոտորեցան առանց իւիք պատճառի (!)։ Ուր (որ) և հրամայեաց զամենայն տօսն զտէրունական և զմարտիրոսական և զամենայն Սրբոց՝ փոփոխել, և նորաձեւ կարգաւ վարել, որչափ կան Լաթինացոց ազգն. և է այսպէս խոտորումն նոցա. հրամայեաց զի զամենայն տօնսն տասն աւուրբ յառաջ տօնեսցեն, զոր յառաջագոյն ըստ հնոյն կարգի տօնէին. զոր և նոյն կերպիւ զոր վերագոյն գրեցաք՝ սկսան տօնել. զոր և բազումք յազգէ նոցա հիանալով զարմանային (վասն) նորաձեւ սահմանաց նոցա. բայց բազմաց հաճոյ չթուեցաւ այսպիսի խոտորումն իւրեանց ազգին։

1583. Թվ. ՌԼԲ. Ոմն Մաճար Եանչիս անուն ժողովեց զխազախներն իբրեւ 5,000, և նոքօք գնաց և զԹուրքի խոնտկարին զքաղաք զՊենտէրն հրկիզ արար, և զբերդն աւերեց, և զմարդիկն որչափ գտաւ՝ զամէնն ի սուր քաշեց, և զամենայն ապրանքն Թալանեց, զոչխար և զարջառ և զամենայն բարութիւն։ Եւ այս քաղաքացիքն որք մնացին ողջ՝ գնացին ի խոնտկարն՝ լալով և կոծելով և մեծ ողբով, և պատմեցին նմա զիւրեանց վնասն. և խոնտկարն հրաման արաւ զօրապետին իւրոյ, զի զօրօք իւրովք մտցէ ի այս Թագաւորիս աշխարհ։ Եւ եկին անցին զՏունան, և անդ կացին մինչեւ ժողովեն զամենայն զօրս իւրեանց. բայց յետոյ քննութիւն արարին և ծանեան, եթէ Թագաւորին գիտութեամբ ոչ էր այս բանս, այլ այն անիծած Մաճրին բանիւ էր այս աւերումն և խառնակութիւնս. և յետ դարձան գնացին, վասն երդմանն և խաղաղութեան՝ զոր ունէին իւրեանց մէջ երկու Թագաւորքն։ Եւ այդ զօրօք Եանչին հրկիզեալ սատակեցաւ։

1584. Թվ. ՌԼԳ.. Թագաւորն Ստեփանոս հրամայեց զի զխազախներին մաշեսցեն ի սուր սուսերի, վասն Պէնտէրին վնասուց համար, զոր գործեալ էին առանց հրամանաց Թագաւորին. զոր պիտէր բազում խռովութիւն լինէր վասն նոցա պատճառի ի մէջ երկուց Թագաւորաց, ըստ առաջասացելոյն։ Եւ Թագաւորն հրամայեաց զի կալցեն զնոսա և պահեսցեն ի Կամինիցս, և ըստ հրամանի Թագաւորին կալան 38 այր, և այլքն փախեան և Թաքեան. և զորս կալան՝ փակեցին ի մէջ բերդին, մինչ որ Թագաւորէն դառնայ չաւուշն. և երբ դարձաւ, և Թագաւորն զիւր հաւատարիմն ուղարկեց ի հետ չաւուշին,

ոմն Ցերժքո անուն զոր եկաւ, և հրամանաւ Թագաւորին հանեին ի դաշտն. և առաջի չաւուշին գլխատեցին զնոսա. զոր չաւուշն տեսաւ աչօք իւրովք. և էին Թուով իբրև 33, ի մի ժամ գլխատեցին զնոսա։ Եւ 26 Թօփք զոր բերեալ էին ի Պէնտէրէն, հրամանաւ Թագաւորին դարձուցին չաւուշին, զոր առեալ տարաւ զնոսա։

1584. Թվ. ՌԼԳ. Թագաւորն Ստեփանոս հրամայեց, զի Զպորովսքին զՍամուէլն գլխատեցին. քանզի այս Զպորովսքին մեծ իշխանին որդի էր, որ էր երկրորդ Թագաւորին, և վասն ապիրատ գործոյն իւրոյ զոր գործեալ էր, այսինքն զոմն մեծ իշխան սպանեալ էր, և այլ ընդդէմ Թագաւորին հրամանացն հակառակ կայր, և էր անհնազանդ ամենեցուն։ Վասն այն պատճառի կալան զնա, և ըստ արժանեաց նորա սպանեցին՝ գլխատելով ի Քրաքօվն. և եղեւ հիացումն մեծ. զի որչափ Թագաւորն առ իւր կոչէր պատգամաւ իւրով, ոչ ինչ համարէր և նախատէր զԹագաւորն. և յորժամ կամեցաւ Աստուած զչարիսն իւր հատուցանել նմա, յիմարեցոյց զնա. զոր և ոտիւքն տարաւ զգլուխն իւր առ ոտս Թագաւորին. և այսպէս չարն չարաւ կորեաւ։

1586. Թվ. ՌԼԵ. Կամենից քաղաքիս եպիսկոպոս վաղճանեցաւ Գժօնծ Մարձին Օրաթ-մօկսիլսքիյ. ութ ամ կալաւ զաթոռ եպիսկոպոսութեան, և փոխեցաւ առ Աստուած. բայց լաւ և բարի ոմն էր, հեզ և խաղաղարար և բարերար առ ազգս Հայոց. զոր Տէր Աստուած դասակից և պսակակից արասցէ ընդ ամենայն սուրբ հայրապետացն. ամէն։ Եւ ի նոյն ամին վաղճանեցաւ Սրոչինսքիյ մեծ ոմն իշխան. և ի սոցա երկոցունց Թաղմանն՝ զմեզ զՀայքն մեծարանօք կոչեցին. զոր և գնացաք չուրջառով և խաչերով. բայց մեծ հակառակութիւն արարին ընդ մեզ տգէտ և ամբարտաւան ազգն Ըռուզ. բայց ամօթալից դարձան իւրեանց սովորական տեղն, որպէս յերեկն և յեռանդ ունէին զկարգն և զսահմանքն։

1586. Թվ. ՌԼԵ. Տէր Դաւիթ կաթողիկոսն Նստաւ. և զՏէր Գրիգոր վարդապետն՝ որ էր Անկուրիոյ քաղաքին աթոռակալ, այս Ֆռանգաց աշխարհս Նուիրակ ուղարկեց, որ և եկաւ ի Կամենիցս, և Նուիրկցեց, և զժողովուրդն հաւանեցոյց քարոզիւ և աստուածային բանիւ. վասն որոյ մեծաւ պատուով ընդունեցին և մեծարեցին, և բազում սիրով զինքն ուղաւորեցին ի ճանապարհն իւր։

1586. ՌԼԵ. Ոմն մեծ իշխան որ էր Թագաւորին քանձլեր, այսինքն մոհրտար (կնքապահ), և շինեաց իւր անուան վերայ քաղաք մի, և եդ զանուն քաղաքին Զամոյսց. քանզի և ինքն այս իշխան Զամոյսքիյ կոչէր. և անդ կոչեաց զՀայ ազգն, ով ոք կամիցի երթալ և բնակել ի անդ. և էր հեռագոյն ի Լովէն իբրև 15 մղոնաւ. զոր և գնացին փոքր ի շատէ, նոքա որ էին եկք և օտարք Հայոց տանէն. և մեծ երախտիք արար նոցա, շնորհելով ամե-

նեցուն ազատութիւն և բնակութիւն. այսինքն տունս և տեղս։ Այլ և եկեղեցի եւս շինել գեղեցիկ և վայելուչ Հայ ազգին անուան վրայ, զի հաստատեցին անդ յազգաց յազգս և որդւոց որդիս։ Այսքան առ այս. և Աստուծոյ մարդասիրին փառք յաւիտեան. ամէն։

1586. Թվ. ՌԼԵ. Դեկտ. ԺԵ օրն. Հրամանաւն ամենակալին Աստուծոյ բարեպաշտ թագաւորն մեր Ստեփանոս՝ զոր Գաթօրիյ որչորջիւր, առ Աստուած փոխեցաւ. և մեծ սուգ և տարակուս եթող Նեմիչի աշխարհիս այս. քանզի էր աստուածապաշտ և ուղղափառ Աստուծոյ օրինաց. այլ և էր շնորհօքն Աստուծոյ զարդարեալ ամենայն առաքինութեամբ և կարողութեամբ. զի էր արդարադատ և իրաւարար, հեզ և իմաստուն և հանճարաշատ, և հսկայազօր, քաջասիրտ պատերազմաց և հմուտ կռւոյ. զոր քաջութիւն նորա ընդ ամենայն աշխարհն համբաւեալ էր. վասն որոյ ամենայն ոք որք հակառակ կային նմա՝ լքան ձեռքն նոցա, և ահ պատեաց, դողումն կալաւ զնոսա զամենեսեան։ Զոր և փոքր ի շատէ կայ գրեալ ի այսմ թղթիս, թէ որպէս հնազանդեցոյց զՄոսքովի իշխանն, այսինքն զքնազ։ Եւ Քրիստոսի մարդասիրին փառք՝ յաղագս այսորիկ. ամէն։

1587. Թվ. ՌԼԶ. Մարտի ԺԲ. Մեծ հրաշք եղաւ, զի ոչ ոք ի մարդկանէ լուեալ էր կամ տեսեալ. և այն օրն Լաթինացոց ազգն զիւրեանց խոտորեալ զզատիկն առնէին. և արդ երկու օր և երկու գիշեր անչափ ձիւն իջաւ հողմախառն, որ զդրունս ծածկեաց, և ոչ ոք ի մարդկանէ կարէր ի տանէ կամ ի դրանէ ի դուրսն ելանել. և այս մեծ և յայտնի ցասումն էր Աստուծոյ, վասն խոտոր զատիկ առնելոյ նոցա. զոր Աստուած վերջն ի բարին առնէ։

Դարձեալ ի սոյն ամսին մեծ գետյարուց եղեւ ի Կամինիցս. զի տասն օր քաղքին դուռն չփակեցին, վասն զի ջուրն խապախի մէջով կու ընթանայր. բազում պակասութիւն քաղաքացոց (եղեւ), զի չորս շաբաթ առաջ զատիկն առին քան զայլ քրիստոնեայս։

1588. Թվ. ՌԼԷ. Նստաւ ի թագաւորութիւն Զիկմունդ բարեպաշտ թագաւոր մեր. քանզի այս թագաւորն Զիկմունդ որդի էր Շվեցէց թագաւորին, և էր ինքն դեռ եւս կենդանի գոլով. և էր այս երկրին ծեր Զիկմոնդ թագաւորին փեսայն. վասն որոյ կամէին զի այս երկրիս ժառանգութենէ լինէր թագաւոր։ Քանզի յորժամ վախճանեցաւ քաջ և յաղթող բարեպաշտ թագաւորն Ստեփանոս՝ աստի կենաց յանանց կեանս, որպէս կայ գրեալ վերագոյն ի մէջ այսմ թխտի, մնաց աշխարհս առանց թագաւորութեան. վասն զի բարեպաշտ թագաւորն Ստեփանոս անորդի մեռաւ, և ոչ եթող ժառանգ թագաւորութեան. և վասն այս պատճառի՝ երկրի իշխանք տարակուսեցան և շուարեցան, և մեծ տարակուս ընկաւ ի մէջի նոցա. և բազում աղմուկ և խռովութիւն և արիւնհեղութիւն եղեւ. զի ոմանք իշխանաց և բազմու-

Թիւն մեծամեծաց և աշխարհն ամենայն միախոհք եղեն, և զայս Զիկմոնդ Թագաւորն կամէին առնուլ ի հօրէ իւրմէ՝ ի Թագաւորութիւն, որպէս Թէ այս երկրիս զարմէ է։ Եւ այլք իշխանաց հակառակէին և չկամէին. վասն զի հակառակողքն իւրեանց կողմանէ բերեալ էին զոմն՝ կայսրն Մաքսիմիանոս անուն, և զնա կամէին դնել Թագաւոր. զոր ունայնախորհքն վրիպեցան ի խորհրդոց իւրեանց. և աստուածային կամօքն և ընտրութեամբ Հոգւոյն Սրբոյ՝ իսկոյն միաբանեցան այս Զիկմոնդ Թագաւորիս հօրն, զի զորդին իւր տացէ ի Թագաւորութիւն. և նա ետ նոցա յօժար կամօքն. և բերեալ նստուցին ի Թագաւորութեան յաթոռն, ի Թագաւորանիստ քաղաքն ի Կրաքովն. և յետ սակաւուց օծեցին և պսակեցին, ողորմութեամբն Տեառն, և հաստատեցին շնորհիւն Աստուծոյ։ Եւ այդ միւս կողմ Մաքսիմիանոսին, որք էին Թշնամիք այս Զիկմոնդ Թագաւորիս, հակառակ կային ճշմարտութեան, և զիւրեանց չարութիւնն առնել, և ոչ կամեցան հնազանդել այս Թագաւորիս Զիկմոնդին. և սկսան զիւրեանց զչարիսն և Թշնամութիւն առնել այս Թագաւորիս, զերկիրն աւերակ և հրձիգ առնելով, և բազում պակասութիւն և վնաս գործելով այդ երկրին բնակչացն. մինչ զի ձեռն արկանելով եկեղեցեաց, կողոպտելով և Թալանելով սպասք և զանօթք եկեղեցոյ. այլ և բազում անմեղ և անպարտ արանց հեղլով զարիւն։ Իսկ բարեգութ և մարդասէր Աստուած՝ իւր ամենակարող զօրութեամբ զօրացոյց այս Թագաւորիս կողմն, և ետուր նոցա քաջութիւն։ Զոր գնացեալ մեծ զօրագլուխն որ կոչի Զամոյսքի, քանցլէր այս Թագաւորիս, քաջ և յաղթող հմուտ պատերազմի, զօրօքն իւրովք, և պատերազմեցան ընդ զօրացն Մաքսիմիանոսի, և Աստուծոյ կարողութեամբ իսկոյն յաղթեաց նոցա և ի սպառ կոտորեաց զնոսա, և զինքն զՄաքսիմիանոս կենդանի ձերբակալ արար, և զայնոսիկ որք ընդ նմա միաբանեալ էին այս երկրիս իշխանքն, և էին ամենայն ոք մեծամեծք և առաջակայք, զամենեսեան կենդանի կալաւ, և երկաթի կապանօք էած առ ոտս Թագաւորի Զիկմոնդին, ամօթալից երեսօք և կորացեալ գլխով։ Եւ այս գործն Աստուծոյ սքանչելարարի է. զոր նմա փառք և գոհութիւն ամենայնի, որ տայ քաջայաղթութիւն հաւատարիմ ծառայից իւրոց ընդդէմ Թշնամեաց իւրոց.

1589. Հայոց Թվ. ՌԼԷ. Օգոստոսի. ի Կամինից քաղաք մեծ մահ եղաւ, և բազում հոգիք մեռան, Հայք և Ֆռանկ և Ըռուզք. զոր ոչ ժամանէին ի հող հասուցանել։ Այս ամենայն եկն ի վերայ մեր վասն ծովացեալ մեղաց մերոց. հազար փառք և սպասի անմահ երկնաւոր Թագաւորին, յաւիտեանս. ամէն։

1589. Թվ. ՌԼԸ. Օգոստ. ամսոյ. Բազում և անթիւ Թաթար եկաւ, և բազում պակասութիւն արաւ ի գաւառն Բոտոլիային, և եհաս մինչև Իլովի սահմանք և ի Լուցքային, և անթիւ գերի տարաւ, ոչ Թէ միայն զռամիկ և զերցք, այլ և զիշխանս և զմեծամեծս՝ կնաւ իւրեանց, թող Թէ զոչխարս և զարջառս և զանասունս. և բազում հրձիգ արարեն. զոր և զՍեդրուան

տղանին զիշխան ոմն, որ էր այր քաջ և հզօր պատերազմող. և եկին անվնաս և գնացին զիւրեանց տեղիս։

1589. Հայոց Թվ. ՌԼԸ. Օգոստոսի. Եկաւ ան տաճիկ ազգն, և Սնեադին քաղաքս հրկիզ արաւ, և բազում վնաս գործեց, և անթիւ մալ և խաղնա տարաւ. զմարդիկ ի սուր մաշեց և զայլսն գերի տարաւ, վասն զի եարմարքի (տօնավաճառ) ժամ էր։ Բայց այս եղեւ ի թուլութենէ և անհոգութենէ իշխանաց մերոց։

1591. Թվ. ՌԼԹ. Օգոստոսի. Ի քաղաքս Կամինից նոր պարոն եկաւ, որ կոչի Եան Բօղօցքիյ. և զմիւս պարոնն որ կոչի Նիքօլայ Գրիաքիյ՝ կենդանի գոլով եհան ի բերդէն, և փոխանակ նորա ինքն նստաւ։

1590. Հայոց Թվ. ՌԼԹ. Մեծ երաշտ եղաւ, որ բնաւ անձրեւ չեկաւ մինչեւ ի բուն ամառն. և սերմանիքն և բոյսքն չորացան. վասն այն պատճառին մեծ սով և թանկութիւն եղաւ. զի ցորենոյ կապիճ տասն մանրի (ոսկի) եղաւ, և սուլուն՝ 8 մանրի, և տուկուն՝ 10 մանրի, և կորեկն՝ 8 մանրի, և ուվուսն՝ 4 մանրի. զոր բնաւ տեսեալ չէր և ոչ լուեալ։ Բայց այս ամենայն եղեւ վասն չարաչար օրինազանցութեանց և դառն մեղաց մերոց. զոր Տէր Աստուած աւարտն ի բարին փոխէ. ամէն։

Հայոց Թվ. ՌԼԹ. Օգոստոսի. Երկիր շարժեցաւ, զոր ընդ ամենայն տեղիս ծանուցեալ եղեւ. բայց անվնաս եղաւ նախախնամութեամբն Աստուծոյ։

1591. Հայոց Թվ. ՌԽ. յուլիսի Զ. Մեծ հիանալի և զարմանալի մանաւանդ Աստուծոյ սքանչելագործութիւն կատարեցաւ. զի այս սովոյս ժամանակն ի միում աւուր յառաւօտու՝ իննական սոմ Միխնոյ երեսփոխանն սլու ծախեց, և մինչեւ ի ճաշք չորսական սոմ եղաւ ի նոյն օրն։ փառք Աստուծոյ մարդասիրին. ամէն։

1591. Հայոց Թվ. ՌԽ. Վարդավառին պահոցն երկուշաբթի Ծերչքօ էլչի ի Թագաւորէն գնաց ի խոնդքարն։

1591–2. Հայոց Թվ. ՌԽ. Թագաւորն Զիկմունդ Երրորդ վասն իրք խռովութեան՝ զոր էր բարկացեալ ան Թուրքի խոնտքարն ի վերայ այս աշխարհին և կամէր պատերազմել ընդ այս Թագաւորիս. զոր և զհաշտելութիւն զոր ունէին ի նախնեաց՝ նա և զերդումն կամէր աւերել. բայց Թագաւորն մեր Զիկմունդ հաստատուն եկաց ի վերայ իւրոյ երդմանն, և առաքեաց առ նա պատգամաւորս, զանն Ծերչքօ անուն և Զամոյսքիյ, որ գնացին մեծամեծ պարգեւօք, և հազիւ կարացին զիջուցանել զբարկութիւն նորա... և հաստատեցին զխաղաղութիւն ըստ առաջնոյն, զոր ունէին ի նախնեաց իւրեանց որդւոց որդիս յաւիտենական։ Բայց ան զգուշացոյց, զի մի՛ զերկիրն իւր Խաղախն բնաւ չաւիրէ և ոչ վնաս գործէ. բայց եթէ աւերեսցէ և վնասեսցէ ինչ՝ դարձեալ խաղաղութիւնն ի խռովութիւն փոխեսցի և աւերեսցի։ Այսքան և առ այս։

1591–2. Թվ. ՌԽ. Օլախի պարոն Բեդրան իւր կամաւ եթող զպարոնութիւն, և ելաւ յերկրէն և գնաց. յայտնի ունելով ընդ իւր զկին և զորդիքն և զբոլորի մարդիքն որչափ ունէր, զօրականն՝ զՄաճարք և զՕլախք, իբրև 3000. նա և ստացուածս իւր, զոսկին, զարծաթ, զհանդերձն, զչորքոտանիք, զամէնն ընդ իւր հանելով. և էանց այս թագաւորիս երկրաւ և գնաց Ալամանաց յերկիր, առ կայսրն քրիստոնէից. և անդ եկաց։ Զոր ոմանք ասեն, թէ երկու քաղաք գնեալ էր վասն իւր, զի բնակեսցէ անդ. բայց մեր իշխանքն բազում նեղութիւնք յարուցին ի վերայ նորա, ուժգին առնելով և յափշտակելով ի ձեռաց նորա զբարիքն իւր. և նա անմռունչ հեծութեամբ տալով նոցա, և ազատեցաւ ի ձեռաց նոցա. և ելաւ գնաց։

1591–2. Թվ. ՌԽ. Դաթարի խանն ինքն և եղբայրքն իւր բազում զօրօք գնաց ի վերայ Մոսկովի երկրին. և Մոսքովի գնեազն իւր հեծելով պատերազմեցաւ ընդ անօրէնսն և կոտորեաց զնոսա մինչև ի սպառ. և էին թուով իբրև 100,000. եւս բազումս կենդանի կալաւ զմրզաներ, զսուլթաններ և այլ բազում ռամիկ մարդիկ, որչափ էին՝ զամենեսեան ի ջուր ընկղմեց, և ոչ եթող կենդանի և ոչ զոք։ Որպէս այս երկրիս իշխանքն՝ զոր ոչ ունին հնարք կամ քաջութիւն կոտորել զնոսա կամ ըմբռնել կենդանի. և թէպէտ զոք ըմբռնեն ի յանօրինաց, դարձեալ առ նոսա ընդդէմ սպիտակի (դրամ) փոխելով դարձուցանեն. իսկ նոքա կրկին անգամ գալով զերկիր նոցա հրձիգ առնելով և զինքեանս գերելով, զիշխանսն և զկանայս և զորդիս և զամենայն բարութիւն նոցա հանելով յերկրէն, ընդ միոյն հազարապատիկ շահելով, և զնոսա ծաղր առնելով։

1592–3. Հայոց Թվ. ՌԽԱ. Բարեպաշտ թագաւորն մեր Զիկմունդ ողորմութեամբն Աստուծոյ կարգուեցաւ, և եբեր իւր թագուհի ի տանէ կայսերաց, որ կոչի Մաքսիմիլիանոս կայսր. զոր գնացեալ մեծամեծ իշխանք և եպիսկոպոսունք, փառօք և պատուով և մեծաւ փարթամութեամբ բերեալ պսակեցին թագուհի, և ի միում հետէ զհարսանիքն, արարին ըստ օրինի թագաւորաց։ Բայց ոմանք իշխանացն և մեծամեծաց հակառակ կացին, և ոչ կամէին ընդունել զայս, ասելով, եթէ ուխտ և դաշինս կայր ի միջի մերում, որ այդ տանէն այս աշխարհս թագուհի չի ածէաք, և դու, թագաւոր, զմեզ զամենեսեան արհամարհեցիր և անփոյթ արարեր, և զքո կամդ կատարեցիր. այս բանս մեզ ոչ է հաճոյ։ Եւ այլ բազում ինչ խօսեցան անկարգ և անօգուտ յերեսս թագաւորին։

1592. Թվ. ՌԽԱ. Սդարոսդան Գրիգէյ առ Աստուած փոխեցաւ. Աստուած ողորմի իւր հոգուն։

1592. Թվ. ՌԽԱ. Ոմն Բեթրա անուն Օլախի պարոն անուանեցաւ. և էր որդի Օլէքսանտր պարոնին. և բազում ժամանակ յերկրէ յերկիր շրջեցաւ առ թագաւորօք. զոր յետոյ եկեալ ի Կամինից, և նստաւ փոքր մի

ժամանակ, և նախ քան զնա այլ ուրիշ պարոն նստեալ կայր. Ահարոն անուն. և բազում չարիս և նեղութիւնս յարոյց ի վերայ Օլախաց երկրի, մինչ որ համբաւն եհաս խոնտքարին. և խոնտքարն հրամանք արար՝ զի փութով գնասցէ առ նա, և նա գնաց։ Եւ մինչ նա դարձաւ, եկին Օլախի մեծամեծք և երդուան այս Բեթրային, և առեալ տարան զնա և նստուցին ի պարոնութիւն, և հնազանդեցան նմա. ընդ որս էր և աւազն ընդ նմա. և փոքր մի ժամանակ նստան ի պարոնութիւն։ Եւ ահա այդ Ահարոն պարոն դարձեալ եկն ի պարոնութիւն, հրամանաւ խոնտքարին. և ունէր ընդ իւր զԹուրքի պարոնն՝ որ կոչի Աղայ, զօրովք իւրովք. և եկեալ ի Ասն կենդանի ձերբակալ արար զԲեթր պարոնն, և զԱւազն՝ որ էր հայ, Մաթէյի որդի, և խոկոյն հատին զքիթն, և տարաւ ի խոնտքարն. և զաւազն եդին ի բանտն երկաթի կապանօք. և նա փախեաւ ի բանտէն և եկաւ. և փոխանակ նորա կալան զերկու հայ կտրիճ, զԳրիգորն Մարքոյին և զՍիմոն Ջոխնային, և եդին ի խաւարային բանտն։

1593. **Թվ. ՌԽԲ.** Փետրուարի ամսոյ ի. վաղճանեցաւ Տէր Միքայէլ որդիս. և իրիցկինն իւր և որդին Ջատիկն, ի միում ամսեանն, կամօքն Աստուծոյ. զոր նմա փառք և գոհութիւն յաղագս ամենայնի այսորիկ. ամէն։

1595. **Թվ. ՌԽԴ.** Ընդ աւուրսն ընդ այնոսիկ՝ որ էր մարտին 8, մեծ գետյարոյց եղեւ ի Կամենից քաղաք, և մեծ պակաս արաւ քաղքին, զդրունսն կոտրելով զերկուսին. և մեծ պակասութիւն հասոյց ամենայն որպիսութեանց, թէ շինուածոց և թէ կալերաց և թէ անասնոց և ամենայն ընչից։ Զոր այս ամենայն եղեւ վասն ծովացեալ մեղաց մերոց. զոր վասն ամենայնի այսորիկ փառք և գոհութիւն Աստուծոյ. ամէն։

Եւ ի սոյն ամի Խազախներն ժողովեցան մի վայր, զոր ոմանք ասացին եթէ էին իբրեւ 20,000, և մտան պատրաստութեամբ զինուք յերկիրն Օլախաց, և բազում վնաս գործեցին ուր և հասին. մինչ զՕլախաց պարոն զԱհարոն երկրէն փախուցին, և զօրքն կոտորեցին, զայլսն այրեցին, և զամենայն ինչ աւարեցին և թալանեցին. մինչ զի զՀայոց եկեղեցւոյ զդուռն կոտորեցին, և մտան ի ներս, և բազում բարութիւն առին, ոսկի, արծաթ, հանդերձ մեծագինս, զոր էին պահեալ զեկեղեցի Հայոց ազգ։ Եւ ինքեանք ելին և անցան այս կողմ. բազում վնաս արարին Կամինից քաղքին բոլորի գեղուն, անասնոյ, ոչխարի, արջառոյ և հացոյ. և յետ սակաւ աւուրց դարձեալ անցին Օլախաց երկիր. և գնացին և հաշտեցան և երդուան միմեանց, և միաբանեցան հետ պարոնին. և մտան Թուրք աշխարհ վասն պատերազմելոյ ի հետ Տաճկաց։ Զոր երկնաւոր Աստուած տացէ նոցա կարողութիւն, և զօրացուսցէ զնոսա.... զի փոքր մի ժամանակ խաղաղութիւն գտցէ ազգն քրիստոնէից։ Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն։ Եւ է գլխաւոր սոցա միոյն անուն Լօպօտայ և միւսոյն Նալիվայքո։

1595–6. Թվ. ՌԽԴ. Թուրքի խոնտքարն սուլթան Մուրատ մեռաւ. և փոխանակ նորա նստաւ ի թագաւորութիւն որդին իւր սուլթան Մահմատ. 21 ամ թագաւորեաց Մուրատն։

1595–6. Թվ. ՌԽԴ. Ջօլախի պարոն զՀարոն՝ հանին ի պարոնութենէ, և կապանօք տարան ի Մաճառք։

1595. Թվ. ՌԽԴ. Յունիսի Ա. Բարեպաշտ թագաւորին մերոյ Զիկմունդին որդի ծնաւ, և մեծ ուրախութիւն եղեւ այս Իլախաց աշխարհն, վասն որոյ մեծ ուրախութիւն և ցնծութիւն և անբաւ խնդութիւն կատարեցին։

1595–6. Թվ. ՌԻԴ. Կամենից քաղաքս նոր եպիսկոպոս եկաւ, անուն՝ Գժօնց Բուէլ Վոլուցքիյ։

1595–6. Թվ. ՌԽԴ. Ի յայսմ ամի Խազախ մտան Թուրքի յաշխարհ. մեծ և բազում վնաս գործեցին. զմարդիկն ի սուր մաշեցին, զերկրի բարութիւն՝ զարջառ և զոչխար և զամենայն ինչ աւար առին. և էր գլխաւորք նոցա Լօպօտայ և Նալիվայքօ. զոր յետոյ Նալիվայքօ ի Մաճառք փախաւ Խազախներով իւրով։

1595–6. Թվ. ՌԽԴ. Ի յայսմ ամի թագաւորն մեր Զիկմունդ հեծել ղրկեց ոչ բազում ինչ՝ այլ իբրեւ հինգ վեց հազար, և էր գլխաւոր զօրաց քանցլէր Բան Զամոյսքի. զոր եկեալ մտան ի Օլախաց երկիր, և հասին մինչեւ ի Ան. և էր անդ ոմն զօրաւոր Րըզվան անուն իշխան երկրին Օլախաց, փոխանակ Հարոն պարոնին. իբրեւ լուաւ զգալուստն քանցլէրին և զօրաց իւրոց, վաղվաղակի փախստական գնաց ի Մաճառք. և քանցլէրն էառ զերկիրն ընդ ձեռամբ իւրով, և նստաւ երեք ամիս ի Ցոցօրան (գիւղ ի վերայ Բրութ գետոյ). և կացոյց զոմն Երեմիայ անուն ի պարոնութիւն երկրին վերայ. ուր և հնազանդեցան նմա երկիրն ամենայն։ Եւ յետ սակաւ աւուրց եկն Թաթրի խանն բազում զօրօք, զոր ոմանք ասէին եթէ 80,000, հրամանաւ պիղծ և անհաւատ ? քարին, և կամէր պատերազմել ընդ նոսա։ Իսկ սոքա, այսինքն է Քանցլէր և ամենայն զօրքն իւր զինեցան և քաջացան, պատրաստեցան աստուածային օգնականութեամբ. մարտեան ընդ նոսա և կոտորեցին զնոսա ոչ բազում ինչ, այլ իբրեւ չորս հինգ հազար։ Իբրեւ ետես պիղծ և անհաւատ Թաթրի խանն որ յաղթեցաւ, յետս չոգաւ. և սկսաւ հրեշտակութիւն առաքել զի հաշտեսցի ընդ նմա. զոր և քանցլէրն հաւանեալ՝ հրամայեաց Թաթրի խանին զի եկեսցէ առ նա, և դէմ յանդիման խօսեսցի ընդ նմա. զոր եկեալ մեծաւ երկիւղիւ և դողութեամբ՝ խաղաղութիւն հաստատեց, և երդուաւ. ուխտ և դաշինք եդին ընդ միմեանս, զի մի այս Իլախի երկիր սուր չքաշէ և ոչ աւիրէ, որպէս յառաջագոյն հանապազ եկեալ աւար առնէին և գերի վարէին, հրձիգ առնէին։ Յետ այսորիկ դարձաւ և գնաց. և քանցլէր եկն յաշխարհն իւր։ Բայց է այս մեծ և զարմանալի սքան-

չեղագործութիւն Աստուծոյ Փրկչին մերոյ, որ այնչափ բազում զօրաց երկեաւ, և ահարեկ եղեալ ի սակաւ զօրաց, զոր վերագոյն գրեալ կայ, և միջարեկ եղեալ նկուն դարձաւ և կորեաւ։ Զոր փառք անմահ Թագաւորին, որ զբազումս նուազեցուցանէ և զնուաղն բազմացուցանէ։ Այսքան առ այս։

Եւ յետ ոչ բազում ինչ աւուր իբրև լուաւ Բըզվան զքանցլերին դառնալն, եկն զօրուք ի վերայ Օլախի պարոնին Երեմիային, զի կալցէ զնա, զոր Թողեալ էր քանցլէր անդ, և զիւր զՕլախի հեծելն, ընդ որս էր սղարոսդան կամինցոյ Բոդոցկին, զոր էր գլուխ զօրաց, և հարան ընդ միմեանս. վաղվաղակի կոտորեցին զԲըզվանին զզօրքն. և զինքն կենդանի կալան, և բերին Սեչով, և խազուխ զարկին։ Զոր Տէրն մեր վրէժխնդիր եղեւ նմա, վասն անմեղ և անպարտ արեանց՝ զոր հեղեալ էր այդ պիղծն։ Ընդ նմա կալան զմեծ իշխանն իւր զԳալըհօր, և զնա կամէին խազուխ զարնել, զոր բազում գանձք խոստացաւ նոցա՝ զի մի սպանցեն զնա. զոր ոմանք ասէին երկու բոլպոչաք (տակառիկ) կարմիր ֆլորի։

1596–7. Թվ. ՌԽԵ. Ի յայսմ ամի ոմն Նալիվայքո՝ զոր կայ գրեալ ի մէջ Թղթոյս այս, և ընկերն նորա Լօպօտոյ, ժողովեցին բազում խազախներս ընդ ձեռամբ իւրեանց, զոր ոմանք ասէին 20,000. և էր այս Նալիվայքս աղքատ տանէ այս քաղքիս, և եղեւ գլուխ ի վերայ Խազախներաց. բայց էր ինքն հմուտ կռվոյ և քաջ պատերազմող. և սկսաւ բազում չարիս գործել և վնաս տանել ի մէջ այս երկրիս. ուր և հասանէր, ի քաղաք և ի գեօղս, զամենեսեան առ հասարակ կոտորէր, զարս և զկանայս, զծերս և զտղայս, զմեծամեծս և զիշխանս, և զտունս նոցա և զամենայն բարութիւնս աւար հարկանելով։ Մինչ զի եհաս բանս այս առ Թագաւորն. և իբրև լուաւ Թագաւորն՝ տրտմեցաւ յոյժ. և հրամայեաց մեծամեծաց և զօրապետաց իւրոց, զի փութով երթիցեն զօրաք իւրեանց ի վերայ այդ չարագործ Նալիվայքոին և Լօպօպային, և ջնջեսցեն զնոսա յերկրէ։ Եւ նոքա եկեալ ի սպառ կոտորեցին զնոսա, և զԼօպօտան գլխատեցին իւր Խազախներն։ Իբրեւ ետես Նալիվայքոն եթէ ոչ ինչ օգնէ, չիւարեցաւ, և ինքնին գնաց առ զօրապետն Թագաւորին. և նա նոյն ժամ հրամայեաց մերկացուցանել ի մեծագին հանդերձից զորս զգեցեալն էր, և երկաթի կապանօք տարեալ տարան առ Թագաւորն. և այսպէս բարձաւ չարն ի միջոյ, և ամենեքեան ազատեցան ի ձեռաց նոցա։

1597–8. Թվին ՌԽԶ. Եկաւ Նեմիչի եպիսկոպոսն Գժօնց Վօլուցքիյ ի Ս. Նիկոլայ եկեղեցոյ, ի հետ սղարոսդային Բան Բոցոցքիյին, և այլ քաղաքիս բազում իշխանք և ամբոխ բազում. մինչ զի լցաւ եկեղեցին բազմութեամբ. և սկսան տրամաբանութիւն առնել և հարցաքննութիւն վասն օրինաց և եկեղեցական կարգաց և սահմանաց։ Եւ ես մեղաւորս Յովաննէս աւագերեցս, որ եմ տրուպ ի կարգաւորացս և յետինս ի քահանայիցս, ըստ կարգի և ըստ պատշաճի՝ վասն ամենայնի պատասխանի ետու նոցա, մինչ զի հաւանեցան և ետուն փառս Աստուծոյն։

1597–8. Թվ. ՌԽԶ. Թագաւորն Զիկմունդ էլչի ղրկեց ի Թուրքի խոնտքարն՝ զոմն իշխան, որ կոչի Կուլաքիյ, որ էր Պարին (Bar ի Մայելիւ) աղարոսղայ. զոր և գնաց մեծ փարթամութեամբ. և ընդ նմա բազում իշխանաց որդիք վաճառականք, զոր ոմանք ասէին եթէ 80 արապայ էր, զամէն կարմիր չուխայով ծածկած. և անցին գնացին քաղքիս դոլով ? և մտան ի Օլախաց երկիր, և գնացին ի Սեչով, ուր Օլախաց պարոն էր Երեմիայն. Եւ իբրև հանդիպեցաւ՝ մեծաւ սիրով ընկալաւ զնա և յայժ պատուեաց զնա մեծամեծ պարգևօք և տրօք. և ոչ եթող գնալ մինչև շաբաթ մի. զոր ուրախացեալք ի միասին ուտելով և ըմպելով, և ազգի ազգի երգովք և թըմբկովք և նուագարանօք. և ապա արձակեաց. որ և գնաց։ Եւ հրամայեաց պարոն Երեմիայ որ ամէն օր հինգական եալօվիցայ և երեսնական ոչխար տան, մինչև ի Տունան (Դանուբ)։ Այսքան է առ այս։

1598–9. Թվ. ՌԽԷ. Թագաւորին Զիկմունդին Թագուհին վաղճանեցաւ ի վերայ տղին ծնանելն. եօթն ամ եկաց ի հետ Թագաւորին իւրոյ։ Աստուած ողորմի իւր հոգուն։

1598–9. Թվ. ՌԽԷ. Մեծ գետյարուց եղաւ և բազում վնաս արաւ և շատ պակասութիւն. զՋրաղաչքներն աւերեց, զի հաց անկամ ոչ գտանէին և վաճառականք. նա և զքաղքին դրունան կոտորեց և զմարդիկ ընկղմեց. զոր ոմանք ասացին, եթէ բազում անկամ մեծ գետյարուցներ տեսել եմք, բայց այսպէս մեծ և անհուն չէաք տեսեալ։ Բայց այս ամենայն եղեւ վասն մեղաց մերոց. զի ժամանակս դառնացեալ է, և մարդիկն դժարացեալ են և զԱստուած մոռացել են, և յագահութիւն անկել են, և արծաթսիրութիւնք զիրեանք պատել են. և յամենայն ինչ մէկ քին (գին) հինգ վեց քին եղել է, եթէ հաց և եթէ միս, եթէ ըմպելի և ամենայն ցեղ կերակուր. մէկ չարեկ միս՝ եթէ եզի և եթէ կովու՝ չորս մանրի եղել է, զոր յառաջ 20 սպիտակ կ'առնուաք ու թանկ կու հաշուէաք. և մէկ ոչխարի չարէկ՝ 15 սպիտակ եղել է, զոր յառաջ 3 սպիտակ էր։ Բայց այս եղեւ անիրաւ մարդկանէ, որ զԱստուած մոռացել են և զհոգիս իւրեանց արհամարհել են, և զԱստուծոյ տուրքն ոչ ինչ համարել են։

1598–9. Թվ. ՌԽԷ. Եկաւ Տէր Մելքիսեդ կաթողիկոս ի Նուիրակութիւն. և ունէր ընդ իւր երեք եպիսկոպոսք և մէկ աբեղա. և կացին ի Կամենից ոչինչ բազում ժամանակ, և գնացին Իլով. և բազում ինչ ժողովեցին, և ելին գնացին։ Այսքան առ այս։

1600–1. Թվ. ՌԽԹ. Մինդանի պարոն որ կոչի Միհալ, ի հետ Օլախի պարոնին Երեմիային թշնամիք եղեն, և զօրաք բազմաք եկն ի վերայ Օլախի պարոնին. և զերկիրն ընդ ձեռամբ իւրով էառ, և բազում վնաս արար, և զՕլախի պարոն փախստական արար. և նա եկեալ Իլախի պարոնաց, այսինքն Վոյվոտային՝ որ կոչի Կուլաքիյ, որ նմա օգնական լինի և կռիւ տայ

ի հետ Միհալին։ Եւ յաղթահարեալ Միհալ զզօրքն Իլախի, և նոքա ընկան փախստական. և նա կոտորելով եհաս ի Խոտին, ի հետ գնելով. և նոքա ընկան ի գետն որ կոչի Տուրլու, և բազումք ի նոցանէ ընկղմեցան. մինչև հազիւ փախեաւ զօրագլուխ նոցա Կուլաքիյ, և ինքն Միհալ դարձաւ և գնաց ի Սեչովն, և նստաւ ի պարոնութիւն։ Եւ Երեմիա Օլախի պարոն գնաց առ քանցլէրն, որ էր զօրավար երկրիս այս, և աղաչեաց զինքն՝ զի երթիցէ զօրօք իւրովք ի վերայ այդ Միհալին, և հալածեսցէ զինքն յերկրէն։ Եւ յորժամ եմուտ զօրօք իւրովք քանցլէր յերկիրն Օլախաց, իբրև լուաւ Միհալ զգալուստ քանցլէրին, վաղվաղակի եթող զերկիրն և փախեաւ. և քանցլէրն չոգաւ զկնի նորա. և նա ելաւ ի վերայ բլրոյ միոյ բարձու՝ զոր անհնար էր ելանել ի վերայ նորա, և անդէն փախ էառ ի Մաճարք։ Եւ քանցլէրն դարձաւ ի Մինդանի երկիր, և էառ ընդ ձեռամբ իւրով, և նստոյց զՍիմէոն եղբայրն Երեմիայի փոխանակ Միհալի. նոյնպէս և զԵրեմիա նստոյց իւր պարոնութիւն ի Սեչավն. և ինքն քանցլէր դարձաւ և եկն ի Կամենից, և գնաց առ թագաւորն։ Եւ Միհալն կորեաւ անհետ, և կորոյս զամենայն զօրս իւր ընդ ինքեան՝ ունայնութեամբ։

1602. Թվ. ՌԾԱ. Փետրվարի ԻԵ, օրն հինգշաբթի։ Մեծ զարմանք եղաւ. զի երկինք որոտաց, զոր բնաւ ոչ էաք տեսեալ և ոչ լուեալ. Աստուած զաւարտն ի բարին առնէ և բառնայ զցասումն և զպատուհասն իւրական արարածոց, նա և ի մէնջ մեղաւորացս. ամէն։

1602. Թվ. ՌԾԱ. Աւգոստոս ամսոյ ԺԶ, օրն երկուշաբթի։ Փառք Աստուծոյ Հօր անմահի և Որդոյն Միածնի և Ս. Հոգոյն Աստուծոյ ճշմարտի. այժմ և յաւէտ յաւիտեանս. ամէն։ Եւ արդ պարտ և արժան է մեզ զայսպիսի ամենայն ինչ գրով աւանդել, զի առ յապա եկեալքն ընթեռնլով փառս տացեն Աստուծոյ։ Ո՜հ, ո՜հ, ո՜հ. եթէ որպէս հրամանն Աստուծոյ եկն ի վերայ մեր, վասն ծովացեալ մեղաց մերոց. այս ինքն է զոր եղեւ այսմ ամի Կամենից ողորմելի քաղաքիս մեծ և անողորմ ցասումն պատուհասի հրոյ, որ բովանդակ և ամենայն քաղաքն հրկէզ այրեցաւ ի փոքր և ի սուղ ժամանակի. ամենայն ինչ մարդկային ազգի այրեցաւ, եթէ տներ, եթէ խանութներ. ոչ թէ միայն փայտեղէն չէնք՝ այլ և քարուկիր շինուածք, եթէ խանութներ, եթէ տներ մեծագոյնք և եթէ պլերներ (կրպակ, խանութ), ամենայն բարութեամբ, որչափ ինչ ոք ունէր՝ բովանդակ այրեցաւ։ Եւ քանզի մեծ և ահագին էր ցասումս այս, զի բնաւ ոչ կարացին դէմ կալով շիջուցանել զհուրն, քանզի իբրև կայծակունս հրոյ բորբոքելով այրէր և տաշորէր զքարինս և զփայտս. այլ և մարդիկք փոքր ի շատէ այրեցան. այլ և մարդասիրութիւն Աստուծոյ՝ որ գիշեր չէր բանս այս, այլ երեկոյին ժամուն էր, մինչև նսեմացաւ՝ ամենայն քաղաքն փոշի և մոխիր դարձաւ։ Այլ եւս այս մեծ պատուհաս էր, զի եկեղեցիք Հայոց այրեցան, և զանգակներ հալեցան ի մէջ պուրճերուն. մեծ և ողորմելի կսկիծ եղաւ վասն հրաշալի և

փառաւոր զանկակներուն. Նոյնպէս և Իլախ ազգի և Ըռուզ ազգի եկեղեցիք զանկակներով այրեցան. ո՜հ, թէ մեծ և գեղեցիկ զանկակներ այրեցան, զի գին չունէին։ Եւ այս եղեւ վասն չարաչար և ազգի ազգի անօրէնութեանս մերում. զի անօրէնութեանք մեր առաւել բարձրացան քան զգլուխ մեր, ըստ Դաւթայ. զի ոչ գոյ ի միջի մերում սէր և միաբանութիւն և ոչ խոնարհութիւն, ոչ ի մէջ եկեղեցականաց և ոչ ի մէջ աշխարհականաց՝ բարեգործութիւն ոչ գտանի. այլ ամբարտաւանութիւն և հպարտութիւն և ոխակալութիւն, ագահութիւն և նախանձաբեկութիւն. վասն որոյ մարդասէրն Աստուած պատուհասեաց զմեզ՝ իբրեւ զՍոդոմ և Գոմոր։ Զոր նմա փառք ի յաւիտեանսն յաղագս այսորիկ. ամէն։

1603–2. Թվ. ՌԾԱ. Վաղճանեցաւ Տէր Աբրահամ քահանայն. Աստուած ողորմի հոգուն։

1603–4. Թվ. ՌԾԲ. Վաղճանեցաւ Եանի կուլաֆն, կենակից պարոն Միխնոյ երեսփոխանին. Աստուած ողորմի իւր հոգուն։

1603–4. Թվ. ՌԾԲ. Վաղճանեցաւ Եագուպ Պէնէշ երեսփոխան. Աստուած ողորմի իւր հոգուն։

1604. Թվ. ՌԾԳ. մայիս ԻԹ, օրն երեքշաբթի։ — Տէր Յովանէս քահանայն որդի Սիմոնի յանկարծամահ եղաւ. Աստուած ողորմի իւր հոգուն։

1604–5. Թվ. ՌԾԳ. Եան Հարպուրթ՝ որ էր վոյվոտա Բուքիյ, առ Աստուած փոխեցաւ. Աստուած ողորմի իւր հոգուն։

1604–5. Թվ. ՌԾԳ. Վոյվոտայ Վօլընցքիյ Գնեազ՝ Օլէքսանդր քնեազ Վասիլկյին որդին մեռաւ։

1604–5. Թվ. ՌԾԳ. Թուրքի խոնտիքարն սուլթան Մահմատ մեռաւ, ինն ամ թագաւորեաց և ապա և փոխանակ նորա նստաւ որդին իւր սուլթան Ահմատ։

1604–5. Թվ. ՌԾԳ. Սեպտեմբերի Ա. Զոռն մեծ իշխան Սդանիսլաւսքիյ անուն՝ խարախչիք սպանեցին, և գծառայ մի ընդ նմին, և ինքեանք փախեան և ելին յերկրէն։

1604–5. Թվին ՌԾԳ. Վաղճանեցաւ Վարդան երեցփոխան. Աստուած ողորմի իւր հոգուն։

1605–6. Թվ. ՌԾԴ. Եան Սդրուս անուն Իւրեյ՝ առ Աստուած փոխեցաւ. Աստուած ողորմի իւր հոգուն։

1605–6. Թվ. ՌԾԴ. Վաղճանեցաւ Քանցլէր Եան Եան Զամոյսքիյ, որ էր երկրորդ թագաւորին, և էր քաջ և արի պատերազմող և հմուտ կավոյ,

և ամենայն իմաստութեամբ զարդարեալ. զորոյ քաջութիւն նորա գրեալ կայ այամ Թղթին մէջ. զոր եթէ կամիք զնորա զքաջայաղթութիւն ընթեռնլով իմանալ, եթէ որչափ հնարս և քաջութիւն արարեալ է այամ աշխարհիս՝ որ կոչի Իլեախաց երկիր, զամենայն ինչ գրով Թաղեր եմք ի մէջ այս գրքիս. եթէ ի Մոսքով եթէ ի Ցոցորան, եթէ ի Պչին, որ զկայսրն Մաքսիմիլեան որպէս ձերբակալ արար և էած առ Թագաւորն, նոյնպէս և զիշխանս մեծամեծս, երկաթի կապանօք էած առ ոտս Թագաւորին, և զամենայն զօրս և զհեծեալս մինչ ի սպառ կոտորեց, ամենակալին Աստուծոյ կարողութեամբ. զոր նմա փառք և գոհութիւն, որ տայ քաջութիւն և յաղթութիւն իւր հաւատարիմ ծառայից. Նոյնպէս և զԴաղար, որք են Իամայելացիք՝ և զնոսա կոտորէր համապազ և յաղթահարէր և հալածէր, Աստուծոյ կարողութեամբ. զոր նմա փառք և գոհութիւն ի յամենայնի, յաւիտեանս ամէն։ Եւ եթող ժառանկ զորդին իւր զԹոմաս անուն, տղայ գոլով, բայց ունի Աստուծոյ շնորհօք զհայրական իւրոյ նմանութիւն ի յամենայնի. զոր և Տէր Աստուած պահեսցէ զնա յամենայն փորձանաց երեւելի և յաներեւոյթ Թշնամոյն. ամէն, ամէն, և եղիցի։ Եւ էր ինքն ողորմած հոգին քանցլէր իբրեւ ամաց եօթանասնից յորժամ վաղճանեցաւ։

1606. Թվ. ՌԾԴ. Դեկտեմբերի ամսոյ. Եղեւ շարժ ի Կամենիցս և շուրջ զգաւառաւ, մինչ զի ի Մահարքն գեղան՝ երկիր վայր անցաւ, վասն մեղաց մերոց. Աստուած վերջն բարի առնէ, ի մեղաց Թողութիւն պարգեւէ, և զմեզ փրկէ այնպիսի պատուհասէ։

1605–6. Թվ. ՌԾԴ. Թագաւորն Զիկմունդ երկուսում կին էառ զերկու քոյրուն (քորս), զմին քոյրուն արել էր և մեռաւ, այժմ զմիւս քոյրուն յէառ Թողութեամբ Բարիժի (Պապին)[1]։

1605–6. Թվ. ՌԾԴ. — Դաղարն եկաւ այս յաշխարհս ի միում ամին եօթն անկամ. այս եղեւ յետ վաղճանելոյն քանցլէրին. և շատ գերի առաւ զմեծամեծս իշխանսն, կանամբ և զաւակօք։

1605-6. Թվ. ՌԾԴ. — Ոմն Տիմիդր յայտնեցաւ տղայ գոլով ի Մոսքովի երկիր, և էր ինքն Մոսքովի ցարին որդին քնեազ Իվանին, և յորժամ մեռաւ քնեազ Իվան հայրն Տիմիդրէին, մնաց Տիմիդրէն ի հօրէն որբ, մանուկ գոլով. յետոյ աշխարհն Մոսքովին մնաց անթագաւոր. յետոյ տարակուսեցան և ընտրեցին իշխանացն զոմն Պօրիս Կատօնովիչ՝ իւրեանց Թագաւոր. և յորժամ Նստաւ Թագաւոր, կամէր սպանանել զՏիմիդրն, զի ինքն Թագաւորեսցէ առանց հակառակութեան, և մեծամեծ իշխանք փախուցին ի վանքն՝ ուր 700 աբեղայ կային, և անտի կամեցաւ հանել ի վանաց և սպանանել. իբրեւ իմացան աբեղայքն զչար խորհուրդն Պօրիսին, վաղվաղակի փախուցին

[1] Այլուր գրէ, Թագաւորն Զիկմունդ երկուսում կին էառ զհամաշունչ քոյրքն՝ զերկուսն։

ի վանացն՝ այս Իլախի աշխարհի։ Եւ յորժամ իմացաւ անօրէնն Փօրիս՝ զի փախուցին, կալաւ զարեղայքն և գլխատեց 700 արեղայքն. և այս Տիմիթր եկն առ Թագաւորն Զիկմունդ առ ոտն. և Թագաւորն ընկալաւ զնա սիրով, և ետ պարգևս նորա. և Տիմիդր եգիտ իւր զօրն մեծ իշխան, որ էր Իլովի սղարոոդա, որ կոչի Մնիշէք, և աղաչեաց զնա՝ զի օգնական լիցի նմա այս մուծ (չփոթ) ժամանակի, որ զիւր հայրական իշխանութիւն գտցէ։ Նորին պատճառաւ եղեւ նմա իբրեւ զհայր, և զինքն ընկալաւ իբրեւ զորդէգիր, և ... (պակասէ)։

1606. Հայոց Թվ. ՌԾԴ. Դեկտ. ԺԵ. օրն շաբաթ. Մեծ շարժ եղաւ ի Կամէնիցս. զի ոչ ոք ի մարդկանէ լուեալ էր կամ տեսեալ. և այն օրն Լաթինացոց ազգն զիւրեանց զխոտորեալ զԾնունդն առնէին, և էր 22 ժամէն յետեւ (երեկոյին)։ Եւ այս եղեւ վասն ծովացեալ մեղաց մերոց. բայց, գոհութիւն Աստուծոյ, որ անվնաս եղեւ, բնաւ ինչ չի վնասեաց. զոր Տէր Աստուած զվերջն ի բարին կատարէ, և զչարն խափանէ. ամէն։

1606. Հայոց Թվ. ՌԾԵ. Պարոն Տէր Կարապետ Րաբունապետ արքէ եպիսկոպոսն նստաւ ի յեպիսկոպոսութեան վերայ Իլովի քաղաքին և ի Կամենից քաղաքին վերայ. Քրիստոս ամենակալն զիւր տիրութիւնն բազմաժամանակեայ շնորհեսցէ, և հաստատեսցէ վերայ սուրբ աթոռ(ոյ) իւրոյ. և Փրկիչն ամենայն աշխարհի փրկեսցէ զնա իւր մարդասիրութեամբն ամենայն ներհակաց և պատահմանց յերեւելի և յաներեւոյթ թշնամոյն, մինչեւ ի խորին ծերութեան ժամանակն. ամէն։ Եւ էր Թվ. ՌԾԵ. մարտի 15, եկաւ ի Կամենիցն։

1607. Թվ. ՌԾԶ. Հոկտ. ամսոյ Դ, օրն կիրակի։ Տէր Կարապետ վարդապետ աթոռակալ եպիսկոպոս վաղճանեցաւ. Աստուած ողորմի իւր հոգուն։

1608. Թվ. ՌԿԷ. Նստաւ յեպիսկոպոսութեան Յաանդի՝ գժօնց Բրուխնիցքէյ, ի Կամենից քաղաք։

1607. Թվ. ՌԾԶ. — Օլախի պարոն Երեմիայ մեռաւ, և փոխանակ նորա նստուցին ի պարոնութիւն զորդին իւր զԿոստանդին։

1608. Թվ. ՌԾԷ. եկաւ վոյվոտա Բոտօցքիյ, որ կոչի Բրէդվից. ընդ նմա և քաշդալան (castellan, բերդապահ) Բոդօցքիյ Եէնորիյ. մեծ ուրախութիւն կատարեցին, ընդ առաջ ելանելով, թօփեր հարելով։

1609. Թվ. ՌԾԸ. — Մեծ և ահագին պատուհաս եկաւ ի վերայ Օլախաց պարոնաց. զի կամեցան սպանանել զՕլախի պարոն զԿոստանդին վոյվոտա. միաբանեցան եպիսկոպոս հետ իշխանաց. իսկ նա հնարիւք զբանն իմացաւ, և կալաւ զեպիսկոպոսն և գլխատեաց, և եպիսկոպոսն մատնեաց զիշխանսն, և ետ զամենեսեան գլխատել, և էին թուով երեսուն. ամէն մեծ իշխան.

զօրանան գլխատեց և զօմանս ի ցից հանոյց, և զոմանս ընկղմեց ի ջուրս. և եպիսկոպոսին գլուխն այլ ի ցից հանոյց, որ երեք օր ի ցից կանգնեցաւ։

1609 Թվ. ՌԾԸ. — Վաղճանեցաւ Միխնոյ երեցփոխան. Աստուած ողորմի իւր հոգուն։

1609–10. Թվ. ՌԾԸ. — Վաղճանեցաւ Խազուպ սարկաւագ որդի Տէր Միքայէլին. Աստուած ողորմի իւր հոգուն։

1611. Թվ. ՌԾԹ. Փետրվար Ը. օրն հինգշաբթի. Վախճանեցաւ Տէր Յովանէս աւագերէց ծեր քահանայ, և փոխեցաւ առ Քրիստոս. լաւ և բարի, հեզ և խաղաղարար և բարերար ոմն էր. այլ և էր շնորհօքն Աստուծոյ զարդարեալ, առաքինութեամբ Հոգւոյն Սրբոյ. և զոր Տէր Աստուած դասակից և պսակակից արասցէ զնա ընդ սուրբ քահանայսն և ընդ արդարսն։ Եւ էր 84 ամաց. և 56 ամ քահանայութիւն. արար ի Ս. Նիկօլա եկեղեցի, և 29 ամ աւագերիցութիւն արար ի Կամենից քաղաքն։ Աստուած ողորմի իւր հոգուն։



## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

Ի սկզբան տպագրութեան գործոյս՝ անորոշ թողեր էինք սոյր թաթարերէն մասին հրատարակութիւնը. հիմայ ըստ հաւանութեան խնդրողաց գրոցս՝ յարենք և զայն, ինչ կերպով որ գրած է հեղինակն, նախ՝ Տէր Յովսէփ, յետոյ (մեծ մասն) Ագոպշան՝ որդի Տէր Գրիգորի աւագերիցու որդւոյ վերոյիշեալ Տէր Յովհաննու՝ հայերէնը գրողին։ Ագանուր պատմած թուրքաց ու Լեհաց և զաղձակաց՝ 1621ի օգոստ. — սեպտեմ. ամսոց պատերազմը՝ իւրաքանչիւր օրուան հանգամանքներով, կրնայ ընծայել նոր լոյս և ստոյգ տեղեկութիւններ. որովհետև հեղինակն շատ մասին ականատես եղած է, թէ ի բանակին և թէ ընկեր ըլլալով զօրացնոց, որով կ'իմացուի և իր խորհրդական և արժանապատիւ անձ ըլլալն, և կրնայ մեր յետին զաւուց պատմչաց զատակցիլ։ Թուրքարէն գիտողաց՝ շատ անիմանալի չէ լեզուն, երբ լեհացի կամ օտար բառք չեն խառնուիր. երկուքին այլ հմուտ եղող մի՝ կրնայ դիւրաւ բոլորն այլ թարգմանել ի մեր կամ յեւրոպական ծանօթ լեզու։

Ագանուր ժամանակագրութիւնն վերջանայ 1621 նոյեմբեր ամսոյ յիշատակաւ. անկէ ետև քանի մի կտոր թաթարերէն և յետոյ հայերէնն՝ երեսուն տարի վերջը ուրիշներ գրած են։

Թողլով ուրիշ բառերը, շաբաթուան օրերու անունները՝ ասէք յիշուելնուն համար՝ նշանակենք.

Եւխագուն՝ Կիրակի օր. — Եւխաշագուն՝ Երկուշաբթի. — Նօկար գուն՝ Գշբթի. — Խայըն գուն՝ Դշբթի. — Գիչայնա գուն՝ Եշբթի. — Այնա գուն՝ Ուրբաթ։

# ԹՎ. ՌԿ.

1611. Թվ. ՌԿ. Յունվարընընկ այընտա դանըգլանտը Բան Կուրեղ Տիրա-տուր օղլու Վօյթ Բուքօվըյ, տա անգլիչքան Սգէցքօ Հարպուրաչ, տա Գրէ-գօր Խաչքօ օղլու Հանուսքօ Թօրնու. Թէնկրի խուԹլու էդքայ։

1611. Թվ. ՌԿ. Մարտընընկ պիրինա։ Գէլտի Իլավտան Քամէնէցքա Տէր Դավիթ Նվիրակ Նվիրակլըքա։

1611. Թվ. ՌԿ. Փետրվար օնունա. Տէր Յակոբնունկ խայնաԹասը Յօ-վանէս Այտին օղլու՝ քէչդի պու տունեատան Մօսքօվա, Սմօլէնսքատա։

1611. Թվ. ՌԿ. Մարտընընկ Ժըրինա քէչդի պու տունեատան Նուրքօ Քէ-վօրովից ըընկար Տօվարժօվքա։

1612. Թվ. ՌԿ. Ապրիլ այընա. Տէր Մեսրոպ վարդապետնը Իլով շահա-րընա խապուլ էդդիլար քարաղիչ. խայսի քի Քամէնէցքատա քէլտի օլմէ եըլնը պայրամտան սօնկրա. ուչ հաֆԹատա տա քարող վէրտի տուրը քօրքլու, տա սպիրկաընտա պարէպիր Տէր Յովսէփ ախպաշ աշակերտի, խայսի քի Թատ ալըյէտի։

1612. Թվ. ՌԿ. Մայիսնինկ Թունա գիչայնագուն Գիրգոր Խաչքօ օղլու Հանուսքօ Թօրնու անդիչքան քէչդի պու տունեատան մէնկիլիքա, Սմօլէն-քատա։

1612. Թվ. ՌԿ. Յունիս այընա. Քամէնից սդարօսդասը Բան Նյան Բօ-Թօցքիյ Շըըրքա, քէչդի պու տունեատան մէնկլիքքա, Սմօլէնսքա դիպինա։

1612. Թվ. ՌԿ. Յունիս այընա. Փատշահընընկ պէյլիկը ուշունշի Զիկմունդ՝ պօլուշլուխու պիլա պիյ Թէնկրինինկ տա քէնտինինկ եախշը սդարանեէսը պիլա, տօղրու էդդի խըլըչը՝ պիլա Սմօլէնսքանընկ խուվաԹը խալասըն. խայսին քի Գօրիս ցար էդիբ իշլադիրբէտի, տա տուրը քօբ Թօբ խօյուբէտի իչինա, տա տօսբօրօխ ալայմէ քօբ Ժըմիօսդ. խայսի օլ խալանընկ պէքլիխը դըըվար էդդի էքի եըլկա տէկ, նէտա քի բատշահ Նիէ Օսդօմբեօնց դիպինուն չդուրմօվադ էդիյըրէտի, քէնտի ըըցէըլարի պիլա քունտուզ ու քէչա եազ ու խըշ, չախ տօսդադ էդքինչա. անտան տօսդադ էդքանտան սօնկրա՝ խալանը պէվլիլըդ-քիմ պիյլարին ալայմէ վօյվօտասըն Թիրիլա քէլդիրտիլար բատշահկա, պիր խօլունտան Թուդուբէտի Նյագուպ Բօթօցքիյ, տա պիրիսի խօլունտան Թու-դուբէտի Սդէֆան Բօթօցքիյ, լէքի խարտաշ, տա ալայ օլ վօյվօտանըյ Սմօ-

լէնտքէյ քէլդիրիբ բատշահկա օտադ էդդիլար. նէ տա քի բատշահ քօրուբ պոմնու՝ տա Թէնկրիկա շուքուր պէրիբ հայպաթլատը. տա պու Բօթօցքէյ-լարըկա ըրցէր ոգվօլարը ուչուն քօբ չաղաւաթ էդդի։

1612. Թվ. Ռկ. Ցուլիս այընտ. Բան Եաղուպ Բօթօրքէյկա վօյվօտալըխ պարաալավքէյ պէրիլտի. հէմ սղարօսդվօ Քամէնէցքէյ. ա պու պէրիլտի Սմօլէնսքա դիպինա։

1612. Թվ. Ռկ. Ցուլիս այընտ Գրիշայնաղուն. Ուլու Լէհստամնա պօլտու Քամէնէցդա Մօղքօվ ուչուն. խայսի քի ուչունչի Զիկմունդ տօսդադ էդդի Սմօլէնսքա։

1612. Թվ. Ռկ. Աւգոս. այընտ. Տէր Ցակոբ Տէր Գրիգոր օղլու Իլովկա պարըբ քէլտի։

1612. Թվ. Ռկ. Աւգոս. ըընտ, երխգուն. Հաճկատար գունու, ասըր քօբ տարանչըա քէլիբ քէչտի չահարնինկ ուզգու պիլա, տա պարըբ դուզդա եադդը օլ գուննու. սօնկրա ուչուբ քէդդի [1]։

1612. Թվ. Ռկ. Սեպտեմ. այընտ. Մուլդան պէյի խաչդը, աթը Րատուլ Շըրպան, տա պիրկաօրինա Միհալ օղլուտա. տա խաչըբ՝ քէլտիլար Բօլաքակա, տա Բօլաքատան Ալամանկա քէդդիլար. դէրա Մուլթանկա օզկա պէյ քէլիբէտի Թուրքդան, աթը ալայժէ Րատուլ էտի [2]։

1612. Թվ. Ռկ. Գէլտի Տէր Դաւիթ Նուիրակ Տէր Մէլքիսէթ կաթողի-կոսդան, տա պիրկաօրինա պիր աբեղա, աթըն Սողօմոն։

1612. Թվ. Ռկ. Դեկտ իԲանա, երխգուն. Բան Եուրքօ Քէվօրօվիչ, Բան Միխօ Երեմիոխանընկ ճանըն անկտը։

1612. Թվ. Ռկ. Դեկտ. իԳաունա, երխաբաշքուն. բօհրէպ պօլտու Բա-նուվցեստա, Բան Եան Բօթօցքէյ սղարօսդա Քամէնէցքէյնինկ. խայսի քի Սմօլէնսքա գիտլինա օլուբէտի. տա օլ բօհրէպկա ասըր քօբէլ պարըբէտի թաֆարուճ ուչուն. հէմ մէն տա էապըխըը Տէր Ցակոբ՝ Տէր Թորոս պիլա պարտըմ։

1612. Թվ. Ռկ. Դեկտեմբ. այընտ. Օլտու վէլիադընտա ուլու դպիհ պօլ-տու. խայսի քի Թուրքդան պէյ քէլտի, Թօմշանընկ օղլու Սդէֆան, տա

1. Ս. Աստուածածնի Ծննդեան տօնին օր, բազմութիւն մարախներու կ'անցնին քաղաքին վրայէն, կ'իջնան դաշտին վրայ, երկրորդ օր թռչին կ'երթան։

2. Մոլտաւիոյ պէկն փախչի ընդ Միհալ օղլուի և գայ ի Լեհս, աստի ի Գերմանիա. վասն զի տաճիկ պէկ մի կու գայ ի Թուրքաց, որ եւս Րատուլ անուանի։

խաչըրտը Աղան Երէմիյ օղլուն Քօստանդինի, ատնա անասը պիլա, ատա պարչա պէյլարի պիլա. խայսի քի պարըրը Գամէնիչզա խաչըր քէչտիլար [1].

1613. Թվ. ՌԿ. Դեկտ. ԻԵ. սնա, խայն գուն. Վօյթ դանկլաալըլար Եուրքօ Գիրգօր օղլու Գիլյանին, տա անդիչքան Բէթրէ Դուկալպէյ օղլու:

1613. Թվ. ՌԿ. Դեկտ. Լունա. եըխըրաչգուն. Բօհրէպ պօլտու քիթայ Հօբօտտա Բան Եննըրից Բօթօցքից քաչթալան Գամէնիցքըյնինկ:

1613. Թվ. ՌԿ. Դեկտ. Լ. ունա, եըխըրաչգուն. Յուրը Նիկօլէ ըխօվանուանկ ժամատունունկ դարանաաը խօյուլտու բամալար պիլա տա քվադրալար պիլան:

1613. Թվ. ՌԿ. Յուլիս այընա, Վառադա խաչ օրուչունա. Ուչմախըլը հանըը Ազաէնդ չարլից՝ հանըն Թէնկրիկա սիմարլար քէչդի պու տունիատան՝ մէնկիլիքքա. Նինիքէյ պիյ Թէնկրի հանըընա հաալըրդակայ, անընկ տա հազըրխալարընա պօշադըլխ պէրկայ, զէրա Թումուղ քէչդի պու տունեատան. խայսի քի Մօսքով չահարընտա Սդօլիցատա օլտու, խաչան քի պիզիմ Նէմիչ դայֆաը տօսդաղ էդիբէտի Մօսքովունկ խօլունտան. տա օլ զաման ադօլիցանը զարբ էդիբէտի օդրուս տա Չպօրօսքիյ. տա սաֆի Նէմիչ էտի անտա, տա Էրմէնի պապաաը եօխ էտի, տա քէրաք Թումուղ օլկայէտի. Թէնկրի հազըրխալարընա պօշադըլն:

1613. Թվ. ՌԿԱ. Յունվար Ե, եըխշգուն. Քուն Թուղուչու սարը քօբուն-տու քօքտա օթլու ադօլփլար, սարը փէք խօրխուլու. տա քէդդի հարըմ գուն սարը. Թէնկրի հախչի էտքայ.

1613. Թվ. ՌԿԱ. Յունվար ԻԳ, գիչայնագուն. Մուրտառ դասիբ Օլախ միլլադի քէչիբ Դուրլունու պէրի եանկա, տա քուվտուրտուլար Գրահա չահարչխնը տա Բուտա սալանը, տա օզկա քօբ սալալար, հէմ էլնի քիմիսին խըլըչդան քէչիրտիլար, քիմիսին հասըր սուրտուլար, քիմիսի սալատա օվլար իչինա քուվտու. զէրա օլ գուննու արդըխ նէքի 30 սալա քօվտուրտուլար տա խայդըը քէդդիլար:

1613. Թվ. ՌԿԱ. Յունվար ԻԷ, եըխբաչ. Եանատ օլժէ մուրտառ միլլադ քէլիբ Խոտօրովցա սալանը հանտըրտըլար, նավէդ չահարկատա հուվուխ քէ-լիբէտիլար. խայսի քի չահարլիլար աթըը հարադըը չըխդըրար խարչըլարընա, հէմ ժօլնէրտանիցօ. Խայսի քի պարըը պիր միլ չահարտան եըրախ, տա պիրկալարինա ուրուշ պէրտիլար. խայսի ուրուշդա պիզնիմքիլարին պիր նէ-չասին օլտուրտուլար, Զնաչնըյ Բօվարիչլարնի Մնանօվիցէէ Պատաքիյնի, տա Բեքարիպքիյնի տա Եանքօվաքիյնի. Տօյ Թէկօյ Էրմէնիլարտան պիրիսին

1. Ստեփան ո. Տօմշայի՝ Թուղթաց կողմանէ Վլահաց իշխան կու գայ, և հալածէ Երեմիայի ո. Կոստանդին իշխանը, որ իր տիկին մօր և ուրիշ իշխանաց հետ փախչին գան ի Կամենից:

Թիրի Թուդդուլար, Գիրգոր Սէֆէր Թօրնուն. խայսին քի սօնկրա Աս Էր-մէնիլարի սաԹուն ալըբ քէնտին վօլըըյ էդդիլար: Ապուպարչա հազըրլա-բըմըզնա գօրա տիր.

1613. ՌԿԱ. Մարտ այընա. Սէչօվլու Խաչում օղլու Գօսդա աԹլը, դաղ-տան գուշդու օրուս խապաքը արդընա, տա սօնկրա դուրուբ տա պարըբ պլամքատա սուվկա դուշուբ պօղուլտու. խայսին քի դարբդըլար քէնտին սուվ իչինա խանընընկ սլիտի պլա. օլ քի Թաղտան դուշուբ սուրունուբէտի, տա քիմէսա քէնտին գօրմիյէտի, չէրա քէչա պօլտու պու իշ:

1613. Թվ. ՌԿԱ. Ապրիլ այընա. Բան Կուլաքինկա պէրիլտի քաշդէլա-նըդվօ Քամէնիցքիյ. խայսի քի ավալ քաշԹէլան Հալիցքիյ էտիր. տա Հա-լիցքիյ քաշԹէլանըդվօ պէրիլտի Բան Հումինսքիյկա:

1613. Թվ. ՌԿԱ. Ապրիլ այընա. Բօտոդարօսցկիյ Քամէնէց խալասընընկ ցէքլինսքիյ՝ քէչդի պու տունեատան:

1613. Թվ. ՌԿԱ. Ապրիլ այընա. Անըն պիյլիքի Զիկմունդ քրալըն գնո-վու էքինչի բուչիցցեա պօլտու աչօլիցասընտան, Մոսքով մամլաքաԹինա. ասըր գօբ էլ պլա պիյ Թէնկրի քէնտինա պօլուշգայօ տա տուշմանլարըն պաշ Թէպան էԹքայ, տա եանադը քէնտին հուզ ախլըը պիլա, քէնտի աչօ-լիսացընա քէլդիրկայ, եախշը սլավա պլա սօվունչլուքդա:

1613. Թվ. ՌԿԱ. Յունիս Ի. Նէմիչ չէրուվու Կօսդանդին պիյ պիլա գիրտի Օլախ ուլուսունա. խայսիլարինինկ հէԹմանը Շդէֆան ԲօԹօցքիյէ տիր: Պիյ Թէնկրի պօլուշգայ քէնտինա:

1613. Թվ. ՌԿԱ. Յուլիս ԺԶ. Բօտոդարօսդըյ քէլտի. ադը Իրիյ Տի-տինսքիյ, տա հաֆԹասընա գարագ չահարլիլարնի եարաղլարը պիլա ըէվի-տօվադ էդդի. չիրա ասըր ուլու դըըվօհա էտիր չահարտա. տա ալայ գարագ էդիբէտի, քի՝ նէ զաման դոմպուրա ուրուլսա՝ պիրատան չըխգայլար հասիր եառադը պարչասը. տա քիմ քի պուրունկի դամպուրակա չըխմասա՝ Թօբլարկա քօվանըյ պօլկայ պիր գուն. իքինչիտա չըխմասա՝ հօրմաԹան սալընկայ, ու-չունչիտա պօղուզ պէրկայ:

1613. Թվ. ՌԿԱ. Յուլիս Թ, գիչայնագուն. Նէմիչ չէրօվու օղրաշ էդդի Աս (Եաշ) դիպինա, Սաքիյ բոհ տա Թօմշա պիյ պլա ալայժէ բաշը պլա, [illegible]անար օղլու պլա, տա Դաղդար պիլա. Նէտա քի տուշմանը բլացնը օԹրը-[illegible]դ էդդի, տա պիզիմ դապօրնու զէվչիսդքիմ պուզուբ գնէսիդ էդդի. [illegible]յ քի Քօսդանդինի պիյնի հէԹմանլարը պօյարլարը պիլա զէվչիսդքիմ դ[illegible]ի դուդդուլար. ալայժէ Սդէֆան ԲօԹօցքիյնի տա Թիրի դուդդուլար, տա դու[illegible]քանտան սօնկրա պույրուխ էդդի Թօմշա պիյ, օլ պօյարլարնը խըլըչդան քէչ[illegible]մա. խայսիլարի քի պէլկիլի, տա ուլու պօյար էտի, տա քէսքան զաման-

տա գէնտի Թօմշա օլԹուրուբ եուվուխ խարշըլարընա պախընըյր էտիլար գէնտի ըրցէրլարի պիլա, տա հէսէպ պլա օլ ուլու պօյարլարնը գէտգիրտի. չախ 36 . տա գէպգանտան սօնկրա պաշլարըն պույրուխ էգդի պըյըր-մա պաշլարընը Թէրիսին սուրադլարը պիլա սուվաքինտան. տա սօնկրա Թիքիր տա սալամ դիխդըրըբ ասըբ խուրուրդու, տա հար քուն օլ գէպգան պաշլարկա դիմար էդարլարէտի, պուտուր Թարաբ սուրդարլար էտի, տա հար քուն ֆարահլիխ էդիբ՝ Թօբլարտան աԹարլար էտի։ Էքի հաֆԹատան սօնկրա օլ պաշլարնը պօչքալար իչինա դիրտիրիբ սալամ պլա տա զապիԹ էդիբ եէպէրտի Թուրք բատշահընա. ալայժէ 400 Թիրի Նէմիչնի ալբավուտնու եէ-պէրտի պաշխչ։ Ա օլ գէպգան պօյարլարնընկ Թէնին 36 պընընկ այդը ժօ-հիլա էդիբ քօմմա օլ եէրտա. խայտա քի գէտդիրտի պիր պիյխ Թադուսմա. զէրա պու Թօմշա պիյ գէնտի Թապօրլու պիլա անտա Թուրուբ էտի. օլ եէրտա տա անտած գէտդիրտի, Աստան պէրի պիր միլ եէրտա։ Տա պու Ստէֆան ԲօԹօցքիյնի դուդդու Թօմշա եանընա 15 հաֆԹա տա սօնկրա եէպէրտի գէնտին Թուրք բատշահընա. Նէտա քի Թուրք բատդշահը այդը գէնտին վէժակա սալմա։ Ա Գօսդանդիյ պիրնի ալըբ ատը Շահ մըրզա Դադար խաշըյէտի Խըրըմկա. զէրա օլ գէնտին տօսդագ էդիբ էտի. դապօրտա տա խաչքանտա Թէնկիզ պլա ֆօրդընա չըխդը Թէնկիզ ուստունա, տա պօղուլտու. Գօսդանդին պիյ տա պիր նէչա Դադար պիրկասինա։ — Տա պու իչլար պու Թուրլու պօլուբդուր. տա օղկա դուրլու տուկուլ. զէրա մէն Ագսէնդ Տէր Գրիգոր օղլու քօզում պիլա քօրտում, տա իկի վեատօմըյ պօլուբ պունու եազտըմ [1] ։

1613. Թվ. ՌԿԱ. Յուլիս ԺԷ. Վարդէվառ օրուչունա այնա գուն՝ տին-սիզ Դադար Օլախ պիլա պիր օլուբ՝ գէլտիլար Քամէնէց չահարի չօվրա-սինա, եուրուբ ալտըլար, Թուվար խարանը աստամինի՝ խայտին գէտգիլար խայտին ալտըլար. Նէտա քի պիզիմ Էրմինի Թայֆասըն քօբուն ալտըլար, Եազլօվցատան գէլկանտա հէմ Ս. Խաչ եըխօվունտա եանտըրտըլար։ Ա պու Մէհմէթ գէրի սուլԹան էտի խան խարտաշը գէլկան.

1613. Թվ. ՌԿԱ. Օգոստոս Զ, գիչայնազուն. Պու գունու ատըը ուլու տա քօբ սարանչա գէլիբ գէչդի չահար ուսդու պիլա, ալայ քի կունաշնի խոբլար էտի, Նէչիք խարանդու պուլուԹ [2]։

1613. Թվ. ՌԿԱ. Օգոստ. Ը, չաբաԹ գուն. Բան Ստանիսլաւ Կուլաքեյ վօյվօտա Ռուսքիյ սդարօսդա Պարսքիյ ճանըն Թէնկրիկա սիմարլատի Քամէնէցդա. զէրա օպօզ պլա եադըբէտի Քամէնէց դիպինա 2000 ատամ պլա արդըխ էքսիք. խայտին քի Թէնին ալըբ էլդիլար մայէնդնօսդունա։

1 . Ագսենդ կամ Օքսենտ որդի Տէր Գրիգորի վկայէ, Թէ ինքն կու գրէ այս աչքով տե-սած Օլախաց Թոմշա իշխանին անգԹութեամբ իր Թշնամեաց չարաբը բանել լորգելն, և 36 ազնուականաց այլ գլուխները կտրել տալ և կաշինին երեսնուն վրայ զարձընել տալով չոր-ցընել և իբրև գնտակ հրետի արձըկել, և այլն։

2. Բաղմութիւն մարախոյ քաղքին վրայէն անցնելով սեւ ամպոյ պէս զարեւը խափանեին։

լար. յունիս Գ. տա Տէր Մկրտիչ ավաքերէց հանըն Թէնկրիկա սիմար-
լատի, յունիս ԺԱ. տա օլ եըլ գօրօլ 20 եըլկա պիլա վօլնօսց պէրտի։

1529. Թվ. ՋՀԷ. Սըլմօլ Թէքրանտի. տա գօր մուրլար սխտարըլտը. տա Նէչա գէրման դաա պօլու. մարտ այընա։

1529. Թվ. ՋՀԷ. ապրիլ ԻԵ գունունա, Գրագօվ խանտը. տա գօր գէտն պօլտու. Գօրօլ Վիլնատառ էտի։

1530. Թվ. ՋՀԸ. Վանքըրնկ չօվրաօրին դուԹդուխ տիլ պլա, սեպտ. այընտա։

1530. Թվ. ՋՀԸ. Մայիս ԻԴ. Չըխտը սուլԹան Սուլայման Աստըրխատան, տա պարտը Ֆէրնանտուս ուտնա, Վէտնա շահար ուստունա, 17 գեղ չդուրտամ էդդի. տա սանող էլին գաս էդդի. տա գէնտի ուլու ույադ պլա Տունա աշահա գէդդի. անտա Իպրահիմ բաշանընկ պաշըն գէսիպ՝ պարչա էլին սալըբ, տա խազնասըն տա, գէնտի սուվ աշահա գէԹտի ուլուսունա։

1530. Թվ. ՋՀԸ. յուլիս Ը. Բան Սգանիսլավ մարշալքօ օլտու, տա խարտաշը օյնուննա դուրտու։

1530. Թվ. ՋՀԸ. յունիս ԺԷ. Տէր Նիկոլ գէլտի Իլօվկա, տա Եազլովէցքինը խրտըլար Սլամ սուլԹան օշագումըրնկ դիպինա, 420 հան դիրի դուդուլար Նէմիշլարնը. օգոստ. Բ։

1531. Թվ. ՋՀԹ. Խանընկ օղլու ԱԽԲ? Գրեմցակա գելտի, տա պիյ օլդուրտու Վօլէն ուլուսունա 5 ապրիլ այընկ Ը գունունա։

1531. Խույեաշ Բէշքիրիլտի Թվ. ՋՀԹ. մարտ ԻԹ. օն պիր սահաթդա։

1531. Թվ. ՋՀԹ. Գամէնէցգա աֆադ պօլտու. յուլիադա պաշլատը։

1531. Թվ. ՋՀԹ. Վիլնեա գերմանի խանտը, յունիս ԻԱ։

1531 Թվ. ՋՀԹ. Դրագօլնունկ խալասըն պաշլատըլար եասամա՝ Դըշինցգիլար։

Օլ եըլ Գիտըրիցա գէրմանը պաշ ուրտու Օլախգա Բայիշ պէյգա։

1531. Թվ. ՋՀԹ. օգոստ. Դ Քնեած Գոստանդին Թէնկրիկա սիմարլատի հանըն. խայսի գի 66 գեղ չէրուվկա ուրուշուբ էտի տա չըխըրէտի.

1531. Թվ. ՋՀԹտա, դեկտեմ. Ա. Գելտի Թարիշ Օլախ պէյի, տա ալալ գօրօլնունկ ուլուսուն չէաէպիգա տիրա։

1531–2, Թվ. ՋՁինա, Եօլուխդու գումուրուղքան գունու, Նայ գի գունուզուն եազմուր պօլտու, տա սօնկրա եըլգուն եուրուտուլար դումլան պլա, դէմիր պիլա եուրումատիլար։

1532. Թվ. ՋՁԱ. մայիս Ը. Գրագով խանտը, տա գօր զարար պօլտու ագամլարկա։

1532. Թվ. ՋՁԱտա. Ավալ պուրուն տօնկուզլար օլտու. օլ եըլ աֆադ պօլտու Իլօվտա. պաշլատը ուլխ այընտան՝ տա դըՃըլտը դեկտեմ։ Մկրտիչ աբեղա օլտու սեպտեմ. պիրտա։ Սիմաւոն հայրպետ ԻԸինա. Տէր Գեորգ ԻԹ։
Օլեըլ Լիպաչովտա եազդըխ։

1533. Թվ. ՋՁԱինա, դեկտ. ԻԱ. Գելտի Տէր Ստեփանոս վարդապետ ու-

ախրաչ, իքի արհղասը պիլա. պիրինինկ ադը Ղևանդէս, իքինչիսինինկ ադը Ճաթէլաս. Նուիրակ գելտի։

1533. Թվ. ՋԶԱ. Մարտ ԻԳ. Սուլիման պէկ չըխտը Սղըմը լաան, ուլու չէրուվ պիլա. Ձեխ խանիչատան ուԹրու. տա խայդըր ուլու ասյաղ պիլա Վեա-նակա եէղմիյին. պարչա չէրուվուն դաս էգիր ուրուչմիյին. Հօկտեմ. խայդը։

1533-4. Թվ. ՋԶԲարինա. Սուվլար ուլու դուշդու, տա քօբ գեան էգդի ադավլարկա տա պիդիչլարկա. տա Հասանըն սուվատ քօբ ատամ դաս պօլտու։

1534, Թվ. ՋԶԲարինա. Սգքալ խանտը, քօբ գեան պօլտու պէգիրկան-լարկա։

Յուլիս այընտ, Խույրուխլու եուլտուզ չըխտը եարըմ գէչատա։

1534. Թվ. ՋԶԲ. յունվար Ա. Բան Քրաքօվքիս Քրըշդօֆ Շիտլօվեցքիս գէչդի տախնտատան։

1534-5. Թվ. ՋԶԳ. Յունվ. Գաունա. պօլուրդուր Օլախ ուլուսունտա Բայիչ պէյ, քի եէտիրխէդ Ծնունդ օրուչունտա Էրմէնի պապազլարկա գուշ էդիր Թովայ։

1535. Թվ. ՋԶԳ. Մարտ Ժ Օգա Հայիցքիս Իլօվ սդարօսդասը քէչտի տա-նևատան։

1535. Թվ. ՋԶԳ. Ունիս ԺԲ. Զըխդը Սուլաման պէկ Սաըմպօլտան ուլու չէրուվ պիլա Խըզըլպաշքա խարշը. տա գէնկիդ սանաատա ուլու չէրուվ ե-պէրտի 400 գերաք պիլա։

1535. Թվ. ՋԶԳ. Ուլիս Ժ. Սուվլար ուլու պօլտու, քի Վիսլա քօբ օդուն տա քօբ օվլար եըխըը գելտի. տա Քրաքօվյունունկ քօրրուսուն պուզտու. տա քօբ ատամ գեանիյի պօլտու. քի նէ պիր բամեգնիք եօխ էտի. քի անընկ քի-պիք ուլուլուխուն պիլկայ էտի վիսլանընկ, քի նէ պիր ադամ խալմատը, պու-դուն չլօնգքա ուլուսունտա, տա նի Քրագով ուլուսունտա, տա օԹմաք Թարաւլ-մամախընտան ուլու էքսիքլիք պօլտու, էլկայ Քրաքօվտա։

1536. Թվ. ՋԶԴաունա, ունիսընկ ԻԸ քունունեայ. ալտը Բան Հէթման Հոմեայնը, տա օգոստոսնունկ ԻԹունա ալտը սդարոտուպնու Հօլօվանց քու-նուր տա օվչինանի դուդխուն էդդի։ Հոկտեմ. այընտա Քամէնէց ադարօսդա-սը Լանցքօրօնսքիս օլտու. տա նոյեմբ. այընտա Գօմիցքիս Քրաքօվ ախրաչը օլտու։

1536. Թվ. ՋԶԴ սունա. Քօրօլ գելտի Քրաքօվկա, օգոստոս Ըինա, տա խըզըն պէրտի մարկրապէս Եամիկա. օգոստ. ԻԹունա։

1536. Թվ. ՋԶԴ սունա. յուլիս ԺԳ քունունա. Օլախ պիյի Բույիչ պարչա Բօքուդեանը եանտըըտը, չախ Հայիքքա տիյին։

1536. Թվ. ՋԶԴսունա. Էքինչի եարդըը Ս. Աստուածածինինինկ ասդուն խարղաչին պիլա. տա էքի եանընտակի տարաճալարըն ուլու տա եանկի էդ-դիք. տա եիխօմունունկ իչին դէնկ աչարտըը, օգոստոսնունկ ԺԴսունա. տա ախարդդըը իչին. տա Ջովրատակի քօչքլարըն էդդի։

1536 . *Թվ. ՋՁԵրինա, Հոկտ. ԺԸ գունունայ. Գրագոմինունկ խալաար եան-տր. տա քօրօլ քելտի Լիգվատան նոյեմբ. Ը։*

1537 . *Թվ. ՋՁԵրինա. յուլիոնընկ ԻԵ քունունա. Քամէնիցգա պօլտու ու-լու բօլեղրա, քի բագուշնունի ուագունտա* 150 *օվ արդըխ պուզտու։*

1537 . *Թվ. ՋՁԵ, յունվար Գ. Բան Քրաքօվիզքիյ Դնչինցքիյ տունեատան քեչդի։ Տա Անտրվօժ ալտը Մաքօվեցքիյ քնեաժանընկ խըզըն, փետր ԻԷ քու-նունայ։*

1537 . *Թվ. ՋՁԵսինա. Դեկտ. Ե քունունայ, ալտըլար Քօչիցնը վայ-տալկայ։*

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Բ

## ՔՐՕՅՆԻՔԱ ԲՕԼՍՔԱ ՈՒԼՈՒՍՈՒՆՈՒՆԿ

## (ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ԼԵՀԱՑ)



ՔՐԻՍՏՈՍ տուննաւկա քելմախտան պաւրուն պօլաւբ դուր Կայըքօ աթըլը քընեածա. խայսի պու Կարքօ քնեածա զալօծըղ էտիրտիր Քրաքօվնու. էնկ պուրունկի պիյ պաւ պօլուբ դուր։

Անտան սօնկրա անընկ օղլու պօլուբ տուր Լէխ աթըլը քնեած։

Անտան սօնկրա պօլուբ դուր քնեածա խըզը Վանտա աթըլը։

Եանա անտան սօնկրա պօլտու Բէրէժմիսլավ։

Եանա անտան սօնկրա պօլուբ դուր Լէշքօ։

Եանա ուչունճի Լէշքօ պօլուբ դուր։

Եանա պօլուբ դուր Բօբեէլէք պուրունկի։

Եանա անընկ օղլու պօլուբդուր էքինճի Բօբեէլեք. քի անկը նէտիլար չըչխանլար Քրեշվիցատա։

Եանա պօլուբ դուր Բայադ (Բիասդ) քնեածա։

Եանա Լէշքօ աթըլը պօլուբ տուր.

Եանա պօլուբ դուր Սենեմոյմիսլավ։

Եանա պօլուբ դուր պունաւնկ օղլու Միշքօ (Միչիսլաւ) աթլի. պու էդիբ տիր քրեստան տինին էնկ պուրաւն. Ջկե (965) եըլընա Սվէնդըյ Վըշ նէխդան. օլ ալարնը խայդարտը Թէնկրիկա։

Եանա պօլտու պուրունկի խան Թաճլանկան Պօլեսլավ խապրի ՋՂԹ տա։

Տա Օրուսլար քի խայդըըլար ուրում տինինա՝ քնեած Վլատըմիրտան օդլաշ Քրիստոսնունկ քելկաշինտան սօնկրա 1025 եըլընա։

Պօլէսլավ խապրինընընկ օղլու Միշքօ ադըը՝ 1034 եըլընա։

Եանա պօլուբ դուր Քազիմիր (Ա) Մնիխ 1041 տա։

Եանա պօլուբ դուր պու Գազիմիր Մնիխնինկ օղլու Պօլէսլավ 1058 տա։

պու օլտուրտու Սվէնդըր Ադանիոլամըը, տա էքի եըլ բաբեժլարի խան պէր-մաս էտի, քի ախբաշլարըն օլտուրտուլար։

Անտան սօնկրա պօլտու Վլատիսլավ (Ա) Հէրման։

Գունտան սօնկրա պօլտու Պօլէսլավ (Գ) էկրիաղըզըը. պու դաբդը Ման-քէրմանը։

Եանա պօլտու Վլատիսլավ (Բ) օղկա։

Եանա պօլուբ դուր Պօլէսլավ (Դ) Քուտրավըյ։

Եանա պօլուբ դուր Մէցլավ (Գ)։

Եանա պօլուբ դուր Քազիմիր (Բ) Սբրավետլիվըյ։

Եանա պօլուբ դուր Լէշքօ (Ե) տպալիէ։

Եանա պօլուբ դուր Պօլէսլավ (Ե) Խէնտօկիյ.

Եանա պօլուբ դուր Լէշքօ (Զ) Չարնըյ։

Եանա պօլուբ դուր Հէնտրիքի տօպրը։

Եանա պօլուբ դուր Բրէմըսլավ 1295ինտա. խայսի քի խանլըխ պունտան պաշլանտը։

Եանա պօլուբ դուր Վէնցլավ չէխ (Պոհեմ) Քօրօլու տա Բօլոքա խանը։

Եանա պօլուբ դուր Վլատիսլավ (Դ) Լօքդէֆ 1365 տա։

Եանա պօլտու ույու Քազիմիր (Դ). խույսի քի Խլօմնունկ ուլու խալասըն եասատը, տա չօվրատակի մուըլարնը եասատը. տա քօբ չահարլար օսատիդ էդդի. տա 33 եըլ խանլըխ էդդի։ 1363 եըլտա տա Տէր Գրիգոր ուլու ախ-բաշնըյնկ պիթիքի բաղըլըբ դըր 1365 տա։

Եանա պօլդու պունտան սօնկրա խան Լուտվիք մաճար խանը. տա 12 եըլ Բօլաքատա խանլըխ էդդի։

Եանա պօլտու խան Եակեյլոյ Լիթկա քնեաժլիխընտան 1434սունտա, օղլու էքինչի խարտաշը պօլուբ դուր Վիթօտի Եակեյլոյ, քրիստան էդիբ՝ աթըն խօշդուլար Վլատիսլավ. տա Վիթօլանըյնըյնկ աթը Օլէքսանտր Աշվիտեկայ-լընկ Պօլէսլավ. կօրէկալն աթըն Քազիմիր։

Եանա դուբուբդուր Վլատիսլավ (Ե) մաճար խանլըխընտան. խայսի քի Թաս պօլտու Վարնատա, 1444ունտա. անտան սօնկրա էքի եըլ խանսըզ պօլտու-լար օղլու Եակելօնունկ։

Անտան սօնկրա պօլտու քրալ Քազիմիր (Զ, Մեծն), տա քէչդի տունեատան 1492 տա։

Անտան սօնկրա Քազիմիրնըյնկ օղլու Օլպրըխդ, քէչդի տունեատան 1521 եըլտա։

Անտան սօնկրա անըյնկ ինիսի Ալեքսանտր խան Լիթվա քնեաժը օլտուր-տու, պիզիմ Թվ. ՋԾԶ տա (1507) էտի։

Անտան սօնկրա օլթուրտու Զըկմունդ (Ա) խան ՋԾԶ Թվ. փետրվ. Զ քու-նունտա։

Եանա քէնտի դիրլիքինտա օլդուրգուզտու քէնտինըյնկ օղլուն Զըկմունդ Բ խաննը. ՋՀԹ (1530) Թվ. փետր. 20 քունունտա։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Գ

## Ի ԳՐՉԱԳԻՐ ՊԱՏՄՈՒԹԵՆԷ ԱՌԱՔԵԼԻ ԴԱՎՐԻԺԵՑՒՈՅ



1445. Այս Գրիգորն (Մակուեցի, կաթողիկոս) գրեաց ի Կամենից, Թվ. ՊՂԴ, և զՍէշով ստորագրեալ Լովայ արքեպիսկոպոսին։

1626. ՌՀԵ. Մելքիսեթ կաթողիկոսն յետ օրհնելոյն զՆիկոլ պարոնտէրն, զկնի սուղ ինչ աւուրց գայ ի քաղաքն Կամենից, և կեցեալ սակաւ աւուրս՝ հիւանդացեալ մեռաւ, ի Ծաղկազարդի շաբաթ օրն. ՌՀԵ։

1627. Յետ ամաց ինչ դէպ եղև Նիկոլ պարոնտէրին գալ ի Կամենից և օրհնել զխաչգօ սարկաւագն՝ քահանայ փոխ. Ոնոփրիոս և Կեսարացի Գրիգոր վարդապետին (զորմէ ի վերոյ բան ինչ ասացաք). հանդիպիլ ևս ի Կամենից։ Նիկոլ պարոնտէրն յետ երկուց շաբաթուց՝ կամեցաւ զի նորընծայն զառաջին պատարագն առնէր. և հրաւիրեաց առ ույս և զԳրիգորն. և զի սա ոչ հաճեցաւ, լռեաց ևս շաբաթ մի, և յաւել հրաւիրել զվարդապետն. և սա կրկին դժկամակեցաւ, ասելով, թէ չէ օրէն նախ քան զքառասունն։ Վասն որոյ բարկացեալ Նիկոլին՝ փակեաց զեկեղեցին՝ ուր էրն Գրիգոր, և զնորընծայն ետ պատարագել յաւագ եկեղեցին, ուր էր ինքն։ Յորոյ վերայ յոյժ վշտացեալ Գրիգոր՝ նզովեաց զվշտացողն յայն եկեղեցին։ Իսկ եպիսկոպոսն յետ պատարագին՝ փակեաց և զիւր տեղոյ եկեղեցին. և մնացին երկու եկեղեցիքն փակեալք յաւուրս աւագ տօնիցն։ Ապա խնդրեաց զքաղաքապետն՝ ոչ տալ թոյլ Գրիգորի գալ ի Լով, այլ զի յետս դարձուցէ զնա. որ իսկոյն հրամայեաց զնա ունել՝ իբր ի գիոյահոջ լրտես ի Թուրքաց. բայց իմացեալ զանմեղութիւն նորա՝ թոյլ ետ դառնալ յերկիրն իւր։ Որ ժամանեալ ի Բուղտան՝ նզովս առաքեաց ի վերայ Նիկոլին. և նա անհոգս կայր ի կողմանէ բանադրանացն. բայց ժողովուրդքն յոյժ ներհականային նմա՝ առաւել քան զառաջին՝ վասն այսմ իրի։

1652. Հռչակեալ համբաւ իմաստութեան և սրբութեան հայրապետիս (Փիլիպպոսի) ընդ ամենայն երկիր, եհաս և ի քաղաքն Լով. ի սոյն ժամանակի բազմահնար եպիսկոպոսն Նիկոլ՝ նկատեալ թէ ոչ լինի խաղաղութիւն ի մէջ

իւր և ի մէջ ժողովրդեան, եթէ ոչ՝ գալով առ կաթողիկոսն և առնլով զօրհնութիւն ի նմանէ, խորհեցաւ գալ ի Կ.պօլիս. և զի չունէր պաշար ճանապարհի՝ վասն այնորիկ ետ նմա 2000 ղուռուշ՝ Խօճայ Սիմոն Թօխաթցի վաճառական, որդի մահդասի Մարկոսին. այսու ելեալ եկն ի Կ.պօլիս: Զայս տեսեալ ժողովրդականացն, և նոքա առաքեցին զԽաչգօ, մին ի դատաւորացն Հայոց՝ ի կողմանէ իւրեանց. և սա եւս եկն ի Կ.պօլիս, բայց ընդ այլ ճանապարհաւ. և հանդիպեցին երկոքեան կաթողիկոսին: Արդ զրաւ գործոյն այս եղեւ, զի եպիսկոպոսն չորս գլխագրութիւնս յանձն առցէ, և ձեռնագրով իւրով դրոշմեալ տացէ կաթողիկոսին. Ա. զի Նիկոլն և իւր հետեւողք եկեղեցականք և աշխարհականք զդաւանութիւն Լուսաւորչին և զնորին աթոռակալացն՝ խոստովանեսցի: Բ. զի զարարողութիւնն Հայաստանեայց եկեղեցւոյ արասցէ ինքն և իւր հետեւողքն: Գ. զի յաջորդ նորա ի կաթողիկոսէն Էջմիածնի օրհնեսցի եպիսկոպոս, և նոյնում հնազանդ: Գ. զի ինքն միայն ի պատարագին յիշեսցէ զանուն փափին և ոչ այլ ոք յեկեղեցականաց. և ոչ զկնի իւր նստեալ եպիսկոպոսն յիշեսցէ զանուն փափին: Նա և մի՛ ինքն մի՛ խառնեսցէ զՋուր ի բաժակ պատարագին: Արդ զայս ամենայն, կամ զաոցին նմանս, դրոշմեալ Նիկոլն՝ ետ կաթողիկոսին և առ Խաչգօ դատաւորն, վասն առ յապայն զգուշութեան: Ապա կաթողիկոսն արձակեաց զՆիկոլն ի բանադրանաց. տուեալ նմա նամակ եպիսկոպոսական իշխանութեան և գիր օրհնութեան ի վերայ ժողովրդեան, արձակեաց ի խաղաղութիւն՝ գալ ի տեղի իւր:

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Դ

## Ի ԹՂԹՈՅ ՎԱՐԴԱՆԱՅ ՅՈՒՆԱՆԵԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌ ՆԻԴՈԿԻԱՑԻՍ



1626 · *Մելքիսեթ կաթողիկոս Էջմիածնի եկն ի Լէօպոլիս, կամելով գնալ ի Հռովմ. և տեսեալ զժողովուրդն թարց հովուի, ձեռնադրեաց նոցա եպիսկոպոս զՆիկոլայոս Թորոսովից Լէօպոլսեցի, յամի Տեառն 1626ին, և ի Թուին Հայոց ՌՀԵին։ Եւ մեռաւ ի Գամենից քաղաքի։*

*Նիկողայոս Թորոսովից, որ ի յամի Տեառն 1626ին, և ի Թուին Հայոց ՌՀԵին ձեռնադրեցեալն էր եպիսկոպոս Լէօպոլսոյ, արար հանդիսապէս առ զդաւանութիւն կաթողիկէի եկեղեցւոյն Հռոմայ, յամի Տեառն 1630ին, և ի Թուին Հայոց ՌՀԹին, հանդերձ քահանայիւք, որոց աւագերէց էր Տէր Զաքարիայ, թէ և ժողովուրդն ոչ հնազանդեցաւ, և ոչ ընկալաւ զնա ինքեան առաջնորդ՝ զամս յոլովս, և ոչ հմուտ յեկեղեցին, ի հրապուրանաց ոմանց վարդապետաց եկելոց ի Հայաստանէ. այս է, Խաչատրոյ և Գրիգորի Կեսարացւոց, մինչև ցՅոհան վարդապետ Արղնցի, այր ոչ միայն հմուտ մակացութեանց իմաստասիրականաց, զոր ես բարւոք ծանեայ ի մանկութենէ, այլ և խոհեմ, հանճարեղ, տնօրէն յառնելիսն, նա միտեցեալ մանաւանդ առ ուղղափառութիւն, առաքեցեալ ի Փիլիպպոսէ կաթողիկոսէ, մինչ էրն ի Կ. պօլիս. որ համոզեալ էած զնոսա ի հնազանդութիւն առաջնորդին, և եմոյծ յեկեղեցին, յամի Տեառն 1651ին, և ի Թուին Հայոց ՌՃին։ — Գնաց ի Հռոմ առ փափն Ուրբանոս Ը, և մեծաւ պատուասիրութեամբ ի նմանէ ընկալեալ եղեւ. որում և շնորհեաց հանդիսապէս յառաքելականում պալատին զօմօփորոն արքեպիսկոպոսական, մակագրելով զնա կոնտակաւ իւրով արքեպիսկոպոս Լէօպոլսոյ և բոլորի Թագաւորութեանն Լեհաց, նա և մեծի դքսութեանն Լիթուանիոյ, ազգին Հայոց։ Եւ այսպէս ճոխաբար յարգեցեալ ի սրբոյ Աթոռոյն առաքելականէ, դարձաւ ի Լէօպոլիս։ Եւ զի էր այր խորագէտ և շրջահնածու, զմտաւ ածէր գտանել զհնար իմն, որով միաբանութիւնն արարեցեալ ընդ սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ, Մնայցէր հաստատուն առ յապա. Եգիտ զկերպ իմն յոյժ դիպուկ, զի լինիցիւր վարժարան մանկանց Արամեանց՝*

աստ ի Լէօպօլիս․ յորում ոչ միայն զգիտութիւնս իմաստասիրականս և աստուածաբանականս եկեղեցւոյն Հռոմայ, այլ և զլեզուն հայկական ուսանէին, և յառաքինութիւնս կրթիցէին, և քահանայացեալք ծառայիցէին եկեղեցւոյ համարժանապէս, և անճրելի պահիցէին զհաւատն կաթուղիկէ։ Քանզի էին այնր ժամանակի քահանայք՝ յոյժ տգէտք ներհմտութեանց և անվարժ լեզուին արամեան․ որպէս և ինքն ժողովուրդն։ Զորոց երբեմն գրեաց ոմն․

« Իսկ քահանայք որք ի Լօվ կան՝
Գոռոզ յանդուգն ամբարտաւան.
Ոչ ուսմնք են նոքա հաւան,
Զանսի յայլուր ոգոց նըման։
Զգիտեն ըղնաւ զտաճման ուսման,
Եւ ոչ իսկ զլեզուն հայկեան.
Զոր ընթեռնուն՝ ոչ հասկանան,
Եւ գիտողաց վերայ խրոխտան։

Վասն որոյ գրեալ առ փափն Աղեքսանդր Է․ յուշ արար նմա զհարկաւորութիւն վարժարանին․ որ և հայրականաւ սիրով կատարեաց զխնդիրն, հիմնեալ աստ ի Լէօպօլիս զվարժարան երկոտասանից նպարոնեաց (Թոշակաւոր) ծախիւք առաքելականի որրոյ աթոռոյն, յամի Տեառն 1662ին, և ի Թուին Հայոց ՌՃԺԱին․ և առաքեաց զաստուածաբան վարդապետն Կղեմէս ի կարգէ Թէատինեայց, զհմուտն արամեան դպրութեան, զի վարժիցէր զնոսա ի գիտութիւնս և ի լեզուն հայկական։ Որ մինչև ցայժմ ծաղկի նոյն վարժարանն ընդ կառավարութեամբ Հարց Թէատինեայց․ և ի նմանէ բողբոջին քահանայք իմաստունք, վարդապետք աստուածաբանք և եպիսկոպոսունք։ — Իսկ Նիկոլայոս կացեալ յաթոռ եպիսկոպոսութեան զամս 55, մեռաւ աստէն ի Լէօպօլիս, յամի Տեառն 1681ին, ի հոկտ․ 14ին։

Մինաս վարդապետ Էվդոկացի, Ջիլիֆտար օղլու մականուանեցեալ, եպիսկոպոս Պաղտատու, եկն ընդ իս ի Լէօպօլիս՝ ի դառնալ իմում, և առաջի գարտինալին Փալլավիչինի Լէկատի փափին, որ յայնժամ էր ի Լէօպօլիս, արար դաւանութիւն հաւատոյ կաթուղիկէի, յամի Տեառն 1686ին, և ի Թուին Հայոց ՌՃԼԵին։

Ազարիա կաթուղիկոս Աղուանից համակամութեամբ եպիսկոպոսաց ոմանց յիւրոյ նահանգին, զդաւանութիւն կաթողիկէ հաւատոյ առաքեալ էր առ փափն Իննոչենցիոս ԺԱ, և առ իս գրեաց ի ձեռն Զափօլարքի Եէզուիթային Լեհացւոյ՝ յամի Տեառն 1688ին, յաղագս իրաց ոմանց հոգալոյ առ սուրբ աթոռն առաքելական՝ վասն իւր և վիճակին․ զոր և արարի։

Մովսէս վարդապետ Երևանցի յամի Տեառն 1689ին, եկն ի Լէօպօլիս,

և ի ձեռս իմ արար զդաւանութիւն կաթուղիկէի հաւատոյ՝ հրապարակաւ յեկեղեցւոջ։

Օգոստինոս վարդապետ Պօչանցի՝ Վէրծէրէպօ մականուանեցեալ, վարժեցեալ ի Հռոմ ընդ՝ համալսարանում Ուրպանեան, ձեռնադրեցաւ յինէն եպիսկոպոս Սլատինոյ, յամի Տեառն 1691ին, և ի Թուին Հայոց ՌՃԽին, ի յուլիսի 30ին. և գնացեալ ի Թռանսիլուանիայ, զՀայս անդէն եղեալս միաբանեցոյց ընդ սրբոյ եկեղեցւոյն Հռոմայ։

Ի նոյնում ամի Տէր. Եղիայ Սէչօվցի Մնտրուլ անուանեցեալ, աւագ քահանայ ընդ ամենայն երկիրն Պուղտանաց, առաջի իմ արար զդաւանութիւն կաթուղիկէի հաւատոյ աստ ի Լէօպօլիս։

Մխիթար Վարդապետ Մոկացի Լալուակ Մխօ կոչեցեալ, եպիսկոպոս Մոկաց, յամի Տեառն 1693ին, առաջի իմ արար հանդիսապէս յեկեղեցւոջ զդաւանութիւն կաթուղիկէի հաւատոյ աստ ի Լէօպօլիս։

Մինչ էի ի Հռոմ յամի Տեառն 1670ին, եցոյց ինձ Մօնսինեօռ Պալտէսքի՝ խորհրդունակ սրբազանի համագումարին զսերեցմանէ հաւատոյ (de Propagande fide), ի բնագրարանում նորա, զբաղմութիւն Թղթոց մերազնեայց, ի յոգունց ամաց և այսր գրեցելոց՝ զկաթուղիկէի հաւատոյ, ի կաթուղիկոսաց, յեպիսկոպոսաց, և յայլոց. որոց զանուանս՝ այժմ ոչ ունիմ ի մտի։

Գրեցաւ (Թուղթս առ Եւդոկիացիս) յամի Տեառն 1703ին, և ի Թուին Հայոց ՌՃԾԲին. յամսեանն օգոստոսի 14ին։

(Յիշատակարան). Զթուղթս՝ գրեալս յատուկ ձեռամբ Գ. և Ա. հանգուցեալ յարգելւոյ իսկ Վարդանայ Յունանեան արքեպիսկոպոսին Լէօպօլսի Հայոց՝ առ Էվդոկացիս, պարգեւեաց ինձ՝ Գ. և Ա. Յովհաննէս Թօպ. (Tobia) Օգոստ. (Augustowich) արքեպիսկոպոսն Հայոց Լէօպօլսի, Յակոբ Պաղտասարեան Կ. պօլսեցի քահանայիս, և նպարունիս քահանայապետականի Դպրատան, յամի Տեառն 1715. յուլիսի 8 ըստ Լատինաց, յերկուշաբաթւոջ, ի Լէօպօլիս, յիւրում բնակութեանն արքեպիսկոպոսականի. փոխանակ Էվդոկացոց Թղթոցն իմով ձեռամբ գրեցելոց. զոր յինէն առեալ էր նոյն հանգուցեալ Վարդան Յունանեան արքեպիսկոպոսն մեր։ — Ex Libris Jacobi Baltezaris Costantinopolitani, sacerdotis Armeni, et Alunni Collegij Pont. Leop. Armen.

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ե

## (ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ ԺԱ ԱՄԱՑ)



1688. *Վարդան արքեպիսկոպոսն ի հոս վիգիդադոր, յունվարի* 10, *կու պսակէ զԽաչգօն Թորոսենց կամէնցացի։*

1689. *Վարդան արքեպիսկոպոսն՝ մարտի* 18, *կոնդակով կու ձգէ յերեց-փոխանութենէ զԲան Թուման Դասբրօվիչն, ու զՏէր Զախնօվիչն ի հոս վի-գարիուս կ՚ անէ*, anno 1694։

*Տէր Խաչատուր Զօխնօվիչն օդրզիմադ կ՚ անէ մեր Գարնէն*, pro patentes, *Գրադօվռըյյէն բրէզանդայ այս մեր եկեղեցուն, օգոստ.* 26, *և ինսդի-դուցիայ կ՚ առնու մեր Գ. Վարդան արքեպիսկոպոսէն, սեպտեմբ.* 2։

*Վարդան արքեպիսկոպոսն՝ հոկտեմ.* 10, *արար զգաւառական ժողով ի Լօվ, ու քաշվեցան յամէն քաղաքէ քահանայք. ուր Գեր. Նունցիուսն Գան-դէլմի բրէզիտէնս կ՚ լայ։ Այս ժողովքին մէջ արարին, որ Գատարագատետր որբագրվի ու տպվի ի Հռօմ, և Տօնացոյցն այլ, և ուրիշ բաներ. և այսպէս խրկեցին զասոնք ի Հռօմ. ու խնդրեցին զՍուրբ ժողովն, որ զՏէր Աստուա-ծատուր եպիսկոպոսն ձէնէ ի Հռօմ, որբագրէ զայս գրքերս, ու տպել տայ։*

1690. *Վարդան արքեպիսկոպոսն յայս տարի, նոյեմ.* 10, *զմեր Ստանիս-լաւօվու կտրիճվորաց Եղբայրութիւնն նոր յիրմէն տված կոնտակով երկու-սումն կու հաստատէ. զորն որ վաղուց Նիկօլ Թորոսովիչն հիմնել էր. — (Ի կոնտակէն* (1)։

1691. *Տէր Օգսէնտիոս Վօծրէսգուլ Վարդապետն յայս տարի ձեռնա-դրեցաւ եպիսկոպոս ի Լօվ, օգոստ.* 5, *Վարդան արքեպիսկոպոսէն։*

*Աստուածատուր եպիսկոպոսն յայս տարի եկաւ ի Հռօմ. մնաց ի հոն* 8 *տարի. դարձաւ ի Լօվ* 1698*ին. չի կարցաւ իր մ՚ալ հաստատելու. զէրամ, սուրբ ժողովքն չուզաց փոփոխութիւն անելու վասն արեւելեան Հայերուն,*

1. Այսպէս փակագծուած է ի բնագրին։

որ ալիժով չխառուին, ու ալիժով. զէ Բաղէր Գօնէզանայ Բրէքէֆըն (ինչպէս որ լսել ամ,) զամեն այն բանը կ՚աւիրէր։

1694. ԶՏէր Խաչատուր Ջախնօվիչն՝ Գեր. Վարդան արքեպիսկոպոսն՝ մայիսի 18, Թուրքին ու Թաթրին հեծելութեան ատենը, վիզարիուս կ՚անէ Սդանիսլաւօվու, Անեադինու, Դիմինիցու, Լիսցայի, և Նատվօրնային։

1696. Վարդան արքեպիսկոպոսն վիզիդօվար կ՚անէ զմեր Սդանիսլաւօվու եկեղեցին, յունիսի 21. կոնտակով կ՚արգիլէ, որ ժողովուրդն ալ շատ խուրպաներ (մատաղ) չանէ. ոչ քահանայն խուրպանու կամ մատղի մորթած տավրին կաշին և խօլն չառնու. այլ է Սուրուկճիքն։

1698. Աստուածատուր եպիսկոպոսն յայս տարի ի Հռոմայ դարձաւ ի Լօվ, սուրբ Ժողովին հրամանաւն գօատիւդօր (օգնական) ու սուգցէսօր (յաջորդ) արքեպիսկոպոսութեան Լօվայ. դէրամ Վարդան արքեպիսկոպոսն շատ սուրլիքօվար արավ, պատճառ գնելով գիրեն ծերութիւնն ու տկարութիւնն։ Բայց չիտակն աւելով, ինքն՝ օտար երկրի ըլլալով, ու զամենայն բանն Բադերնէրուն (լատին կրօնաւորք) խրեքօվն անելով, շատ անգամ զժողովըրդին սիրտն ավրեց. յետքը ոչ ժողովուրդն, ոչ քահանայք աէպ (պատիւ, յարգանք) չէին դնել. ասոր համար հնարքով զԱստուածատուր եպիսկոպոսն ի հռօ եբեր, և զամենայն իշխանութիւնն ձեռքն եղիր. զարտ (զատ, բաց ի) զիրէն աթոռն ու զարհիեպիսկոպոսութեան դիդուլն (titre)։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Զ

## ՔԱՂՈՒԱԾՔ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԵԱՆ Տ· ՄՏ· ՍՏԵՓԱՆԵԱՆ

### ԱՒԱԳԵՐԻՑՈՒ ԿԱՄԵՆԻՑԱՑ



1350· *Հայք Կամենիցացիք յայսմ ամի սկսան ի ձեռն բրիվիլեկաց* (privilège) *Թագաւորացն Լէհաց, ըղատարանս առնել. մինչ զի կարող եղեն և զմահապարտս մեռուցանել, առանց հրամանի կամ Թոյլտուութեան Լեհաց։ — Մոհրն (կնիք) նոցա։*

*Լէօպօլիս քաղաքն Լեհաց վերստին հաստատեցաւ և նորոգեցաւ ի Գազիմիրէ Մեծէն Լեհաց Թագաւորէն։*

1363· *Աթոռական եկեղեցին Հայոց որ ի Լէօպօլիս՝ կատարեցաւ յայսմ ամի, և գրեցաւ կոնդակ նորին, օգոստոս* 3։ *Հիմնողք նորին եղեն Յակոբ Շահինշահի որդին Կաֆայեցի, փանոս որդի Աբրահամու Հալաչեցի։*

1365· *Յովհաննէս առաջին արքեպիսկոպոս Լէօպօլսի Հայոց, յայսմ ամի սկսանի զառաջնորդութիւնն Հայոց ի Լեհաստան* (1)։

1384· *Գրիգոր արքեպիսկոպոսն Լէօպօլսի Հայոց՝ էր յայսմ ամի, առէ Եղու Հէրդ. բայց է սխալութիւն. զի Յովհաննէսն Ա՝ էր կենդանի (յամի)* 1398· *եթէ ոչ և միւս Յովհաննէս զկնի Գրիգորիս նստեալ իցէ։ Տես* 1420 *և* 1446։

1398· *Տէր Յովհաննէս առաջին արքեպիսկոպոսն Լէօպօլսի Հայոց՝ քանզի յառաջ քան զսա՝ զայլ ոք արքեպիսկոպոս ոչ ուրեք կարացաք գտանել, — զոր ոմանք ի Թագաւորական ազգէ եղեալ ասեն, — սա ոչ միայն Լեհցւոց՝ այլ և Գուղտանաց երկրի Հայոց առաջնորդ էր. որպէս յայտ է ի մագաղաթեայ կոնտակէն կառուցման եկեղեցւոյն Ս. Նիկողայոսի՝ որ ի Կամենից. յորում*

1· Կոնդակ Մեծարգոյ կաթողիկոսի (տես յերես Ծ պրոյս) տյաու Թուականաւ զԳրիգոր կարգէ առաջնորդ Լեհահայոց։



Պարոն Մինան որդի խուջբլուղեցի։

այսպէս գրի. «Տամ զգիրս զայս Նահանգիս առաջնորդացն. և այժմ է Տէր Յօհաննէս արքեպիսկոպոս Ռուզաց և Օլախաց աշխարհի, հոգեւոր առաջնորդ նահանգիս և մեզ։ Եւ գրեցաւ ի Թվին Հայոց ՊԽԷ. մարտի ԻԵ։» Զսա յիշէ և Աւետիք արքեպիսկոպոսն՝ ի վայր, յամի 1446 ի կոնտակ(ին) (1)։

1414. Արքեպիսկոպոսութիւնն Լէօպօլսի Լեհաց՝ յայսմ ամի ի Հալիչէն բերաւ ի Լէօպօլիս քաղաքն (2)։

1445. Տէր Աւետիք երրորդ եպիսկոպոսն մեր Լէօպօլսի, զոր Կամենիցացիք Թղթովք իւրեանց և եպիսկոպոսին Լեհաց, նա և Պր. Ստեփաննին՝ որ էր դուքս Ռուզաց ի տանէ Գօրիօվիչաց, առաքեցին յէջմիածին՝ առ Գրիգոր կաթողիկոսն, առ ի հաստատել առաջնորդ։ Զոր կաթողիկոսն հաստատեալ և զՍեչավու Թեմն նմա ստորադրեալ, պատասխանէ, զկնի բանից ամանց՝ գրելով. «Եկն Տէր Աւետիք եպիսկոպոսդ, սիրելի որդիդ մեր՝ առ մեզ. և եբեր զձեր » վկայական թուղթն, և զհոռոմ եպիսկոպոսի նշանն, և զՊարոն Ստեփա» նին. և մեք զՏէր Աւետիքդ՝ որ ձեզ եպիսկոպոս էր բնական, այլ կրկին » և վերստին հաստատեցաք. և զՍէչով քաղաքն՝ իւր գեղանովն շնորհեցաք » իւրն սեպհական թեմ և վիճակ... Թվ. ՊՂԴ. Օգոստ. ԺԷ։» Աստուստ յայտ է թէ արքեպիսկոպոսունքն մեր Լէօպօլսի՝ իրաւաբար մակագրեին եպիսկոպոսունք Պուղտանիայ Հայոց. և ոչ միայն այս Աւետիքն, այլ և նախորդքն նորա՝ Յովհաննէս և Գրիգոր՝ այսպէս անուանէին զինքեանս։ — Թղ. Կամեն. Դիւան։

1446. Տէր Աւետիք արքեպիսկոպոսն յայսմ ամի դառնայ ի Կամենից, և զՏիրատուր աւագերէցն կրկին հաստատէ, որպէս կոնտակն իւր ցուցանէ, այսպէս. «Տէր Աւետիք արքեպիսկոպոս ամենայն Ռուզաց և Օլախաց աշխարհի. » եկաք ի Կամենից աստուածաշէն քաղաքն, և գտաք հաստատած ի մեր Նախ» նեաց, ի Տէր Յօհաննէս և ի Տէր Գրիգոր արհեպիսկոպոսացն՝ զՏիրա» տուր քահանայն՝ աւագերէց. նոյնպէս և մեք կու հաստատեմք», և այլն։ Թվ. ի Ծննդենէն Քրիստոսի ՌԴՃԽԶ. օգոստ. Ա»։ ի կոնտակ։

1461. ՋԺ. Տէր Խաչատուրն ընդ այսու ժամանակաւ յետ մահու Աւետիքի նստի արքեպիսկոպոս Լէօպօլսի, զոր՝ կոնտակն կառուցման զանկակատանն եկեղեցւոյն Ս. Նիկողայոսի՝ որ ի Կամենից՝ յիշէ յամի Տեառն 1493։ Խաչատուր արքեպիսկոպոսն Լէօպօլսի Հայոց՝ էր յայսմ ամի, ասէ Եզու. Հէրայ։ Տես 1478։

1. Յիշեալ կոնտակ եկեղեցւոյն է պայմանագիր չինողին, որ է Պր. Սինան որդի Խութլուպէյի. որոյ այս է պատկերն և ձեռագիրն։ Իսկ Ս. Նիկող. վրայօք երկար տեղեկութիւն գրած են Հ. Մին. Բժշկեանն ի Ճանապարհորդ. եր. 136–48. և Քուչէրեանն Հ. Քերովբէ։

2. Բնիկ Լեհաց համար է ըսածն. այն տանն և աւելի առաջ մեծ և հարուստ քաղաք էր Հալիչ (Halisz), հիմայ նուաղեալ։

1478 · ՋԻԷ · Տէր Խաչատուր արքեպիսկոպոսն Լէօպօլսի յայսմ ամի զմիաբանութիւն առնէ ի մէջ իւր և ժողովրդեանն Լէօպօլսեցւոց · զոր վճիռն Ջիկիզմունտ Աւգուստ թագաւորին Լեհաց՝ յիշէ յամի 1569, մինչ Գրիգոր Վարագեցին արքեպիսկոպոս ընդ Լէօպօլսեցիսն յատեան թագաւորին ելին։

1485 · ՋԼԴ · Յօհաննէս կաթողիկոսն յայսմ ժամանակի էր ի Կամէնից, զոր յիշէ կոնտակն Նուիրակաց Էջմիածնի (1)։

Տէր Ստեփաննոս արքեպիսկոպոսն Լէօպօլսի, զորոյ եկամուտն յայսմ ամի Նուիրակք Էջմիածնի տրամադրեցին կոնտակաւ, զորոյ միայն սկիզբն դնեմ աստէն · « Շնորհօք, և այլն · Եկինք Նուիրակք հրամանաւ Տէր Սարգիս կա-
» թողիկոսին, մեք՝ Աստուածատուր վարդապետս և Ներսէս կրօնաւորս ի
» Կամէնից · ի թվիս ՋԼԴ, և հանդիպեցաւ ի տեղս Տէր Յօհաննէս կաթո-
» ղիկոսն, և Տէր Ստեփաննոս եպիսկոպոս », և այլն։ Եւ գնացեալ ի Հռոմ՝ դաւանէ ուղղափառութիւն, և յինքն ընկալաւ Ը ընդունի պարգեւ զխաչ, զմուճէդայ, զողէդ (կարճ չապիկք), և զպիտակ և զկարմիր սրբազան զգեստս · Դարձեալ ի Լէօպօլիս՝ վախճանի։ Իւր կտակն այսպէս, և Կոնդակն Կամէնցու։

1490 · ՋԼԹ · Գալուստ, զոր Լեհք Քիլիանոս գրեն, արքեպիսկոպոս Լէօպօլսի Հայոց, յայսմ ամի էր։ — Եզու Հերպ · և Ամդր · Լուսակէյիք ի Պատար։ — Սա՝ որպէս թուի, երթալով Ստեփաննոսի արքեպիսկոպոսին ի Հռոմ, նստի փոխանակ նորա, մինչեւ նա դարձաւ ի Հռոմայ։

1493 · ՋԽԲ · Խաչատուր արքեպիսկոպոսն էր յայսմ ամի · զոր կոնտակն ճանկակատան եկեղեցւոյն՝ որ ի Կամենից՝ յիշէ։

1551 · Ռ · Ստեփաննոս կաթողիկոսն Էջմիածնի, կամ ընկեցեալ յաթոռոյն, կամ իւրովի թողեալ, երթայ ի Հռոմ, և կատարեալ զհնազանդութիւն և զուխտն իւր, գայ ի Լէօպօլիս, և մեռանի յայսմ ամի, որպէս ցուցանէ գերեզմանաքարին նորա գիրն · Hoc sepulcrum est Rev. Patris Stephani Patriarche Majoris Armenie. Rome fuit, et Leopoli adueniens, animam suam Deo tradidit. 1551։

1557 · ՌԶ · Գրիգոր Բ արքեպիսկոպոս Լէօպօլսի, էր Վարագեցի՝ յարեւելից, ընդ Կամէնցացւոց՝ յայսմ ամի մարտի Է, զդաշինս առնէ · և ի մէջ այլոց դնեն, զի մի ոք ի քահանայից թէ ի ժողովրդականաց ի դատ կոչեսցէ ի Լէօպօլիս, այլ ինքնին եկեալ ի Կամէնից երկու քահանայիւք և չորեք դատաւորօք զդատ արասցէ։ Եւ յաղագս Նուիրակացն եւս հաստատեցին՝ թէ զինչ տացեն։ Զոր դաշն յերկոցունց կողմանց կնքեալն և կատարեալն՝ յետոյ

1 · Կաթողիկոսաց ասվորական ցուցակի մէջ չի յիշուիր սա, բայց յիշեն շատ յիշատակարանք ձեռագրաց և Մագաքիա դպիր ի ժամանակագրութեանն։

Թագաւորն Լեհաց Ստեփանոս Բատորին՝ յամի 1579 հաստատէ. որովհետեւ Հայք յայնժամ չէին հնազանդեալք Ս. Աթոռոյն Հռոմայ։

1562. ՌԺԱ. ԶԳրիգոր արքեպիսկոպոսն Լէօպօլսի Հայոց՝ Սիգիզմունտոս Աւգուստ Թագաւորն Լեհաց, յայսմ ամի յուլիսի 25, հաստատէ յեպիսկոպոսութիւն, ընդ բոլոր Թագաւորութիւնն Լեհաց, յատկապէս յիշելով զքաղաքսն, զԼէօպոլիս, զԿամէնից, զՔիով, և զայլն. զոր կերպն հաստատութեան և այլ յաջորդք սորին ընկալան ի Թագաւորացն՝ մինչեւ ցՄիկողայոս Թորոսովիչն։ Սա զգաստաւորսն Լէօպօլսեցիս՝ որք զքահանայքս ընդդէմ կամաց նորին դատէին և ի հոգեւոր իրս հակառակէին նմա, կոչեաց ի դատ՝ առ Նորին Լեհաց արքայն, որ յամի 1569 վճռեաց, զի զատաւորքն ի հոգեւոր իրաւունս բնաւ մի՛ խառնեսցին, և զայլ բազում ինչ՝ զոր Թողումք։ — Կղեմոսկ.

1568. ՌԺԷ. Գրիգոր արքեպիսկոպոսն Լէօպօլսի Թողեալ զաթոռն վասն հերձուածողութեան և հակառակութեան ժողովրդոցն՝ երթայ յԵրուսաղէմ, և անտի ի Հռոմ. որպէս ցուցանէ Երուսաղեմայ զօմիտարն ճանապարհագիրն, յամի 1568. որպէս գրէ Եգու եւ Connet.

1577. ՌԻԶ. Թադէոս կաթողիկոսն Էջմիածնի՝ փախստական ի պարսից՝ գայ ի Կամէնից, ուր յայսմ ամի հաստատէ աւագերէց զՏէր Յօհաննէսն, և ի միւսում ամի երեսփոխան՝ զպարոն Միխնայն. տալով նմա իշխանութիւն ի վերայ քահանայից, եւս և հոգեւոր իրաց. որ է ընդդէմ սուրբ կանոնաց եկեղեցւոյ։ — Կղեմոսկ։

1579. ՌԻԸ. Գարասամ արքեպիսկոպոսն Լէօպօլսի Հայոց՝ էր Տրապիզոնցի, Աստուածատրոյ որդի, որ յայսմ ամի յունիսի 12, ի Թագաւորէն Լեհաց Ստեփաննոսէ Բաթորէն հաստատեցաւ յառաջնորդութիւն Հայոց, — զի յառաջ ընտրեցաւ ի Լէօպօլսեցւոց, — և հոկտ. 25, ընկալեալ և ի Կամէնցւոց, արար զսովորական դաշն ընդ նոսա։ — Կղեմ. Կամէն. ի Կղեմոսկ.

1582. ՌԼԱ. Գարասամ եպիսկոպոսն կենդանի էր յայսմ ամի։

1598. Յովհաննէս Բ, Մեչաժու և Գուղտանեայ եպիսկոպոսն՝ ի պարապել աթոռոյն Լէօպօլսի՝ նստի ընդ սուղ ժամանակ արքեպիսկոպոս նորին. որպէս ցուցանեն հոգեւոր ատենագիրքն Կամէնիցու՝ յայսմ ամի, և Թուղթք Մելքիսեդեկ կաթողիկոսի ։ — Կղեմոսկ։ — Սմին յետոյ յաջորդեաց Կարապետն։

1606. ՌԾԵ. Տէր Կարապետ արքեպիսկոպոս Լէօպօլսի Հայոց. — ոչ կարացաք գիտել թէ ուստի էր, — ուլիսի 2, ի Կամէնցացւոց ընտրի առաջնորդ, որպէս ի Լէօպօլսեցւոցն էր ընտրեալ. բայց զհաստատութիւն նորա Թագաւորական՝ ոչ գտաք։ Զկնի մահուան սորա նստի արքեպիսկոպոս Տէր Մեսրոպ եպիսկոպոսն. զի գտանի ի Կամենից օրինակ ինչ Թագաւորական հաստա-

տուԹեան. ոչ ի բնագրէն, այլ միայն գրեալ ինչ, յորմէ լինելոցն էր բնագիրն։ Գտանի ի Լէօպօլիս Թուղթ սորին առ Լէօպօլսեցիս, ի Կամենիցու յղեալ. բայց զԹիւն ոչ գտաք. սատէն զՄեսրոպն եդաք։ Յետ սոցա պարապ մնաց աԹոռն մինչև ցՏէր Նիկողայոսն։

1607. ՌԾԶ. Կարապետ արքեպիսկոպոսն մեր մեռանի։ — Եզու։

1609. ՌԾԸ. Գարոն Միխնոյ Կամենիցու երեսփոխանն՝ որ զեկեղեցին Ս. Նիկողայոսի նորոգեաց, և զհրաշալի պաղատն իւր քարաշէն ի դէմ նորա շինեաց, անզաւակ մեռաւ։

1621. ՌՀ. Եազլովցայու Աստուածածնի և վանքն Ս. Գրիգորի Լուսաւորչին՝ յայսմ ամի կատարեցաւ, կամ վերստին նորոգեցաւ ի բարեպաշտից, իսկ մատուռն Աւետման՝ ի Գարոն Գօկտան Սրբէնտովսքիչէն, Թվին Հայոց ՌՃԶ, 1657։ — Յիշատ։

1624. ՌՀԳ. Տէր Մելքիսեթ կաթողիկոսն ընկղմեալ ի բազմութիւն պարտուց, որք մինչև ց՝600 Թումանս, զՍահակ եպիսկոպոսն եղբօրորդին իւր՝ կաթողիկոս օրհնեաց. և ինքն աստ և անդ շրջելով ի ժողովել զդրամս, և իբրև անյոյս մնաց՝ գնաց ի Լեհաստան։

1626. ՌՀԵ. Մելքիսեթ կաթողիկոսն ժամանեալ ի Լեհս՝ ի Լէօպօլիս, և գտեալ զաթոռն պարապ, ձեռնադրէ զարեղայ Տէր Նիկողայոսն Թորոսովիչ՝ եպիսկոպոս Հայոց Լեհացւոց, և տայ նմա առնել զդաւանութիւն ուղղափառ հաւատոյ, ընդդէմ կամաց ժողովրդեանն, որ դեռ ևս հերձուածող էր։ — Կոնտակ։

1627. ՌՀԶ. Յակոբ քահանայ Եւդոկիացի (Թօխաթեցի) եկեալ ի Լեհաստան պանդխտական՝ ի քաղաքն Զամօսցայ գալով, զբովանդակ 150 Սաղմոսն Դաւթի՝ գեղեցիկ և քաղցր ոճով մեկնօրէն ոտանաւորս արար. նա և զբազում խօսս Ս. Գրիգորի Նարեկացւոյն՝ տաղաչափականս շարագրեաց. այլ և զզանազան տաղս վասն կենաց մարդկան և զղջման, և այլն. յայսմ ամի աւարտեաց. զայսոսիկ զորս առ ձեռս ունիմ։

Մելքիսեթ կաթողիկոսն ի Լէօպօլսէ գայ յԵազլովցայ, ընդ իւր ուղեկից ունելով զՆիկողայոս արքեպիսկոպոս, որում տուեալ զգիր բանադրանաց, փետր. 15, ի վերայ Լէօպօլսեցւոցն՝ դարձուցանէ յաԹոռն. և ինքն չուէ ի Կամենից. ուր՝ մարտի 5, ձեռնադրէ եպիսկոպոս զԹորոս աբեղայն, երբեմն կանամբրի, Կամենցացի. առնէ զկտակ, մարտ 14, որով զաթոռն Էջմիածնի յանձնէ Սահակ կաթողիկոսին՝ եղբօրորդւոյ իւրում. վճարէ զկեանս իւր ի մարտի 18. և Թաղի յորմն եկեղեցւոյն Աւետման Ս. Աստուածածնին, զոր ինքն էր սրբագործեալ, ըստ կոնտակի իւրում։

Նիկողայոս արքեպիսկոպոսն դարձեալ ի Լէօպօլիս, դաշամբք ձեռնադրաց

ընդունի զնա ժողովուրդն. անտի եկեալ ի Կամենից՝ ասէ զմիաբանութիւն ընդ Կամենիցացւոց, ըստ կերպի նախորդացն իւրոց, Նոյեմ. 17. և ի Սիկիզմունտէ Գ-ժէն Լեհաց Թագաւորէն հաստատի առաջնորդ Հայոց՝ յամին 1629, մարտի 6։ Աստէն ի Կամենից, արքեպիսկոպոսն ձեռնադրէ քահանայ զՏէր Օնոփրիոսն, որում զկնի 22 աւուրց զառաջին պատարագել հրամայէ. բայց Գրիգոր Կեսարացի վարդապետն՝ որ յայնժամ անդ էր Նուիրակ Էջմիածնի, ընդդիմանայ. զի չէ պարտ նախ քան զքառասունսն նորընծային պատարագել. վասն որոյ արքեպիսկոպոսն զայրացեալ՝ զերկոսին եկեղեցիսն փակէ, և զԿեսարացին՝ զի մի՛ ի Լէօպօլիս անցցէ, վտարէ անտի. իսկ հեռացեալ աստի՝ զբանադրանս առաքէ Նիկողայոսի. որ՝ զայն իբրև անհաստատ ոչ ինչ համարի, գոլով ինքն ընդ իշխանութեամբ Սրբազան Փափին։ — Առաքէլ պատմիչ։

1629. ՌՀԸ. (Նիկողայոս արքեպիսկոպոսն) ժողովեալ զզօրականս ոմանս և զպրոցականսն Լեհաց, հանդերձ քահանայիւք և մեծամեծօքն Լատինացւոց, գայ առ մեծ դուռն եկեղեցւոյն, և զհայրապետական զգեստն զգեցեալ՝ հրամայէ արուեստաւորաց՝ բանալ. որոյ բացելոյ՝ ինքն սկսանելով զերգն Զքեզ, Աստուած, գովեմք, մտանէ յեկեղեցին երգովք և նուագարանօք, գոհանալով զԱստուծոյ. և յետոյ տիրէ բովանդակ գանձուց եկեղեցւոյն։ Վասն որոյ Լէօպօլսեցիքն դիմեն առ Մովսէս կաթողիկոսն, յորմէ և ոչ զմի գտանեն օգնութիւն. զի կաթողիկոսն գոլով ուղղափառ՝ հաճոյ էր նմա զոր արարն արքեպիսկոպոսն. ևս զի Թագաւորն և այլք՝ առ որս թէ և գրէին՝ ոչ կարէին այլապէս առնել։

1630. ՌՀԹ. Երարձ ի չարականէն Ով հրաշալի նախահարք, զերկու յետին տունսն, ի հերձուածողաց ոմանց յաւելեալս, որպէս յայտ է ի Թղթոյ նորա և առ մեր Լէօպօլսեցիս։

Կամենիցացիք, Ապրիլի 5, զմեծամեծս և զփառահեղ զանկականսն Ս. Նիկողայոսի հայրապետին չինել սկսան, և ՌՁԲ (1633) թուին աւարտեցին։ — Ի Ցիշատակարանէ։

Հոկտ. 22. Տէր Նիկողայոս Թորոսեան արքեպիսկոպոսն մեր՝ զդաւանութիւն ուղղափառ հաւատոյ արար ի Լէօպօլիս, առաջի Գ. Գ. Միքայելի ad Annunciatione Բոլոնիացւոյն կարմելիդաց Եզիայի a SS.mo Sacramento Բրիօրին կարմելիդաց Լէօպոլսի, և Տ. Թովմաս Էլծանովսքի Ցիսուեան, և այլոց բազմաց։ Բացատրէ ի նմին զամենայն յօդուածսն հաւատոյ, և իւր արարեալ առաջի Մելքիսեթեկ կաթողիկոսին ի ձեռնադրութեան իւրում ի նորին դաւանութեան՝ զուղղափառ դաւանութիւնն իւր։

Ցայսմ ամի գայ ի Լէօպօլիս Նուիրակ Մովսէսի կաթողիկոսի Խաչատուր վարդապետն Կեսարացի, որ մինչ արքեպիսկոպոսն ընդդէմ կամաց Նուիրակին հրամայեաց քահանայի իւրում ընթեռնուլ զաւետարան, դարձեալ ի ժո-

ղովուրդն՝ անէծ զնա, որ զկնի արքեպիսկոպոսին ծնրադրեացէ (1)։ Վասն որոյ տաւեալ ցասուցեալ ժողովուրդն ի վերայ արքեպիսկոպոսին, զի զդաւանութիւն արարեալ էր, և ի նուիրակէն ոչ երկնչէր, փակեցին զդրունս աթոռակալ եկեղեցւոյն. զոր տեսեալ արքեպիսկոպոսին զանօրէնութիւն նոցա ընդդէմ կանոնացն արարեալն.. — (այսպէս թողած է օրինակողն)։

1632. ՌՁԱ. Նիկողայոս արքեպիսկոպոսն Լէօպոլսի Հայոց առեալ ի Վլատիսլաւէ Սիկիզմունտէ թագաւորէն Լեհաց զճանապարհագիր, գայ ի Հռոմ առ Ուրպանոս փափն, տալով նմա զպարտական հնազանդութիւն. զոր մեծաւ պատուով ընկալաւ Սրբազան Փափն. շնորհեաց նմա զեմիփորոն արքեպիսկոպոսեան, և կոնտակաւ մակագրեաց զնա արքեպիսկոպոս Լէօպոլսի և բոլոր թագաւորութեան Լեհաց և Մեծի դքսութեան Լիթվանիոյ՝ ազգին Հայոց. նա այսպէս մեծարեալ դարձաւ յաթոռն իւր։

1636. ՌՁԵ. Խոճայ Մէշովցի Ցակոբշայի որդիքն՝ Վարդանն, Սահակն և Տօնիկն, զԼէօպոլսի դպրատան հաստակառոյց պարիսպն, և զդուռն Ս. Խաչի եկեղեցւոյն՝ ի հիմանց շինեցին յայսմ ամի. որպէս յարձանէն սեաւ մարմարինէն երեւի։

1638. ՌՁԷ. Առ Վլատիսլաւ թագաւորն Լեհաց՝ յայսմ ամի՝ յուլիսի 23, գրեցին խնդրելով զպաշտպանութիւն նորա ի վերայ կրօնին իւրեանց որ յԱսպահան՝ Հարքն Կարմելիտայք Բոբիկք. զոր և ընկալան ի Շահ Սօֆիէն՝ յամի Տեառն 1647, նոյեմ. 9, կոնտակաւ, ոչ միայն վասն Կարմելիդայից՝ այլ և առաւել Եգուիդայից միսիոնարաց, հաստատեաց.

1639. ՌՁԸ. Լէօպոլսեցիք՝ իբրև անօգնական մնացին ի Մովսիսէ կաթողիկոսէն, ապաւինին առ Փիլիպպոս կաթողիկոսն, յորմէ հազիւ զկնի երից ամաց ընդունին զպատասխանին, 1638. հոկտ. 12, յԱսպահան գրեալն. որով յորդորէ զայլ քաղաքացիսն օգնել նոցա, զսակաւ ինչ յոյս տալով. վասն որոյ ընդ Պատրի (Հայր) Պօղոսին Բիրոմալլի՝ զգլխաւորութիւն զմանց ի վերայ պրակաց հաւատոյ և սխալութեանց ոմանց՝ ի գրի հաստատեալք, առաքեն զնոյն Պատրին առ Ուրպանոս Փափն՝ յայսմ ամի, ուլիսի 2. թերևս հրամայեսցէ արքեպիսկոպոսին թոյլ տալ նոցա մնալ յառաջին կրօնսն.

...

1640. ՌՁԹ. Արդ, Ուրպանոս փափն գրէ թուղթ առ թագաւորն Լեհաց յայսմ ամի, ուլիսի 16, խնդրելով զի օգնեսցէ Նիկողայոսին. և առ Փիլիպպոս կաթողիկոսն, յորդորելով զսա բազում վկայութեամբք և օրինակօք, մանաւանդ Ս. Գրիգորի Լուսաւորչին՝ ընդ Ս. Սեղբեստրոսի փափին, և Ցլօրէնդիու Ս. Ժողովոյն միաբանութեամբն, գալ յուղղափառութիւն։ Ցանձն

1. Կարծուի թէ օրինակողն մոռցեր է այս տեղ գրել քանի մի բառ։

» Էջմիածնի՝ բոժին առաքեցէ, ամենեքեան հնազանդ լինիք։ Գրեցաւ թվին
» Հայոց ՌՃԲ, յապրիլի ԺԵ »։

Նիկողայոս արքեպիսկոպոսն դարձեալ ի Լէօպօլիս՝ գտանէ զնոյն Յօհան վարդապետն, որ էր Արղնցի, այր հանճարեղ և յոյժ գիտուն, որպէս և Վարդան արքեպիսկոպոսն մեր գրէ. սա խոհեմութեամբ իւրով հնազանդեցուցանէ զժողովուրդն՝ Նիկողայոսի, իբրև առաջնորդի իւրում, և հաշտեցուցեալ մուծանէ յաթոռական եկեղեցին զարքեպիսկոպոսն և զժողովուրդն, ոչ առանց արտասուաց և մեծի խնդութեան երկոցունց կողմանցն։ Զոր լուեալ Յան Գազիմիր թագաւորն, որ յայնժամ էր ի Լէօպօլիս, կոչեալ առ ինքն զՅօհան վարդապետն, բազում շնորհակալութիւն մատուցանէ նմա։ Եւ այնուհետև սիրով և խաղաղութեամբ Լէօպոլսեցիքն և միւս քաղաքացիքն վարեցան ընդ Նիկողայոսի արքեպիսկոպոսին իւրեանց, և ընդ յաջորդաց նորին։

1655. ՌՃԴ. Նիկողայոսն իբրև հնազանդեցոյց ինքեան զժողովուրդն Թեմի իւրոյ, սկսաւ կարգաւորել զհոգևոր իրողութիւնս եկեղեցեաց իւրոց. թոյլ տուեալ ոմանց իրաց, ոչ առանց խորհրդակցութեան Նունցիոսի փափին, առ ժամանակ մի։ Առնէ ժողով Թեմական յայսմ ամի, ապրիլի 8. առ որ գան և Կամենցացիք. յորում զբազում ինչ կացուցանէ՝ հաւանելով ժողովելոցն, ի տասն կէտս. յորոց չորրորդն է, զի ամուսնութիւնն՝ եթէ յերկոցունց կողմանցն ի չորրորդ աստիճանի իցէ, հաստատապէս հռչակեսցի, բայց ոչ առանց դրամի. բայց այս կէտս յետոյ խափանեցաւ, զի է ընդդէմ կանոնաց Թրիտէնտեան Ս. Ժողովոյն. որպէս տօնի Ծննդեանն Տեառն ընդ Յայտնութեանն առնել. և այլն։

1657. ՌՃԶ. Սիմոն վարդապետն Ջուղայեցի մեռաւ յայսմ ամի. գոլով ի Լէօպօլիս՝ ընդ Նուիրակին, ետես զտգիտութիւն իւր, զի և ոչ զքերականութիւն գիտէր. իբրև դարձաւ յերկիր իւր՝ այնչափ աշխատեցաւ ինքնին և առ այլս, զի ունեալ շարադրեաց զՔերականութիւն, որ եթէ այն է՝ զոր ես տեսի՝ ոչ է այնքան քամահելի, թէպէտ ոչ է ըստ արհեստի։

1662. ՌՃԺԱ. Աղեքսանդր Է փափն՝ ի խնդրոյ Նիկողայոսի արքեպիսկոպոսին՝ հիմնէ զԴպրատունն հայրապետական ի Լէօպօլիս, վասն երկոտասան աշակերտաց Հայոց. առաքէ վարդապետ նոցա զԿղեմէս Կալանոսն՝ աստուածաբան վարդապետն, յոյժ հմուտ լեզուին Հայոց, ի կարգէն Թէատինոսաց. յորմէ վարժարանէ ելին և ելանեն այժմ ևս բազում քահանայք՝ վարդապետք և եպիսկոպոսունք իմաստունք։

Նոյն Նիկողայոսն եկեալ ի Կամենից, ի խնդրոյ դատաւորացն՝ կոնդակաւ վերստին հաստատէ զոր ինչ յառաջագոյն դաշնագրեալն էր. և զՏէր Ներսէսն Հօլուպօվիչ օֆիցիալ Կամենիցու կացուցանէ յամի 1662, Նոյեմ. 8։ Եւ այսպէս հանդարտութեամբ և մեղմ յառաջելով ընդելացուցանէր զժողովուրդն։ Մինչև ցայս վայր ի Կամենից ոչ խառնէին քահանայքն զջուր ի սուրբ

պատարագն, զոր առնել հրամայեաց, և զայլ արարողութիւնս նմանս կացոյց․ վասն որոյ քահանայք և դատաւորքն այսու դժուարեալք, զգանգատանս գրեցին առ Բրինադելլի Նունցիոսն փափին, որ յետոյ փափ եղեւ անուամբ Ինոչենցիոս ԺԲ։ Որոց պատասխանէ Նունցիոսն, 1666, սեպտեմ․ 6․ զարմանալով, թէ զիարդ դժուարին զջուրն ի պատարագին ընդ գինւոյ խառնել, գոլով այս հաստատ սովորութիւն ի մէջ ամենայն ուղղափառաց, և ի ժողովոց իբր հարկաւոր սահմանեալ, և այլն։ Գրէ նոյն Նունցիոսն յամի 1667, յունուարի 3, և առ Նիկողայոս, զի զգանձն և զարդն եկեղեցւոյ՝ թոյլ տացէ պահել դատաւորացն, ըստ հին սովորութեանն, և մի՛ պահանջեսցէ ի նոցանէ զկելուր, այլ շատասցի պարգեւօք նոցին ըստ հրամանաց, զորոց գանգատեալք էին Կամենացիքն։

1666․ ՌՃԺԵ․ Կղեմէս Կալանոսն իտալիացի ի կարգէն Թէատինոսաց, աստուածաբանութեան և Հայոց վարդապետ… միսիոնար գոլով ընդ Հայաստան և ընդ Վիրս զամս 25, այնքան կատարելապէս ուսաւ զքերականութիւնն, զբովանդակ փիլիսոփայութիւնն, և այլն․ ի Հայաստանեայց դարձեալ ի Հռովմ, ուսոյց անդէն ի դպրատանն մերում զփիլիսոփայութիւն և զաստուածաբանութիւն՝ Հայոց արեւելականաց։ Անտի ի Լեօպոլիս եկեալ՝ զնոյնս արար․ յորոց բազում ընտիր վարդապետք ելին՝ հայրապետական դպրատանն․ ուր անխոնջելի աշխատութեամբ կեցեալ՝ հանգեաւ ի Քրիստոս, յայսմ ամի, և թաղեցաւ ի մերում աթոռական եկեղեցւոջն, ամաց…։ Սա մինչ էր ի Հայաստան՝ զզգեստ և (զձեւ) Հայոց աբեղայի կրէր, յաւուրս պահոց զձուկն ոչ ուտէր, զգինի ոչ ճաշակէր, թէպէտ վտիտ էր մարմնով․ զգիշերային ժամսն, զաղօթս և զայլն՝ ի միասին կատարէր․ ըստ այնմ, «Ընդ ամենեսեան ամենայն եղէ, զի զամենեսեան շահեցայց։»

1668․ ՌՃԺԷ․ Նիկողայոս արքեպիսկոպոսն վերստին գայ ի Կամենից, և զգովելի կարգաւորութիւնս եկեղեցականս առնէ յայսմ ամի, մայիսի 29, ի կէտս 19․ ի մէջ որոց են, զի քահանայն որ մկրտէ՝ մի անգամ ասասցէ Ես մկրտեմ յանուն Հօր, և այլն․ — զի զվերջին օծումն տացեն հիւանդաց․ — զգրեանս մկրտելոց, ամուսնացելոց և մեռելոց՝ ունիցին․ — զհերետիկոսական գիրս՝ մի՛ ոք իշխեսցէ գնել կամ վաճառել․ — Մի՛ ոք ի քահանայից իշխեսցէ վասն բազմաց զպատարագիս տուողաց՝ զմի միայն պատարագ մատուցանել, այլ այնքանս՝ որքան են տուողք․ — Զտօնս Ընծայման և Անարատ Յղութեան Աստուածածնին և Ամենայն Սրբոց՝ հանդիսիւ կատարել։ Եւ զայս ամենայն ընդ պատժովք նզովից իսկոյն անկելոց՝ սահմանադրեաց։

Յետ այսորիկ կոչի ի Ս․ Ժողովոյն՝ ի Հռովմ․ զի մի՛ զկնի մահուան նորա (քանզի էին այժմ 42 ամք եպիսկոպոսութեան նորա, և կենաց 72), Հայք ի կաթողիկոսաց առեալք զեպիսկոպոս, դարձցին յառաջին հերձուածն։

1670․ ՌՃԺԹ․ Գր․ Ստեփան Սարգսեան Ռոշքայ՝ հայր իմ՝ մեռաւ, մարտի 28․ եւ ընծայեցայ օգոստոսի 12 ըստ հնոյն, Լատինաց 22։

1671․ ՌՃԻ․ Յօհաննէս Քարմատանեանց Լէօպօլսեցի եպիսկոպոս սուֆրականն (օգնական կամ տեղակալ), մինչ Նիկողայոս արքեպիսկոպոսն էր ի Հռովմ, կառավարէր զեկեղեցիս մեր․ զբաղում բարեկարգութիւնս արարեալ՝ տրամադրեաց զՊատարագատետրն և զՄաշտոցն Հայոց՝ քաջ ուղղափառ, եղեւ ի Հռովմ․ և զկնի աշխատանաց հանգեաւ ի Քրիստոս, յամի Տեառն 1678։

1675․ ՌՃԻԴ․ Նիկողայոս արքեպիսկոպոսն թոյլատուութեամբ Ս․ Ժողովոյն, ընտրէ և ձեռնադրէ յաջորդ իւր զՏէր Վարդան Յունանեան, անուամբ եպիսկոպոս Եպիփանիոյ․ և առեալ զիշխանութիւն ի Սրբազան փափէն, զպարգեւս զանազանս և զմակագրութիւն ընտանի և առընթերակաց Բրէլադի և Գավալերի Ս․ Միքայէլի, դառնայ ի Լէօպոլիս։ Անդ բազում ուղղութիւնս, զայցարարութիւնս եկեղեցեաց, զեղբայրակցութիւն Ս․ Գրիգորի Լուսաւորչին և զԱստուածածնին սահմանէ և հաստատէ ի Լէօպոլիս։

Վարդանս այս էր որդի Յունանու քահանայի, ուստի Յունանեան կոչեցաւ, ի Ճագու գեղջէն մերձ Թօխաթու․ էր ճարտար գրագիր, ուշիմ և հմուտ բառիցն Հայոց։ Երթեալ յԷջմիածին, և անտի ընդ Նուիրակի գայ ի Լեհաստան․ ուր զբարեկարգութիւն և զուղղափառութիւն Հայոց տեսեալ՝ մտանէ ի Դպրատունն Հայոց․ ուստի զկնի ուսանելոյն ինչ լատիներէն՝ գնայ ի Հռովմ, և ի դպրատանն Ուրբանեան ուսեալ կատարելապէս զլատին լեզու, թարգմանէ (զԱռաջնորդ?) յերկինս, յամի Տեառն 1671․ տպի գեղեցիկ ոճով, բայց խրթին և նոր բառիւք։ Զկնի արքեպիսկոպոսին Նիկողայոսի՝ ոչ շատ յամեցեալ և ինքն ի Հռովմ, դառնայ ի Լէօպոլիս․ բայց զի Նիկողայոս առոյգ էր և առողջ, առեալ զհրաման ի Ս․ Ժողովոյն՝ երթայ ի Հայաստան քարոզելոյ աղագաւ․ ուր ընդ ամս իբր տասն տեւէ։

1681․ ՌՃԼ․ Նիկողայոս Թորոսովիչն արքեպիսկոպոսն Լէօպոլսի գոլով ամաց 85, յայսմ ամի մարտի 21, յետ անպատմելի աշխատանաց իւրոց՝ արդեամբք լի հանգեաւ ի Քրիստոս, ի Լէօպոլիս։ Սա էր որդի Պարոն Յակոբայ Թորոսովիչ մեծատան Լէօպոլսեցւոյ․ այր փառահեղ, քաղաքավար, խոհեմ, ճարտար յառնելիսն, և ամենայն գովեստից արժանի․ զի երկարաձիգ ամաց տաժանմամբն՝ երկիցս ի Հռովմ, երկիցս յարեւելս երթալով, զազգ մեր Հայոց ի Լեհաստանն՝ ի հնազանդութիւն սուրբ մօր եկեղեցւոյն Հռովմայ դարձոյց․ յորմէ և ի Մաճառս և յայլ տեղիս ուղղափառութիւնն սփռեցաւ․ զսէր և զպատիւ ազգիս մերոյ՝ առ ամենայն ազինս բարգաւաճեաց․ զանուն անմահ յիշատակի ինքեան թողեալ։

1875․ ՌՃԼԴ․ Ստեփաննոս Լէօպոլսեցի վարդապետն Լեհացի, յազատ

տանէ Գերնաղավեանց, որ ի սկիզբն միաբանութեան մերոյ ընդ Հռովմայ սուրբ եկեղեցւոյն՝ ի ծննդացն յԷջմիածին տարաքեցաւ, և զի զճարտասանութիւնն լատինական ուսեալ էր ի Լէօպոլիս, թարգմանեաց քաղցր ոճով ըզԲուրաստանն աղօթից, զմասն ինչ Հին պատմութեանն Յովսեփայ հրէի, ըզԴիոնեսիոսի Արիսպագացւոյն վերստին թարգմանեաց գիրսն. նա և զգիրս Պատճառաց յ՚36 պրակս, և զՀայելին վարուց։ Յետոյ բարի վարուք և ուղղափառութեամբ զկեանս իւր վճարեալ՝ հանգեաւ ի Քրիստոս, մօտ յայսմ ամի։

1686. ՌՃԼԵ. Մինաս վարդապետն Թոխաթցի Չիլիֆտար օղլու կոչեցեալն, եպիսկոպոս Գուղտանու (յորմէ եւ գչորս տառիճանս առի յամի Տեառն 1680), ի դառնալն ընդ լերինս Մաճառաց, ի միզարգելութենէ՝ զոր ի բազում ամաց կրէրն՝ տանջեալ, վախճանի. Թաղի ի գերեզմանատանն Օլախաց. ի վերայ գերեզմանի նորա բազում անգամ ի կիրակամտի լոյս յերկնից իջանէ. զոր ականատեսք և արժանահաւատ արք տեղւոյն՝ պատմեցին մեզ։ Սա էր ճգնազգեաց, սրբակրօն, պահեցող և աղօթասէր. մինչ զի յամենայն աւուր զութ կանոնս սաղմոսացն Դաւթի՝ անխափան ասէր. ոչ երբէք մերկանայր զհանդերձսն յանձնէն, այլ նոքօք կծկեալ ի վերայ բարձիցն ննջէր. ի գիշերին բազմիցս անգամ ելեալ ի մահճէն՝ սաղմոսելով շրջշրջէր ընդ տնիկն իւր։ Որոյ ականատես բազմիցս ես ինքն եղէ։

Վարդան Յունանեան լուեալ զմեռանելն Նիկողայոսի արքեպիսկոպոսին Լէօպոլսի, հնարիւք ելեալ ի Հայաստանեաց՝ գայ ի Լէօպօլիս, և տիրէ աթոռոյն, զոր ընդ ամս 29 կառավարէ բարի վարուք։ Ի սոյն ամի ընդունի յիննոչենցիոսէ ԺԱէն զանուն արքեպիսկոպոսի և զեմիփորոն, և ի Ս. ժողովոյն՝ զհազար սկուտս, զորս ոչ էր առեալ իբրեւ եպիսկոպոս ընդ ամս տասն. արուեք զտիպ (գրոց) գնելոյն կազմեաց, զոր յափշտակելով յետոյ Շվէտացն, խափանեցաւ գործ նորա։

1689. ՌՃԼԸ. Աստուածատուր վարդապետն ի Մշու Ս. Կարապետին վանաց, և Տէր Քրիստոսատուր Մնտրողն՝ տւագերեցն Սեչովու և այլք, զուղղափառ հաւատոյ դաւանութիւն արարին առաջի Գեր. Վարդանայ Յունանեան արքեպիսկոպոսին մերոյ ի Լէօպոլիս, գոլով իմ ներկայ, փետրուար ամսոյն։

Սինհոդոս արարին մերայինքս ի Լէօպոլիս, հոկտ. 10, վերակացու գոլով Գեր. Տէր Նունցիոսն Կանդելմի և Վարդան արքեպիսկոպոսն, վասն սրբագրելոյ զՊատարագատետրն, և այլն. որոյ աղագաւ տաղեցաւ ի Հռովմ Աստուածատուր եպիսկոպոսն Ներսէսեան։

1690. ՌՃԼԹ. Մովսէս վարդապետն և եպիսկոպոս Երեւանցի, երկիցս զմեծ նուիրակութիւնս Էջմիածնի արար. եկն ի Լէօպոլիս, յունվարի 25, և

առաջի Վարդանայ արքեպիսկոպոսին մերոյ զուղղափառ դաւանութիւն արար․ անտի գնացեալ ի Վիեննայ, առնու ի Լէօպոլտէ կայսերէ զհրաման շինելոյ զեկեղեցի ի Պելկրատ․ ուր սկսանի, բայց ի դիմելն Տաճկաց ի վերայ Հայոց? (դադարէ)։

1693․ ՌՃԽԲ․ Պարոն Ծառուկն Ազնաւուրեան պապն իմ՝ 105 ամաց, բարեպաշտաբար փոխեցաւ յաստեաց, ուլիսի 10, ի Լէօպոլիս։

Մխիթար վարդապետն եպիսկոպոսն Մոկաց, Լալուակ Միխոյ կոչեցեալ, եկեալ ի Լէօպոլիս, առաջի Վարդանայ Յունանեան արքեպիսկոպոսին մերոյ արար զդաւանութիւն ուղղափառ հաւատոյ։

1695․ ՌՃԽԴ․ Սիմէոն Աղուանից կաթողիկոսն՝ ընդ որոյ իշխանութեամբ են Շամախի, Կանձայ, Շիրուան և Ղարապաղ, քաղաքք և գաւառք, առ սոյն Հայրապետն (Իննովկ․ ԺԲ) զպատուական թուղթ հնազանդութեան և դաւանութեան գրեաց, զոր ես թարգմանեցի․ ի վաղուց հետէ զինքն հնազանդ ասէր եկեղեցւոյն Հռովմայ գրէ․ խնդրէ ի սրբազան փափէն զյանձնարարական թուղթ առ արքայն Շահ սուլթան Հուսէյինն․ որպէս զի ըստ առաջին թագաւորացն Պարսից՝ անխափան կարասցէ ինքն հովուել զհօտ իւր․ և ընկալաւ։

Ներսէս վարդապետն Երեւանցի (կամ Վրացի) կանոնիկոս Վիեննայի, զայսու ժամանակի վախճանի։ Սա ի դպրատանն Ուրպանեան աշակերտեալ և ուսեալ զգիտութիւնս, և զի ոչ գոյր ի Հռովմ հայ եպիսկոպոս՝ յորմէ քահանայ ձեռնադրիւր, գայ ի Լէօպոլիս, հրամանաւ Ս․ Ժողովոյն, և յարքեպիսկոպոսէն Նիկողայոսէ քահանայ օրհնի․ անտի դարձեալ ի Հռովմ՝ հանդիպի ի Վիեննայ, յորժամ սաստիկ ժանտամահն էր անդրէն․ ուր աներկիւղ պաշտէ զխորհուրդս եկեղեցւոյ՝ ախտացելոցն ժանտամահուամբն․ թաղէ եւս․ վասն որոյ եպիսկոպոսն Վիեննայու՝ իբրեւ դադարեաց մահն, գիտացեալ զսորա բարութիւնն, թոյլտուութեամբ Ս․ Ժողովոյն առնէ զնա պէնէֆիցիատոս (ժառանգաւոր) աթոռակալ եկեղեցւոյն Ս․ Ստեփաննոսի Նախավկային։ Յառնուլն Լէօբոլտի կայսեր զԲուտայ ի Տաճկաց, զՏէր Ներսէսն վասն թարգմանութեան թղթի Հայոց ուրուք՝ որ ի Բուտայն էր և զհուր (!) ետ պարոնութիւնն, առնէ զնա պաղատան իւրոյ երէց, որ կոչի Գաբելլան, և յետոյ կանոնիկոս նոյն եկեղեցւոյն․ Սա որպէս ինքն իսկ պատմեաց ինձ՝ (զի էր իմ մեծ բարեկամ), զ՚1,200 տաճիկս կերեալս՝ մկրտեաց։

ԶՇէհրիմանեան տոհմն՝ Լէօպոլտոս կայսրն՝ յայսմ ամի, մայիսի 23, անուամբ կոմսից թագաւորութեանն Մաճառաստանեայց՝ կոմսակաւ վայելչացոյց․ որոյ ես թարգման եղէ․ և վեհագոյն հայրապետքն Հռովմայ և այլ իշխանք՝ զնոյն մակագրութիւնն շնորհել նոցա սովոր են։

Քահանայ մի երգմնեցուցիչ իտալիացի՝ յայսմ ամի ուլիսի 8, առաջի իմ բազում աշխատութեամբ ընդ 15 աւուրս, զ՚700 հարիւրապետս դիւաց զօ-

*բօքն խուրեանց (!) հալածեաց ի դիւահարեալ կնոջէ, քեա անտեսին մերոյ, ի մատուռն դպրատան մեր Հառվմայ։ Զարմանալի էր քահանայս այս մեծահասակ և յոյժ խոնարհ, որ մինչև ցայժմ զ45 դիւահարս ազատեալ էր։*

1704. **ՌՃԾԳ.** *Սվէտքն յետ հարկանելոյ զՍաքսոնս, սկսանին զԼեհաստան հարկիւք կողոպտել. գան ի Լէօպոլիս, և զի քաղաքացիքն ոչ զհարկս կամեցան տալ և ոչ ի ներքս մտանել թոյլ տալ, մատնութեամբ ոմանց առին զքաղաքն, սեպտեմ. 6. և իբրև զերիս ժամս աւար առին. ապա զդրամս 200,000 դալերաց ի քաղաքացեացն, յարքեպիսկոպոսացն և յամենայն եկեղեցեաց բռնութեամբ առին. ուստի և աթոռակալ եկեղեցին Հայոց զբազում սկիհս, զխաչս և զայլ արծաթի կահս՝ ետուն փոխանակ դրամոց։ Իսկ յետ չուելոյն անտի Շվետաց՝ ժանտամահ մեծ անկաւ ի քաղաքն Լէօպօլիս, յորմէ 10,000 հոգիք կորեան. նոյն մահն և յայլ մերձաւոր տեղիս սփռեցաւ։*

1736. **ՌՃՁԵ.** *Ծանեայ զոմն (քսան ամք են) իբր զնուիրակ, որ զսուրբ մասունս՝ աշխարհականաց գնահատեալ էր ի Պօշանն, և յայլ քաղաքս՝ Նաքօք Պուղտանաց առաքեաց։ — Բայց լաւ ոչ կարեմ զանօրէն արարն Կիրակոս վարդապետին, որ երկուք ամօք յառաջ ի քաղաքին, ի մէջ եկեղեցւոյն առաջի ժողովրդեանն՝ զխորհրդատետր մի ծիւ ծիւ արարեալ այրեաց, և կողիւքն զգլուխ քահանայի միոյ ծեծեաց։ Գարշելի է ինձ զայսպիսեաց գրելն, բայց զանգատքն ոչ տան թոյլ* (1)։

1. *Ռոշքեանն զայս գրած է ի թղթին առ Աբրահամ Գ կաթողիկոս, ի 10 մարտի, 1736։*

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Է

## Տ. ՅԱԿՈՎԲԱՅ ԲԱՂՏԱՍԱՐԵԱՆ

# ՕՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ԴԻՊՈՒԱԾՈՑՆ ՄԵՐՈՑ ՅԵՐԿՐԻՆ ԼԵՀԱՑ

### ՅԱՄԻ ՏԵԱՌՆ ՌՋԴ (170 սեպտ.)



Ի սեպտեմբերի 5. — Յաւուր վեցշաբաթու, եկին Սվէտք լութերականք ի Լէօպօլիս, իբր 30,000ք, որք յերից ամաց և այսր զաւերս բազումս ա-ծեալք էին երկրիս Լեհաց, և զոճիրս ոչ սակաւս գործեալք յամենուրեք. Ո-րոց ի գալն՝ զոլով իմ յարտաքաղաքի անդր, ելեալ ի վանաց Ս. Աննայի, գնացի առ Ս. Խաչն, որ է հանդէպ նոյնոյ վանացն ի վարժատանն քահա-նայապետական, իբր առ տեղի ապահովագոյն։

6. — Յաւուր շաբաթու, նախ քան զլուսանալ այգուն, առին զքաղաքն, որպէս ասի՝ մատնութեամբ, և սպանին զանձինս 180, որք յառաջնում դիմմանն պատահեցան նոցա, որ և զտունս բազմաց՝ մանաւանդ Հայոց՝ յա-ւար հարին. ընդ որս և զտունն մեր՝ որ ի քաղաքի անդր, հուպ եկեղեցւոյն։

7. — Ի կիրակէի յաւար հարին ևս զարտաքաղաքն, որպէս և զվանքն մեր, և զմնացեալ կահն կողոպտեցին։ Ճէնէրալն Ըշտէմպէք՝ այր զռռող և անողորմ, որ յերեկեան աւուրն հրամայեալն էր աւարել զքաղաքն, այսօր պահանջեաց ևս ի նոյնոյ քաղաքէն զհարկ 300,000աց զուռուշից, որ և զդատաւորս Լեհաց և Հայոց, նաև զեկեղեցականս ժողովեալ յաշտարակ Դատարանին՝ փակեաց, ասելով. Ոչ ելանէք աստի՝ մինչև զհարկն նախա-սացեալ ո՛չ բաժանիցէք ի վերայ եկեղեցեաց, եկեղեցականաց, և այլոց քա-ղաքացեաց, որպէս զի ցաւուրս տասն բովանդակ զումարտակն հատուցա-նիցէ ինձ. որ եթէ մինչև ցնախանշանակեալ օրն ոչ վճարեսցի բոլորն, բըռ-

նութեամբ զինուորայ իմոց պահանջեցից։ Յայսմ վայրի դատաւորքն անեն‐
թաղատք՝ բարդեալք ի վերայ իմ զղուռուշս հազարս, ոչ առ չքաւորութեանս
և ոչ յաւարումն գոյիցս նկատելով, յերկրորդումն աւուր առաքեցին առ իս
զվճիռ գնահատութեանն, ծանուցանելով զանդանգաղ հատուցման հարկաւո‐
րութիւն։ Իբրև տեղեկացայ զիրքն և զմտաւ ածի զանկարելութիւն հատուց‐
ման, գոլով թափուր յամենայնէ զոր ունէի (թէ և սակաւ), ես զվտանգն որ
ի վերայ կայր՝ անկանելոյ ի ձեռս հերետիկոսաց, խուսել խորհեցայ առ ժա‐
մանակ մի. բայց զի ոչ գրաստ գտանիւր, և ոչ թէ և գտանիցիւր՝ ունէի
զդրամ վարձու, բաց ի 14 զլօթայից Լեհաց, որ պակաս քան զերկուս ղու‐
ռուշս լինէր, եղերեցի յինքեան՝ հետի խուսիլ ի տեղւոջէն, թէ և տկար
և ծեր։

10. — Ի չորեքշաբաթոջ զոմանս իւրս զորս տակաւին ընդ իս ունէի, առ‐
աքեցի առ Տ. Ստեփաննոս քահանայ Ս. Խաչին, ի պահեստ, և զգրեանս
թողի առ Հարս Վարժարանին. որոց և յայտնեցի զխորհուրդ գնալոյս զան‐
խուլ, բայց ոչ զուրն. և յանձնեալ զմանուկն իմ նոցա, երեկոյին պատճա‐
ռեցի գնալ ի գնին մնասու վանացն, առեալ ընդ իս զխահարարն իմ և զերիս
նկանակս հացի։ Եւ տեսեալ զդրունս բնակութեանն քարաշինի խորտակեցեալս,
ի ներքս զանօթս ապակեղէնս փշրեցեալս, և ի յատակ տանն ցրուեցեալս
զսեղանս, և զառարմունս կոտրատեցեալս, ոչ համարձակեցայ անդէն ագա‐
նիլ , այլ գնացի ի տուն խահանոյին, յայսմ ամի յինէն նորոգեցեալն, և
գտի զդրունս նորա ամբողջս։ Եւ անդէն գերծեալ զմօրուս, և թեթևացու‐
ցեալ զհերս գլխոյս, առ ի չճանաչելոյ յումեքէ դիւրակի, օթեցի անդէն.
բայց մեծաւ երկիւղիւ ի Սվէտաց, շուրջանակի բնակողաց. այս է ի վանս
Ռուսաց, ի գերդաստանի Իուշքէվիցին, Իուբքէվիցին, և Սթէցքէվիցին.
գուցէ ի գիշերի կամ ըմբռնիցէին կամ սպանանիցէին, և լինեցէի ինքնա
ինքեան մահուան պատճառ։ Ուստի յոյժ մեծատաժան գիշեր եղև այն ինձ,
և բնաւին ընդ բոլոր ցայգն՝ կուք մի ո՛չ անկաւ յաչս. նախ, ի կասկածա‐
նաց թշնամեաց, որպէս ասացի. երկրորդ յանսուաղութենէ, զի ի տկարու‐
թենէ անցելոց աւուրցն, և ի մտատանջմանէ՝ զոյն ինչ ճաշեցի, և յերեկոյին
զոչինչ. երրորդ, յանբաւութենէ լուոց, զորս թողեալք էին ի տեղւոջն՝ ողոր‐
մելիքն չինականք, որք նախ քան զգալն Սվէտաց փախուցեալք բնակէին
անդ իմով թոյլատրութեամբ, և ի գալ թշնամեաց՝ վերստին յայլուր թագու‐
ցեալք էին։ Այսց ուրեմն պատճառաց վասն ամենամեծ տագնապաւ ոգւոյ, և
մարմնոյ անհանգստութեամբ՝ տապեցա մինչև ցերկրորդ հաւախօսն։ Վերայա‐
ւելաւ առցին եւս տարակոյս, զի բաց յ'անցելոյ աւուր անձրևոյն՝ յայնմ գիշերի
ոչ դադարեաց անձրևել. և ես ոչ զկոշիկ և ոչ զտրեխ իսկ ունէի, այլ զհա‐
նապազորդեան հողաթափն ևեթ, որով ելի ի դպրատանէ անտի. և թվիւր
ինձ անհնարին՝ այնու գնալ զառաջիկայ ճանապարհն չաղախային, եթէ ոչ
բոկոտն։

11. Ուրեմն, ի հինգշաբաթոջ յերկրորդում հաւախօսին՝ թէ և մթնազի‐

չեր և հողմայոյզ էր, և տակաւին մեղմաբար անձրեւիցէր, յանձնեալ զիս Աստուծոյ և Սրբոց խնամակալութեան իմոց, մանաւանդ հրեշտակիս պահապանի և Սրբոյն Կայէթանոսի, աշխարհականաւ զգեստու, հետևակ, ցուպ ի ձեռին ելի ի վանացն, ունելով առ իս զ՚14 զլօթիս Լեհաց, որպէս ասացի։ Ցառաջագոյնացութեամբ սպասաւորիս դիմեցի դէպ ի կախաղան քաղաքին, ուստի համարէի աջողակի անցանել. զննելով զաւազանաւ զուղին՝ ի փոխելն զքայլս՝ վասն մթանն և տղմոյն։ Եւ հասեալ ի ջաղացն՝ որ առ ստորոտով լճին Պուղտանուվքայի, լուայ զձայն Սվէտայ ի նմին և երկեայ. այլ և շունն ի դրաց սկսաւ հաջել։ Աստ սաստանումն և ահ մեծ, զուցէ յազդմանէ շանն արտաքս ելեալք՝ զգանութիւն ինչ առնիցէին ընդ մեզ. որ և յերկիւղէ անտի դողումն ծնկաց և բոլորի մամնոյս կալաւ զիս, մինչ գրեթէ յոտին կալ ոչ զօրիցէի. սակայն արտապնդեցեալ յուսովն Աստուծոյ և Սրբոց խնամակալութեանս, զորս ջերմապէս վերակարդայի, փութացայ յառաջել և անդր։ Իբրև հասի ի խրամ լճին վերասացելոյ, ուր գերան մի փոխանակ կամրջի ձգեցեալ էր, և կամէի ընդ այն անցանել, զի չէր յայլուստ հնար, յանկարծ լպրծեցեալ ոտս՝ անկայ ի վերուստ ի խորն տղմալի ձախակողման. որ եթէ գահավիժեցեալ իցէի յաջակողմն կամրջին ի խորխորատն որ ստորև կայր, արդարև կամ բեկումն անդամոց կամ մահ իցէր հետևելոց։ Արտաքարշեցեալ անտուստ ի սպասաւորէն, գնացաք ընդ ուղիս շաղախուտս՝ ցանկամիջոց Պուղտանուվքային. մերթ անցանելով աստ և անդ ընդ խրամս պարտիզաց և ծառատնկոց, զի խոտորիցէաք ի ճանապարհէն հասարակէ, զուցէ պատահիցիւր ոք ի Թշնամեաց. ոչ սակայն կարէաք ի Սվէտաց խուսել, որք գրեթէ յամենեսեան խուղս կողմանցն, որպէս և ընդ բոլոր արտաքաղաքն շուրջանակի լիք էին։ Եւ իբրև հասինք ի գերեզմանատունն Հրէից, զի ընդ այն անցանելոց էաք, արտաքս ի խըղէ իմեմնէ վազեալ Սվէտ մն, խրոխտականաւ ձայնիւ՝ ոչ գիտեմ զինչ բարբանջելով՝ տարաբերիւր անդաստական. որոյ յերկիւղէն՝ ի տեղւոջն ուր կայաք՝ ի մէջ մացառացն խտից կըկզեալք գաղեցաք։ Իբրև երիցս կամ չորիցս զնոյն բարբառ կրկնեալ՝ եմուտ վերստին ի խուղն, անդէն յարդեցան ձայնք աղմկաց խառնիճաղանճք. և գիտացի բանակռուիլ նոցա ընդ իրեարս. ապա յարուցեալ դիմեցի դէպ առ ուղին արքունի՝ որ ընդ կախաղանաւն, որ զերծ ի բնակութեանց է. և անտի խուսեալ դոյն ինչ զառ ի վեր և դարձեալ զառ ի վայր, ընդ պարտիզօքն՝ որք ի կողմանս վանաց Սրբոյն Գէորգեայ և Մարիամայ Մակդաղենացւոյն, ընդ մացառուտս և եղէգնս դժուարինս և մարգս և ճախինս որք ի նոսա, յ՚որս բազմիցս անկանելով, և օգնութեամբ սպասաւորին կանգնելով, հասի ի տափարակն անշէն. ուր և լուսաշաղեցաւ այգն։ Աստէն զտեղի առեալ՝ գոհացայ մեծապէս զԱստուծոյ՝ ընդ փրկելն զմեզ յայնքաններց վտանգից գիշերոյն և Թշնամեաց, ընդ որոց միջի անցայց անմնասս։ Եւ ի խոկալս թէ յոր կողմն դիմիցէի անքոյթագոյն, թէ և ի մտի եդեալ իցէի գնալ ի Սթանիսլավօվ, շրջակն ածեալ՝ տեսի զխուրց իմն ընդարձակ ի հանդիպոջն արևե-

լեան Հարաւոյ, և անդր քան զայն անտառ իմն՝ որպէս Թուիր ծառախիտ, անդ եզերեցի զնալ, Թերևս ընդ Թաւ ստուարԹեաւ ծառով իմիւ նպաստաւորիցէի ի յորդուԹենէ անձրևոյն՝ որ տեղայր։ Բայց Հասեալ անդէն՝ գտի զընդդիմակն. զի ոչ միայն ցանցառք էին ծառք, ոստք նոցին և սաղարԹք, այլ և ի ներքոյ նոցա ջուր ծովացեալ յանձրևոյ, գոլով տեղին գոգ և գիճային մարգ։ Վրիպեցեալ ուրեմն ի յուսոյ, Հարկեցայ դիմել և անդր, գուցէ ուրեք գտանիցիւր սփոփումն. և ոչ էր. այլ և մառախուղ Թանձր շրջագեղաւ, Թէ և անձրևն մեղմացաւ, և Հողմն ցրտաշունչ յարեաւ. որով պատճառաւ մոլորեցեալք և Թափառականք՝ այսր և անդր շրջաբերեցեալք ընդ խոռափիտս, ձորակս և Հեղեղատս, մերԹ շաւղօք մերԹ անՀետիւք վայրօք տատանեցաք մինչև ցՀասարակ օր, որպէս Համարէաք։ Ապա մառախուղն մերժեցեալ, այլ անձրևն յորդեցեալ՝ նշմարեցի զիմն ի մէջ խորշին՝ մարդանման. և մինչ զանգիտելով զտեղի առեալ յղեցի զսպասաւորն ի զնին, պատուիրանաւ զգուշաբար Հայելոյ և տնտղելոյ, ահա կոճ ծառի էր. տես, Թէ երկիւղն զինչ ոչ երևակայացուցանէ մարդոյ։

Աստ կալաւ զիս տարակոյս մեծ՝ ի խորՀելն զներկայն և զապագայն. զի անձրևել ոչ դադարէր. զի զգենլիք ամենեքեան Թացեալք մինչև ցշապիկ՝ ծանրացեալք էին ի վերայ իմ, յորոց կաԹէր ջուրն. զի ցուրտն տոկայր, զի շինուԹիւն ուրեք ոչ երևէիր, ի նպաստ այնքանեայ անճարակուԹեան. զի տեսանէի զճախին ընդարձակ ի ձորակին՝ ընդ որ անցանել մարԹ էր, որ ինձ էր անՀնարին. զի զտեղի առնուլ զանգիտէի, գուցէ ի ձեռս Պուղտանեցւոց աւազակաց կամ Սվետաց ցրուեցելոց ամենուրեք յապուր՝ անկանիցէի։ Ի մէջ այսպիսեաց ուրեմն վշտաց փաղակեցեալ, մինչ վարանէի տխրագին, սպասաւորս՝ որ էր առոյգ և ուժեղակ երիտասարդ, քաջալերեալ զիս՝ էառ ի շալակ իւր՝ իբր զողայ իմն, և անցուցեալ ընդ ճախինն, և Հանեալ ի վեր ի բարձրաւանդակի միում զետեղեաց. ինԹէրիմ (մինչ այս մինչ այն) անձրևն սկսաւ նուազել, և դադարեաց Հողմն։ Ամբարձի զաչս ի բլրակէ անտի շրջաՀայել, և ահա շինուԹիւն իմն ոչ Հեռի ի տեղւոյէն երևէիր. և ուրախացեալ Հանգչեալ անդէն սակաւ ինչ. և նկանակ մի Հացի ընդ սպասաւորին կերի. և յարուցեալ դիմեցի ի շէնն, Համարելով գտանել զդիպաւորուԹիւն իմն։ Իբրև շրջապատեցի զբոլոր պատուարն՝ որ մեծ արդեօք էր, և Հասի ի դուռն, ծերունի ոմն պատաՀեցեալ՝ Հարցմանս պատասխանեաց. Այս դերդաստան տեառն Սիմոնովիցի դատաւորին Լէօպօլսոյ է, և չիք ի ներքս ոք, և տունքն ամայիք են. բայց եԹէ խոնարՀագոյն զիջանիցես՝ Հուպ արդեօք է գեօղ. և Թերևս գտանիցես դիպաւորուԹիւն ի նմին։ Ապա դիմեցի զառիվայր, և դիպեցայ լճի, որոյ ի ծայրն երևէիր գեօղ մեծ. այլ ծուխ և ոչ մի ելանէր, և զարմացայ. Թանտէմ (tandem, և սակայն) գտեալ զկոպար լճին, անցի ի գեօղն. և շրջեալ ընդ տունս բազումս՝ գտի զդրունս քակեցեալ և զոչ ոք ի ներքս. և վՀատեցեալ նստայ ընդ խոտաղիզաւ միով ի Հանգչել. և յղեցի զսպասաւորն որոնել ընդ ամենայն շէնն, Թերևս գտանիցէր ոք որ ժողովիցէր

զմեզ ի տուն իւր. և դարձաւ ունայն։ Աստէն եկին ի միտս դիպուածք Նախնեաց զանազանք ի գրոց սրբոց և յարտաքնոց պատմութեանց. Նախ, առածն իմաստասիրաց հնագունից. յորոց յիշմանէն եւ թաղծեցայ եւ յուսադրեցայ։ Ցարեալ անտի՝ նշմարեցի բացազոյն ի ծայր գեղջն զեկեղեցի քարաշէն և մեծածախ. դիմեցի սատէպ առ այն, զուցէ զոք գտանիցէի, զոնէ ի տեղեկանալ զուրանօր լինելոյս. և ահա խոզարած ոմն ածէր զաւակս խոզեան, և իսկոյն ի տեսանելն զմեզ՝ թողեալ զխոզեանն ի փախուստ դարձաւ. որոյ զհետ պնդեալ սպասաւորին՝ հազիւ դարձոյց, ասելով. Ծանօթք քահանայի գեղջս եմք, և ոչ օտարք կամ մեծատկարք։ Իսկ ի խօսակցելն ընդ նմա՝ գտի արդարեւ բիրտ, սոպռ, կոպիտ, տառ և տմարդի, և արժանի գործոյն եւթ իւրոյ. զոր մեծաւ աղերսմամբ և շողոքորդութեամբ հաւանեցուցի մուծանել զմեզ ի խուղ իւր. առ որ մտեալ՝ ափսոսացի զաղաչանս այնպիսւոյ առն զարարեալս, վասն այնպիսւոյ տան աղքատոյ, ժահահոտի և տղմամածի ի կաթլեաց առաստաղին. ուր անբաւութիւն ճանճից, որք գրեթէ յական մարդոյ մտանէին, և լուոց ոչ սակաւ բազմութիւն. և ոչ իմն տեղի հանգստեան կամ աթոռիկ մի նստելոյ։ Ցեցեալ ուրեմն յորմն և ի զաւազանս՝ տխրագին վարանէի. զի ի խոնաւութենէ զգենլեաց՝ ստուցեալ դողայր բոլոր մարմինս, և ի կափկափմանէ ատամանցս հազիւ բաւէի խօսել, և թուէր թէ քաղիւր ոգիս, և իցէր արդ արդ վերահասեալ կէտ վերջին կենիս (կենացս)։

Ցայսմ տաժանման մինչ կայի, ոչ գիտեմ ո՞րպէս՝ մրափեցի, և տեսի յանուրջս զՍուրբն Կայեթանոս, այնու զգեստիւ որով նկարեցեալն է ի մատրանն պալատին իմոյ. որ զուարթագունիւ դիմաւ ասաց ցիս. Ընդէ՞ր այդքան վհատիս. քաջալերեաց, մի երկնչիր. արտաքոյ վտանգի ես։ Ի լսել զբանս զայս յուսադրական, իբրեւ կամէի փարիլ ի խնդութենէ զոտիւք Սրբոյն, սահեցեալ յորմոյն յոր յեցեալն էի, անկայ ի գետին, և զարթեայ։ Ի սկսանելս գոհանալ զԱստուծոյ և զՍրբոյն, յանկարծ լուայ զգոփիւն ոտից երիվարաց և զձայնս խօսից մարդկան առ դրանն, և երկեայ յոյժ. համարելով թէ խնդրակք իցէին զկնի հասեալք. և զի՞նչ իցէր յուսալի, եթէ ոչ կամ ըմբռնումն կամ անողորմ սպանումն. և յանձնեալ զիս Աստուծոյ և սրբոց խնամակալութեանց, ակնկալէի արտագործութեան կարծեացս։ Իբրեւ մտադրաբար ուշ եդեալ բանից նոցա, զի լեհերէն ասէին ցխոզարածն, «մազապուրծք գրեթէ զերծաք ի ձեռաց Սվէտաց, եթէ չէաք աճապարեալք ի փախուստ, անկարծիք յափշտակեալք իցէին զձիս, թերեւս և զմեզ». զոգի առի, և իբր ի վտանգէ մահուան փրծանեցեալ՝ կազդուրեցայ։ Ասէ ցնոսա խոզարածն. Է աստ ի խղիս ոմն փախստական ի Սվէտաց. և թէ ով ոք իցէ չգիտեմ. բայց թուի թէ մեծատուն ոմն իցէ։ Ապա մի ոմն յեկելոցն եմուտ ի ներքս. և հայեցեալ յիս՝ քաղաքավարօրէն ողջունեաց, և սորայարեաց. Տէր, չէ այս վասն քո տեղի. խնդրեմ, եթէ հաճեսցիս, մատիցես ի տուն իմ և հանգիցես. զի տեսանեմ զտէրդ կարի խոնձեղեալ և վշտացեալ։ Շնորհակալութեամբ հանդերձ հետեւեցայ նմա. յորժամ ի տունն մտի և տեսի

յատակ, և ի նմին մահիճ, և հնոց՝ ըստ Պաղտանաց, ուրախացայ ոչ սակաւ. և այնու ծանեայ զայցելութիւնն Աստուծոյ առ իս, բարեխօսութեամբ Սրբոց խնամակալուացս, և գոհացայ զնմանէ։ Եւ իսկոյն այրն հիւրընկալ վառեաց զհնոցն, և ասէ. Տէր, մերկացիր ի զգեստուցդ, և ընկողմանեալ յանկողնի աստ հանգիր, մինչև ցամաքեցուցից զհանդերձդ. և հաստուցից կերակուր ջերմ. գիտեմ զի ներելոց ես ինձ, եթէ գեղացւոյ և ոչ քաղաքացւոյ զխոր-տիկս առաջարերից. զի ոչ զայլ ունիմ այժմ ի տանս՝ բաց ի փոքու իմն կոգւոյ, սակաւուց ձուոց և կորկոտէ գարւոյ։ Գոհացեալ զառնէն՝ ննջեցի իբրև զժամս երկուս կամ առաւել։ Իբրև զարթեայ՝ գտի զհանդերձս ցա-մաքեցուցեալս և զկերակուր պատրաստ. զգեցայ, կերի և զօրացայ։ Աղա-չեցի ցայրն. Տեսանեմ զքեզ այր բարի և երկիւղած յԱստուծոյ. վասն որոյ կամիմ յայտնել քեզ զխորհուրդս իմ, և լսել ի քէն զգացումդ. Ես ի Լէօպօլսոյ հետի փախեա ի ձեռաց Սվէտաց, որք հանդերձեալք էին առնել ինձ զբռնութիւն, և մեծաւ տաժանմամբ հազիւ հասի աստ. եթէ չէիր դու մարդասիրեալ՝ թերևս ցարդ մեռեալ իսկ էի. յաղագս որոյ շնորհէի գոհա-նամ զքէն. և եթէ կամ լիցի քոյ՝ մնացից աստէն զաւուրս քանիս, մինչև դոյզն ինչ զուժ առեալ՝ հետևեցայց զուղին իմ. և ոչ արդեօք եղեց առ քեզ ապաշնորհ։ Պատասխանի ետ. Տէրութիւն քո գիտասցէ, թէ գեօղս այս ժուպր՝ պատկանի առ դատաւորն Լէօպօլսոյ, և չէ իսկ հեռի ի քաղաքէ անտի, եթէ ոչ միով մղոնաւ. և նորա հրամայեցին հանուրց շինականաց թագչել ընտանեօք և գոյիւք իւրեանց յանտառս խորինս, գուցէ յափշտա-կիցէին յաւարառուաց. որ և քահանայն մեր ոչ համարձակեցաւ մնալ աստ, թէ և յեկեղեցւոջն կարէր բարեպէս ամրանալ. և Տէրութիւն քո զիա՞րդ կարէ միայն յանմարդաբնակ տեղւոջ անքոյթ կալ. կամ ուստի՞ գտանել զկերակուր. քանզի և ես առեալ զանկողինս մնացեալս՝ գնալոց եմ ի գի-շերիս՝ յանտառն՝ առ ընտանիս իմ։ Ասացի. Եւ ո՞ւր երթայց, մինչ անտե-ղեակ վայրիցս և պակասեցեալ յուժոյ, քայլել ցձորակն այն ոչ բաւեմ։ Պա-տասխանեաց. Ես վասն Քրիստոսի Տեառն մերոյ հաստուցանէի սերկ (այսօր) զՏէրդ՝ յապահով և յանքոյթ իմն տեղի, այս է, ի դղեակն Սթառօչէլի՝ որ երիւք եւեթ մղոնօք բացեալ է, եթէ կարիցէի ունել զմիւս ձի պատկանաւոր տեառնդ. զի ձիս իմ յերկոցունց աչաց կոյր է, և ոչ ոք բաց յինէն կա-ռավարել գիտէ զայն. արդարև ընկերն իմ ունի, բայց գոլով ինքն սոզա և տառ, ոչ կարծիմ թէ կամիցի տալ։ Աղաչեցեալ ուրեմն յինէն՝ գնաց, և ոչ յամեալ՝ եկն ընդ առն և ձիոյն. և գնահատեալ երից զլոթայց և միոյ քառորդի ցքոյ, ետու զվարձն, առեալ ի նմանէ զշիշ մի ապակի, պայմանաւ անդրուստ առաքելոյ զխնդրեալն. և ձիաւորեցայ. հեծեալ և այրն բարի յիւրն երիվար՝ էառ ի գաւակն զպատաւորն իմ, գնացինք։

Իբրև եկինք զառիվերն հուպ անտառին, ասէ ցիս. Տէր, ի հեռոց իմոց մի՛ վրիպիցիս, գուցէ մոլորիցիս. զի ոչ ընդ ուղին արքունի՝ այլ ընդ շաւիղս և մերթ ընդ անհետս գնալոց եմք. վասն զի յայսուիկ ի վայրս աւազակք Պաղ-

տանցւոց՝ բազմիցս կողոպտեն զուղևորս, մերթ և սպանանեն. գիտեմ զի ծոյլ է ձիդ, մի խնայիցես ի խարազանն։ Ես ետ ցիս՝ զոր ինչն ունէր։ Գընայինք արդեօք՝ այլ իբր արշաւմամբ՝ վասն տարամերժելոյ աւուրն. զի գոնէ նախ քան զմուտ արեւուն՝ յանտառէն արտելանիցէաք։ Լուր աստ զկատարած կրիցս. զի դեռ կերեալ էի, և ստամոքսն ի բնէ յամրամարս, տակաւին չէր ծախեալ զկերակուրն. և ի ցնցմանէ ձիաւորութեանն, (զի ձին էր վատաքայլ և ոստոստմամբ ընկայր), չփոթեցան ի նմա կերեալքն, և տողկայր. բազուկքս լքան ի հարկանելոյ զձին պղերգ. ի կարծրութենէ համետին լերկացան մորթք.. յենուլ ոտիւք յ'առ ներբանն՝ ի վերաբառնալ զծանրութիւն մարմնոյ՝ զօրէի ոչ. ի թուլութենէ ծնկացս օդից (յօդից), բնաւք մարմնոյս օդուածք՝ թուէր թէ իցէին լուծեցեալք. և ի խելապատմանէ գլխոյս պատճառաւ հարհրման՝ մթնաշաղէին լուսարանքս. թանտէմ, տաժանմամբ մեծաւ հասինք ի դղեակն Աթառօչէլի, ի մտանել արեւուն։ Եւ ահա շուրջ եղեն արք և կանայք՝ ի տեղեկանալ զանցիցն Լէօպօլտոյ. որոց նշմարեցի ձեռամբ հարցանել ցպատուորն. չունելով զուժ խօսելոյ։ Վասն վարձու՝ զոչինչ կամէր առնուլ այրն բարի, ասելով, թէ վասն Աստուծոյ արարեալ իցէր. և հազիւ ստիպեցեալ՝ էառ զեօթն զլօթիս, և մի զլօթի ետու վասն ցքոյն խոստացելոյ, զի գնիցէր։

Ապա խոտորեցաք ի տուն ուրումն կորուակի՝ Փուլօ կոչեցելոյ, գոլով տարաժամ որոնել զիջեւան պատկանաւոր. յոր՝ ի մտանելն՝ իսկոյն զժահահոտութիւն կաչեաց և այլոց փնդութեանց զգացեալ, ստամոքսն որ արդ վըրդովեցեալն էր ի յարաշարժութենէ ցնցմանց և տաղտկացեալ, փոխել սկսաւ զոր ունէր յինքեան. և յայնմանէ եւս առաւել նուաղեցեալ՝ անկայ ի տախտակին որ առ յորմն՝ իբր զկիսամեռ, և համարէին ամենեքեան թէ մեռանի արդ արդ։ Յետ սակաւու միոյ ուշաբերեալ՝ ասացի պատրաստել զմահիճ, համարելով թէ ի տան իմում իցէի. և եդին զծեղս ի վերայ տախտակին և զայլս առ սնարս, և ընկողմանեցին ի նմա, ծածկելով վերարկուաւս և եթ. և տանտիկինն կարեկից լեալ՝ մատոյց զջերմ զարէջուր կոգիաւ, զոր արբի. և իբր թմբրեցեալ՝ ննջեցի։ Սակաւ ինչ նիրհեալ՝ զարթեայ. և ոչ գիտէի զ'ուր գոլս. զի և ոչ զճրագ թողեալ էին ի վառ. զննէի զմահիճս, և ահա ծեղք. հիանայի ընդ իս ինքեան, թէ որպիսի իցէր այն դիպուած. լուայ զի խորդայր ոք մերձ, և զարմացայ, ասելով ընդ միտս. Ոչ ոք երբէք ննջէր առ իս ի սենեկի. և այս ո՞վ իցէ արդեօք։ Մինչ յայսպիսի վարանի.ի, սկսաւ աղմկիլ ստամոքսն, և արտաձգեաց զոր ունէր յինքեան. ուստի թալկացեալ անկայ. և զկնի փոքու միոյ ուշաբերեալ՝ ծանեայ զտեղին. կոչէի զփոքրաւորս, և ոչ զգայր. զի չունէի զուժ հզօրապէս ձայնելոյ. և ահա լուծումն.. ստիպէր, և ոչ կարէի գտանել զդուռն տանն, մինչեւ հազիւ զննմամբ ձեռաց ընդ որմունս՝ արտելի. և դարձեալ ի ներքս՝ այսր և անդր տատանմամբ դիպեցայ տեղւոյս, և ննջեցի մինչեւ ցլոյս։

12. (Սեպ.) Յուրբաթոջ առաւօտուն զգացի դոյն ինչ յիս զօրութիւն և զա-

խորժ ուտելոյ. բայց զի չէր ի տան անդր բաց ի գարեջրոյ, բրդեալ ի նա զհաց՝ կերի և առաւել զօրացայ։ Ապա աղաչեցի զկարուակն գտանել զկառ ի վարձու. և նա բերով կառաւ և ձիով մատոյց զինքն պատրաստ՝ հասուցանել ցաւանն Գուպոքօվ, երկու մղոնաւ հեռի անդուստ։ Հասեալք ուրեմն անդ՝ գնացի ի տունն ուր օթեալն էի երբեմն, մինչ գնայի յայցելութիւն Սթանիսլավովու. և տանուտէրն Սթանիսլաւ և կինն Հեղինէ, ոչ գիտեմ որպէս՝ ծանեան զիս. և հիացեալք հարցին զպատճառն, և տեղեկացեալք զամենայն անցս՝ յարտասուս հարան. մինչ զի և ես փղձկեցայ։ Աղաչեցին զի հանգիցէի յանկողնոջ իւրեանց, և արարի։ Իբրև զարթեայ՝ տեսի պատրաստեցեալ զսեղան պէսպէս խորտկօք համեմեցելովք. կերի և արբի զմեղրաջուր ազնիւ յոյժ և համեղ, և զուարթացաւ սիրտս. և գոհացայ զնախախնամութենէն Աստուծոյ, որ յայնքանեաց նեղութեանց ազատեալ, առաւել զալժանն իմ մխիթարեաց. և եկեալ ի միտս բանն Սողոմոնի, Ցորժամ ի քան սեղան հզօրաց ուտիցես, ևայլն. խորհէի, թէ ուստի վճարիցէի զփոխարէն այնքանոյ մարդասիրութեան, զի մի գլօթի միայն մնացեալ էր առ իս։ Ցետ գոհանալոյն՝ ասեմ ցտանուտէրն. Սիրելի եղբայր, պակասեցաւ ինձ դրամ ծախուց. արա սէր, և տուր ինձ փոխ 15 գլօթայս. և գիր կառ զի երթիցեմ մինչև Սթանիսլավով, և անդուստ վերառաքեցից քեզ գոհութեամբ։ Պատասխանեաց. Արարից զամենայն զոր ցանկայ անձն տեառնդ իմոյ. բայց ոչ կամէի թէ ի Սթանիսլավով, այլ ի Ռոհաթին գնայիր, որ հեռի է չորիւք մղոնօք. զի թէ խնդրակք եւս արձակիցեն զկնի, ոչ դիւրաւ զըտանէին՝ առնելով զծիրն զայն։ Ընկալայ զխրատն խոհեմ և շնորհակալ եղէ։ Եւ ուրեմն այրն, վարձեաց զկառն՝ հինգ գլօթայի. եգիտ և զերկուս ձիաւորս՝ որք տանէին, անդէն էին գնալոց. և եկն նոքօք, և յանձնեաց զիս նոցա, զի անվընաս հասուցանիցէին ի տեղին։ Իբրև եղև ժամանակ գնալոյ, եկին այրն և կինն ընդ փոքու մանկան իւրեանց, ետուն զ'15 գլօթիսն, և ասեն. Հայր սուրբ, զվարձ կառին վճարեցինք, և զայս դրամս շնորհեմք ի ծախս ճանապարհի. և օրհնեա զմեզ, զի զաւակք զորս տայ մեզ Աստուած՝ մեռանին. Թերևս աղօթիւք քովք՝ զմինս զայս պահեսցէ Աստուած ժառանգ մեզ։ Զարմացայ ընդ հաւատ նոցա. և օրհնեալ ըստ ցանկութեան իւրեանց՝ գնացինք։

Ի ճանապարհին հանդիպեցաք յաւանն Սթրէլիսքոյ, և յերեկոյին անագան հասինք յարտաքաղաքն Ռոհաթինու. և անդէն ի տան գրքակազմի ուրումն Ռուզի՝ Գասասուպեաք կոչեցելոյ՝ օթեցինք։ Այլ սակաւ զանազանութիւն անցելոյ գիշերին պատահեցաւ, յանդիպաւորութենէ՝ ճանապարհին և ի միրաց.. առեցելոցն յառաջնումն աւուր ձիաւորութեան. որ և զբոլոր գիշերն աքուն անցուցի տապիւ մեծաւ. թէ և ի տանտիկնոջէն գթասիրաբար տածիցէի, որ ընդ իս աքնիւր և մայրաբար աղէխարշիւր։

13. Ի շաբաթոջ առաւօտու զառաւել ջերմութիւն զգացեալ ի աքնութենէ և ի ցաւոց միրացն, գուցէ ի մեծագոյն ախտ անկանիցէի յանդիպաւորութենէ. առաքեցի զսպասաւորն՝ որոնել ի քաղաքէն զօթեւան, կամ ի հո-

դարարձականում Նկեղեցւոյ, կամ առ Տօմինիքեանս։ ... Իսկ սպասաւորն երթեալ եգիտ զօթեւան առ Տօմինիքեանս, բայց դժուարութեամբ. զի խղճէին, գուցէ խնդրակք զկնի հասեալք և առ Նոսա գտեալք զիս, լինիցեանք վնասապարտք գտանիցէին։ Երեկոյին ուրեմն գնացի առ Նոսա. և Փոթէր փըռիօրն Ֆիլիպ Ֆանմովից, առ ի խուցն իւր հրաւիրեաց ի խօսակցութիւն. և ի մէջ այլոց բանից՝ ասէ. Վանքս աղքատ է, և սակաւ եղբարք բնակեմք, ոչ ունելով զդիպաւորութիւն, և ոչ զանկողինս բաւական։ Իբր կամէր այսու առթասրել զինքն, եթէ ոչ պաշտպանիցէր ինձ. կամ զկերոյի կամ զանկողինս. և այնպէս զայլօրէն, մանաւանդ թէ ցրտաբար խօսէր, մինչ զարմանալ իմ։ Ապա հանեալ զտուփ թապաքին յաղնիւ յոսկրէ կրիայի, արծաթակազմ և փայլուն յոյժ, և յունչսն էառ զհոտ ախորժ խառնուածոց թապաքին, իսկոյն փոխեալ զկիրս ոգւոյն, սկսաւ ջերմաւ սիրով խօսել, և կարեկցաբար և փոյթ կոչեաց զպաշտօնեայն, և հրամայեաց զբարձս և զանկողին իւր մետրալի տանել ի խուցն ինձ պատրաստեցեալ։ Ասեմ ընդ միտս. Ո՛վ տուփ, զօրաւորագոյն ես դու ի շարժել զսիրտ առ գութ, քան զտկարութիւնս իմ, և զհիւծեալ ծերութիւնս։ Ցետ փոքու միոյ ողջունեալ զնա՝ գնացի. և Նպաստիւ փափկագունի անկողնոյն քրտնեալ ի գիշերի՝ ցրուեցաւ ջերմութիւնս, և առաւօտուն զտի և զվէրս առողջացեալս, և գոհացայ զբարերարութենէն Աստուծոյ։

14. Ի կիրակէի առաւօտուն ետու փոքրաւորին զլօթիս 10, զի հոգայցէր զպակասութիւն իւր. այս է, զկօշիկս, շապիկս, և զայլս պիտոյս, նա և զկերակուր և զըմպելի. զի վանքն և ոչ զգարէջուր պաշտպանէր մեզ. մանաւանդ թէ և զպղնձս կամ զդորակ ջրոյ կամ զբզալ մի կամ զփայտ ոչ կամեցան տալ. զորս ամենեսեան հարկ եղեւ գնել. և մնաց միայն 3 զլօթի առ իս։ Եւ մինչ խորհէի, թէ զիարդ զառաջիկայ ճանապարհն փաղահետեւիլ կարիցէի այնու փոքր դրամով, զի թէ և ունէի ընդ իս մատանի մի շափիւղայ, ո՞վ կարէր անդ ոք գնել, կամ ի գրաւ առնուլ. ահա Նախատեսութեամբն աստուածայնով ժամանեաց անդր փոխզիտէնս Թրինաթարաց (Նախագահ՝ կամ առաջնորդ Trinitari միանձանց), Փաթէր Մաթիաս սպանիացի, նախածանօթ իմ. որում գացուցին Տօմինիքեանք, թէ իցէր առ Նոսա ոմն փախստական ի Լէօպօլսոյ. բայց զով ոք լինելն ոգիտանային, թէ եկեղեցական կամ աշխարհական իցէր. և խնդրեցին այց առնել և գիտել։ Իբրեւ եմուտ ի ներքս՝ իսկոյն ծանեաւ, թէ և այլակերպեցեալ իցէի. և փարեալք զմիմեամբք ողջագուրելով խնդութեամբ, ոչ առանց արտասուաց, հարցանէր զվասնէրն և զորպէսն գոլոյս. զոր իբրեւ բացատրեցի պարագայիւք հանդերձ, յայտնեցի իբրեւ բարեկամի և զչքաւորութիւնս. որ մեծաւ սիրով մտերմականաւ մխիթարեալ զիս, մատոյց զինքն պատրաստ ի լնուլ զպակասութիւնս։ Մինչ պատաղեցեալք էաք ի ճառումն դիպուածոյն Լէօպօլսոյ, եկն ի վերայ Փաթէր Ցիրինա՝ կվարտիան Ֆրանչիսքեանաց Լէօպօլսոյ, նմանապէս ծանօթ իմ. աճեաց աստէն խնդութիւնս, և մռացումն եղեւ մշտա-

կրութեանց անցելոց. եհաս ի վերայ և Ռէյէնթ Տօմինիքեանց Լէօպօլտոյ՝ Փաթէր Իուսթուս Ռօլայ, և ծանուցայ ամենեցունց Տօմինիքեանց տեղւոյն, որ և մատուցեալ Փաթէր Փաւօրն ումօթալի, հայցէր զներումն վասն ոչ առնելոյն զպատիւ պատկանաւոր։ Բայց խորհեցայ ոչ յամել ի տեղւոջն, զի և ի քաղաքին լսելի եղեւ անունս. գուցէ վտանգն յորմէ խիթայի՝ պաշարեսցէ զիս։ Ծանուցի զխորհուրդս Փաթէր Մաթիասին. որ և նա առ փորձեալ զզգացումն իմ, խոստացաւ յերեքշաբաթւոջ ուղեւոր առնուլ զիս ընդ իւր մինչեւ ցՍթանիսլաւօվ։

16. Յերեքշաբաթւոջ, զկնի պատարագին, կառաւ Փաթէր Մաթիասեն գնացինք դէպ Սթանիսլաւօվ. և յերեկային խոտորեցաք ի գեօղն, ուստի երեւիւր գեօղաքաղաքն Հալիչ, և օթեցինք ի բակի չինականի ումեմն մեծատան։

17. Ի չորեքշաբաթւոջ անցեալք Նաւու զգետն Տնեստր, գնացինք ի Հալիչ. Փաթէր Մաթիաս գնաց առ գաւթէլլանն, և ես ի տուն Ճէլինսքայ կնոջ հայկազնւոյ, առ որում երկիցս յոյցելութեանն Սթանիսլաւու՝ օթեալ էի. բայց ոչ նա զիս ծանեաւ և ոչ ես ետու ծանօթութիւն. գնեցի ի Թոռանէ նորա զերկուս ղոխս աղանոյ՝ վասն վաղուեան, և կերի ընդ սպասաւորիս վարունգս թթւոյ եւեթ։ Էր յայնժամ Սէյմիք գաւառին և մեծամեծք ամենեքեան ժողովեցեալք էին, ընդ որս և Վլատիքայ Ռուզաց՝ Շումլայնսքի, զոր տեսի ի գնալն առ ժողովն, այլ ոչ ողջունեցի. սակաւ ինչ յամեալք՝ յետ ուտելոյն, դիմեցինք ի Սթանիսլաւօվ, և երկուք ժամօք յառաջ քան զերեկոյն՝ հասինք յարտաքաղաքն, ի գերդաստանն Թրինիթարաց. Փաթէր Մաթիաս գնաց ի վանք կարգին իւրոյ, և ես մնացի անդէն։ Առ ի ծածուկ կոչեցի առ իս զՊատուելի Տէր Ստեփաննոս Ստեփանեան՝ զաւագն Հոգաբարձուաց գաւառին. որոյ ի տեսութենէն ուրախ եղէ յոյժ, և բերկրեցաւ ոգիս. որ և յօժարամտաբար մխիթարեալ զվշտագնեցեալս, բաց ի պաշտպանելոյ դկերլիս, շնորհեաց և զզգեստս զղերիկոսականս, և զանկողինս վչենակաւ, նա և զթոշակ ճանապարհի։ Ագայ անդէն զայն գիշեր։

18. Ի հինգշաբաթւոջ ընդ Տեառն Ստեփաննոսի եզերեցի ոչ մնալ անդ, այլ յառաջել ի Սնեաթին և անդուստ ի Սէչօվ դիմել, և անդէն ձմերել ապահով. ծանուցի զխորհուրդս Փաթէր Մաթիասի, և կառաւ Նորա (որ գնալոց էր ի Պանիլովայ, առ սահմանաւն Մօլտաւիոյ, ուր Նախառաքեցեալք էին զոյք եկեղեցւոյ Նորա՝ յաճէն Սվէտայց), գնացի դէպ ի Սնեաթին։ Անցեալք ուրեմն ընդ աւանն Թիսմինից, ուր եկեղեցի և քահանայ Հայոց և Հայք ոչ սակաւք են, ոչ ումեք տուեալ զծանօթութիւն, թէ և յաւանամիջի անդ զոմանս տեսի, հասինք ի գեօղն Թօլմաչ, երկու մղոնօք հեռի ի Սթանիսլավովու, և օթեցինք անդ։

19. Յուրբաթւոջ ելեալք անտի, պատահեցան երկու Թրինիթարք ի վանաց Փաթէր Մաթիասին, որք զեկուցին Նմա զգոյից եկեղեցւոյն։ Ի յաւանին Կվօժնիեց ճաշեալք, գնաց Փաթէր Մաթիաս ի Պանիլօվայ. և ես վար-

ձեցի զկառ մի Հրէի և գնացի ի Սնաթին, որ հեռի էր միով մղոնաւ։ Ի մտանել արեւուն հասեալ անդ, խոտորեցայ ի տուն Ռուզի ումեմն, և առաքեցի զպաշտօնեայն ի խնդիր քահանային մերոյ, և չէր անդ. այլ՝ այլ իմն օտարական՝ Թերեւս և խաբեբայ՝ տեղապահ նորա եկն. որում ծանուցեալ զինէն՝ պատուիրեցի մի՛ ումեք յայտնել, այլ միայն գտանել զօթեւան. և նա ոչ յամեալ եգիտ, մերձ եկեղեցւոյն Հայոց և Տօմինիքանաց. ուր գնացեալ գտի անձուկ և ժահահոտ, վասն որոյ արտաքոյ ընդ ծածկութիւ ննջեցի։

20. Ի շաբաթօջ առաւօտուն ոչ գնացի յեկեղեցին Հայոց, զի մի՛ ճանաչիցէի. այլ առ Տօմինիքանս, ուր՝ մինչ լսէի զպատարագ, զկնի իմ եկեալք էին և Հայք ոմանք. որպէս, Յան Գանիել Մառուկեան՝ մաքսապետ Թագաւորութեանն Լեհաց, նախածանօթ իմ, ընդ ոմանց Լէօպօլսեցւոց. ընդ որս էին Թէօտոր Սապաթ և Գաբրիէլ Պալսամովից. սոքա յետ իմ իբր ի չորրորդում տեղւոջ կացեալք, և նշմարեալք զիս ստուգմամբ, քրթմնջէին, որպէս ինքեանք յապա խոստովան եղեն. մինն, թէ այս այր Սվէտ ոմն է, և լրտեսել զքաղաքս եկեալ է. միւսն, ո՞չ ապաքէն գրապան վերարկուին ապացուցանէ զայնպիսի ոմն զոլ. ամենեւին ծանուցանելի է կառավարչի քաղաքիս. զուցէ ի Թագստի ունիցի ուրեք զզինուորս և անկարծ ըմբռնիցէ զաս։ Աւէ առաջինն, եթէ ոչ արասցէ զմեծարանս սրբազնասրբոյ Խորհրդոյն՝ ստոյգ Լութէրան է, և դարանակալել զքաղաքս կամի։ Իբրեւ ոչ ի բաց առի զԹասակ գլխոյս՝ ի վերացուցանել սրբոյ Խորհրդոյն (քանզի ենթադատմամբ արարի՝ ոչ ցուցանելոյ վասն զպսակ գլխոյս,) իսկոյն ենթադրահեցին երկաքանչիւրն՝ թէ արդարեւ Սվէտ իցէ։ Յետ պատարագին՝ ելեալ յաթոռոյ անտի՝ ի գնալն տեսի զՅան Մառուկովիցն, որ կանգնեալ ի նստելոյն՝ խոնարհապէս արար զմեծարանս, համարելով թէ գործակալ կամ պետ ոմն զինուորաց իցէ, զի ունէի զվերարկու կարմիր՝ ըստ զօրապետաց Ալէմանացւոց, և ամենեցուն մերայնոց աչք յիս կառուցեալք էին, և ոչ կարէին ճանաչել յայլակերպութենէ. իսկ ես ոչ հայելով ուղղակի առ նոսա, այլ ընդ ակամբ նշմարելով ելի յեկեղեցւոյն։ Իբրեւ սակաւ ինչ հեռացեալ յեկեղեցւոյն հայեցայ յետս, ահա մերայինք ամենեքեան կային առ դրան եկեղեցւոյն, տեսանել՝ թէ յո երթայցէ. նշմարեցի ուրեմն ձեռամբ՝ Պալսամովիցին, որ իսկոյն մատեաւ առ իս, մեալով այլոց ի տեղւոջն. ասեմ ցնա լեհերէն. ճանաչե՞ս զիս։ Ի ձայնէ Թերեւս ճանաչեալ՝ կամէր համբուրել զձեռս. զոր արգելի. և մի՛ ումեք յայտնել զինէն պատուիրեցի. այլ զի երթեալ առ Յան Մառուկովիցն՝ լռելեան կոչիցէր առ իս. որ և վաղվաղակի եկն. որում ի հեռուստ ազդեցի՝ մի՛ առնել զմեծարանս յատուկս, այլ իբր ծանօթի ուրուք ընկերակցիլ. հետեւէին պաշտօնեայք, ընտանիք նորա, և զոչինչ իմանային, մինչեւ ի տան անդր նորա ծանուցայ, պատուիրելով մի՛ ումեք յայտնել։ Մնացի առ նմա զաւուրս երկուս, պատուասիրեցեալ մեծարմաբար. որում յայտնեցի զխորհուրդս գնալոյ ի Սէչով. որ զընդդիմակն զգացեալ՝ հաւանեցոյց դառնալ ի Գամենից։

22. Ցերկուշաբաթւոջ գտան ուղեկիցք լութերականք ոմանք վաճառականք ի Լէօպօլսոյ, որք ի վաճառատեղն էին գնալոց. ընդ որս և ես ուղեկցեցայ՝ վարձեալ զկառ. եկն ընդ իս և Բան Թէօտոր Սապաթ։ Ի վաճառատեղիս յայս յամենայնում ամի յաւուր Ծննդեան Աստուածածնին, ըստ Հնոյ տօմարին, յութ սեպտեմբերի, սովորք են վաճառականք ի զանազանից գաւառաց համագումարիլ պէսպէս վաճառօք. որ կիսով մղոնաւ հեռի է ի Սնաթինու, ի սահմանին Պուղտանոյ. ուր ոչ քաղաք և ոչ գեօղ է, այլ յանմարդում վայրի՝ զխուղս յոստոց ծառոց յօրինեալք՝ միայն իբր եօթնեակս երկուս կամ երիս, և անուանեն Օթաք։ Անդէն զոմանս տեսի արեւելցիս ծանօթս, զԵրեւանցիս, Նախջեւանցիս, Կապանցիս, և այլս. յամեալք անդէն իբրեւ զժամս երկուս, ընդ նոյնս ուղեկցաց գնացինք դէպ ի Գամէնից, և երեկոյին օթեցաք ի գեօղն Գօցման, որ առ մէթրօփօլիան Պուղտանայ պատկանի։

23. Ցերեքշաբաթւոջ ելեալք անտի գիշերայն, փութացաք հասանել յայնմ աւուր ի Գամենից. բայց մոլորեցեալք՝ յանտեղեկութենէ կառավարչաց՝ ընդ ձորակս և յանտառս անմարդիս, յետ հասարակ աւուրն հազիւ ի գեօղն Զամչուվ հասաք, ուստի անդր անցանելոց էաք նաւու ընդ գետն Տնեստր։ Ճաշեալք անդէն՝ մնացինք ոչ սակաւ զալստեան նաւավարին, և անցեալք յայնկոյս, ուղեկիցքն Լութհէրականք հատուցին և վասն իմ գնալոյն, որք և ընդ ամենայն ճանապարհն ոչ նուազ զգթութիւն քրիստոնէական՝ քան զմարդավարութիւն ապացուցին. մերթ յընթրիս իւրեանց հրաւիրելով, երբեմն զգինի և զօղի, զկօզի և զհաց պաշտպանելով, յ'որոց իւրեանց ըզբաժինս տալով, բազմիցս զտեղի առնլով՝ մինչ կառն իմ միւսն յամէր ժամանել նոցա. երբեմն օգնելով կառավարչին իմում յանցս դժուարինս, և այլովք պաշտօնատարութեամբք պարտաւորեցին զիս, թէ և անծանօթք. որոց տացէ Տէր զլոյս ճշմարտութեան։ Թանաէմ, յերեկոյին անագան հասաք յաւան Զաւնօքօզնիցայ կոչեցեալ, որ պատկանի առ եպիսկոպան Գամենիցու, և է փաէփօզիթուրայ. որոյ զդղեակն հանգերձ պաղատաւան եպիսկոպոսականաւ՝ վաղ ուրեմն ամբողջ տեսեալ էր իմ՝ նախ քան զամս 38. և արդ գտի տապալեցեալ։

24. Ի չորեքշաբաթւոջ մինչ ելեալք անտի անցաք զառիվերն, սկսաւ անձրեւ մեղմարար ցօղել. ի մտանելն յանտառն և յիջանել զառիվայրն ի ձորակն, յորում է աւան Մարգամէջ, առաւելու անձրեւն. իբրեւ անցաք ընդ այն դժուարութեամբ և ելաք ընդ զարն, յորդեցաւ յոյժ անձրեւն, մինչ զրեթէ ամենեւին թացաք. և յետոյ փոխեցաւ ի կարկուտ խիտ, հողմով ցրտաշնչիւ, յորմէ սառուցեալք դողդողաք. և հասեալ ընդ աղէն հեղեղք յորդք դէպ առ ձորակն՝ ընդ որ անցաք. եթէ զոյն ինչ յառաջագոյն եկեր սկսեալ, արդարեւ յայնկոյս աւոյն մնացեալ էաք, կամ յանմարդում վայրի. կարկուտն՝ վերջոյն յանձրեւ փոխեցեալ՝ խստութեամբ օդոյ այնքան վշտացոյց, մինչ յուսահատել մեզ, եթէ ոչ գտանիցէաք մերձ զոլ առ գեօղ կոչեցեալ Խո-

տիով, առ տեարս Գոնեցփոլքիս պատշաճեցեալ, հեռի ի Գամենիցու միով մղոնաւ։ Անդ ժամանեալք՝ համարեցաք զպանդոկ իմն գտանել, որպէս ասէին, և ահա կիսախրամ և տիղմն ի նմին, Հրէից ևեթ պատկան անդր բնակողաց. ապա ինքնին որոնեալ ընդ գեօղն, զի ուղեկիցքն չեւ ևս էին ժամանեալք, խոտորեցայ առ չինական ոմն՝ Ֆէտուր կոչեցեալ. որ գթով ընկալեալ մարդասիրեաց, և վառմամբ հնոցի ցամաքեցոյց զզգեստս. եդիտ և ըղգարեջուր ազնիւ յոյժ, զորպիսի ի Լէօպօլսոյ ցարդ ոչ ուրեք տեսի. զոր ջեռուցեալ բրդեցելով հացիւ փափկապէս՝ կերինք և անդորրացաք, մինչև դադարեաց անձրևն և ցրուեցան ամպք։ Անդուստ՝ ոչ սպասելով ուղեկցաց՝ ելի, և ի հասարակ աւուրն ժամանեցի ի Գամենից. և զի այլափոխեցեալ էր յաւերածոյն, հազիւ ճանաչէի զփողոցս։ Ի Առաջնորդութեամբ ումեմն տեղացւոյ ժամանեցի յեկեղեցի Սրբոյն Նիկողայոսի, որ է հոգաբարձական Հայոց, և պատուասիրաբար ընկալեալ ի գերյարգելւոյ Տեառն Միքայէլ Մուրաթեան՝ յեղբօրէ նօտարին իմոյ հանգուցելոյ, մնացի ի բնակութեան նորա, հուպ եկեղեցւոյն։ Աստ լու եղեւ մերայնոց զալուստ իմ, և խուռն ընթացեալք արք և կանայք, ուրախութեամբ արտասուօք փարէին զինեւ. զի լուեալք էին թէ կորուսեալ իցէի, և թէ ի Մէլէտաց կալանաւորեցեալ կամ սպանեցեալ։ Զուարճացայ և ես ի տեսանելն զխաշինս իմս, և ի ցոյցս սիրոյ նոցա առ հովիւ իւրեանց. և մնացի յայնմ բնակութեան իբրեւ զեօթնեակս չորս։ Եւ զի տեղին խարխալեցեալ էր, և սորէին խինք և փոշիք ի տանեաց և յորմոց ի տուն անդր, հրաւիրեցեալ ի Բան Թօմասէ Ագւէնթօվից Շէտմեէնզիք յորջորջեցելոյ, ի 17 հոկտեմբերի գնացի բնակել ի սենեկին՝ որ ընդ պատուարաւ տան նորա. որոյ մայրն այրի և բարեպաշտուհի Սօֆիայ՝ օգնով չափ տածէ և խնամէ զպանդխտութիւնս իմ։

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ը

## Ի ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ ՁԵՌԱԳՐԱՑ

1394·

*Զվերջին ստացօղ սուրբ մատենիս, զՊարոն Սինան, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց, ի վայելումն ստուածատուր զաւակին իւրոյ Աբրահամին, յիշատակ իւր և ծնօղաց իւրոց. արդ որք հանդիպիք այսմ գեղեցկայարմար կտակիս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՊարոն Սինան, և զհայր իւր զԽութլուպէյն, և զմայր իւր զՍասա խաթունն, և զկենակիցն իւր զէտիլ մէլիքն, աստուածատուր զաւակաւքն իւրովք, և զամենայն արեան մերձաւորսն. և որք յիշէք՝ յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Արդ ստացաւ գիրքս այս (ի Թուին) Հայոց ՊԽԳ, օգոստ. ԺԵ։ [Ճաշոց գիրք ի կամենից, գրեալ ի Սուրղաթ Ղրիմու]։*

1711· [*Ի Նմին Ճաշոցի*]. *Ճաշու գիրքս այս է յիշատակ եկեղեցւոյն Սրբոյ Նիկողայոսի Աքանչելագործ հայրապետին՝ ի կամենից քաղաքին, որ գրեցաւ ի Թվին Հայոց ՋՂԸ և յամի Տեառն* 1349, *յերկիրն Ղրիմայ ի քաղաքն Սուրխաթ, ձեռամբ Տէր Ստեփաննոսի երիցու. իսկ յետ ԽԵ* (45) *ամաց գրելոյն՝ գնեաց զսա կամէնցի Պր. Սինանն՝ որդի Խութլուպէյի, և ետ յիշատակ վերոյասացեալ եկեղեցւոյս, ի Թվին ՊԽԳ և Տեառն* 1394, *յօգոստոս ԺԵ* (15)։ *Այս Պր. Սինանս իւր յատուկ դրամովն շինեաց զնոյն եկեղեցին Սրբոյն Նիկողայոսի, ի Թվ. ՊԽԷ և Տեառն* 1398. *որպէս յայտ է ի կոնդակէ շինութեան նորին, որ ի ռազուշն (դատարան) մեր, և սկսանի այսպէս. Այս իմ կամաց և հաստատութեան ձեռագիր է Սինանի որդւոյ Խութլուպէյի, և այլն* (1)։ *Բայց յետոյ ի Թվին Հայոց ՌՃԿ և յամի Տեառն* 1711, *կազմեցաւ, բաժանեցեալ յերկուս հատորս, վասն դիւրագոյն տանելոյ և բերելոյ, ձեռամբ Ստեփանոսի Ստեփանեան կամէնցացւոյ, տէքանի կամէնիցու, Ազանիսլաւու և այլոց քաղաքաց. որ և յաւել զընթերցուածս և զաւետարանս ոմանս, ըստ արարողութեան ուղղափառ եկեղեցւոյ Հայոց։*

1767· [*Ի Նմին մատենի*]. *Յամի Տեառն* 1756, *օրն յունիսի՝* 28, *սկսաւ*

1. *Տես յերես* 135։

չինուածս եկեղեցւոյս Դամենիցոյ Հայոց Ս. Նիկողայոսի, և ուսարտեցաւ յամի Տեառն 1767, որն առաջին յուլիսի չինուածս նորին եկեղեցւոյն: Յամի Տեառն 1767, որն 22 օգոստոսի եղեւ բերումն Թափորով Հրաշագործ պատկերին Երամնուհեայ Կուսին՝ ի նոյն եկեղեցի:

1422.

Զվերջին առացօղ սուրբ Աւետարանիս (գրելոյ ի Ոսկէ Թուխն) զԳր. Խութլուպէկն, յիւր հալալ արդեանցն գնեաց զսուրբ Աւետարանս ի Սիմէոն աբեղայէս, ի յիշատակ իւրեանն և իւր կողակցին՝ Մելիք խաթունին և իւրեանց ծնողացն: Որ ոք հանդիպի սուրբ աւետարանիս՝ կարդալով կամ օրինակելով, յիշման առնէք արժանի զվերոյգրեալ Գր. Խութլուպէկն և ըզՏանակեան վարպետն, որ զայս սուրբ աւետարանս մեզ եբեր. և Աստուած զձեզ յիշէ: Ի Թվ. ՊՀԱ, ես Սիմէոն աբեղաս եղբայր Յովանիսի՝ ծախեցի սուրբ աւետարանս Գր. Խութլուպէկին: — [Ի Լեմպերկ]:

1435.

Յիշեսջիք ի Քրիստոս զՍտեփաննոս Որոտնեցի, ի ՊՁԴ. զՅիշատակարանս կարգացի, ապա զանունս գրեցի ի քաղաքս որ Լօվ կոչի: [Ճաշոց գիրք]:

1451.

Յիշեցէք զվերջին առացող սուրբ Աւետարանիս զՅակոբշան, և զեղբայրն իւր զԱռաքեծն, և զծնողսն իւրեանց, որ առաջեան զսա ի հալալ արդեանց իւրեանց, և ետուն յիշատակ ի յԱմն (Եաշ), Ս. Աստուածածնին. և մի՛ ոք իշխեսցէ հանել զսուրբ աւետարանս ի Ս. Աստուածածնին (դրանէն), ոչ իմաց և ոչ օտարաց...: Գր. ի Թվ. Ջ: — [Աշտարակն Յաշ քաղաքի].

1507.

... Որք հանդիպիք այսմ աստուածային խրախճանութեան (Ճաշոց գրոց), յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր փափաքմամբ զստացողս սորա՝ Սերաղ քաղաքի քահանայք և տանուտէրքն և տանտիկնայքն. Տիրատուր երէցն և իւր որդին Խաչիկ երէցն, և իւր փեսան Քրիստոսատուր երէցն, և Միքլօշն և իւր եղբարքն՝ Գրիգորն և Մարտիրոսն, փոխեալս առ Քրիստոս. երեսփոխան Ոսկուպէկն և իւր եղբայրն Խութլուպէկն, Նիկօլշան, Խուլպէկն, Խաչումն, Նիկոլն, Թորոսն, Աղիզպէկն, (են, անուանք աւելի քան 20). Եւ կանայքն, Մանաք.. Մելիքն, Եաղութն, Մարուկն, Անաշքան, Զոհալն... Թուխտար իրիցկինն, Մարգարիտ իրեցկինն, Աղիզխաթուն իրիցկինն.. (այլ եւս 10 անուանք)... Նա թէ արժանի համարիք զանարժանս՝ ստացանուն Սիմէոն եպիսկոպոս, և զծնողսն մեր և զեղբարս և զքորս զփոխեալսն առ Քրիստոս, և ըզմերձաւորքս մեր զառաջինս, միջինս և զվերջինս, յիշեսջիք միով Տէր ողորմեայիւ. յիշեսջիք և զՅոհաննէս երէցն՝ որ ակիզքն նա գրեց մինչև Զատկին

Դանիէլին՝ «Ցամին ութեւտասներորդի», և ծաղկեց զամենայնն և զարդարեց. և որ զմեզ յիշէ՝ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ Աստուծոյ. ամէն։

Կատարեցաւ սա որ կոչի Տաղէգիրք, ձեռամբ յոգնամեղ եպիսկոպոսի Սիմէոնի և Յովհաննէս երիցի, ի քաղաքս որ կոչի Սեչով, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին, առ ոտն կենսաբեր Ս. Խաչին, ի հայրապետութեան Տեառն կաթողիկոսի Տէր Սարգսի, և եպիսկոպոսութեան այժմ նահանգի փցուն զըրչիս, և պարոնութեան Պօղոսան պարոնին, տարի ու կէս թագաւորութեան նորա. ի թվականութեան Հայոց ՋԾԵ, ի մարտ ամսոյ ԺԲ օրն։ — Յայսմ ամի Տէր Յովհաննէս արքեպիսկոպոս Ասլանպէկէն, և Սարգիս եպիսկոպոսն և Դաւիթ աբեղան, նվիրակ էին եկեալ ի Ս. Էջմիածնէն. յիշեցէք և ընդնոքա ի բարին. և ձեզ յիշողացդ և մեզ յիշեցելոցս ողորմեսցի Քրիստոս Աստուած։... [Առ Մխիթարեանս Վիեննայ]։

1518.

Ես Յոհաննէս աբեղաս գրեցի զսայ. և ես Ավետիք երեց օրընկեցի և գրեցի զսա ի Կամենից քաղաքս, թվին ՋԿԷ։ [Յայսմաւուրք, ի Բարիզեան գրատան]։

1544.

Կրկին նորոգեցաւ Սաղմոսարանս և կազմեցաւ ձեռամբ յոգնամեղ գրչի ԾԾ ԺԺ ՄՄ ՕՕ ՌՌ ԺԺ. (Մինասի) դպրի, ի քաղաքիս Կամէնից. թվին ՋՂԳ, մարտի ի աւարտեցաւ։ Եւ Քրիստոսի փառք։ [Սաղմոս ի Ս. Ղազար]։

1550.

Գրեցաւ գիրս ի կայսերանիստ և ի մայրաքաղաքն մեծն Հռոմ ի Թվ. Հայոց Մեծաց ՋՂԸ, սեպտեմբերի Զ. ձեռամբն տառապեալ հողոյս Սիմէոն սարկաւագի Իլովցոյ. Եւ Քրիստոսի փառք։ [Կոնդակ մի Ստեփաննոսի Կաթողիկոսի]։

1556.

Գրեցաւ աստուածաշունչ գիրս սուրբ հին Կտակարանաց ի Թվ. Հայոց Մեծաց ՌԵ, սեպտ. Դ, ի մայրաքաղաքն ի Լով, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին Նինջման. ի թագաւորութեան Զիկմունտ Ակոստոսին Իլախաց և Ըռուղաց և այլ խառնիճաղանճ ազգաց։ Ի ժամանակս այս էր քոյր թագաւորին Մաճրաց թագուհին Զապէլլա և իւր նորաբողբոջ որդին Եանուշ թագաւորն Մաճրաց, և բազում իշխանք և հեծելազօրք ի քաղաքս ի Լով։ Եւ գրեցի զսա ի խնդիր երջանիկ և աստուածաբան վարդապետին և արհիեպիսկոպոսին Տէր Գրիգորին Վարաքեցոյ, որ մականուն Անանիենց կոչի, և իմոյ անարժանութեանս օրհնողին Սիմէոնիս.... Ջնորափոխ գրոցս փոխարկուս զանպիտան ոգիս զԱւետ՝ յիշեա վերահասուտ. ընդ նմին և զտառապեալ հողս զծնողս

Սիմէօն... անարժան երէցս։ Գիրս մնայ և ձեռս հող դառնայ։ [Յիշատակարան Ազգաբանութեան Ս. Գրոց]։

1566.

Թվին ՌԺԵ. ես Միքայէլ երէց՝ որ ազգանուն Թիխնօ կոչիւր, որդի Կոստայի որդւոյ Թիխնայի, յուլիսի 20, ելաք ի Լովէն՝ Սիմէոն երիցու հետ, ու գնացաք ի Լուպլին, ի մեծ տիվան, առ Զիկմունտ Աւգուստոս թագաւորն ի... սէյմ. ու զԼովայ եկեղեցւոյն զքահանայսն ազատեցաք ի հարկապահանջութենէ քաղաքին և ի թագաւորականէ. ու թարխանութիւն[1] երետ։ Աստուած զինքն ազատէ յամենայն չարէ։ [Ժողովածոյ գիրք]։

1568.

Արդ, ո՛վ մանկունք նոր Սիոնի,
Որք հանդիպիք այսըմ տառի,
Յիշման անէք զիս արժանի
Ըզմեղապարտս յամենայնի՝
ԶՄինաս անուն՝ մեղաց գերի,
Տըրուպ ծառայ ամենայնի.
Այլ և ծնողաց իմոց բարի
Յովհան անուն և Ղանիմաթի.
Որ զառածեալս մեղօք գերի
Ծընեալ զաւակ ողորմելի.
Թողութեան զմեզ արժանի
Հայցեմ լինել յօրըն վերջի.
Տէր՝ համօրէն ողորմեսցի՝
Լինել բարեացն այն արժանի.
Որ է աստ մարդկան ազգի,
Միշտ ողորմած ամենայնի.
Որ խնդրողդ էք մեզ բարի.
Ամէն, ամէն, և եղիցի։

Գրեցաւ ի յաշխարհս Իլախաց, ի քաղաքս Լով. Թվին Հայոց ՌԺԷ, յուլիս Ա. աւարտեցաւ. [Մաշտոց առ Մխիթ. վիեն]։

1572.

Գրեցաւ Ձեռնմաշթոցս ի յաշխարհս Իլախաց, ի քաղաքս Լով, Թվ. ՌԻԱ, հոկտեմբեր ամսոյն աւարտեցաւ. ըստացողն և ընթերցողքն միաբանեալք ընդ գրչին՝ յիշեսցին ի Քրիստոս Յիսուս ի Տէր իւրեանց. ամէն։ — ԶՀամթեցի Յակոբ երէցս յիշեցէք յաղօթս ձեր. զայս տաղս (Ո՛վ զարմանալի) գրեցի։ — [Մաշտոց, ի Բարիզ]։

1578.

Ի թագաւորութեանն Ստեփաննոս Պաթորիյ բարեպաշտ արքային, որ էր յազգաւ Ըկռուզ, և հանդիպեցաւ յայսմ ամի ի քաղաքս Իլով, ի հայրապետութեան Տեառն Տէր Թադէոս կաթողիկոսին, կրկին ստացաւ զսուրբ աւետարանս Սէչովցի Պր. Տանուագն աստուածասէր տանուտէրն, և ետ զսա սուրբ եկեղեցւոյ անուան Ս. Աստուածածնին Ննջման. յիշատակ իւր հոգւոն և իւր

1 Պարսիկ բառ, նշանակէ ազատ ըլլալ (հարկ տալէ)։

զուցեալ հօրն նորա Զաքկին, և ամենայն արեան մերձաւորաց։... Յիշեսջիք ի Տէր Քրիստոս զամենեսեան առ հասարակ, զառաջին ստացողն և զկրկին և զվերջին նորոգօղս՝ զՊր. Թորոսն, և զամենայն արեան մերձաւորսն... յիշեսջիք և զիս չինչ մանուկս Յիմէօն լոկ անուն երէցս՝ գրող յիշատակարանիս, կաթիլ մի ողորմութեան խնդրելով ի Քրիստոսէ։

Ո՛հ զանբարիս ի մէջ բարեաց
Եւ զանարժանս ի մէջ բազմաց,
Յամէն դիմաց կամ պաշարած
Որպէս կաքաւ ի յարծըւաց.
Հոգիս ցանկայ երկնաւորաց,
Մարմինս ըղձայ գործոց չարեաց...

Արդ քահանայք լուսերամաց
Եւ հանդիպողքդ սուրբ վտակաց
Աւետարուղխ ականց փառաց,
Զիս յիշեցէք ի լի սըրտաց՝
ԸզՅովհաննէս յետնեալ բարեաց.
Զկրկին կազմողըս սուրբ տառաց։...
[ի մեծի Աւետարանին, ի Լեմպերկ]։

1594.

Յերեսներորդի առաջներորդի յոբելեանի և ընդիկտիոնին երկրորդի բեսեքիսխտոնի և միոյ ղըմպիաթի Թուաբերութեան ժամանակի մարդեղութեան Փրկչի, նա և ըստ համարոյ յաբեթային տումարի՝ հարիւր քսան և հինգ ինդոսի և ութերորդ նոնոսի, յարաբարդեալ ամի, եղեւ սկիզբն և աւարտումն գրի, ի խնդրոյ ողջաքան և իմաստուն կրօնաւորի Տէր Աւագին Գաղատացւոյ, ի դաստակերտէ Սրբոյն Անտոնի եգիպտացւոյ. որ այժմու ժամանակի պանդուխտ գոլով յաշխարհն Իլախաց բարելի մայրաքաղաքիս Լէօպօլիս կոչեցեալ. և տեսեալ զծաղկաքաղ Հարցմունքս զայս առ մեզ, ետ գրել զսա ի վայելս անձին իւր, ի շահ և ի յօգուտ ամենայն բանասիրաց, որ և ստացաւ զսա մեծափափագ տենչանօք ի սփոփանս մխիթարութեան անձին իւրոյ սրբասիրի։ Արդ, որք հանդիպիք սորոյ տառիս, իբրեւ զփունջ մի մանուշակի ի քիմս իմաստասիրաց, յիշեսջիք զվերոյգրեալ զհրեշտակակրօն Տէր Աւագն և զծնողս իւր հոգեւոր և մարմնաւոր և զեղբայրս իւր և զամենայն ազգայինս։.. Այլ և զտրուպս ամենայն գրչաց Աբթուն անուամբ կոչեցեալ և գործովք ի քուն մահու ընկլուզեալ. մաղթեցէք վասն իմ հանդիպողքդ՝ առ Տէր... բայց գրեցաւ ընդ հովանեաւ Նշխան Ս. Աստուածածնին, ի թագաւորութեան քրիստոնէական զարմի Գ. Զիկմունդի. զոր Տէր Աստուած մեր պահեսցէ զսա ընդ հովանեաւ ամենազօր աջոյ իւրոյ, և յաղթող արասցէ ընդդէմ թշնամեաց խաչին. և ի կաթողիկոսութեան արարատեան աթոռոյ Տեառն Տէր Դաւթի. Հայցեցէք առ Տէր, զի մշակ սաանց ամօթոյ պահեսցէ զնա ընդ ազնիւ հովուացն, և լսել տացէ նմա զերանելի բարբառն՝ որ ասէ, Ծառայ բարի. և այլն։ [Խորատակեան քանից հաւաքումն, յԵրուսաղէմ]։

## 1601 ·

Ի Թուականութեանս յաբեղական տումարի ՌԽԹ ամի, և ի յամսեան մարտի 21, ի Լով քաղաքի, աստուածատէր տանուտէրն Իվաշքօ որդի Գր. Միքօի յայժմուս ժամանակի տեսաւ զայս անգին մարգարիտս, որ եղծեալ էր ի հեւթայի տեղւոյ, և փափագմամբ ետուր կրկին նորոգել, վասն իւր հոգւոյն և իւր ծնողացն և իւր որեան մերձաւորացն. զինք յիշեցէք ի բարին և դուք առացէք զԱստուած ողորմին... Դարձեալ աղաչեմ, ով քահանայք սրբալի և ընթերցողք այսմ գրի, մի՛ մոռանայք զիս եղկելի զՅովհաննէս զվերատին կազմող գրի, որ զսուրբ աւետարանս Յիսուսի կապեցի, և այլն։ [Աւետարան ի Լեմպերգ]։

## 1603 ·

Գրեցաւ ի Թվ. Հայոց ՌԾԲ ամի, ի յերկիրն Իլախաց, ի քաղաքն Ջամօսցայ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին. ի ժամանակս հայրապետութեան Հայոց Տէր Մելքիսեթեկին, և թագաւորութեանն Իլախաց Ջիկմունդին, և զօրավարին իւրոյ Յովանէսին, որ կոչի իլախերէն՝ Եան, և ըստ հայերէնակոչութեան Ջամօցքի. որ և ըստ անուան իւրոյ շինեաց զքաղաքս զայս և անուանեաց Ջամոսցա. և յայսմ ամի կատարեցաւ բարւոր դիրանց քաղաքիս։ Արդ ի յանգ հասեալ գրոցս, աղաչեմ զվերծանողքդ յիշել զանարժան գրիչս Յակոբ երէցս, որ մեծաւ փափագանօք գրեցի զսա յիշատակ հոգոյ իմոյ և ծնողաց իմոց. և որ յիշէքդ՝ յիշեալ լիջիք, և այլն։

## 1603–4 ·

... Արդ լուեալ (զվարս) զայսքան աստուածազգեաց խաչակրօն և զանազան արանց և կանանց և կրօնաւորաց և ամենայն զերամաքուր խմբից դասուց մարտիրոսաց, որք զարիւն իւրեանց ետուն փոխանակ զաւրինն Աստուծոյ, ցանկացող եղեալ Սրբոցս և գրոցս՝ սրբասէր և աստուածասէր տիկինն Կատարինայն և Կերուխնայն, և ետուն գրել զսուրբ գիրքս զայս յիշատակ հոգւոյ իւրեանց և ծնողաց իւրեանց... Արդ գրեցաւ սուրբ գիրքս ի Թվ. Հայոց ՌԾԲ, ի հայրապետութեան Տեառն Մելքիսեդեկի և ի թագաւորութեան Գ. Ջիկմոնտոսին, ի քաղաքս որ կոչի Լով, ընդ հովանեաւ Սրբուհւոյ Աստուածածնին եկեղեցւոյն. ձեռամբ մեղաւոր և անարժան և անիմաստ գրչի Ղազար դպրի, ի խնդրոյ աստուածասէր տիկնոջն Կատարինէին։ Եւ արդ, ես յետինս ի գրչաց անարժան և մեղաւորս, մանուկ էի հասակաւ և դպիր ի Բաբերդ քաղաքի, պատահմամբ ան Տաճկաց ձեռքն անկայ, և խիստ տանջանօք և չարչարանօք ազատեցայ ի ձեռաց նոցա, նախախնամութեամբ և գթութեամբն Աստուծոյ ամենակալին. և եկեալ ի Լով քաղաքն Ըռուզաց, ընկալան զիս արք տեղւոյն այնորիկ, և ետուն ինձ յարկ մի, և առացին, թէ ծառայես Ս. Աստուածածնին. և անդ և ի ծառայելս իմում բազում աշխատութեամբ

գրեցի և ծաղկեցի գիրքս այս՝ ի դուռն Ս. Աստուածածնին, ի դառն և անբարի ժամանակիս, յորում նեղիմք ի ներքին և յարտաքին թշնամեաց։ Եւ արդ աղաչեմ զձեզ՝ ո՛վ երանեալ սուրբ ընթերցողք, յորժամ պատահիք սուրբ գրոցս, ի տեսանելն ձեր զանհեթեթ գրիկս և ծաղիկս, աղաչեմ զձեզ, մի՛ մեղադրէք. զի թէ և գոյր կարողութիւն փոքր մի այլ լաւ գրել և ծաղկել, սակայն ոչ կարացի, զի կարի տխեղ(տաւ) արտօրք էի՝ վասն ուսանելոյ համար լաթին լեզուին և գրին, և միայն աւարտելոյն էր փոյթ և ոչ արուեստի գրոյն և ծաղկոյն։...

Ղարիպ եմ օտար յաշխարհի,
Անարժան և յոյժ փանագի.
Մարմնովս եմ մեղաք ի լի,
Ըզհոգիս իմ խաւար լցցի։
Աղաչեմ ըզքեզ Միածին որդի,
Ստեղծող երկնի և երկրի.
Մեղայ գոչեմ և այժմ ի լալի,
Թող զիմ մեղքն զոր ես գործեցի։
Զքեզ աղաչեմ լոյսդ հայրենի,
Յարութիւն ու կեանք մարդկայնի.
Աստէն տուր զզջումն ինձի՝
Փոշմնիլ զոր ինչ գործեցի։

Անճառ Միածին որդի
Որ էիր ի Հօր անմարմնի,
Խոնարհեցար յաշխարհս տարի
Եւ առեր մարմին ի Կուսի.
Րաբի երկնաւոր բարի,
Գթա, Տէր, ի քո ծառայի.
Հառաչեմ ես արտասուալի,
Հաշտեա, Տէր, քո արարածի։
Ի քէն հայցեմ, ո՛ փափագելի,
Տուր անմահ ջրոյդ որ եմ ծարաւի.
Մի՛ տար զմիտս զբաղումն յաշխարհի,
Այլ տուր իմացումն՝ որ միշտ քեզ հայի։

... Որոց աղօթիւքն ողորմի Քրիստոս Աստուած ստացողի գրոցս աստուածասէր տիկնոջն Կատարինէին, և առն իւրոյ Զատկին, և ծնողացն իւր Գրիգորին և Աննային, և ամենայն արեան մերձաւորաց. նաև մեղապարտ Ղազար գրչին, և իմ ծնողացն՝ Նիկոլին և Շնոֆորին, և իմ քուրոջն Ղուտբատին։.. (Յայսմաւուրք ի Լեմպերկ։ Տես և տարի 1613. 1624. 1627. 1629).

1605.

Գրեցաւ Սաղմոսարանս՝ որ է երգ Դաւթի մարգարէին, ի կաթողիկոսութեան Տէր Մելքիսեթին, թագաւորութեան Ֆրանգաց աշխարհի Գ Զիկմոնդին, ի թվականութեան Հայոց ՌԾԴ, ապրիլ ամսոյ Ի, յաշխարհիս Իլախաց ի քաղաքս Կամենից. որ և երետ զսա գրել Պր. Խաչքօ, որ էր որդի Պր. Ավագին, մեծաւ փափագանօք և սրտիւ յօժարութեամբ, ի վայելումն անձին իւրոյ և զաւակաց նորին. որ և Աստուած բարով վայելել տացէ նմա ընդ երկար ժամանակաւ։ Արդ գրեցաւ ձեռամբ անիմաստ և անհմուտ չքեղող (? չքերդող) Յակոբ դպրի որդւոյ Տեառն Գրիգորին։ Աղաչեմք զամենեսեան, ո՛վ ընթերցողք, որք հանդիպիք սմա տեսանելով կամ աղօթս առնելով, անմեղադիր լերուք վասն սղալանաց գրոցս, զի կար մեր այսչափ էր. զի անտեղեակ եմ ի գրոց որբոց. բաւ է իմաստնոցն։ Եւ արդ ծաղկեցաւ ծաղկունքն դարձեալ նոյն Յակոբ դպրի ձեռամբ. և կատարեցաւ ի փառս Քրիստոսի։

1607·

Եղեւ գրեալ սուրբ գանձարանիս յամի շրջագայութեան արամազեանս տոհմի Հայկական սեռի աբեթական տումարի ի ԻԱ յոբելինի եւ հինգերորդ յոբաբարդի, սեպտեմ. ամսոյ հինգերորդի, օրն ուրբաթի, ի հայրապետութեան Ս. Էջմիածնայ Տեառն Տէր Գրիգորի, եւ ի յառաջնորդութեան այսմ նահանգի Տեառն Տէր Կարապետ քաջ րաբունապետի, ի յաշխարհս Իլախաց, ի քաղաքս Կամենից, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս եւ Ս. Նիկողայոս Հայրապետի. Ցոանգաց ազգի Թագաւորութեան Գ Զիկմունդին։ Արդ գրեցաւ այս սուրբ գանձարանս ձեռամբ մեղաներկ եւ անհմուտ անարժան անծան եւ անծնող գրչի òòò ò öö ööö ŏ ի (Յակոբի) սուտանուն սարկաւագի, որդի Տէր Գրիգորի, չարութեամբ լցեալ եւ մեղօք տարածեալ։.. Որոյ փափագող եղեալ քաջ րաբունապետն մեր Տէր Կարապետ արքեպիսկոպոս՝ հմուտ եւ տեղեակ աստուածայնոց հին եւ նոր կտակարանաց... ետ գրել զսա յիւր արդար եւ քրտնաջան վաստակոց։... [Սաղմոսամեկն. առ Մխիթար. Վիեննայ]։

1607·

Եղեւ գրեալ սուրբ գանձարանիս որ կոչի Աւետարան, յամի շրջագայութեան արամազեան տոհմի Հայկազեան սեռի աբեթական տումարի ի ԻԱ յոբելինի եւ հինգերորդ յոբաբարդի, սեպտեմ. ամսոյ ԻԷնի, օրն չաբաթ մուտ կիրակի։ Արդ գրեցաւ սուրբ աւետարանս ի մայրաքաղաքն Կամենից, յերկիրն Ռուզաց եւ Իլախաց, ի հայրապետութեան Տեառն Տէր Գրիգոր երջանիկ կաթողիկոսին Ուրհայեցոյ, եւ առաջնորդութեան երկրիս Տէր Կարապետ երջանիկ վարդապետին, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին եւ Ս. Նիկողայոսին. ձեռամբ անարժան եւ մեղօք զաղածեալ Ղազար լոկ անուն եպիսկոպոսի Թոխաթեցո, ի խնդրոյ աստուածասէր առնս Պարոն..... Եւ եդ յիշատակ իւրն եւ իւր ննջեցելոցն... Խնդրեմ ի ձեզնէ չմեղադրէք վասն խոշորութեան կամ սղալանաց գրչիս. քանզի յոյժ կարի հիւանդ էի ի սըրտէցաւէ. վասն այսորիկ յոյժ լալագին դիմօք աղաչեմ որ յետ Ցինանցն աւետարանացն Ա փոխ աւետարանաւ եւ Աստուած անեղ եւ Քրիստոս որդի սաէք յիշատակ դնօղին, եւ աւետարանիս գրողին հոգուն Ա Հայր մերիւ յիշեսջիք։ Եւ այն որ տաստն է ի տուրս պարգեւաց՝ հատուցէ ձեզ զփոխարէնն. եւ Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն։ Գրեցաւ թվին ՌԾԶ, օրն չաբաթ։ [Առ Մխիթ. Վիեննայ]։

1607–8·

Մեսրոպ վարդապետս Կաֆացի աշակերտ Տեառն Յոհաննէս կաթողիկոսի Սիս աթոռոյ, որ գծագրեցի զայս գծաւոր եւ խրթին մատեանս տոմարական արհեստից մեկնութիւնս, ինձ եւ ծնողաց իմոց յիշատակ բարի՝ ի դրամս սեփական եկեղեցւոյ. զի կար իմ այս էր. զի մինչ « ի Նահանջն այսպէս առաս », եւ

գծագրեցի, մինչ էի 'ղասատունն վեհին խմայ ի Սեբաստիա. և մինչ ի կ՛ յառա-կուԹիւն միաչարութիւն՝ » Դաշօացի Սարգիս քահանայն գրեաց, ՌԽԸ Թվին։ Եւ ես հրամանաւ խմոյ վեհին եկի ի Կաֆա. մնաց գիրքս կիսատ, անմխի-Թար ու տարակոյս էի. մինչ որ Հոգին Աստուած տնօրինեաց, Հոգոյն Սուրբ առաջնորդութեամբն Թվին ՌԾՁ եկի ի Նաչ քաղաքն, և օրինակ գտի Տէր Աստուածատուր քահանայէն. և բարեմիտ սարկաւագ մի Ստեփանոս անուն կատարեաց զգիրքս, և մխիԹարեաց զանմխիԹար անձս։ Աղաչեմ զքեզ՝ պատե-ուհկարք եկեղեցւոյ՝ ոյք հանդիպիք այսմ տառիս, յիշեցէք ի Քրիստոս զաչ-խատողքս... մանաւանդ յՆաչ քաղաքի արհիեպիսկոպոս Տէր Յովհաննէս Սեջիվկյան, որ զտարտամ սիրտս մխիԹարեաց... [Ցանկեր Գրիմ. Մեկն. Տօ-մարի, ի Ս. Ղազար]։

1608.

Շատ ջանիւք ջանացի գրել և ոչ գտանէի զգաղափար սորա, որ մինչ ի տասն ամ խնդրեալ ասա և անդ, ոչ կարացի ձեռն բերել. յետ այսորիկ եկն առ մեզ սիրելի և կարգակից եղբայրն մեր Տէր Աբրահամ կրօնաւորն, զոր առաջեալ էր զսա վասն իւր, և տեսեալ զփափագ ցանկութեան սրտի իմոյ՝ շնորհեաց մեզ աւորիս զսա, սակաւ ինչ ընկալեալ ի ձեռանէ իմէ. Աս-տուած իւր փոխարէնն հատուսցէ։.. Արդ ես մեղաւոր և անարժան զառա-ծեալ Յակոբ երեցս՝ առացոյ զսա ի Թվաբերութեան սրբեթական տումարիս քսան և մի յոբելինի և եօԹն Թիւ յաւելորդի, յամսեանն հոկտեմբերի. ի ժամանակս Թագաւորութեան ծլախաց Ջիկմոնդի Գ-ի. և հայրապետ Հայոց ոչ գոյր ի Ս. Էջմիածին, որ նստէր յաԹոռ Ս. Լուսաւորչին և հովուէր ըզ-ժողովուրդ Նորին. վասն պատերազմացն որ կայր ի մէջ Պարսից և Իսմայե-լացւոց՝ զերի և եղկելի եղեն ամենայն ազգն Հայոց. զի ցրուեցան ամենե-քեան ընդ երեսս երկրի, որպէս փոշի հոսեալ ի հողմոյ՝ ծագաց ի ծագս. բաժանեալք ի սիրելեաց, հեռացեալք ի հայրենեաց, որոշեալք ի յնտանեաց, անջատեալք յամենայն բարուԹեանց, շրջէին պանդխտէին նշգեհալեալք ի մէջ այլասեռն ազգաց այլախօս լեզուաց և անընդել աշխարհաց, որպէս զոչ-խար՝ որոց ոչ իցէ հովիւ, անտերունչ մնացեալ։ Ողորմելի և աւաղելի եղեր մեծանուն ազգ Հայոց մեծաց. վասն էր փղձկացար, տառապեցար, և նուա-զեցար. — վասն այն՝ զի մեղար. այգի հայկազուն տոհմիդ, ոչ տուեր խա-ղող, այլ փուշս բուսուցեր. վասն այն խոպանացար. ցանկ քո քակեալ և զեւ, և եղեր կոխան ամենայն ազգաց. այժմ զի՞նչ ասնելոց ես. զի որք մնա-ցիր ի հօրէ և ի մօրէ, այսինքն ի Թագաւորէ և ի հայրապետէ։ Այլ յուսա առ Աստուած, խոստովանեա նմա, զի փրկիչ քո նա է. Թէպէտ և եհար վասն մեղաց դարձեալ նոյն ինքն, ողորմեսցի ըստ մեծի ողորմուԹեան իւ-րում. և ժողովեսցէ որպէս հաւ զձագս իւր ընդ Թեւօք, և սեպհականեսցէ ի հայրենի աշխարհն, և հաստատեսցէ Թագաւորաւ և հայրապետիւ բարե-խօսուԹեամբ Սրբոյ Հօրս ամենարհնեալ Աստուածածնին։.. Մի մոռանայք զհայրն

իմ զԱյԹուն, որ Թարգմանի Ոսկի, և զամենայն արեան մերձաւորսն իմ, և զուսուցիչն իմ զՏէր Յակոբ քահանայն, և զՏէր Յակոբ կրօնաւորն՝ որ չնոր_հեաց զսա։... [Աստուածաշունչ ի կայսեր. գրատանն Վիենայ]։

1609.

Գրեցաւ գիրս ձեռամբ Թորոս դպրի որդւոյ Միթքոյին. Թվին ՌԾԸ. Ո՛վ եղբարք, յիշեցէք զմեղաւոր գրչակս։ [Ճաշոցգիրք, ի Ս. Ղազար]։

1610.

Ես անարժան Յակոբ երէց Եազլովլացի, Թվին ՌԾԸ, սեպտ. 4, փոխարկեցի զխոստովանութիւնս ի քաղաքն Կամենից. նորընծայ էի, և ի մէջ քահանա_նից որ գրեցի զսա. ինձ մեղաւորիս՝ Աստուած ողորմի ասացէք վասն Աստու_ծոյ սիրուն։

1610.

Գրեցաւ Պատարագամատոյցս ի լաւ և ընտիր օրինակէ՝ ձեռամբ անարժան և անարհեստ Աստուածատուր դպրի, որ եմ որդի Տէր Յակոբին, ի քա_ղաքն Կամենից, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին և Ս. Նիկողայոսին. ի վայելումն նորընծայ Տէր Ղազարին, և յիշատակ Եազլովիցու Հանկատար Ս. Աստուածածնին։ Ով սրբասնեալ քահանայք, յորժամ որ կարդայք կամ օրինակէք, յիշեցէք զիս և զիմսն ամենայն՝ ի դէմ սուրբ պատա_րագին։ Աւարտեցաւ Թվ. ՌԾԸ. սեպտեմ. 28։ [Պատարագամատոյց. Յով. Ար_ձիշեցւոյ. ի Ս. Ղազար]։

1613.

Անուանի գիրքս Ճաշոց, զի հանապազօր ի ճաշոյն ընթեռնի, այլ և կոչի Տարէգիրք, զի զբոլոր տարին ընթերցուածոն յինքն ունի... Յիշեսջիք... զզաւակսն իմ և զամենայն արեան մերձաւորսն իմ. նա և զստացող գրոցս զԽլովցի Պր. Պէտնատն՝ Պր. Թորոսի որդին. որ ստացաւ զսա ի հալալ ար_դեանց և յարդար վաստակոց իւրոց, և ետ յիշատակ անջինջ Զամոսցա քա_ղաքիս Ս. Աստուածածնի եկեղեցւոյս, վասն հոգոյ իւրոյ և վասն ծնողաց իւրոց. և ինքն ի յայսմ ամի վախճանեցաւ ի Քրիստոս մանուկ տիօք երի_տասարդական հասակին, և մեծ կսկիծ հասոյց ծնողացն։.. Աղաչեմ զձեզ, ով ընթերցող եղբարք իմ, որ մեղադիր չլինիք խոշորութեան և սխալանաց և անյարմարութեան գրոյս. զի պէսպէս վշտօք և չարչարանօք գրեցի. զի ի ՌԾԲ Թվին ակսայ և ԿԲին բոլին ի յաւարտն հասայ. վասն որոյ խնդրելով աղաչեմ զձեզ որ խնայելով բանէք զգիրս, և զմեզ անպարսաւ Թողուք. մա_նաւանդ Թէ յիշելոյ առնել արժանի... [Կայսեր. գրատանն Վիենայ]։

1313·

Ես Սարկաւագ Լեհացիս Թվին ՌԿ երկուսին հանդիպեցայ Մսիր քաղաքին. ով ընթերցողք այսըմ տառիս։ [Մաշտոց, ի Պետլիս]։

1613·

Կատարեցաւ քերական գիրքս. և Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն։ Թվ. ՌԿԲ. ես անարժան մեղաւոր Զատիկ՝ Պր. Պողտանայ որդի. գրեցաւ Թուխտս. վա՜յ ինձ մեղաւորիս։ [Այս որս գիրք, յԷջմիածին]։

1615·

Ես Յակոբ Էրէցս Թոխաթեցի Թարգմանեցի զգեղեցիկ Պատմութիւնս (Փանցիանոսի) ի լատինական գրոց ի հայ գիր. ի խնդրոյ վարժապետին իմոյ Տէր Յակոբին՝ որ ասեն Ալվաթենց, Թվին ՌԿԳ. փետրվար ամսոյ ԺԴ, ի երկիրն Լեհաց, ի քաղաքն Զամաւցայ։ Աղաչեմ զձեզ, յորժամ որ փոխարկէք, զանունս մեր մի՛ յապաղէք գրել ի տեղիս խորագրոց. և ասացէք, թէ, Աստուած ողորմի. ամէն։ [ի Բարիզ. գրատան։ Նոյն տարին Յակոբ Թոխաթցի թարգմաներ է ի Զամոսցա և Եզոբն իմաստասիրաց խօսքերն]։

1616·

Փառք համագոյ համազօր համապատիւ համատարած Ս. Երրորդութեան... որ ետ կարողութիւն ոգոյս սուտանեան գրչիս յիմար և տարտամ եղեգնագրծիս, հասանել ի վերջին գիծ տառիս. որ կոչի Արարածոց մեկնիչս, ի լաւ և ջընտիր օրինակէ։... Յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զՍարգիսն ղըպիրն, որ ետ գրել զԱրարածոց մեկնիչս ի վայելումն անձին իւրոյ. զոր Տէր Աստուած վայելել տացէ նմա մինչ ի խորին ծերութիւնն։ Գրեցաւ սա ի Թուին ՌԿԵ, ի քաղաքն Իլով, ի թագաւորութեանն Զիկմոնտին և ի կաթողիկոսութեան Մելքիսեթին. ձեռամբ մեղապարտ Գրիգորին, մականուամբ Տօմոժիրաքին։ Եւ ինձ մեղապարտ Գրիգորիս գրչի, և իմ վարպետին Տէր Դաւթի՝ ողորմութիւն և թողութիւն մեղաց ի նմանէ։ [Վարդան, Մեկն. Արարածոց. ի Ս. Ղազար]։

1617·

Ամենակարող զօրութեամբն Աստուծոյ կազմեցաւ Նոր տպագիրս երկիրն Իտալիաց ի քաղաքս Լէվ կոչեցեալ, ընդ հովանեաւ Ննջման Ս. Աստուածածնին, ձեռամբ յոգնամեղ Քարմատանենց Յովանէս իրիցուս. զոր հոգս տարեալ մեծաւ աշխատութեամբ և բազում ծախիւք՝ տարի մի բոլոր արուեստաւորաց հետ դատեցա մինչեւ գիրն ի գլուխ հանի, և Նոր կազմարան սահմանեցի, և վասն փորձի Նախ զերգսն Դաւթի մարգարէին տպագրեցի, ի օ-

զուտ և ի չափ սատուածասէր ազօթողաց մերասեա ազանց. զոր եթէ հանելլ լիցի կամաց ձերոց՝ Տեառն փառք։ Արդ եղեւ գրաւ սորին թվականութեանս Հայոց Մեծաց ՌԿԵ ամին յամսեանն գեկա. ժէ, և ի ՌՉՃԺՁ ամի (Փրրկ-չին) ի հայրապետութեանն Էջմիածնու սուրբ յաթոռոյն կենդանի նահատա-կին Տեառն Տէր Մելքիսեդեկ կաթողիկոսին. այլ և Կիլիկեցո գաւառին Տէր Յովհաննէս քաջ րաբունապետի. ի սոյին ժամանակս հանդիպեցաւ տար սա-րին։ Այլ և ի Թագաւորութեան քրիստոնէից լէհ ազգին բարեպաշտ արքայի Երրորդ Զիկմունտին, զոր Տէր Աստուած զինքն անսասան պահեսցէ երկար ամօք։ Արդ աղաչեմ զամենեսեան որք հանդիպիք այսմ գրիս, յիշեսջիք ի բարի և զծնողս իմ՝ ի Քրիստոս հանգուցեալ Բաղէշցի Քարմատէնց զՄու-րատն, և զմայրն իմ զԱննա. այլ և զպապն իմ զՏէր Սիմէոն քահանայն, և զամենայն ազգայինս իմ։ Եւ նա ինքն որ տատն է ի սուրբս բարեաց, կրկնակի բարութեամբ զփոխարէն պարգեւեսցէ մեզ և թողութիւն շնորհեսցէ յանցանաց ձերոց. և ձեր սուրբ աղօթիւք զմեղս մեր ջնջեսցէ. այլ և զնըն-ջեցեալսն՝ խաչին լուսոյ և երկնից արքայութեան արժանի արասցէ. որում փառք յաւիտեանս. ամէն։ [Մաղմոս տպագրեալ]։

1617-8·

Ես տրուպս քահանայից, մանաւանդ թէ և ամենայն քրիստոնէից Յակոբ երեցս, ցանկացող եղեալ պատմութեան Սրբոցս, և ի հարկէ յանձին կա-լեալ՝ ձեռն արկի ի գծագրութիւն սորա. զի վասն ծովացեալ մեղաց իմոց Յայսմաւուրքն և Ճաշոցն և շուրջառ մի այրեցաւ ի մէջ եկեղեցւոյն, կայծ հա-սեալ ի նրագէ, յաւուր տօնի Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, և յե-րեկոյէ մինչեւ ցառաւօտն ծխեալ ծախեցան. և վաղորդայն առաւօտուն պա-հուն գնացեալ իմ և բացեալ զեկեղեցին, տեսի լի ծխով, և զաղուամ կա-լաւ զիս. կարծէի թէ ամենայն եկեղեցին բորբոքեալ այրէր. և մտեալ ի ներքս՝ տեսի զերկուսին գրեանսն ի վերայ միմեանց հրացեալ. Ճաշոցն ամենեւին այրեալ, և Յայսմաւուրքն կիսայրեաց ծխայր. և ես եղկելիս ի մեծ կսկծալ մեծամեծ ձայնիւ աղաղակեցի, ողբս և վայս կարդալով, որպէս ոք ի վե-րայ մեռելոյ սիրելոյ. և այսպէս զրկեալ կողոպտեցայ ի մեծամեծ գանձուցս յոյոցանէ, և չկայր միւս այլ Ճաշոց կամ Յայսմաւուրք՝ ընթեռնուլ յեկեղե-ցին. և մեծաւ ջանիւ հազիւ առաք զգաղափար սորա ի մայրաքաղաքն ի Լա-վայ. և ես անվարժ գրով գրչութեան՝ հարկեցայ ի գործ, և ապաւինեալ յողորմութիւնն Աստուծոյ սկսայ, և նորին շնորհօք յանգ հասեալ կատարեցի։ Արդ գրեցաւ Յայսմաւուրս ձեռամբ յոգնամեղ Յակոբ երիցուս, թվին ՌԿԶ. ի աշխարհս Իլախաց, ի Նորաշէն քաղաքս Ջամօցս, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնիս և Ս. Լուսաւորչին և այլոց խորանացս. ի ժամանակս հայ-րապետութեան Ս. Էջմիածնայ Տեառն Տէր Մելքիսեդեկի կաթողիկոսին, և թագաւորութեան Իլախաց՝ Զիկմունդի Գ.ի, և իշխանութեան քաղաքիս Պր. Թովմասին՝ երիտասարդ իշխանին, որ հայրենակցութեամբ Ջամօյաքի ա-

Նուանի. զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս արասցէ. ամէն։... Յիշես-ջիք զհայրն իմ զԱլթունն, և զմայրն իմ զԱննան, և զԳրիգոր որդեակն իմ, որ ետ յօգնութիւն գրոյս ուժ դաշեկիան կարմիր։ Եւ եղաք զսա յիշա-տակ եկեղեցւոյս՝ որ յանուն Ս. Աստուածածնին կառուցեալ է ի քաղաքս Զա-մոսցա. և այլ չունի ոք իշխանութիւն տանել զսա աստի։ [Նկարագր. գրա-տանն Վիեննայ]։

1617-8.

Ի Թվին ՌԿԶ, գրեցի այս ի խուցն աղայններուն, ի քաղաքն Իլով, հսկո. Լ. տուտանուն ՔՌ. I. ԵՌ. ԱՌ. խս (Սարգիս) զգործ?։ Երես անկեալ կ'ա-ղաչեմ զզատ վարողաց՝ որ անմեղադիր լինիք գրիս, զի ծերացեալ անձամբ ԻՆ. ամեայ (?) գոլով՝ ձեռնարկեցի ի սմա, Աստուծոյ ողորմութեամբն յա-ւարտ ածի, և փափագ սրտիս կատարեցի և զիղձս իմ լցուցի. հաւաշմամբ սրտիւ կ'աղաչեմ զընթերցողքդ՝ որ աննախանձ զԱստուածողորմին չի խը-նայէք. և Աստուած զձեզ յիշէ յիւր միւսանգամ գալուստն. ամէն։ Ես մե-ղաւոր Քռատցի տուտանուն Սարգիս։

Ո՛վ եղբայր Քոթահիացի տէրացու Սարգիս, երբ օգտիս ի սմանէ՝ զիս յյօգնամեղ Ասար Սեբաստացիս յիշեա միով Հայր մեղայիւ։

Գրեցաւ գիրս ի քաղաքն ի Լով, Թվին ՌԿԶ, ուն տարին մեղաւորս ի Լով ժամկոց էի, տուտանուն Սարգիս, որ է Քութեցի, որդի Յովանէսի. ա-մէն։ — Ո՛վ եղբարք, մի մեղադրէք, մոլորեցայ այս տանենին. թէ ինչ պա-ջարի (պատճառի) կ'առէք. նայ մէկ աղեկուկ մի տեսայ, որ եկօ ի քովս նստօ, զրուց երես. Թվին ՌԿԶ. դեկտեմբերի Զ, օրն չարաթ. Թ. ժամուն, մէկ մասին. ամէն։

Ո՛վ ժամակոչ չոլոր մոլոր,
Է՞ր կու հայիս դու նենգաւոր.
Յաչխարս սուտ է ւանցաւոր,
Մի՛ լինիր խէֆ անմըտաւոր։

Երբ որ տեսնաւս դու չատ աղվոր,
Աչվիդ փակէ, նայէ ըստոր.
Տուր գոհութիւն սըրտովդ բոլոր,
Անմ որ ըստեղծ զաչխարհս ալոր։[1]

[Տոմարաց գիրք]։

1617.

Ի գալն (ի) Ֆռանկաց հանդիպեցայ ի քաղաքն Իլով որ կոչի Լեհ, ըս-տացայ գիրքս այս (Ամիրտովլաթ) ի Ղազար վարդապետէ, ես մեղաւոր Եր-ղամս, որ է Բառգիրք հաքիմարան, Հայոց բառով, Արաբացոց, Թուրքաց, Պարսից, Հոռմոց, սակաւ ինչ Ֆռանկաց. ստացայ վասն հոգոյ իմոյ ի հա-լալ ընչից իմոց. բերի յերկիրս Հայաստան... Աղաչեմ յիշել զմեղաւոր Եր-

1 Ոտանաւոր խօսքս՝ ոչ Սարգսի է, այլ կամ Ասարայ կամ այլոր՝ որ ուրիշ տեղ մ'այլ գրած է այսպէս. «Եւ յիշեա զգծող գրիս զմեղաւորս Սրապ Բոքերթցի, միով Հայր մե-ղայիւ»։

դամն եւ զհայրն իմ Պալտյխանն և զմայրն իմ Ըմպրիշատն, և զորդիքն իմ երկու Սահակն և զփոքրն իմ և զմեծն… Արդ գրեցաւ ի Թուականիս Հայոց ՌԿԶ, ի քաղաքն որ կոչի Խլով, ի Թագաւորութեան Շահապազին, ի հայրապետութեան Տեառն Մելքիսեթ կաթողիկոսին. և առաջնորդութեան հոգեւոր Տէր Մեսրոպին արքեպիսկոպոսին, և առաջնորդութեան մարմնաւոր կենցաղոյս՝ Խոճայ Սափարին. Աստուած զիւրեանքն ընդ երկայն աւուրս պահէ. ամէն:

## 1618.?

Գրեցաւ գիրքս որ կոչի Առ որս՝ ասացեալ Սրբոյն Գրիգորի Աստուածաբանի, ի լաւ և յընտիր օրինակէ, ի վայելումն և յիշատակ բարեմիտ և ուսումնասէր բանասիրի Տեառն Յովանէս հեղահոգի ընտրեալ քահանայի, որ մականուամբ կոչի Քարմատանենց… գրեցաւ սա ի Թուին Հայոց քառայիսնակի և երեք յոբելինի այլ և եօթն աւելորդի (?), օգոստ. ԺԸ. ի տէրախնամ և աստուածապահ մայրաքաղաքս Լէվ կոչեցեալ, ի դուռն Ննջման Ս. Աստուածածնի, ձեռամբ մեղապարտ և փծուն Սիմէոն դպրի Զամոսցացոյ…
[Առ Մխիթար. վիենայ]:

## 1619.

Կատարեցաւ գիրքս գովելի
Որ շարագրեալ է Պորփիւրի.
Ջի ցանկացող եղեւ սըմի
Նըւիրակս Երուսաղէմի,
Որ և անուամբըն որջորջի
Ղուկաս անուն պարոնտէրի.
Որ յայսմ ամի եկն ի Լեհի.
Տեսեալ եղեւ այսըմ տառի,
Ի մեկնութեանցըն Յովհաննի
Արի և սուրբ եռամեծի,
Ի աշակերտին իւր Գրիգորի,
Ի բնաբանիցըն Պորփիւրի:
Ի Թվականիս Հայոց մեծի
Հազար վաթսուն և ութ աւելի,
Սեպտեմբերի քսան և ութի,
Որ էր աւուրն երեքշաբթի.
Ի Կամէնից ամուր քաղաքի,
Առ ոտըս Սուրբ Աստուածածնի,
Եւ Ս. Նիկոլ հայրապետի,
Եւ այլ տաճարքս որ կան սըմի:
Թագաւորն Լեհաց երկրի՝
Երրորդ Զիկմունտ նա անուանի.
Եւ հայրապետն Էջմիածնի
Տէր Մելքիսեթ վերաձայնի,
Մեծ աթոռոյն ինքնագլխի՝
Որ օթեւանն է Քրիստոսի.
Գրիգոր անուն պատրիարքի,
Որ տեղապահ է սուրբ ուխտի:
Գրող սորա յոյժ եղկելի
Ոտից ձեր հող և կոխելի.
Ձեզ աղաչեմ աղերսալի
Զիմոռանայք զիս յաղօթի՝
Յոհան դըպիր մեղօք ի լի,
Եւ զիմ ծընողքս ի հնա կարգի:
Յիշողքն առ Տէր յիշեալ լիցի
Այժմ և աւուրըն յապառնի:

[ի Թոմարզա]:

1620.

Փառք... որ ետ կարողութիւն ողջոյս սուտանուն գրչիս յիմար և տարտամ եղեգնագծիս, հասանել ի վերջին տառիս, որ կոչի Մեկնութիւն Ցորայ, ի լաւ և յընտիր օրինակէ... Գրեցաւ սա ձեռամբ մեղսամած և փծուն գրչի Գրիգորի որդոյ Պր. Աւետիքին՝ մականուն Տօմաժիրաքին, ի խնդրոյ Տէր Գրիգոր կրօնաւորին, որ ետ գրել զայս գիրքս յիշատակ ի Ս. Երուսաղէմ, վասն իւր հոգոյն և իւր ծնողացն. ի Թուականութեանս Հայոց ՌԿԸ, և ռեպ. ամսոյ Ա, օրն չորեքշաբթի. ի Թագաւորութեան Լեհաց Գ. Զիկմունտին, և ի կաթողիկոսութեան Հայոց Ս. Էջմիածնայ՝ Տէր Մելքիսեդին. ի քաղաքս Լեհաց՝ որ կոչի Լով, ընդ հովանեաւ Ննջման Ս. Աստուածածնին, և Ս. Հաճկատար Ս. Աստուածածնի և Ս. Յակոբին և Ս. Խաչին։ Արդ որք հանդիպիք սմա... մի բերան Աստուած ողորմի տացէք հանգուցեալ վարպետին իմոյ Տէր Դաւթի Ջեթունցի քահանային. զի այր գիտնական և քաջ փիլիսոփայ էր, յոյժ հմուտ հին և նոր կտակարանաց. որ բազում ջանիւ և աշխատութեամբ աշխատեցաւ ի վերայ անպիտան ծառայիս, որ ոչ էի հմուտ այսմ արհեստիս և գրադարձիս։ Որոյ Տէր Աստուած մեր պարգևեսցէ, և այլն։ [Ի Ս. Ղազար]։

1620.

Գրեցաւ սուրբ գիրքս (Յայսմաւուրք) Հայոց Թվին ՌԿԹ, ի հայրապետութեան Տեառն Տէր Մելքիսեդ կաթողիկոսին, և ի Թագաւորութեանն այս Լեհաց աշխարհին՝ Գ. Զիկմունդին, ի քաղաքս որ կոչի Կամենից, ընդ հովանեաւ ամենօրհնեալ Աստուածածնին սրբուհոյ, և Ս. Նիկողայոս սքանչելագործ հայրապետին, և Ս. Աւետման Աստուածածնին, և այլ սրբոցս... ձեռամբ.. Յակոբ քահանայի որդւոյ Տէր Գրիգոր աւագերիցու, ի խնդրոյ պատուական և պայազատ Բան Նուրքոյին... (Բժշկեան, եր. 140]։

1620.

Աւարտ եղեւ Աստուածաշունչս այս սիրական
Հին և Նոր կտակարանքըն լիական.
Թուականիս Հայոց Մեծաց և աբեթեան
Հազար վաթսուն ութ յաւելի յարաբարդեան.
Ի յամիսն յապրիէլի ըստ հռոմական
Որ վեշտասանն եղեւ զատիկ մեր հայկական։
Ի յերկիրս յՌուզաց և Լեհաստան,
Ի քաղաքս աստուածախնամ Լով կոչական.
Հայրապետին մերոյ ազգիս աբեթական
Տէր Մելքիսէթն կաթողիկոսն արեւելեան.
Ի յարեւմուտս տանըն Սըսա ազնուական՝

Տէր Յովհաննէս կաթողիկոսն աստուածաբան։
Որպէս լուսին և արեգակն ի յերկինս կան՝
Այնպէս սոքա են ի յերկիրս Հայաստան։
Սրբազան քահանայից որ այժմըս կան,
Որ անդադար տիւ և գիշեր առ Տէր կարդան.
Ըստեփանոս եպիսկոպոսըն ծերալեան,
Եւ Տէր Գասպար աւագերէցըն պատուական.
Տէր Խաչատուր, Տէր Զաքարեան ազնուական,
Տէր Թորոս, Տէր Յովհաննէս վարպետք մանկան,
Տէր Գրիգոր կրօնաւորըն վանական
Եւ Տէր Մարգարն ի հետ նմին ընկերական։
Աստուածասէր տանուտերացըն Լովական,
Բան Գաբրիէլն և Բան Թորոսըն երեսփոխան։
Եւ հաւասարակ են դատաւորք երկոտասան.
Որ արարիչն հաստատ պահէ և անսասան։
Ի ժամանակս սոցուն եղև յայս յանգական
Հոգիաբուխ աստուածատանկ այս բուրաստան.
Եւ իմ անձամբս եղէ սորա աշխատական,
Եւ զնիւթն յառաջ պատրաստեցի աննիազական,
Եւ տու ի ձեռս Թորոս դպրի երագագրեան,
Տալով զվարձս ձեռաց նորա տաստական։
Բազում եղբարս յորդորեցի և ետու բան,
Զի և նոցա շահիւքն աւնել աւարտական.
Մինչև ի չորս ամսին եզաք աշխատական,
Հազիւ հանաք Աստուածաշունչս աւարտական.
Եւ տու ի ձեռս Անդրէա դպրի եղբայրական,
Որ կազմեաց զսա ի մի տուփի հաւաքական։
Որոց տացէ Տէր մեր Յիսուս վարձս յաւիտեան,
Զինչ որ աշխատ եղեն նոքա երագական.
Վասն որոյ ես կրկնեմ ձեր ծառայական
Արտասուալից հայցեմ ի ձէնջ պաղատական,
Յաղօթըս ձեր յիշել զմեզ լի սրտական,
Ոչ մոռանալ յարեւանցի տեսողական,
Զիս ըզՂազար Բաբերթացիս նշգեհական,
Նա և սիրուն զծնողսն իմ հանգուցական,
Այլ և ազգն մեր արեանատու և մերձական.
Եւ որ յիշէ ղիս ըզնուաստս և անպիտան
Եւ վերայ գրեալսն մի 'ատ միջէ ամենեքեան,
Նա և նոյն ինքն յիշեալ լինի օրն ահեղական,
Յորժամ նստի Քրիստոս յաթոռ դատողական։

Եւ Նըմա փառք յամենայնէ անլըռականն,
Ընդ Հօր, Հոգւովըն ճշմարտի միանգամայն,
Այժմ և յաւէտ և յապագայն յարաձգական,
Եւ անըսպառ և ի անվէտ միշտ յաւիտեան. Ամէն։

1620-1.

Զանպիտան հողս և զանարժան գրչակս զպիտակ անուն զԽաչեր՝ յիշեցէք, ով եղբայրք, ի մաքրափայլ յաղօթս ձեր, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ. ամէն. Գրեցաւ թվ. ՌԿԹ. Նոյեմբ. 17։ [Շարական, ի Ս. Ղազար]։

1623.

Գրեցաւ գիրքս ի թվին ՌՀԱին, ի յունիս ամսոյ ԻԸին, ի յաշխարհս Ռուսաց, և ի թագաւորութեանն Գ. Զիկմունտին, ի քաղաքիս Լւովայ, ընդ հովանեաւ Սրբոյն Ստեփաննոսի Նախավկային և առաջին մարտիրոսին։ Արդ գրեցաւ սա ձեռամբ յոգնամեղ բիւր քանքարոյ պարտական ՌՌ. ծծ. ճճ. (Գ.) Է. ՑՑ. ՄՄ. (Սիմէոն) իրիցուիս, որ միայն անուամբ եմ և գործովս հեռացեալ։ Բայց ետ գրել զսա ըղձմամբ և սրտիւ փափագանօք Յովհաննէս սրբազան քահանայն, ի վայելումն անձին իւրոյ և իւրոցն, յիշատակ անջնջելի. զոր Տէր Աստուած բարով վայելել տացէ երկար ժամանակօք. ամէն։ [Ներս. Լամբրոն. յԵրուսաղէմ։]

1624.

... Տեսեալ զսորայս (Աւետարանի) անճառ փրկագործութեան զխորհուրդ, Գր. պայազատ Խոճա Մարքոս, որ ստացաւ զսա ի հալալ ընչից իւրոց, և ետ յիշատակ ի դուռն Հաճակատար Ս. Աստուածածնին, վասն իւր և իւր ծնողացն հոգւոյն, Նուրպէկին, և մօրն Եղիսաբեթին, և կենակցին իւրոյ Քաղքոյին, և զաւակացն իւր՝ Հօքային և Հանուշքային, և մեծ պապին Մաթիաշին, և մամուն՝ Վառվառին։... Բայց յորժամ գրեցաւ սուրբ Աւետարանն՝ էր թիւ հայկազան տումարի ՌՀԳ. գրեցաւ և աւարտեցաւ ի հռչակաւոր և յաստուածաբնակ մենաստանիս՝ Ս. Օգսենդայ, ի հայրապետութեան Տեառն Տէր Մելքիսեդ կաթողիկոսին, ի թագաւորութեան Օլախաց երկրիս Ռատուլին. ձեռամբ նուաստ և անարժան հող և փոշի Ղազար վարդապետին. որ անուամբ միայն և ոչ գործով... որ եմ առաջնորդ սուրբ ուխտիս և Օլախաց երկրիս, ողորմութեամբն Քրիստոսի։ Աղաչաւալից պաղատանօք հայցեմ ի ձէնջ զհանդիպողքդ այսմ աստուածաշունչ մատենիս, մի՛ մեղադրէք. երկրիս հարկապահանջութիւն շատ էր. ամէն դատ և դատաստան առ մեզ կու գային, չունէաք խաղաղութիւն. կէս մի ի յայս քաղաքս գրելով և կէս մի այլ քաղաք գրելով. և այսպէս շրջագայելով աւարտեցաք. Թէպէտ գոյր կարողութիւն Քրիստոսի կարող զօրութեամբն՝ այլ գեղեցիկ գրել

և ծաղկել, այս տեղիքս դժար էր, և մագաղաթ չէր գըտվէր. վասն այն տեղէս տեղիս՝ պատուով գրեցի։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան ներել սխալանաց մերոց, և խնդրել ապենիազ Արարչէն՝ տալ թողութիւն մեղաց մերոց. նաև առաւել խնդրել յԱստուծոյ վասն ծնողացս, հօրն իմոյ Նիկողայոսին և մօրն իմոյ Շնօֆորին և քուերս Խուտրաթին, և եղբարց իմոց՝ որ հանգուցեալ են առ Քրիստոս։ Նա և զբազմաշխատ Արապիոնն՝ որ գրեց յետի չորս տետրն և կազմեց զսուրբ աւետարանս՝ յիշեցէք ի Քրիստոս. նա և զհոգեւոր և զմարմնաւոր վարդապետքն և ուսուցանողքն մեր, զոր ոչ գրեցաք զանուանս նոցա, զի մի յերկարեսցի բանս. այլ գրեսցի անուանք նոցա ի դպրութեան կենաց։ Զմեզ յիշողացդ և յիշեցելոցս առ հասարակ պարգեւեսցէ Քրիստոս զիւր առատ ողորմութիւնն, աստ և ի հանդերձեալն։

(Յետոյ գրեալ.) Գերապայծառ և ամենապատիւ Տէր Նիկողայոս Թորոսովիչն արքեպիսկոպոսն Լէոպոլսի և առաջնորդն, զայս սուրբ աւետարանս պարգեւեաց եկեղեցւոյս Ստանիսլաւովու, ի յիշատակ իւր յաւիտենական. զոր յետոյ բարեպաշտ Իլովցիք և Ստանիսլաւցիք ոսկւով և արծաթով զարդարեցին, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

1625.

Գրեցաւ այս Գաւազանագիրքս ձեռամբ մեղաւոր և անարժան Ներսէս սարկաւագի, որդւոյ Հօլուպ վոյթին Կամէնցւոյ, ի յաշխարհս Իլախաց, ի նոյն քաղաքի, ի վայելումն հոգեւոր հօրն մերոյ սրբասնեալ և քաջ ռաբ... [Յէչմիածին]։

1626.

Աստուծոյ օգնականութեամբն սկսայ և կատարեցայ Տօնացոյցս այս, Հայոց թվին ՌՀԴին, և ամսեանն օգոստոսի հինգերորդին, ի քաղաքն որ կոչի Կամենից, ձեռամբ մեղաւոր և անարժան Գաբրիէլ երէցին, ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ։... Գրեցաւ Տօնացոյցս ի լաւ և յընտիր օրինակէ։..

1627.

Թվին ՌՀԵ, մայիսի ԺԹ, օրն շաբաթ, եկաք ի Զամօսցա, Պարոն Տէր Մարտիրոս Ս. Էջմիածինեցի, և Պր. Տէր Եղիա Երզինկացի, և Տէր Խաչատուր արեղայ Իլովցի, վասն նուիրակութեան և հիմնարկութեան սուրբ եկեղեցւոյ, և ի հայրապետութեան Տեառն մերոյ Տէր Մելքիսեդ կաթողիկոսին, որ էր ինքն ի Լով քաղաք. և առաքեաց զմեզ ի Զամոսցա քաղաք. և ի քահանայութեան Տէր Յակոբ քահանային, եկաք հանդեաք ի տան նորին. Աստուած փառաւորէ զինքն ի հոգի և ի մարմին. ամէն։ [Ճաշոց ի Վիեննայ։]

1627–8.

Զմեղապարտ զԱստուածատուր դպիրս յիշեցէք յաղօթս ձեր, ով պատուական հարք և նախնի եղբարք.... Թվ. ՌՀԶ գրեցաւ ժամագիրքս. [ի Նյամեճից]։

1628.

... Ցիշելոյ արժան արէք գիս զանարժան
ԶՅակոբ երէցըս Թոխաթցի տաժանական.
Որ եմ պանդուխտ յայսմ աշխարհի տարաբնական,
Լեհաց երկիրն, ի Նոր քաղաքըն Զամոսցան.
Այլ և ըզծնողսն իմ յիշեցէք ի ժամ հայցման,
Զմեծաճաւատ հայրն իմ Ալթունն, զմայրն իմ Աննան.
Ոչ ժամանեալ Նոցա ի հասակ ծերութեան,
Այլ ի միջակ տիս հասակի վախճանեցան.
Եւ զվարժապետն իմ բարեբախտ արիական՝
ԶԱյվաթեանց Յակոբ անուն սուրբ քահանայն.
Իմաստիւք լի գերակատար ի գիտութեան,
Հոգւով մաքուր, մարմնով ճգնող ի ծերութեան.
Եւ զամենայն ըզմերձաւորս իմոյ արեան,
Եւ՝ զժողովուրդ այս քաղաքիս զամենեսեան.
Զծեր և զտղայ, զերիտասարդ և ըզկուսան.
Եւ որք եղեալ են հաւատով ի գերեզման։
Ի Թուականի մեծ տումարիս աբէթական
Որ էր հազար եօթանասուն, այլ և վեց ամ,
Ես մեղաւոր շարագրեցի սակաւ զայս բան.
Ընծայեցի բանասիրաց ի վայելման,
Զի եղիցի սա յիշատակ ինձ անվախճան,
Եւ աղօթող առ Տէր Աստուած միշտ անխափան.
Այլ և լիցի փառաբանող Երրորդութեանն,
Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն, միշտ յաւիտեան։...

Արդ գրեցաւ սա ձեռամբ Յակոբի սորին շարադրողի բազմամեղի և յոգնաստղալ յանցաւորի, ի յիշատակ հոգւոյս տկարի. ի Թուականութեանս Հայկական տումարի ՌՀԷ ամի, ի 25 յունվարի ամսոյ, յանգ ելաւ շնորհօք Ս. Հոգւոյն, ի քաղաքս Զամոսցա, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին։ Եւ ի ժամանակս յայս կաթողիկոս ի Ս. Էջմիածին ոչ գիտեմք թէ ով ոք է. վասն զի յանցեալ ամի՝ որ էր Թուականն Հայոց ՌՀԶ, վախճան ընկալաւ Տէր Մելքիսեդ կաթողիկոսն ի Կամենեց։ Բայց առաջնորդ Իլովայ էր Տէր Նիկողայոս Նորընծայ յաթոռ իւր. զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ. ամէն։

Արդ գրեցաւ երգըս Դաւթի
Որ կոչի Սաղմոս Յակոբի,
Որ չարագրեալ յանգ ելան
Հարիւր յիսուն փոխն ի ըմի?
Ձեռամբ տրուպ Ղազարոսի
Որդւոյ Պարոն Իվանջքոյի.
Առ գաւառն Նընջման Աստուածածնի;
Լեհաց յերկրիս Լով քաղաքի,
Եւ ի յաթոռս հայրապետի
Տէր Նիկողայոս (Թորոսովչի).
Արհեպիսկոպոս Լովայ երկրի
Եւ առաջնորդ նորին վիճակի.
Ի թագաւորութեանըն մեծի
Երրորդ Զիկմունդ թագաւորի.
Ի վայելումն բարեհոգի
Թուքան անուն ճգնաւորի,
Որ այժմ եկեալ առ մեզ շրջի
Պանդըխտութեամբ յայսմ երկրի.
Տացէ նըմա Աստուած բարի
Զայս վայելել յերկար յերկրի.
Եւ յետ աստեացս նորին լեցի
Յիշատակ սուրբ եկեղեցի:
Ի Թուականիս մեր տումարի
Հազար եօթանասուն ինն տուելի,
Եւ յունիսի քսան և վեցի,
Շնորհօք Տեառն յաւարտ հասի:
Արդ աղաչեմ արտասուալի,
Անմեղադիր լերուք գըրի.
Մանուկ տիօք զայս գըրեցի,
Երկոտասան ամաց էի:
Ո՛վ ընթերցողք այսըմ տառի,
Կամ օրին(ակ)ողքն այսըմ գըրի.
Միով հայցեմ Տէր ողորմի՝
Մի՛ մոռանայք գիս եղկելիս:

1629.

Խոճա Աջիզն ստացաւ զսուրբ Աւետարանս, յիշատակ իւր և ծնողաց իւրոց, հօրն Խօշխապարին և մօրն Խանպէկի, կողակցին՝ Մարիամին, և եղբարցն՝ Սարուխանին, Նիկողայոսին, և քուերցն՝ Շահաղային, և ազգականացն, որդւոցն և դստերացն:...

1629.

... Այս աստուածաւանդ Աւետարանիս եռանդնոտ սիրով տենչացայ ես անարժան հողս ու փոշիս տրուպ և հուսկ նիազս, ոտից կոխան և յետնեալս յամենայնի, Բաբերթեցի Ղազար վարդապետս, գրել մատամբ իմով զայս սուրբ Աւետարանս, որում ի մանկութենէ ի վեր խանդակաթ սիրով կու ցանկայի և տենչայի գրել. որ և շնորհիւ Փրկչին մերոյ գծագրեցի, զոր սիրեաց անձն իմ. յիշատակ ինձ և իմ ծնողացն Նիկողոսին և իմ մօրն Շնոֆորին, և իմ եղբարցն, Մարտիրոսին և քուերն իմ Ղուդրատին, և ամենայն արեան մերձաւորացն իմ. վասն որոյ ցնծացայ և ուրախացայ՝ իբրեւ զգտեալ աւարաց բազմաց պատուականաց. այլ և զանազան գունով ծաղկեցի և գեղեցկանկար չորից աւետարանչացն պատկերագրութեանց յօրինածք շքեղացուցի զսա, զի մի՛ լսելեաց միայն՝ այլ և աչաց տեսողութեամբ զաւարճացին հանդիպեալքն՝ ի խրախճանութեան աքանչելի տօնից աստուածային տնօրէնութեանն Քրիստոսի. իբրու հայելեաւ իմիք անմիջոց տեսանելով ի նկարս կենդանագրեալս զփրկարար գործսն Քրիստոսի. և ի բարի օրինակէն բարեմտութեամբ շահեալք՝ յօժարամիտ լիցին ի կցորդութիւն գործոցն Քրիստոսի և բանիցն

Յիսուսի։... Արդ, քրիստոսապարգեւ Աւետարանս գրեցաւ ի թվականիս Հայոց ՌՀԷ, ի հայրապետութեան Տեառն Տէր Մելքիսէթ կաթողիկոսին, ի թագաւորութեան Ալլախաց երկրիս Միրօնին, և եպիսկոպոսութեան ինձ նուաստիս, որ զգիրս գրեցի. և առաջնորդութեան Տէր Անդրէասին, և երեսփոխանութեան Ծերիկին. ի մայրաքաղաքս Սեչով, ի անուանի հրեշտակաբնակ վանքս Ս. Ազոնեզի։ Այլ և յիշեցէք ի Քրիստոս զՍրապիոն և զՍարգիս տիրացուն՝ որ զսուրբ աւետարանս կազմեցին. այլ և յիշեցէք ի Քրիստոս զՏէր Անտոնն և զՏէր Աւետիքն. և որ զմեզ յիշէ կամ Հայր մեր ասէ՝ ինքն յիշեալ լիցի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն. Ո՛վ գիս զգաանացեալս։

Այլ և յիշեցէք զանարժան մեղաւոր Աւվատուրս, որ եղեւ պատճառ սուրբ աւետարանիս, յիշատակ ի դուռն Ս. Աստուածածնին. թվ. ՌՁԳ (1634)։ — Յիշատակ է սուրբ Աւետարանս Կորուսեցի Մանվէլի որդի Մկրտչին ի դուռն Սիլիստրու Ս. Աստուածածնին եկեղեցուն. թվին ՌՃՂԴին (1745–6) և յուլիսի մէկին. աւարտեցաւ ձեռամբ ձեր ծառայից ծառայ անպիտան Սարգսի։... Յիշեցէք զՄկրտիչն մէկ Հայր մեղայով։ [Աւետարան ի Բոտոշանս։]

1629.

Գրեցաւ Տօնացոյցս այս ի հայրապետութեան այսմ նահանգի Տէր Մովսէս կաթողիկոսին, և ի թագաւորութեան Ֆռանգաց ազգի Գ Զիկմոնդին, ի թվաբերութեան Հայոց ՌՀԷ, և ի յամսեանն դեկտեմբերի ԺԳ, ի վայելումն Պր. Վարդերես գպրի, որդւոյ Պր. Գրիգորին. Աստուած բարով վայելել տացէ նմա ընդ երկայն ժամանակաւ. և գրեցաւ ձեռամբ մեղաւոր և անարժան Վարդերես սարկաւագի։ Աղաչեմ, ո՛վ եղբարք, յիշեցէք գիս զմեղաւորս՝ ի սուրբ յաղօթս ձեր. և Աստուած զձեզ յիշէն։ [Բրիտանեան Մոզէոն]։

1629–30.

Գրեցաւ սուրբ գիրքս որ կոչի Յայսմաւուրք՝ ի թուականութեանս Հայկազն սեռի ՌՀԸին, ի կաթողիկոսութեան Էջմիածնայ Տեառն Տէր (պարապ) և առաջնորդութեան Օլախաց երկրի Տէր Ղազար վարդապետին, առաջներիցութեան Տէր Անդրէասին, և երեսփոխանութեան Պր. Ծերիկին, և այլ քահանայիցն, Տէր Յովանէսին, Տէր Ղուկասին, Տէր Ղազարին, Տէր Վարդանին, Տէր Աւետիքին, Տէրտէր Սիմէոնին. նորընծայիցն՝ Տէր Աստուածատուրին և միւս Տէր Աստուածատուրին, Տէր Մովսէսին. և թագաւորութեան ... Գարոնին։ Գրեցաւ յերկիրս Օլախաց, ի քաղաքն Սեչով, ընդ հովանեաւ վանորէիցս՝ Ս. Հաճկատարի և Ս. Ըստաստիոսեանցն և Ս. Լուսաւորչին. քանզի սկիզբն ի Հաճկատարն արարի և յաւարտն ի Ս. Օգուէնտ. ձեռամբ անարժանիցս մեղապարտ Սրապիոնի և Յոաթան? Սարգիս դպրի. ի խնդրոյ

տղայ տասնչորդ. ահա կատարեցաւ բանքս այս ի վերայ Ոլախաց երկրիս. զի նախարարքն սորա ինչպէս որ կամեցան՝ այնպէս կու կողոպտեն երկիրս այս.... Բարեխօսութեամբ Սրբոյս որ կան ի տըփին յայսմիկ՝ Աստուած խաղաղութիւն տացէ երկրի և Թագաւորաց հաշտութիւն.... Որոց Սրբոց Նախահարցն բարեխօսութեամբ ողորմի Քրիստոս Աստուած ստացողի գրոցս՝ Տէր Նիկողայոսին, և ծնողացն՝ Պր. Վարդին, Խաթունշային, և կողակցուն՝ Կուլպահարին, և դստերացն՝ Ճաշխաթունին, Օղիտային, և եղբարցն՝ մահտեսի Գասպարին, Ալեքսիանոսին, Սիրունին, Միրիճանին, և կողակցուն Սիմային, և դստերացն Հուփսիմէին, և ամենայն արեան մերձաւորացն. և միջնորդի սորա՝ Վարդազատին, և անպիտան գրչի Սարգիս դպրին, և վարժապետիս՝ Յոհան դպրին. և ծնողացն իմոց՝ մահտեսի Տէր Ովանէսին և Զարգարին, կարդացողացս և լսողացդ, և զՈղորմին տողացդ. ամէն. Հայր մեր: — Կարողութեամբն Աստուծոյ և միջնորդութեամբ Սրբոցս ընկալաք սուրբ գիրքս. և վերջացաւ ի յայսմ վայրի իմում բաժին. և ի յայսմ տեղւոյչէս յաւարտ եհան հոգեւոր ծնողքն մեր և խրատատուն Սրապիոն դպիրն. զոր և յուշով աւարտեցաք ի Թվականութեանս Հայոց ՌՀԸ ամին: — Ողորմի Քրիստոս Աստուած զսուրբ Յայսմաւուրքս ի գերութենէ ազատողին, յԱկընցի Եայնէ Փիրուխանին և իւր ծնողացն, հօրն՝ Խօրին, մօրն՝ Յաշկուլին, և իւր եղբարցն՝ Թամուրին, Աստուածատուրին, Աբրահամին, Յակոբին, Յոհանին, Մովսէսին, և ամենայն արեան մերձաւորաց, և որ զողորմին ասեն. ամէն: — Ողորմի Քրիստոս Աստուած զսուրբ Յայսմաւուրքս ի գերութենէ ազատող Խօճայի եղեցբան (Թերեւս եկեղեցպան) Վասիլին, և հօրն Մանուկին և մօրն՝ Մարուցային, և կողակցին՝ Խաթունմէլիքին, և եղբօրն Խօճայ Թումանին, և որդոյն Օվանէսին և Օհանին, դստերացն Աննինցային և Մարուցային և Ալխաթունին և Հուփսիմէին, և... Տէր Յովանէսս՝ Խութինաւ քահանայի... [Յայսմաւուրք ի Կեսարիա]:

1631.

Թվ. ՌՀԹ, Սեպտ. 20, օրն երկուշաբթի. Ի հայրապետութեան Տեառն Տէր Մովսեսի, եկաւ ի Լով Նուիրակ Տէր Խաչատուր վարդապետ սրբալոյս մեռոնաւն. և գիս մեղաւորս Խաչատուր արեղայս առաքեաց Նուիրակ սրբալոյս մեռոնաւն 'ի յայս աստուածապահ քաղաքս Զամոսցա, ի ժամանակս քահանայից՝ Տէր Յակոբին և Տէր Անդրէասին, որ և եկաք և հանգեաք ի տուն Տէր Անդրէասս քահանային, և Աստուած զինքն փառաւորէ ի յայս կեանք և ի յաւիտենականս. ամէն: [Ճաշոց ի կայսեր. գրատան Վիեննայ]:

1631.

Ով եղբարք իմ սիրելի, յիշեցէք զԹերավարժ գրչակս՝ զՄերիկ դպիրն՝ որդոյ Նիկօլին. և անզարդութեան գրոյս անմեղադիր լերուք.. գրեցաւ Թվ. ՌՀԹ. դեկտ. 15, օրն վեցշաբթի: [Ի կամենից. — Ժամագիրք]:

Ո՜վ աստուածապահ քաղաքըդ մեծ Կամենից՝
Ի քառից կողմանց պատեալ յորդահոս վըտակից,
Անառիկ ամրոց շինեալ ի վերայ վիմի.
Օրհնութիւն աստուածային ի քեզ ծաւալի.
Ազգ հայկազեան զարմի՝ որ ի քեզ բնակի՝
Հաստատեալ յուսով սիրով Ս. Լուսաւորչի,
Պահեսցէ Տէր հաստատուն և անշարժելի,
Պայծառ լուսաւոր դիմօք և անդրդուելի.
Արգոյապատիւ պերճմամբ բարգաւաճելի.
Շքեղազարդութեամբ փայլեալ որ կան ի մարմնի։
Տիրամայր ամենասուրբ Աստուածածին,
Բարեխօսեա Միածնի վասն այս քաղաքի,
Մանաւանդ փոքրիկ հօտի Հայկական զարմի,
Որ կան հաստատեալ սիրով փրկչին Յիսուսի։
[Ժամագիրք ի Ս. Ղազար]։

1631.

Եղեւ գրաւ սուրբ գանձարանիս ի Թվաբերութեան Հայոց ՌՁ և հոկտ. 15, ձեռամբ մեղաներկ և անհմուտ գրչի Գրիգոր քահանայի որդոյ Անդրէասին.... Բայց գրեցաւ ի յաշխարհն Լեհաց, ի քաղաքն Կամենից, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին և Ս. Նիկողայոսի Սքանչելագործի, ի հայրապետութեան Հայոց Տեառն Տէր Մովսէսին, և թագաւորութեան Գ Զիկմունդին.... Յիշեսջիք և զծնողսն իմ զԱնդրէաս հանգերձ մայրն իմով Յոհաննայիւ, և ծնողքն իւրեանց։ [Մաշտոց ի գրատան Վիեննայ]։

1631.

Գրեցաւ Երգս Ս. մարգարէին Դաւթի ի լաւ և յընտիր օրինակէ՝ որ կոչի Գառնեցի, ի Ղազար գրչէ, ի խնդրոյ բարեպաշտ և աստուածասէր երկիւղած յԱստուծոյ և ամօթխած ի մարդկանէ մահդասի...... Արդ աղաչեմ զամենեսեան. յիշեսջիք.. զեղկելիս և զյետնեալս ամենեցուն զՂազար գրիչս, որ լոկ անուամբ կոչեցաւ Վարդապետ և ոչ գործով. Թէպէտ ի մարդկանէ գովիմ, այլ ի տեառնէն ամենայնի՝ պարսաւիմ. և թէ ի մարդկան աչս պարկեշտ երեւիմ, այլ յորդւոցն լուսոյ աւաղիմ. վասն այսորիկ արտասուագին պաղատանօք խնդրեմ պատահողացդ այս սուրբ գրոցս, ասէք բոլորով սրտիւ Հայր մեր կամ Քրիստոս որդի Աստուծոյ, կամ Աստուած ողորմեա, ասելով ինձ եղկելւոյս և իմ ծնողացս, հօրս՝ Նիկողայոսին և մօրս Շնոֆորին, և եղբարցս՝ Մարտիրոսին և Սարգսին, և քուերս իմ Ղուգրատին.. Արդ գրեցաւ ի վանքս Ս. Օգսէնտի, ի քաղաքս Սեչով, ի հայրապետութեան Տեառն Տէր Մովսէս կաթողիկոսին, ի թագաւորութեան Ուլախաց երկրիս՝ Աղե-

քանդրին. ի Թվականիս Հայոց Մեծաց ՌՀԹին ապրիլ ամսոյ Թ.ին աւարտեցի Քրիստոսի շնորհօքն. Աստուած տայ որ բարով վայելէ մահդասի.... բազմերամ ժամանակօք և ընդ երկայն աւուրս։ [Մաղմաս. ի Գեաւլին]։

1632.

Արդ եղեւ գրաւ սուրբ գանձարանիս՝ որ կոչի Աւետարան, յամի շրջագայութեան արամազեան տոհմի հայկական սեռի աբեթական տումարի ՌՁ Թվականին, յունվար ամսոյ 22ին.. բայց գրեցաւ սա ի մայրաքաղաքն Լով, ընդ հովանեաւ Ննջման Ս. Աստուածածնին, 'ի հայրապետութեան Տեառն Տէր Մովսէս երջանիկ քաջ րաբունապետ Մովսէս կաթողիկոսին Սուրհայեցւոյ (?), և ի թագաւորութեան Լեհաց երկրին Գ Զիկմունդին, որ է ազգաւ Ընկռուզ. ձեռամբ մեղաւոր և անարժան լոկանուն Սիմոն երիցուիս, որ միայն անուամբս եմ կոչեցեալ, բայց գործովս հեռացեալ։ Գծագրեցի զայս սուրբ տառս ի խնդրոյ աստուածասէր և երկիւղած տիկնոջն Բանի Նատղուխնային, որ է կենակից Աւէտիքէնց Բան Միքօին և դուստր Բան Փօհտանին Տօնավագենց. զի յոյժ փափագ և ջերմեռանդ սրտիւ ետ զսա գրել, ի հալալ ընչից իւրոց, և եդ յիշատակ անջինջ յաւիտենական իւր և իւրայնոցն՝ կենդանեացն և ննջեցելոց և ամենայն արեան մերձաւորացն, ի դուռն Հաճակատար մենաստանին, ի քաղաքն Սէչով։ Արդ աղաչեմ զձեզ զամենեսեան, ով սուրբ Հայրք և եղբայրք, նազելի պաշտօնեայքդ Քրիստոսի...

1632.

Գրեցաւ գիրս ձեռամբ Յովանէս վարդապետի Կ. Պօլսոյ եպիսկոպոսի, ի յԻլով քաղաքի. Թվ. ՌՁԱ Թուականիս հայկազեան տումարի։ Այսմ ամի կրալ Թագաւորն Զիկմունտ առ Աստուած փոխեցաւ. Աստուած լուսաւորէ հոգին, և ընդ առաջին սուրբ Թագաւորացն դասեսցէ. Աշխարհամատրանին չորէքշաբթին էր վախճանն։ [Աղօթագիրք]։

1632.

Եպիսկոպոսն Մեսրոպ վարդապետն Հայոց՝ Կաֆացի, ի ՌՀԱ Թվին եկեալ Կամենիցս, ձեռնադրեաց զՄիքայէլ երէցն, ի խնդրոյ յիշատակի Թորոս կրօնաւորի. և Ս. Լուսաւորչի խորանն հիմնարկեաց, և եդ բազում մասն Սրբոց ի հիմն եկեղեցոյն, ի փառս և ի գովեստ սուրբ եկեղեցոյս. ամէն. և զՀիմնարկութեանս պակասն գրեաց. ի Թվականիս Հայոց ՌՀՁ, մայիս ամսոյ ԺԴ օրն Պէնտակոստէի երկուշաբթի։ Ես ամենամեղ անձն Թորոս եպիսկոպոս Կամենիցւոյ, ի խնդրոյ Եազլովցա ժողովրդոցն՝ գնացի ի քաղաքն Եազլովցա, և եկեղեցոյ հիմնարկութիւն արարի, յանուն Ս. Աստուածածնին, և եդի ի հիմն մասն Սրբոց, ի փառս Աստուծոյ և ի պատիւ...

1632·

Ի Յովհաննէսէ վարդապետէ Կ. Պօլսեցւոյ պատրիարգ անուամբ, մինչ գնայր ի Հռոմ, պատահեցաւ ի Լով քաղաք, ուր օրինակեաց զՊատմագիրս Վարդանայ վարդապետի, խիստ հնացեալ։ Թվ. ՌՁ. դեկտ Ա։

1634·

Ես Խաչատուր եմ Լեհացի.
Որ սուրբ Կանոնքըս գրեցի,
Թվականիս Հայոց ազգի
Հազար ութսուն և երեք։
Ջի գաւառիս Ռստաւզի (Ռոստոգոյ)
Որ մականուամբ Թէքիրտաղ կոչի,
Ի դուռն Ս. Յովհաննէս Նորընծայ Աւետարանչի.
Առաջնորդութեամբ սուրբ ուխտիս
Տէր Գրիգոր քաջ հռետոր րաբունապետի,
Այլ և բազում քահանայից որ աստ կան հաւաքեալ։
Գործեալ, ես Խաչատուրս եմ մեղաց գերի
Յոյժ անպիտան և խոտելի.
Ողորմութեամբ աստուածային աւարտեցաւ
Կանոնքս աւգոստոսի ամսոյ ԻԳ.
Յիշատակ Տէր Մինաս գրոց աշակերտի,
Եւ քարոզող Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.
Եւ շնորհս տացէ Ս. Հոգին՝ ամենայնի,
Այժմ և անզրաւ յաւիտենի. ամէն։

[Կանոնագիրք, ի Հռոմ]։

1635·

Օրհնութիւն և գոհութիւն և փառք ամենասուրբ Երրորդութեանն, որ ետ զօրութիւն տկարութեանս իմոյ, գրել զայս գիրս՝ որ կոչի Հարցմանց (Գր. Տաթեւ)։ Արդ այսմ գրոյ փափագող գիտնականին և աստուածարեալ և սրբազան Տէր Անդրէաս քահանայն, յոյժ սիրող աստուածային տառից և ջանադրող ուղղափառ հաւատոյ և ախոյեան, յաղթող ընդդէմ ամենայն հերձուածողաց։ Արդ, գրեցաւ սա ի Թուականիս Ռ և ՁԳ, մայիս ամսոյ 21, ի Թագաւորութեան Լեհաց Դ Վլատիսլաւ գրայլին. Յայսմ ամի զՄոսկովու Թագաւորութիւնն առաւ։ Ի Նորաշէն քաղաքս որ կոչի Նօվինա, ի դուռն Ս. Աստուածածնին. ի հայրապետութեան Ս. Էջմիածնայ Տէր Փիլիպպոս կաթողիկոսին։ Յիշատակ պատուական և գերամեծուր Տէր Անդրէաս արքաերոռ քահանայ/ին, և հրեշտակերամ զարմից իւրոց, մեծի և փոքու. ամէն։ [Հարցմանց Տաթեւաց. յէջմիածին]։

1637.

Կատարեցաւ Պրակք Առաքելոցս ձեռամբ Անտօն կրօնաւոր քահանայի, ի թվին ՌՁԵ, յունիս 1, օրն ԴՇ չորեքշաբթի։ Զմեղապարտ և զանպիտան գրիչս Անտօն կրօնաւոր՝ աղաչեմ յիշել ի Տէր Աստուած՝ միով Տէր ողորմեայիւ. և Աստուած զյիշողսդ յիշէ. ամէն։ [Մայր ժամագիրք]։

1638.

Քրիստոս Աստուած, ողորմեա ստացողի գրոցս Տէր Զաքարիայ Լովայ քաղաքի աւագերիցուն, և ծնողաց նորին՝ Տէր Գասպարին՝ յուսով վերափոխեցելոյն, և ամենայն արեան մերձաւորաց նորին, կենդանեաց և հանգուցելոց. և ինձ մեղապարտ գրչիս Մկրտչիս՝ Ղազարի որդոյն, և ծնողաց իմոց։ Գրեցաւ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ի թվ. ՌՁԶ. յունվար Ը։

Վասն չարչարանաց քոց, Քրիստոս Աստուած մեր, ազատեա ի չարչարանաց սատանայի՝ չար մարդոյ անօրէն Նիկոլ չեպլեկօղլուէ, և ի հանդերձեալումն ի հրոյն յաւիտենից՝ զՏէր Զաքարիաս։..

Ով հարք պատուականք և եղբարք նազելիք, հանդիպողք այսմ ոգենուագ սուրբ տառիս՝ որ ասի Ճաշընտիր, յիշեցէք ի Քրիստոս զմեծափափագ ստացող սորա զՏէր Զաքարիա Լովայ աւագերէցն, որդի Տէր Գասպար աւագերիցուն. որ ետ գրել զայս սուրբ տառս մեծաւ տենչմամբ և եռանդնաւէր սրտիւ. որ հանդիպեցաւ սորին օրինակի ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի դուռն Ս. Յակոբայ առաքելոյն, և ետ օրինակել յիշատակ իւր և նախնեաց իւրոց։... [Ճաշընտիր ի Ս. Ղազար]։

1638-9.

Գրեցաւ սա (Մաշտոց) ձեռամբ յոգնամեղ Յակոբ երիցու, ի յերկիրս Իլախաց, ի քաղաքս Զամօսցա, առ դրունս Ս. Աստուածածնին. ի թվաբերութեան Հայոց ՌՁԷ ամի, ի ժամանակս թագաւորութեան Իլախաց Դ Վլատիսլաւին, և հայրապետութեան Ս. Էջմիածնայ Տեառն Տէր Փիլիպպոս կաթողիկոսին։.. Ի վայելումն անդրանիկ որդւոյ իմոյ Տէր Պետրոս քահանային. զոր արտասուաթոր մաղթանօք յԱստուծոյ ամենակալէ, զի բարով վայելել տացէ ի ժամանակս յերկարս ի խորութիւն ծերութեան։.. Յայսմ ամի մեռաւ մեծ իշխանն տէր քաղաքիս՝ Եան Թումաս Ծամօյսքին, այր հանճարեղ և իմաստուն. Աստուած լուսաւորէ զիւր հոգին. ամէն։ [Ի կայսեր. գրատան. Վիեննայ]։

1639.

Գրեցաւ և աւարտեցաւ այս Աղօթամատոյցս ի քաղաքն Մէլով, ընդ հովանեաւ Ս. Սիմէոնի եկեղեցւոյն, ձեռամբ Անտօն կրօնաւորի՝ Իրզօյի որդ-

ւոյն Սերբերբոյենցս, ի վայելումն անձին իմոյ. ի թուականութեան յաբեթական տոմարիս ՌՁԸ, հոկտեմբերի 23. օրն չորեքշաբաթի. ի հայրապետութեան Հայոց Տէր Փիլիպպոս կաթողիկոսին, և առաջնորդութեան Լեհաց Տէր Նիկողայոսին. և ի թագաւորութեան Դ Վլատիսլաւին. զոր Տէր Աստուած փառօք! վայելել տացէ. ամէն: [Ի Կեսարիա]:

1639.

Մէն Տէր Ներսէս Հօլուպ վոյթ օղլու ալղմ սաթուն պու Բառգիրքնի Բան Պաղչաշ վակէր իմուն Տէր Աստուածատուր օղլու բէյին լօ ամիկա՞ Թվ. ՌՁԷ. յունվարի ԺԷ. դշ. (չորեքշ). խայալին օլ Օլախ վէլիյաթնա, ալայժէ սաթուն ալթէսի Զ (վեց) լէվքովըյ դալարիա: [Բառգիրք ի Կայսեր. գրադարան Վիեննայ]:

1641.

Որք աստուածային սիրոյն հրովն վառեալ էն՝ միշտ փութան բարի և Աստուծոյ հաճելի յիշատակ յաշխարհի թողուլ. որպէս և սիրելի Աստուծոյ Տէր Խաչատուր մէհտէսի կրօնաւոր, այս սուրբ Աւետարանս ետ գրել՝ մեղաւոր մէկ կարգաւորի, լցեալ մեղօք և տառապեալ մտօք: Արդ որք հանդիպիք կամ ժառանգէք՝ յիշեցէք զԽաչատուր կրօնաւոր. և զհայրն իմ զԽաչատուր և զմայր իմ Հռիփսիմայ, և զընաւ զարմն, և թողութիւն յԱստուծոյ խնդրեցէք, զի և ձերն թողցի. ամէն: Գրեցաւ այս սուրբ Աւետարանս ի քաղաքն Սէչով, ընդ հովանեաւ Ս. Սիմէոնայ եկեղեցի, ի կաթողիկոսութեան Տէր Փիլիպպոսի, և յառաջնորդութեան այս գաւառիս՝ Տէր Անդրէաս արքեպիսկոպոսի, ի թագաւորութեան Օլախաց Վասիլ վօյվօտային. ի թվականութեան յաբեթական տոմարի ՌՁԹ, հոկտ. 23. (օրն) դշ (ուրբաթ). զոր Աստուած բարով վայելել տացէ ընդ երկայն աւուրս: Զմեղապարտ գծողս յիշեցէք, և Աստուած զձեզ յիշէ: [Ի Ս. Ղազար]:

1643-4.

Աւարտեցաւ քրիստոսաճեմն և առաքելախօս մարգարէաշէն հոգիաբուղխ այս տառ (Ճաշոց) ձեռամբ յոգնամեղ և անարհեստ գրչի՝ Տէր Սարգիս քահանայի, ի խնդրոյ աստուածասէր և բարեպաշտօն երկու եղբարց, խոճայ Վասիլին և խոճայ Պաւղոսին, ի թուաբերութեանս Հայկազան սեռիս տոմարի ՌՂԲին. ի հայրապետութեան Հայոց Տեառն Տէր Փիլիպպոսին, և առաջնորդութեան Տէր Անդրէաս արհեպիսկոպոսին Պուղտանաց երկրի, և թագաւորութեանն Վասիլ բարեպաշտ վօյվօտային. ի մայրաքաղաքն Եաշ, ընդ հովանեաւ Ս. Աստուածածնին և Ս. Լուսաւորչին. և քահանայութեանն Տէր Մովսէսին և Տէր Խաչատրին, Տէր Ղուկասին և գրչիս, և երեսփոխանութեան խոճայ Ակսէնտին.

1643·

Աւարտեցաւ այս սուրբ մատեանս ի լաւ և յընտիր օրինակէ, ի թվականութեանս Հայոց ՌՂԲ, ի թագաւորութեանն Լեհաց աշխարհին Դ Վլատիսլաւին, և իշխանաց մերոց և փոյթութեան Բան Ոհանին և ծԴ դատաւորացն ...։ [Աւետարան ի Սնեադին]։

1644·

Յիշատակ է այս մէկ տետրիս Թուխթն Պր. Թաթուլին որդոյ Պր. Գրիգորին՝ կամենիցոյ տօլմաթաւոր Քաղաքուն եղբարցն մէկն, ի վայելումն Ս. Նիկաւղայոս Աքանչելագործ եկեղեցւոյս. Թվ. ՌՂԳ, ապրիլի ԺԲ. Աստուած բարով վայելել տացէ ընդ երկայն աւուրս. և զմեղապարտ գրիչս զՎարդերես դպրապետս՝ որդոյ Պր. Քրիշթոֆին յիշեք մէկ Հայր մերիւ, և Աստուած զձեզ յիշէ. ամէն։

Գու պիթիք եազըլըը օդորանիէսը աշըրա, եազըխըը անարժան Յակոբ դպիրնընկ Տէր Գրիգոր օղլունունկ տարօշքա զաննէսը. ալպօ պուլրուխլու աշալարնընկ. խայաինքի յիշատակ խոյունշար Ս. Նիկօլ երխօվունա. սա եազըլըը խօլուպիլա թ(ուակ.) [Ժամագիրք. տ. 1631 տարին]։ Զթորոս Նաւաստ յիշէ, ով քաղցրաձայն եղբայր։ [Նոյն]։

1645·

Որք ընթեռնուք զաստուածաբան գիրքս, որ է յառեանի Աւետարան, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զխոճա Խաչքո Իլովցի Պր. Ստէցքոենց. վասն իւր հոգոյն և իր հօրն Ստեփանոսին և մօր Նազարուխնային, և ամենայն արեան մերձաւորացն։ Զոր ետես զայս անգին զանձս, մեծաւ փափաքանօք էառ զսա իւր հալալ արդեամբ վաստակոց իւրոց. և դարձեալ ետ զսա յիշատակ ի նոյն տեղի՛ ուր և յառաջն էր. զի մի՛ կորիցէ յիշատակն արդարոց և աշխատողաց։ Դարձեալ աղաչեմ զձեզ հայրք և եղբայրք, մի՛ մոռանայք զբարի յիշատակ տուողս զՊր. Խաչքոն, որ այլ սուրբ գրոցս զթերին լցոյց, քանզի ետ նկարել զչորս գլուխ պատկերանիքն և չորս կանոններն. ի թվին Հայոց ՌՂԳին, ապրիլի 28ին. Որոց յիշատակ տուողացն օրհնութեամբ եղիցի, և կարդացողաց և լսողաց և որք զամէնն ասեն։ Ամէն. Հայր մեր։ [Մեծ Աւետարան ի Լեմպերկ]։

1648·

Ես մեղաւոր և անարժան ծառայ Աստուծոյ Մուրատ, որդի ողորմած հոգի Միքայելին. գրեցի զայս կանոնական հրամանս ի Շէչով քաղաք, ի դուռն Ս. Խաչին, ի թագաւորութեան Վասիլ Պարոնին, Թվ. ՌՂԷին. դեկտ. ամսոյ 8ին, օրն հինգշաբթի։ Աղաչեմ զձեզ, ով հայրք և եղբայրք, յորժամ կարդայք կանոնական հրամանս, անմեղադիր լերուք տղայանալս և խոշորու-

թեան գրոյս, զի շատ արտասուելով և հառաչանօք գրեցի զայս. զի այսմ ժամանակի փախստական էինք ի հայրենի տեղեաց Եազլովցայու ի Շէհրով քաղաք, ի ձեռաց չար Խմէլին. զի շատ աւերում արար ի Լեհաց երկիրն։ Յայսմ ժամանակի եկաւ Տէր մահտէսի Գասպարն Երուսաղեմայ, զի ուխտն կատարեալ էր. եկաւ ի Շէհրով քաղաք. յետոյ չկարաց երթալ ի Եազլովցա, զի շատ խառնակութիւն էր. ամէն հարամի եղեր էր. որ խոկի չէին թողեր որ մարդ գայէր ճամբաներն. զի այս չարութեանս է պատճառ Խմէլին. յետոյ եսուր իւրեան հալալ ընչիցն՝ ինձ անարժան մեղաւոր Մուրատ սարկաւագիս, որ զայս սակաւ կանոնահրամանն գրեցի. այլ բաւ է։ Աղաչեմ զձեզ ով հայրք և եղբայրք, հայրապետք և վարդապետք, քահանայք և սարկաւագք, յորժամ կարդաք կանոնահրամանս կամ օրինակէք, յիշեցէք զանարժան ծառայն ձեր Մուրատ սարկաւագ զգծող սորին, և զծնողսն իմ, զխաճոյ Միքայէլն՝ որ առ Աստուած փոխեցաւ, և զմայրն իմ Խաղութ խաթունն. յիշեցէք միով Հայրմերիւ, և Աստուած զձեզ յիշէ միւսանգամ գալստեանն. ամէն։ — Ո՛հ գիր՝ որ մնաս. ո՛հ ձեռք որ հողանաս. ո՛հ եղբայր որ թէ զմեզ չմոռանաս։ [Կանոնագիրք. ի Ս. Ղազար]։

1652.

Ի թուականիս մերում ՌՃ (1651–2) ամին ելեալ ի Ս. Էջմիածնայ՝ բարձրափառ և ամենահռչակ Տէր Փիլիպպոս կաթողիկոսն, հանդերձ 12 վարդապետօք, չոգաւ յԵրուսաղէմ, առ որ և զամենաթշուառս (Յովհաննէս Վ.) կրսերս ի բեմբասացս և հուսկ վերջոտնեալս ի ծնունդս եկեղեցւոյ, ունելով ընդ իւր. որոյ այս 25 ամ է զի ծառայեցի նմա մտերմաբար. և գնացեալ մինչեւ ի քաղաքն Էնկիւրեայ, և անտի յղեալ զմեզ ի Բիւզանդիոյ՝ առաջ զնօսին հրաւիրելոյ ի Ս. Երուսաղէմ... Եւ արդ գնացեալ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ ընդ վերոյ գրեալ Տեառն մերոյ, և անտի եւս դարձաք ի յարքայական քաղաքն ի Կ. Պօլիս. և անդէն զմեզ ուղարկեաց Իլախաց աշխարհն՝ հայրն մեր, ինքն չոգաւ ի յաթոռ իւր ի Ս. Էջմիածին, նոյն մեծարանօքն։ Իսկ իմ երթեալ յայս վերայասացեալ երկիրն, իբրեւ կատարեցաք զգործս մեր, յետ երկուց ամաց դարձաք ի Ս. Էջմիածին.... [Աւետարան ի Մուշ]։

1654.

Գրեցաւ Աւետարանս ի յաշխարհս Իլախաց ի քաղաքն Կամէնից, ի դառն և ի տրտում ժամանակիս, ի վշտալից և ի թշուառական աւուրս, և ի նեղաց սրտիս և ի այրեալ լերդիս, պիղծ և անօրէն Հոռոմ ազգէն, անուամբ կոչեցեալ չՊօկտան Խմէլէնիցքէն, որ երկու ամ պաշարեալ և գերեալ զաշխարհս Իլախաց, զքաղաքս, զգիւղս, զգաւառս, զգիւղաքաղաքս, զժամս, զժամատունս, զքահանայս և զկարդացողս, զկենդանիս և զմեռեալս, զամենայն զինչ ի միտս անկանէր և ի ձեռն հասանէր, նա անխնայաբար և անողորմաբար տանջեալ գերեալ և տայր ի ձեռս այլազգեաց, որ կոչուէին Թա-

Թար ազգն. ոչ լալոյ և ոչ հառաչելոյ, ոչ պաղատելոյ և ոչ աղաչելոյ կունայէր. այլ իւր զօրութեամբ և հնարիւք սատանայիւք առնէր զինչ և կամէր։ Այդ հայցեմք ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ, որ վասն մեր խաչեցաւ, մեռաւ, Թաղեցաւ և յարեաւ... որ նա զիւր առատ ողորմութեամբ և մարդասիրութեամբ՝ զպեղծ և զանիծեալ բերանն բացեալ զառիւծունն՝ կալցէ կապեսցէ և զգլուխն կործանեսցէ ի ձորն անդնդային, և զմասն Նորա ընդ անհաւատս դիցէ, և զմեզ զամենեսեան զհաւատացեալսն ազատեսցէ ի Նորա անհաւատոյն ձեռանէն. ամէն։ Արդ վասն խնդրելոյ եղբօրս իմոյ Յան Միսաքոյ որդւոյ Պր. Քըրըչթօֆ Մուսթաֆային, ի սուրբ եկեղեցին ի քաղաքն Զամոսցայ, վասն իւր արեւուն և ընկերոջն և դուստրորդոցն և ծնողացն Նըրնջեցելոց... Արդ գրեցաւ ի յարեթական մեծ տումարիս ՌճԲ ամին և ի մայիս 22ին. ի հայրապետութեան Ս. Էջմիածնայ Տէր Տէր Փիլիպպոս կաթողիկոսին, ի յառաջնորդութեան խառնակի ժամուն ոչ այս և ոչ այն, այլ մնացեալ վասն գալոյ Պր. Թորոսովից Տէր Նիկողայոսին, և ի թագաւորութեան Յ. Քաժիմիրին։ Գրեաց զսա խեղճ և անճարակ մեղաւոր և անարժան ծառայ ոտացն երբեք կոչեցեալ Վարդերես, որդոյ Պր. Քըրըչթօֆ Մուսթաֆային.... [Ժամագիրք ի կայսեր. գրատան Վիեննայ]։

1655.

Ողորմութեամբն Աստուծոյ սկիզբն ար(արաք) ճաշոցն, Թվ. ՌճԳ, ապրիլ 26ի օրն չորեքշաբթի, Յինանց, առաջ մէկ շաբաթ քան զՀամբարձումն, և մինչև ցայս վայր կատարեցաք, Գալիանեանց տօնի, մայիսի 23, ի փառս Քրիստոսի Աստուծոյ. ձեռամբ անարժան Անտօն եպիսկոպոսի և վարդապետի, ի քաղաքն Եազլովցա, ի դուռն Հաճակատարի։

Այս հրաշափառ մեծի տօնիս՝
Քեզ երանի որ հանդիպիս
Լուսափըթիթ բուրաստանիս.
Յորժամ ի ծունըր խոնարհիս,
Սիրով հոգւոյդ յԱստուած հըպիս,
Յայնժամ յիշեա զու դեղկելիս
Զայս անպիտան Իլովցիս,
Զմեղաց ծածկեալս ի մէջ տղմիս
Անտոն անուն վարդապետիս,
Բայց անուամբ կոչողիս.
Եւ եմ չարեաք լըցեալ զերիս։
Հազար հարիւր երեք Թըւիս՝
Յորժամ հասայ ի յայս տեղիս,
Մայիս ամսոյ երեսունիս.
Աւուր երեքշաբաթիս։ Ամէն։

Հօգի սուրբ, յօգնեա և աջողեա անարժան գրչիս Անտօն եպիսկոպոսի, ապաաւորիս Սրբոյ Խաչին։ Աղաչեմ և խնդրեմ ի քէն բարերար և բազումողորմ Աստուած, վասն քո սուրբ չարչարանաց, զի զօրացուսցես զիս զանարժանս ի անկ ելանել, որպէս ի սկիզբն զօրացուցեր, մարդաէր, նոյնպէս ապաւորեա Ս. Հոգիդ, զի յօգնութեամբն հասից մինչ ի վերջն. զի յոյժ ծանր Թուի ինձ այս սակաւմնաց գիրս կատարել. և քո սուրբ և աջանչելի անուանն վերաակամնիմ, կենսաբեր Ս. Խաչին աստուածաչունչ գիրս

անտարակոյս, յուլիսի 13, օրն հինգշաբթի թվին ՌՃԳ․ ի փառս Աստուծոյ։ Կատարեցաւ Ճաշու գիրքս ձեռամբ անարժան Անտոն վարդապետի, ի մայրաքաղաքն Սէլով, ի դուռն Ս․ Խաչին, Թվ․ ՌՃԳ, օգոստոսի ամսոյն 11, փոխման Աստուածածնին պահոց․ բայց և սկիզբն արար ի Եադլավցա քաղաքն, նոյն տարի, ամսոյն մայիսի, Գ աւուր յառաջ քան զՀամբարձումն, չորեքշաբթի օր, ի փառս Աստուծոյ։ Փառք քեզ, Աստուած յաղագս յամենայնի։ [ի Ս․ Ղազար]։

## 1655․

Գրեցաւ Այսմաւուրք Աշխարհութեան երգ, մարտի մէկ, Թվ․ ՌՃԴ, աղուհացից առաջի շաբաթուն հինգշաբթի, ձեռամբ մեղաւոր Անտոն վարդապետի, ի քաղաքն Սէլով։... Գրեցաւ ձեռամբ մեղաւոր Անտոն եպիսկոպոսի և վարդապետի Թվ․ ՌՃԴ մարտի ամսոյն ԻԱ, օրն չորեքշաբթի․ միջնաց աղուհացից։

## 1657․

Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցաւ Շարակնոցս ի յաշխարհս Իլախաց Զամոշչայ․ ի Թվին ՌՃԶ, նոյեմբ․ 9, օրն երկուշաբթի․ բայց գրեցաւ ձեռամբ թերավարժ ծաղրող Նոտրիս գրչի, հօրս մեղապարտ Նիկոլ երէց կոչեցեալ անուամբ և ոչ գործով ի կարգ քրիստոնէութեամբ․ անպարապ անձամբ ձեռնարկեցի․ և ի հայրապետութեան Ս․ Էջմիածնայ Տեառն Տէր Յակոբին և յառաջնորդութեանն արհիեպիսկոպոսին Տէր Նիկողայոսին Թորոսովից, և ի թագաւորութեան գրուլ Քաժմիրին, և իշխանութեանն Զամոշչայ քաղքի Եան Զամոյսկի։ Գրեցաւ ի դուռն Ս․ Նշխան Ս․ Աստուածածնի և այլ սրբոց եւ սպասաւոր Ս․ եկեղեցւոյս ժամանակիս մեղսաքարիչ քահանայից, աշխատաւոր և ծերացեալ ալեօք 94ամեայ Տէր Յակոբ քահանայի, և միւս այլ Տէր Յովանէս պատուական քահանայի, որ է որդի Քրիստոսատուրի Կաֆայի քաղաքի։ Նա և թէ արժանի համարիք զսկարս անարժան և զփծուն գրիչ Նիկոլ երէց ցաւակցաբար յիշել ի սուրբ և ի փառաւոր յատեան․ երես անկեալ կու խնդրեմ զգաղափարողսդ, որ մեղադիր չլինիք Նոտրիս․ զի ծերացեալ ալեօք գծագրեցի 60ամեայ զոլով․ աչքս ի լուսոյ էր պակասեալ և զգայարանքս ի յուժոյ․ կ՚աղաչեմ որ անպարաւ թողուք, և զմեզ յիշէք յերկնաբացիկ աղօթս ձեր, և զծնողս իմ Մուրատն, և զմայրն իմ Եահուտն, և զիրիցկինս իմ հանգուցեալ Մարիամ, և այլն։ [ի Ս․ Ղազար]։

## 1657․

Հայոց Թվ․ ՌՃԶ, նոյեմբերի Իէ, մեռաւ Զուսիմոս արեղայն ի Լով քաղաք, մահտարաժամ մահուամբ․ Աստուած իւրն ողորմի․ ամէն։ — Գուրէլոյ Ռէշնովէցքի։

## 1659.

*Գրեցաւ գիրքս որ կոչի Առ ոս, ասացեալ Սրբոյն Գրիգորի Աստուածաբանի, ի լաւ և յընտիր օրինակէ, ի վայելումն և յիշատակ բարեմիտ և ուսումնասէր բանասիրի Տեառն Յոհաննէս հեզահոգի ընտրեալ քահանայի, որ մականուամբ կոչի Քարմատանենց... Գրեցաւ սա ի Թուին Հայոց քառիցս յիսնակի և Գ յոբելինի, այլ և եօթն աւելորդի, օգոստ. 12, ի տիրախնամ և աստուածապահ մայրաքաղաքս Լէվ կոչեցեալ, ի դուռն Նշման Ս. Աստուածածնի, ձեռամբ մեղսամած և փծուն գրչի Սիմէոն դպրի Ջամասպացոյ... [Առ Մխիթար. վիեննայ]։*

## 1662.

*Պատճառին ամենայնի և գոյացուցչին զմարդն՝ ըստ իւրում պատկերին, և զնոյն վերստին նորոգողի ընդ ինքեան ի մի՝ ըստ անսահման սահմանի, անճառ և անհաս խառնմամբ նոր իմն եղանակի, յաւէտամատոյց գոհութիւն, մշտնջենաւոր փառաւորութիւն տացի և վերառաքեալ հատուսցի. որ կարողացոյց զտկարս և զօրացոյց զ՚ի բարեաց վերջնոտնեալս զՍտեփաննոս Իլովացի, հուսկ յետինս ի բանասիրաց, գծագրել մատամբ իմով զերանապարփակ և զամենատարփակ մատեանս, զչորեքծագեան տիեզերաց համաքարոզ տառս, որ ընդ կենսակիր և նոթճալուր ներգործութեան իւրում Աւետարան մակագրի. և այլն։ Սկզբնաւորեալ աւարտեցի զհոգեկեցոյց տառս գծանչելի՝ ի ստուգագոյն օրինակաց նախնեաց ցայս վայր հասելոց. իսկ ոսկէնկարէնս իմն անսակաւ զարդարեալ եռաւ գեղապաճոյճ արարեալ ի գոյնս վայելուչս, երանգագուն որակօք երփնազարդեալ ըստ արհեստից յօրինմամբ. և բոլորապէս ի կատարումն ածի, ի գովութիւն ամենակատար Էին Յիսուսի Քրիստոսի։ Բայց գրեցաւ ըստ ամի մարմնաւորութեան Բանին կենարարի՝ հազարեօրդի վեցհարիւրորդի վաթսներորդի և մու միակի, և ըստ հայկայինս շրջանի Ռդի Ճդի Թաւոյ, ըստ տասանց առ նոյն յարողի, ի գահ իջման Միածնի ի Վաղարշապատ քաղաքի, ի հայրապետութեան Տեառն Յակոբայ սրբազանի։ Ձեռնարկեալ էր յառաջագոյն զայս տուփ մատենիս գրել Մովսիսի վարդապետի սիրելոյ իմոյ և ուսուցանողի զայս արուեստ. յորմէ սակաւուք ինչ գրեալ՝ նիւթ և պատճառ եղեւ իմոյս բովանդակութեան։ Վասն որոյ յիշեսցին ի վայելողացդ և ընթերցողացդ բարեսէր կամօք նախկին աւիթք սորին տառի, և Ստեփաննոս բանասէր բազում հոգացողութեամբ գրոյ և ստացող պատուականս մարգարտի, հանդերձ ծնողօք և համօրէն ընտանեօք։ Արդ զայս փափագելի կենսունակ սուրբ կտակս ընծայեցի ի դուռն Ս. Աստուածածնին եկեղեցւոյ Իլովայ մայրաքաղաքին, ի պայծառութիւն հարսին Քրիստոսի և ի լուսաւորութիւն մանկանց եկեղեցւոյ, և ի յիշատակ ինձ և ծնողաց իմոց, հօրն՝ Պր. Վարդանին և մօրն՝ Կատարինեայ, և եղբարցն և քերցն, և այլ ամենայն զարմից իմոց, կենդանեաց և ննջեցելոց։ Վասն որոյ, մի՛ ոք համարձակեսցի զայս հանել։...*

### 1668.

Գրեցաւ Պատարագամատոյց տետրակս ի վայելումն Տեառն Յակոբայ երջանիկ քահանայի, ի Թվիս մերում ՌՃ և վեշտասան, յապրիլ ամսոյ Հռովմայեցւոց 23. ի հայրապետութեան Հռովմայեցւոց Տեառն Աղեքսանդրու Է. ի կաթողիկոսութեան որ ի Ս. Էջմիածին Տեառն Յակոբայ, և յարքեպիսկոպոսութեան Տեառն Նիկողայոսի. ի թագաւորութեան Եան Կազմիրի, երկիրս Լեհաց, ի մայրաքաղաքս Լով, և ի դպրատանս Հայոց: Զհանդիպողսդ՝ յիշել աղաչեմ յաղօթս՝ զգրիչս: [Ի Հռովմ]:

### 1672.

Գրեցաւ և կատարեցաւ սուրբ երգարանս մարգարէին Դաւթի՝ ի քաղաքս ի Վարշաւ, ձեռամբ անարժան և բազմամեղ Ոսկերիչ Գրիգորի. զի յայսմ ժամանակի փախստական եղաք ի ձեռաց հակառակողաց Ս. Խաչին Քրիստոսի. և այս եղեւ ի գալստենէ Փրկչին մերմէ ի Քրիստոսէ ՌՈՀԲ ամի, օգոստոսի 16ին. Եկեալ ազգին տաճկաց և տիրեցին զԿամենից. և յետ հինգ աւուրց եկին չարքն հասան ի քաղաքն Լվով. ութ օր և ութ գիշեր պատերազմեցաւ Թուրքաց ազգն և քաղաքացիքն ի հետ միմեանց, մին օրն և մին գիշերն հինգ վեց հարիւր թօփ քաշեցին առ միմեանս, թող թէ զանհամար թուֆանկն: Գոհանամ զառատ ողորմութիւնն Աստուծոյ, որ ոչ ետ ի ձեռան չարեաց զքաղաքն և զքաղաքացիս, և զսուրբ եկեղեցիքս պահեաց ողորմութեամբն իւրով: Եւ յետ այսոցիկ 80,000 ղուռուշ կտրուածք արարին քաղաքացիքն և տալու եղան Տաճկաց՝ որ ելանեն և գնան. և Տաճկաց փաշա մի կար ի հետ իւրեանց, որ էր չարագլուխ, և անուն նորին կոչէին Ղափլան փաշայ. նա 80,000 ղուռուշի խապուլ կեցաւ, և ութ հոգի գրաւակ առնին. էառ զնոքա և ելեալ գնաց, մինչեւ առցէ զ80,000 ղուռուշն, և զայն ութ հոգին ի հետ դարձուցանէ: Այն ութ հոգին էր՝ երկուքն Լեհ, երկուքն Հայ, երկուքն Ռուս և երկու այլ Հրեայ: Եւ յետ այսորիկ այսքան որ ահ և դողումն և սով քաշեցին Լովու քաղաքացիքն՝ որ մերձեցաւ ի մահ, և յետոյ խորհեցան փախչել ի քաղաքէն Լովէ, վասն այսորիկ՝ եթէ լինի թէ տաճիկ ազգն դառնայ և կրկին անգամ գայ ի վերայ Լով քաղաքի, կէսքն քաղաքացւոց կամ թէ այլ աւելի փախստական եղաւ. ոմքն կոչեցին (չուեցին) ի Գրագով, և ոմքն գնացին ի Տանցկայ, և մին բաժին այլ եկին ընդ մեզ ի Վարշաւ: Եւ եկեալ տեսաք զքաղաքն Վարշաւ, որ ոչ ունին իւրեանց առանձին եկեղեցի մեր Հայոց ազգս, և ոչ մին փոքրիկ աղօթատեղի, և ոչ մին հայազգւոյ քահանայ, և կամ մին խրատիչ, որ նովաւ մխիթարին: Եւ ես նուաստ Ոսկերիչ Գրիգորս՝ խորհեցայ ի մտի իմում, թէ լաւ էր որ մին Սաղմոսարան լինէր ի ձեռին իմում՝ որ մխիթարէի. սկսեցի զՍաղմոսարանս, ողորմութեամբն Աստուծոյ կատարեցի, այսպիսի խոշոր և կոպիտ գրով. մի՛ մեղադրէք, զի կարիքս այսքան էր՝ այս հոգաբեր տարոյս. և ունիմ ասել

այլ զպատճառս. առաջին պատճառ, որ ոչ եմ ընիկ ի յերկրէս, և ոչ գիտեմ զլեզու սոցունց, այլ որպէս համր կենամ. երկրորդ, ի մէջ ղարիպութեան ոչ ունիմ ծանօթ և օգնիչ և կամ մխիթարիչ. բայց միայն ունիմ զարարիչն իմ Աստուած. երրորդ, ունիմ զծերութիւն, որ և մերձ եմ ի մահ. չորրորդ պակասաւոր եմ, ունիմ զաղքատութիւն հոգով և մարմնով. հինգերորդ, որ աչքս ոչ ունի պարզ և յիստակ տեսութիւն, զի սակաւ տեսանէ վասն ի ծերութենէ. վեցերորդ, որ կայ ի վերայ իմ մեծամեծ քան զչափս աւելի սուգ և տրտմութիւն. վասն այնորիկ եթէ հասեալ է օր մահուս, և անկարծ մեռանիմ ի յերկիր օտարաց. ոչ կայ գերեզմանատեղ Հայոց ազգիս. տա-րեալ իջուցանեն ի խոր վիրապ մի, և լինիմ մարմնակերուստ: Այսա այս-քան սակաւօք ճառեցի զորպիսութիւն մեր. անմեղադիր լերուք վասն իմ մեղուցելոյս: Եթէ ի միջի սաղմոսարանիս սղալութիւն գտցի, այն ոչ է ի կամաց, այլ ի մոռացմանէ և կամ կասկածանաց սրտի մերում եղեալ էր: Վասն որոյ խնդրեմ առ ձեզ, ով հանդիպողք գրոցս, հայրք և եղբայրք, ներ-բել և զպակասն լնուլ և զաւելորդն յապաւել, որք թէ հմուտ էք արուեստի և մակացութեան, և զմեզ պահել անմեղադրելի: Ողջ լերուք ի Տէր. ամէն. եղիցի: — Կատարեցաւ Երգարանս ի Թվին Հայոց ՌՃԻԲ, ի դեկտեմբե-րի ամսոյ ի օրն հնկետասան. Յիսուսի Քրիստոսի մարդացելոյն փառք և պա-տիւ յաւիտեանս. ամէն:

Ո՛վ ընթերցողք սուրբ Սաղմոսիս
Եւ հանդիպողք այսըմ գըրիս,
Հայր մեղայ մի խնդրէ Գրիգոր գերիս
Եւ բազմամեղ ողորմելիս.
Վարձըս տայ ձեզ յայնմ յաւիտենին,
Յորժամ ասէ. Յարիք առ իս...
Ձեռըս փըտի ի հող դառնայ,
Գիրս յիշատակ առ ձեզ մընայ:

Ի Թվին Հայոց ՌՀ ամի սառամանեցաւ (?) ծովն բովանդակ, մինչեւ գնաց հասաւ ի ովկիանոսի մեծ ծովն, փետրվար ամսոյն մէկէն մինչեւ ի մարտի ամիսն. վասն զիտութեան լինելոյ՝ զպաղն ծակեցին և առին զչափն, որ և իրեք կանգուն և կէս էր թանձրութիւն պաղին: Սով եղաւ Ըստըմպօլ. 25 դրամ հացն՝ մէկ ստակ, այն այլ հող և մոխիր էր:

Թուականութիւն Թուրքաց ժամանակաց (յառմանէ Կ. Պօլսի՝ մինչ իր ժա-մանակն)։... Յետ այնորիկ (Իպրահիմի) Նստաւ Իպրահիմի որդի Գ Մահմատ անուն, որ էր Հայոց Թվին ՌՉԼ. որ եկաւ առաւ զԳամենից, և այժմ հա-կառակութեամբ պատերազմի ընդդէմ Լեհաց երկրի: Վերջ: [Սաղմոս ի Մո-նացոյ Պաւիերայ [1] ]:

1. Գրած է և ստանաւոր գովեստ Սաղմոսաց, յորում դրէ զինքն «Ոսկերիչ Գրիգոր Ըս-տամպօլցի»:

1673.

Օրհնեալ ես Հայր Աստուածորդւոյ, Բանուն զօրաց զքեզ փոխադրեալ,
Նըմին միծի Հոգոյ Սրբոյ. Ի գըտակել այսմ աշխարհէ.
Ուրախութեամբ մեզ հիմն արկեալ. Որք ցնծութեամբ ապաւինին՝
Փառք տաճարիս Լեվա եղեալ. Սուրբ Կոյս, օգնեա նոցին։

Նկց (Նկարեցաւ) ի Թվ. ՌՃԻԲ, օգոստոս ամս. ԺԷ. (Ի Լեմպերգ, ի վերայ բիրեղենայ պատկերի Տիրամօր. տողագլուխք գրուածին կազմեն Օնոփրիոս)։

1673.

Գրեցաւ և կատարեցաւ ժամագիրքս Թվ. ՌՃԻԱին, ձեռամբ յոգնամեղ փցուն գրչի.. Գրիգորի. որ միայն անուամբս եմ և հեռի ի ճշմարտութենէն... Սկիզբն կալայ գրել Դաւթեան երգն և զժամագիրքն և զՏօնացոյցն և զՇարականքն՝ մինչեւ ի Աղուհացան վեցերորդ կիրակին, «Որ զերկրորդ քո գալստեանդ» և այլն. ի տղայքն աշակերտքն գրեալ են. և խընդրեմք անմեղադիր լերուք. ոչ թէ ծախսի էր գրեալ, այլ յիշատակ որդւոյ Միքայէլին՝ դեռաբոյս մանուկին, որ եօթն տարւոյ և երկու ամսոց էր, Մինաս արքեպիսկոպոս ձեռնադրեց դպիր. Ով ոք չունի իշխանութիւն աւրել որդիքոցմէս, որ դորա ձեռանէ առնուն, այլ դորա լինի յիշատակ և վայելէ անաստան կենօք. ամէն։ Որպէս զսկիզբն սկսայ գրել, նոյնպէս և վերջն կատարեցի... Կատարեցաւ Թվ. ՌՃԻԱին, ապրիլ ամսոյ երեքին, օրն մեծ չորեքշաբաթի մատնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

Թվին ՌՃԻԲ (1631) յունվար ամսոյ ԻԸ, կազմեցաւ ձեռամբ անարժան Առաքելս երիցու, ի Նորաշէն քաղաքն Սդանիսլաւ, ի վայելումն սիրելի եղբօրն իմ և իւր զաւակացն, որ են՝ Տէր Գրիգոր ընտիր և պատուելի քահանայն. Տէր Աստուած բարով վայելել տացէ իւրն և իւր զաւակացն ընդ երկայն աւուրս։ Աղաչեմ զձեզ մի մոռանայք մէկ Հայրմերիւ.. ամէն։ [Մըխիթար. Վիեննայ]։

1676.

Սրբազան դասք երջանիկ վարդապետաց, արհի և պանծալի եպիսկոպոսաց, մեղուաքարոզ և իմաստուն երիցանց, յիշեցէք ի մաքրափայլ աղօթս ձեր զպանդըխտացեալ և տառապեալ մեղսամածեալ՝ անուամբ և եթ Մինաս բանի սպասաւոր, երկրին Պուղտանիա առաջնորդ. որ զգիրքս զսոր Եաշ քաղաքն, կտրատեալ ի յայլազգեաց, և առի յիս, և զպակասն գրեցի ձեռաք իմովք, առ ի յիշատակ անձին իմոյ և ծնողաց իմոց, Թօխաթցի Տէր Ալեքսիանոսին, և մօրն իմոյ Իրիցկին Խասախաթունին. միով ողորմի ասէք և յիշեցէք. զի

կարողութիւնն իմ այսչափ էր· մի՛ մեղադրէք· զի ի մանկութենէ տկարութիւն ունիմ· վասն այն ոչ հետեւեցայ ուսանել զգիրն· այլ գրեցի զգիրս ի երկրին Մահառաց, ի գիւղաքաղաքն Ճուրճով· իշխանութեան երկրիս Ըշտեֆան Լազարին· ի դառն ժամանակիս որ սուլթան Մէհըմէտն որդին Իպրահիմին՝ վասն ծովացեալ մեղաց մերոց եկաւ ի վերայ Լեհաց և Գազարաց երկրին վերա, և Պուղտանաց երկիրն (յ)երթեւեկողաց հեծելոց Տաճկաց և Լեհաց աւերեցաւ· Տաճիկն Լեհաց երկիրն կ'աւիրէր՝ ամառն, ձմեռն՝ Լեհն գայր Պուղտանաց երկիրն կ'աւիրէր։ Եւ ես տառապեալս վասն սիրոյ սուրբ եկեղեցեացն՝ վանիցն չէի հրաժարեր· մինչեւ երկիցս անգամ կողոպտեցին. ապա մերկիկ գլխիբաց՝ մորթի մի քամակս կապեալ՝ փախեա ելա երկիրս Մահառաց· կէս մի ժողովրդոցս աստ փախեալ էին։ Միթէ Աստուած ողորմի երկրիս Պուղտանաց, որ խաղաղութիւն տայ թագաւորաց, զի մի՛ օտարութեամբ մեռանիմք։ Այս գրեցաւ թվին ՌՃԻԵ· սեպտեմբեր ամսոյ Ե։ [Մաշտոց ի Ս. Ղազար]։

1678·

Սա է տապան ողորմած հոգի Մեծխաթունին, կողակցուն Պարոն Յակոբին, մահտեսի Մինասի որդուն, Եազլօվա քաղաքին երեսփոխանին· յանգեաւ ի Քրիստոս Թվ. ՌՃԻԶին, ամսոյ ապրիլի Զ. օրն ուրբաթ։ [Ի Վարշաւիա, յեկեղեցւոջ Դոմինիկեանց]։

1679·

Գրեցաւ գիրս ձեռամբ Աւըսդագէս Եազլովցացի երիցու ի քաղաքն Սիլիստրէ, ի թվականիս Հայոց ՌՃԻԷին, յուլիս ամսոյ ԺԷին, օրն երկուշաբթի։

1683·

Որ ինչ ի գրքի աստ պարունակին՝ ժողովեցան յինէն ի զանազանից գրոց և ի տետրակաց հնացելոց, մինչ պանդխտանայի ի Վերին Հայս, և ի մի պարփակեցան· ոչ իբր զի իցեն վէպք ուղղաշաւիղք և փորձեցեալք ի մէնջ իբր այնպիսիք· այլ զի սովոր եմք ի բանից հակառակացն առնուլ մեզ զէն ընդդէմ նոցին, և զի բազում ինչ ի սոսամ գտանին և վկայութիւնք եւս· եւայլն... Ես (Վարդան Յունանեան) ոչ հեղինակ սորին՝ այլ հաւաքող միայն եմ· որպէս և զբազումս զայլս գրեանս ընդօրինակեցի ի Հայոց երկրէն, որք չէին աստ յերկրիս Լեհաց, վասն ջատագովութեան կաթուղիկէ հաւատոյ ընդդէմ ոմանց հակառակասիրաց մերազնեայց։ Ողջ լերուք. 1683։ — [Ի Ս. Ղազար]։

1684–5.

Շնորհօք ամենազօրին Աստուծոյ և սիրով Ս. Հոգւոյն կենարարի՝ աւարտեցաւ Մաշտոցս ի թվին ՌՃԼԳ, ի քաղաքին Ռուսճուխ, ի հովուապետութեան Տեառն Եղիազար կաթողիկոսին Էջմիածնի, ձեռամբ մեղապարտ անարժան և անիմաստ գրչիս Ըստամբօլցի Տիրատուր գրչի:..

1684.

Ցանկ Մաշտոցիս զոր է գրած
Զոր դուք կամիք գըտէք թված.
Մի ձանձրանայք աշխատանաց.
Սորա մէջ շատ զանձ է պահած.
Բարթամութիւնս եկեղեցւոյ
Մեր ուղղափառ սուրբ հաւատոյ.
Որպէս պարտէզ լի պտղով գոյ,
Կու տայ ծաղիկ պէսպէս գունոյ.
Հոգեւոր գոյնքըս զարդարեն
Հոգիս մարդկան մխիթարեն.
Որք ի մեր Լուսաւորչի են՝
Ի մեր Սուրբ Գրիգորըն լսեն.
Մեր Հայոց ազգիս պարծանք է.
Որք եւթն խորհուրդ կատարէ,
Մաշտոցըս զայս թող լաւ պահէ,
Որ Հռովմայեցւոց ուղղափառ է:
Լեհաց երկիրըս սիրեցի,
Ի Լով Մաշտոցըս գըրեցի,
Ի ազգիս մերոյ մատուցի.
Քահանայից գործիք լիցի:
Ի թվականիս Փրկչին մերոյ
Հազար և վեց հարիւր թվոյ.
Ութսուն և չորս նոյն համարոյ.
Յուլիս երեսուն. վերջն է ծրայ:
Ես Տէր Յակոբըս անպիտան
Ի Գրիգորենց մականուն տան.
Անարհեստ գիրս որք տեսնան,
Իբր անարժան տանեն յիշման:
[Ի Մայիսայեկեան գրատան Ջիրկեցւոյ].

1684.

Ձեր և ամենեցուն եմ ծառայ պատրաստական՝ Վարդան
Ծընունդ Գըզզըլոյ, խախոտաց ատարտոյ. [Յունանեան,
Սընունդ Թոխատու՝ որ մերձ Կոմանու.
Վարժեալ զհայկականն ի Վաղարշապատ
Եւ զհռոմէականն ի Լէօնպատ,
Ի վարժարանի մեծ Վեհապետին
Օծելոյն Փրկչի երեսփոխանին.
Որ զայս զուգնաքեայ ձեզ նուիրեցի,
Գրաւական միւսոյն զոր վերոյ գրեցի՝
Ի ներմարմնութեան Աստուծոյ Բանին
Հազար և վեցհարիւր 84 ամին.
Իսկ ի հայ թուին որ եդաւ ի Դուին,
Հազար և հարիւր երեսուն երքին.

Ըստ որում թուի ի բաժանմանէն
Ի Հռոմայեցւոց և յունականէն։
Օ՜շ, թէ վերստին առ նոյն դառնայցին,
Եւ միոյ մարմնոյ անդամք լինէին.
Ամէն եղիցի, և մի յամեսցի։

[Ցիշատակարան գրոց Աշըկերտի]։

1686.

Ես Մինաս վարդապետ Թոխաթցի, որդի Չիլիֆտար Տէր Ալէքսանին, առաջնորդ Պուղտանոյ, տամ զայս թուղթս՝ որ է իմ ձեռացագիր, Եան Քրիստոֆ Տէր Զաքարիայի որդւոյն որ է ինքն դատաւոր Լովու Հայոց. թէ գնարդ մեռանելով եղբօր նորին Եան Խաչկոյին՝ ի յերկիրն Պուղտանայ, գիրք նոյն Եան Խաչկօին անկան ի ձեռս իմ. այսինքն մէկ Ճառընտիր ձեռագիր, զոր այժմ ուղարկեալ եմ ի Թօխաթ, և մէկ Հարանց վարք ձեռագիր՝ որ կայ ի մօտս, մինչ կենդանի եմ. զորս խօստանամ ուղարկել Եան Քրիստոսին ի Լով քաղաք։ Այս (բանիս) վկայ Վարդան վարդապետն առաջնորդ Լովայ քաղաքին, և Տէր Օքսէնտ վարդապետն Պօչանցի. զոր ձեռամբս իմոյ գրեցի, ի թվին ՌՃԼԵ. ի հոկտեմբերի Ի. Լով քաղաք. [Պատարագատետր գրեալ յէջմիածին]։

1688.

Այս է տապան Պարոն Ցակոբին մահտեսի Մինասի որդւոյն, Եպգլօվու եղբաւրորդանին. յանգուցեալ ի Քրիստոս. Թվ. ՌՃԼԶին, յունիս ԻԲ։ [ի Վարշաւիա, յեկեղեցւոջ Դոմինիկեանց]։

1688.

Ցիսուսի Քրիստոսի շնորհօքն վերստին նորոգեցաւ սուրբ Աւետարանս, արդեամբք բարեպաշտ եղբարց Սրբոց Հրեշտակապետաց, վասն պայծառութեան սրբոյ եկեղեցւոյ մայրաքաղաքի, որ է Կամենից. ի թուոյ Փրկչին ՌՈՁԸ, և ի գիւտ գրոց Հայոց Թվ. ՌՃԼԷ ամսոյ. սեպտ. Ժ։ Գք. Տէր Օն. Կր։ (Օնոփրիոս կրօնաւոր)։ [Աշխարաբ առ Մխիթ. վիեննայ]։

1728.

Ցովհաննէս Տօբիայ Ավկուստինօվիչ՝ Աստուծոյ և առաքելական աթոռոյն (շնորհիւ) արհիեպիսկոպոս Լէօպոլսի, և ընդ բոլոր թագաւորութեանն Լեհաց և մեծի դքսութեան Լիթվանիոյ, Հայոց եպիսկոպոս Մոլտավիոյ նոյն ազգին Հայոց, որքաղան փափին մերոյ Երիլադ ընտանի և Աւընթերակայ. յորմէ հետէ առ-

տուածային գթութեամբն յարհիական ատուճան բարձրացաք, զպատշաճաւոր հոգ յանձին կալաք ըստ որբազան ժողովոց վճռացն, առաջնորդական պաշտամանս մերում բաւական առնելով, զբարեկարգութենէ եկեղեցեացս մերոց բուռն արկանէաք. և քանզի եկեղեցին Աստուծոյ ոչինչ որբազոյն և պերճազանցագոյն ունի քան զսուրբ խորհուրդս, զորս Քրիստոս Տէրն մեր վասն փրկութեան ազգի մարդկանս սահմանեաց, զգիրքն հասարակաց Մաշտոց կոչեցեալ, յորում կարգն պաշտելոյ զսրբազան խորհուրդս և զայլ արարողութիւնս կատարելոյ պարունակի, տրամադրել յանձն առաք. զոր ձեռն աստուածաբանից մերոց, ես առաւել պատուելի Տեառն Ստեփաննոսի Ստեփաննեան աստուածաբանութեան վարդապետին. զհին ձեռագիր Մաշտոցս ընդ միմեանս բաղդատելով, և իբր զանհուն սխալանս՝ որք ոչ միայն ընդդէմ իմացման աղօթիցն՝ այլ և ընդդէմ իսկ ուղղափառ հաւատոյս մերում սփռեալք էին՝ սրբագրել, և զսրբագրեալսն կարգաւ յօրինել, նա և զհարկաւոր խրատն իւրաքանչիւր խորհրդոցն և արարողութեանցն յառաջ դնել, և որ ինչ պակասէր ի մեր Մաշտոցն՝ ի հռովմէականէն՝ հետեւելով շաւղաց նախորդաց մերոց՝ առեալն առագրել ջանացաք: Արդ զի եկեղեցեաց մերոց հազարարձու բարոխքն (ժողովրդապետք) ի բաց թողեալք զայլ Մաշտոցս՝ այսու միայն, զոր մեք արհիական հեղինակութեամբ մերով առփորձեցաք և հաստատեցաք, այսուհետեւ վարեսցին. զխեղճ մնաց նոցին ծանրացուցանելով պարտաւորեմք: Գրեցաւ յարհիական պաղատան մեր ի Լէօպօլիս, յամի Տեառն 1728. յապրիլի ամսոյ ԺԵ: -- [ի Հռովմ]:

1728.

Բարոյական Աստուածաբանութիւն Ստեփանոսի Ստեփաննեան Ռօշքայ, որբազանի աստուածաբանութեան վարդապետի Կամէնցացւոյ, ըստ զերիմաստ վարդապետացն հարազատ իմացուածոցն, հանդերձ դիպուածոցն մեկնութեամբ համառօտեալ ի Սդանիսլաւօվ. յամի Տեառն 1728, և Հայոց ՌՃՀԷ: [ի Հռովմ]:

1730.

Ես Տէր Սարգիս ի գաւառէս Եկեղեաց յարեւելեան գուղն Տիրանաշէնու, որ եմ որդի Տէր Սահակի կրկ? ծառայ Տէր Ներսէս վարդապետի մեծին հար... Հայոց ՌՃՀԹ, գնեցի Ֆօչան պիտանի Կանոնաց գիրքս, որ է խրատ քրիստոնէից, և է                անհաւատից. Տէր քաղցրացուցանէ սիրտ անդարցից և փորձ ի մեղաց. եկաւ քո սոսաց կոխ և անպիտան լոկ անուն կոչեցեալ Տէր Սարգիս, և է մեղօք շաղախեալ: Տէր Յիսուս բարձցէ սիրտ քարեղէն, տացէ սիրտ մարմնեղէն. որ երկիւղիմ այն օրէն՝ որ համար յուզէ յինէն. Տէր Յիսուս, ամենայն հաւատացեալք դարձո ի մեղաց. և արտ քոյին սուրբ երեսի տեսութեանն (արժանի). ամէն: — Թվին Հայոց ՌՃԲին.

Մոսկով առաւ ՀԻԼԺ Հոթին ի ձեռաց, և աւերեց զՊուղտանու երկիրն և ոչ ի նոցանէ էր, այլ վասն ծովացեալ մեղացն մերոց։

1740.

Պօղոսի Բիրոմալ մականուամբ քահանայէ շարադրեալ է Բառգիրքս այս, ի կարգէն Սրբոյն Տօմինիկոսի, որ ի Նախիջեւանու վանս բնակէր ի վաղըն-ջուց ժամանակաց. ճշմարիտ, ով ընթերցող, զի սղալանք գտանին բազումք ի մէջ գրիս, բայց ճշմարիտ է եւս որ բազմապէս օգնութիւն գտցեն և առցեն ի սմանէ ընթերցողք նորավարժք մանկունք, եթէ ունին զսէր ուսանելոյ։ Գիտելի է եւս, եթէ ոք կամեսցի զկատարելագոյն բառգիրք հայկական լե-զուով ունիլ, նմա պարտ է որոնել զՍտեփաննոս վարդապետին շարադրեալ, որ յորջորջի Գանձարան լեզուին Հայոց, շարադրեալ մեծաւ աշխատութեամբ, այսինքն երեսուն և երրորդ ամս, մինչեւ աւարտեալ է զնա. երկու անգամ սրբագրեալ է, և յերրորդ սրբագրութեան հանգեաւ ի Տէր, (1740) ի Ստա-նիսլաւ քաղաքն Լեհաց։

---

# ՅԱՒԵԼՈՒԱԾ Թ

## (ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՆԻԿՈԼԱԿԱՆ[1])



. . . . . . . . . . . . ցաք,
Ներհակ ստնմիաբան կացաք.
Նենգիւ զմիմեանըս մատնեցաք,
Եղբայր զեղբայրըս խաբեցաք։
Քանի բանիկ մի այլ ասեմ
Վասըն Հայոցն՝ որք ի Լոփն են.
Զի հպարտ և անձնահաճ են.
Զի բնական Անեցիք են։
Իսկ քահանայք որք ի Նմա կան՝
Գոռոզ յանդուգն ամբարտաւան.
Ոչ ումեք են Նոքա հաւան.
Զտեսի յայլ տեղ սոցա Նըման։
Զգիտեն բընաւ սահման ուսման,
Եւ չգիտեն զլեզուս հայկեան.
Եւ զինչ կարդան՝ չիհասկանան.
Եւ գիտողաց վրայ խրոխտանան[2]։
Փարիսեցւոց Նըմանեցան
Եւ չար դըպրաց Հրէիցըն այն,
Որք Քրիստոսի ընդդէմ դարձան
Եւ զնա ինքեանց մեծ չընկալան։
Այսքան չարեաց պատճառ եղան
Անմիաբան Հայք որք ի Լով կան.
Ինաա[3] արին, յանդըգնեցան
Զգեցին ըղմեղ ամիի?[4] բերան։
Զի այսքան հարիւր ամք են [են.
Որ ազգս Հայոց ի Լեհ բնակեալ
Այսպէս կակիծ բան տեսել չեն
Որ մեր գլուխս այժմ եկել են։
Այս փորձանաց ո՞րք պատճառ են,
Թէ ոչ՝ քահանայք՝ որք յիմարք են.
Որք զհայ լեզուն բնաւ չգիտեն.
Զեն հասկանալ, ծուռ իմացնեն։
Որպէս ասէ աւետարան.
Թէ կոյր կուրի յորժամ դիպան՝
Երկուքն ի խորխորատ անկան.
Այսօր ի մեզ բանքըս լըցան։
Երկու կենօք եմք մեք ղըրկած
Եւ յԱստուծոյ աչաց ելած.
Զի յօրինաց եմք հեռացած
Եւ անհնազանդ պատուիրանաց։

1. Այսպէս անուանեցինք զգրուածս, որոյ սկիզբն և վերջն այլ պակաս ըլլալով մեր միակ ծանօթ օրինակին մէջ, անծանօթ մեզ բուն վերնագիրն և հեղինակն. որոյ այրած արատով բառերն՝ յայտնեն որ ժամանակակից էր. զնոյն յայտնէ և Վարդանայ Յովհաննեան անկէ առած վկայութիւնն (տ. եր. 127). և թուի ի Փոքր Հայոց կողմէն գաղթած։ — 2. Տես յեր. 129 Վարդանայ Յուհաննեան քիչ մ'այլայլութեամբ օրինակածը։ — 3. Ինոփ, թարգ. քարէն յամառութիւն։ — 4. Թերեւս գրուած էր ողխորհէ, կամ ոձնի։

Մեք թագաւոր չունիմք օծած,
Ոչ իշխանութիւն մեզ տըւած,
Ցամէն ազգաց եմք մեք կոխած,
Քրիստոնէից եւ յայլազգեաց։
Զունիմք աթոռ ըստ օրինաց,
Ոչ առաջնորդք ի վրայ խելաց.
Ամէնք խըռուած են ու հարբած,
Մամոնայի ծառայ եղած։
Զինչ որ կ'ասեն՝ ինքեանք չառնեն,
Եւ վասըն դրամի քարոզեն.
Ցամէն քաղաք ժողովք կ'առնեն,
Ով որ քիչ տայ՝ կու բանադրեն։
Կ'ուտեն խըմեն, կ'ուրախանան,
Վասն օրինաց բնաւ չըհոգան.
Զոչխարս ձըգեն գայլոց բերան,
Փրկել զոգիս բնաւ չիջանան։
Վա՜յ և եղուկ հազար բերան.
Զի Հայք հոգով մարմնով կորան.
Ո՞ւր են նախնի հայրապետքըն այն
Եւ քաջ հովիւքըն սըրբազան.
Որք վասն հօտին զանձինս եդին,
Զգայլս և զգազանսըն փախու-
[ցին.
Ըստ բանի Տեառն Յիսուսի Փըրկ-
[չին,
Արքայութեան ժառանգ տըրին։
Այժմըս հովիւք՝ վարձկան եղեն,
Տեսեալ զգազանս՝ ի յետ փախչեն.
Գազանք զգառինս յափշտակեն
Եւ պատառեալ զնոսա ցրուեն։
Որպէս այժմուս հազար թըւին
Եօթանասուն հինգերորդին,
Եկն Մելքիսեթ քաղաք Լովին.
Կորոյս ըզմեզ զամենեսին.
Բազում վընաս յիւրմէն տեսաք,
Շատ և յոլով տուգանք տըւաք.
Անթիւ արծաթ ոսկի տարաք,
Թէ նովաւ ղհոգիս փրկէաք.
Իսկ նա ըննաւ ամենեւին
Զառնէր փոյթ փրկել զմեր հոգին.
Կոչէր առ ինքն զամենեսին,
Թէ ձեռնադրեմ զձեզ՝ զի՞նչ տայք
[ինձ։
Վանքերն այլ աբեղայ չիմնաց.
Ամենքն եկին իւրեանց յետուանց,
Ղուռուչ դեկան բերին հիտրաց [1],
Լինել Պարոնտէր [2] թարց թեմաց։
Դըպիր մ'այլ կայր ի յայս տեղաց,
Նիկօլ անուն Թորոսովեաց.
Որ ի Ստամպօլ ելհալ գընաց,
Մըտաւ ի կարգըն աբեղաց.
Լըւաւ զհամբաւ երկրին Լեհաց,
Թէ Մելքիսեթն չատ ձեռնա-
[դրեաց.
Փութանակի Լով ժամանեաց,
Մելքիսեթին աչակերտեաց։
Իբրեւ ամիսք քանի մ'անցին,
Մելքիսեթն ասաց Նիկօլին.
« Քանի՞ հարիւր մառչիլ տաս ինձ՝
Զքեզ առաջնորդ դնեմ Լովին »։
Ասաց. « Երթամ յազգականքն իմ,
Քերց և եղբարց ասեմ վասն իմ »։
Նոքա լըւան և խընդացին,
ԶՍէֆէրն առ նա յուղարկեցին.
Զոր յետ բազում երթեւեկին՝
Հարիւր յիսուն ղուռուչ կտրեցին.
Հետ մէկմէկի թուղթ գիր արին,
Որ յետ չաբթու մի օրհնէին։
Իսկ ժողովուրդն երբ լըսեցին,
Քահանայք՝ զամբոխս կուտեցին,
Օրհնելուն ժամն վանքն գնացին.
« Այտ ի՞նչ բաներ կ'անես, ասին.
Մեք զնա չուզեմք, ոչ կ'ընդունեմք
Ոչ յեկեղեցիս մըտանեմք.
Զըլնի թէ զնա օրհնես մեզի.
Թէ չէ նա՝ չատ աղմուկ լինի »։

1. Հետ իրերաց. իրենց հետ։ — 2. Եպիսկոպոս ըլլալ առանց թեմ ունենալու։

Կաթողիկոսըն քան խըրած՝ ?
Մըտիկ չարաւ նոցա խօսաց.
Խաբեց զնոսա, ասաց. «Գնացէք.
Ձեմ օրհներ զնա՝ երբեք չուզէք»։
Ժողովուրդն ի տուն գնացին,
Նորա խօսացն հաւատացին.
Իսկ նա ելեալ մէջ գիշերին,
Զնիկոլն գաղտ ձեռնադրէին։
Ընդ՝ արշալուսն առաւօտին
Եկեալ քաղաքըն իմաց արին.
Քահանայք՝ զամբոխ վերուցին,
Փութով ի վանքըն դիմեցին։
Մելքիսեթեկն երբ զայն լըսեց՝
Մըտաւ ի խուցն, դըռվըն ախեց.
Քաղցըր ձայնիւ պատասխանեց,
Ապա ի սիրտըն ոխ պահեց։
Մըտին ամենքըն յեկեղեցին.
Զինչ յիշոց կայր՝ նոցա տըվին.
Եպիսկոպոսք հարեղանին՝
Յոյժ վախեցան և լուռ կացին։
Զնիկօլն ուզէին բռնէին
Կըտոր կըտոր զնա առնէին.
Հազիւ զերծեալ ձեռաց նոցին,
Մտեալ սաքրեստան[1] ախեց դըռ-
[վին։
Բազում մնաս անդ գործեցին.
Կամէին զդռվին կոտորէին.
Մինչ Մելքիսեթն ներքուստ ձայ-
[նեց,
Թէ, զնա հետ մեր տանիմ, ասեց։
Ապա զամբոխն համոզեցին
Եւ զխռովարարսն հաշտեցուցին.
Ամենեքեան ի տուն գնացին,
Խաղաղ Լօվցիք քաղաք մըտին։
Ծեր ուլեւոր՝ էր մոլորած,
Օրն երեք հետ լինէր հարբած.
Եպիսկոպոսք ունէր խուզած
Քան զճէլալի հանած վարած։

Բայց Մելքիսէթն և իւր ընկերնին՝
Որք ունէին ոխ ի սըրտին,
Հնարս իմացան ընդ համախոհէին,
Բանադրանք Հայոց գրեցին.
Թէ, «Եկին զվանքն կոխեցին,
Սըրոք բըրոք ի ներս մըտին.
Ի մեր վերայ սուր քաշեցին,
Մելքիսեթին՝ ձեռք վերուցին»։
Ապա Հայերըն վախեցան
Եւ ի յերկուս բաժանեցան.
Մի կողմն կաթողիկոսի եղան,
Մի կողմն չիւար ներկուն դարձան.
Ժողովեցին յոլով դեկան,
Արծաթ բազում առեալ տարան,
Արտասուելով ոտքըն անկան,
Ապա կապիցն արձակեցան։
Մելքիսէթ գնաց Եազլովցան,
Հետ իւր տարաւ զչար Նիկօլայն.
Ասաց. «Տեսնուք թէ ինչ անեմ՝
Որ Լովրոցմէն վըրէժս հանեմ»։
Շըրջաբերնի[2] ետ Նիկոլին,
Թէ ամենքըն քեզ հնազանդին.
Եւ որք զքեզ ոչ ընդունին՝
Իմ հրամանէս բանադրեցին։
Եկեալ ի քաղաքըն Լովին,
Խըրոխտ բանիւ սպառնայր նոցին,
Թէ, թուղթ ունիմ Մելքիսեթին՝
Որ ամէն Հայք զիս ընդունին։
Ժողովուրդն էր ի տարակոյս,
Եւ քահանայք մնացին անյոյս.
Ասեն. Վա՜յ երեկ մեր գլխոյս՝
Երբ սա հովիւ կայ մեր հօգւոյս։
Եպիսկոպոս մանուկ ի տիս
Ունէր քան երեք տարիս.
Հըպարտացաւ ի վրայ ազգիս.
Ասէր, թէ Էր չընդունիք զիս։
Ժողովուրդն ալ յիրմէն երկեաւ,
Կաթողիկոսէն վախեցաւ,

1. Աւանդատուն։ — 2. Շրջաբերական թուղթ, կոնդակ։

ԶՆիկօլն յակամայ ընկալաւ,
Թղթով գըրով հնազանդեցաւ։
Ցետոյ գացին դուռն արքային,
Գէրաթնի[1], էմրէր[2] հանեցին.
Նիկօլն է առաջնորդ Հային
Եւ հայրապետ Լովայ քաղքին։
Քանի մ'ամիսք ի վրայ անցին,
Թղթեր Հառմայ փափէն եկին
Ի ձեռըն Տէր Յովանէսին,
Ջուղայու աւագերիցին.
Թէ, կաթողիկոսըն Մելքիսեթ
Ընդ Ֆռանգաց ուխտ ու դաշն եդ.
Ճանհուկ[3] գրքովք ձեռնադրանք ետ,
Զմեզ այլազգեացըն գերի ետ։
Ապա Լեհցիքըն մեզ ասին,
Մելքիսէթն թապի[4] է փափին,
Դուք ալ եկէք ի կրօնս Ֆռանգին.
Ապա չէք հնազանդ, ձեր գլխին։
Տեսէք, թէ ինչ բերին մեր գլխին
Սուտ անիրաւ առաջնորդնին.
Սուրբ հարքըն զմեզ արեամբ գնե-
[ցին,
Այժմուն վարձկանքըն կորուսին։
Կաթողիկոսն յետոյ մեռաւ.
Հայոց գլուխն շատ բան անցաւ,
Եպիսկոպոսն ա՛լ զօրացաւ.
Ընդ ազգս Հայոց մաքառեցաւ.
Անօրէնըս խորհեցաւ.
Պատուիրանացն ի դուրս ելաւ,
Ֆռանկաց հաւատըն հաճեցաւ,
Լուսաւորչին չհաւանեցաւ։
Ելեալ գընաց ի Կամենից,
Եւ անդ արար ըզգործ մնասից.
Ելաւ նա յԱստուծոյ աչից,
Զօրէնս Հայոց ետ կոխ ոտից։
Մինչ դեռ նա էր գործըս չարին,
Քակէր զօրէնս և զաւանդնին,
Հասաւ Գրիգոր Կեսարացին,
Ցանդիմանեաց զնա յատենին.
« Վասն է՞ր քակես դու զկարգն
[Հային.
Ունկն չդնես դու կանոնքին.
Խախտիչ եղեր մեր սահմանին.
Հարցէ՛ զքեզ օծն անջըրդին » ։
Նիկօլն եղեւ նմա դիմադարձ՝
Մեծ վարդապետին դապասաց.
« Ես եմ աւէ էմրով նստած.
Իսկ դու ո՞վ ես, հանած վարած » ։
Ապա եղեւ փըքով լըցած՝
Զինչ զպիղծ շուն և կատաղած.
Զեկեղեցին արար կպղած.
Զնա արտաքսեաց յեկեղեցեաց.
Ապա մօտ ստարօստան գընաց
Եւ զվարդապետն չարախօսեաց.
Ասաց. « Չաշուտ՝ Թուրքէն եկած,
Խռովեցուցիչ, և մեծ հերձուած » ։
Պարոնն ղրկեց մարդ Գրիգորին,
Թէ, բերէք զնա իմ առաջին
Դատեմ ըզնա զինչ զխային.[5]
Ըստ Նիկօլայ դատախազին.
Յորժամ Հայերըն զայս լսեցին,
Ծերք և տըղայք դուրս վազեցին.
Գնացին ի բերդըն մօտ Պարոնին.
Ասեն. Ամենքս եմք տէր սըմին.
Սա վարդապետ է անուանի
Եւ պատրիարգ Ըստամպօլի.
Սուրբ է որդի առաքինի.
Չուտէ սա միս, չըմպէ գինի։
Պարոն լըռեց և իմացաւ.
Զարաց երեանին սեւացաւ.
Եւ Գրիգորն ի մեծ սուգ մտաւ,
Չեկաւ Լովն, այլ հետ դարձաւ։
Իսկ ժողովուրդըն դիմեցին
Ի դարպաս եպիսկոպոսին.

1. Հրովարտակ: — 2 Հրամանագիր: — 3. Զանկեցոց կամ Ունիթորաց, իբր թէ Լատինաց ծիսով: — 4. Թուրք. հնազանդ, հպատակ: — 5 Թրք. մատնիչ, նենգաւոր:

Կ՚ուզէին զնա քարկոծէին՝
Թէ չէր տըվեալ զբալնիկք ժամին.
Իսկ ի վաղեան առաւօտին
Վախաց Նիկօլն ի յիւր արտին.
Փախուստ արար դէմ ի Լովին.
Կորուստ հնարէր իւրոյ ազգին:
Իբրեւ ամիս ու կէս անցին՝
Գրիգորէն բանադրանք բերին.
Եօթըն թիզ էր թուղթն որ ավին.
Շատ նզովք ու անէծք կայր միջին:
Ժողովուրդն երբ զայն լսեցին՝
Պարոնտիրէն հրաժարեցին.
Եկեղեցեացն ի բաց կացին,
Բանադրանացըն վախեցին:
Գնացեալ յետոյ ասեն Նմին,
Թէ, «Եկին քեզ անէծք նզովին.
Գնա օրհնէնքն առ Գրիգորին,
Որ զքեզ ընդունիմք կրկին.
Ապա թէ ոչ՝ չհնազանդիմք,
Առաջնորդի կարգն զքեզ չունիմք»:
Այս էր պատճառն առաջին
Որ սկիզբն եղեւ ամէն չարին:
Իսկ նա ասէր նմա չար յոլով
Եւ գիւահար զնա կոչելով,
Թուրք թլփատած անուանելով,
Ազգի ազգի հայհոյելով.
«Ես առաջնորդ եմ էմրէրով
Եւ տեղայի, Լեհցի գոլով.
Մելքիսեդեկն եդ զիս ի Լով,
Եւ ես մեծ եմ քան զնա յոլով»:
Զբանադրանք նորա չբանէց.
Զթուղթն ի յանարգ տեղի ձգեց.
Եկեղեցին համարձակեց.
Առջեւ խորանին աղօթեց:
Քահանայք երբ զայն լսեցին՝
Ժողովրդովք դուրս վազեցին.
Բնաւ այլ ժամըն չըմըտին,
Եւ ոչ զաջն համբուրեցին.

Ժամըն մընաց դատարկ ունայն,
Եպիսկոպոսն երգէր միայն.
Եւ իւր օրհնած արեղայքն այն
Ամէն մէկ տեղ մի փախեան:
Նիկօլըն մնաց չիւարած.
Մէկ մարդ մի իւր մօտըն չի գնաց.
Յամէն դիհաց տարակուսած,
Մէկ մի իւր հետըն չիխօսաց:
Ապա մարդն յաղանին [1] յըղեաց
Ճամբու խարճըլըխ նացմէ խնդրեաց.
Երթամ մօտ վարդապետն, ասաց,
Մեղայ ասեմ, ընկնիմ յոտաց.
Աղաչք և ժողովուրդ խնդաց.
Տըվին դրամ ըստ իւր կամաց.
Իսկ նա մինչեւ Պուռսա գընաց.
Տէր Գրիգորին ոչ հնազանդեաց:
Եւ անդ յոլով չարիս գործեաց,
Եւ ի ճանապարհըն միղանչեաց.
Եւ զինչ ունէր զամէնըն վատնեաց,
Բազում պարտեօք ի Լօվչ եկաց:
Սուտ խաբեբայ թըղթեր գրեաց
Թէ Գրիգորէն բերի, ասաց.
Եւ ժողովուրդն նմա չաւտաց.
Գիտէին որ չէր ողորդասաց:
Ասեն. «Ատեն մի համբերեմք,
Սորա չարեացըն մենք լըռեմք.
Ապա թէ ընդ նա յիրար ընկնիմք՝
Շատ մեծ աղմուկ մեք անկանիմք»:
Սկսան գնալ յեկեղեցին
Փառաւորել զՀայր և զՈրդին,
Խաղաղարար զՀոգին հայցեն.
Չի խռովութեան յոյժ պէզրած [են [2]:

Այլ յետ բազում ժամանակին
Ի Գրիգորէն թղթեր բերին,
Կրկին անիծած Նիկօլին,
Որ չի գնաց նա Կեսարին.

1. Թուրք. Պարոնայք ժողովրդեան: — 2. Թրք. ձանձրացեալ:

Դարձեալ ամենքըն խառվեցան,
Նիկօլայէն յոյժ զարշեցան.
Ցեկեղեցին բնաւ չըմըտան,
Եւ ոչ բարեւ անգամ տըվան։
Հազար եօթանասուն թուին
Եւ իններորդ աւելորդին, (1630)
Դարձեալ Հայոց փորձանք եկին
Ա՛յլ առաւել քան զառաջին.
Զի թշնամիք Նիկօլին՝
Ըստամպօլու նուիրակ բերին
ԶՏէր Խաչատուրն Ղայսարցին,
Որ ունէր ոխ չար ի սրտին,
Զինչ թունաւոր օձ դառնացած.
Զմեզ կու ձըգեն մէջ փորձանաց.
Որպէս այժմ այս նվիրակս եկած՝
Ընդ եպիսկոպոսըն մեր մախաց.
Թէպէտ Նիկօլն ընդդէմ գնաց
Աւուր մի ճամբայ նմա ընդ առաջ.
Եւ էր նըմա յոյժ խոնարհած
Վասն իւր գործոց և չար մեղաց.
Իսկ չար մարդիկն որ զնա բերին՝
Վատ և անբախտ անիծածնին,
Նըվիրակին զաչվին բացին
Շատ չար խըրատ նըմա տըվին։
Թէ, «Է՞ր խօսիս ընդ Նիկօլին,
Առնուս ի քովդ ի ժամ հացին.
Ժամն ալ կանգնի հետ քեզ ի դա-
[սին,
Որ է նա մեզ մեծ թշնամին»։
Իսկ նըվիրակն եղկելին
Հաւանեցաւ խօսաց նոցին.
Ասաց չնստիլ ի սեղանին,
Զասել աղօթք առջեւ խորնին։
Իսկ նա իբրեւ որ զայն լուաւ՝
Ընդ նվիրակն յոյժ կռվեցաւ.
Գնացեալ ի բերդն գործեաց շատ
[դաւ,
Որպէս յայտնի յետոյ ցուցաւ.
Տեսան Հայերն որ բանն մեծցաւ,
Որ քան զօր չարն յաւելցաւ.

Բազում դուռըռուշ ասկի տվաւ,
Հազիւ նվիրակըն զերծաւ.
Ապա ամբոխըն կուտեցաւ,
Ի կողմ նվիրակին դարձաւ.
Իսկ պարոնտէրըն յոյժ երկեաւ,
Եւ մարդ յիւր կողմն չմօտեցաւ։
Նվիրակին թուղթ գիր տվին,
Թէ «Մեր գլուխն ի քո ճամբին.
Միայն դու ա՛ռ զկարգ Նիկօլին.
Կտրէ զփիլէշն՞ և զմազ գլխին»։
Տօլվաթաւորք խիստ շատ կային
Ոսկի հազարնով ունէին.
Հպարտ գոռոզ կու խօսէին,
Թէ զՆիկօլն առնեմք հաւսար գետ-
նին։
Երբ պարոնտէրըն զայն լուաւ,
Բնաւ այլ ժամըն չըմտաւ.
Վախեց ու ի խուցն արգելաւ.
Տանուչորս շաբաթ ի դուրս չե-
[լաւ։
Իսկ ժողովուրդն ոչ զըղջացեալ.
Թէպէտ զխոնարհութիւնըն տե-
[սեալ,
Բազում չարիս նըմա խորհեալ,
Ի դատաստան մահու հրաւիրեալ.
Նա զազգականսն առ նա յղեալ
Եւ շատ աղաչանս արարեալ,
Ըզնըվիրակըն պաղատեալ,
Թէ թող զյանցանս իմ չարաչար։
Իսկ նա բնաւ նմա չիլուաւ.
Այլ և միջնորդաց բարկացաւ.
Ասաց, թէ «Չէ արժան կարգի,
Ոչ աստիճան քահանայի.
Քանզի Նիկօլն է յոյժ կտրած,
Հայոց միջէն ի դուրս ելած.
Ես զնա դատիմ ըստ օրինաց,
Առնում ըզկարգն, կուլակ կըտ-
[րած»։
Ունէր նա շատ ազգ և ազին՝
Որ հաւասար է կէս քաղքին.

Ամէնք ժողվան ի միասին,
Անկան ի յոտս Նըվլիրակին.
Ասեն. « Գըթա՛ պարոնտիրին՝
Վասն Աստուծոյ և մեր խաթրին.
Չի է մանուկ տիս հասակին,
Նստեալ էմրով փատիշահին.
Չըլնի թէ տայ տեղ սատանին,
Հակառակի հետ մեր ազգին.
Ունիմք մեք շատ չար թշնամի,
Չերթայ 'նդ նոսա միաբանի » :
Երբ Նըվլիրակըն զայն լըսեց
Սակաւ մի իւր սիրտըն վախեց.
Յօժարեցաւ կոչել ըզնա,
Միրով սրտիւ հաշտիլ ընդ նա :
Իբրեւ լուաւ ազգըս Հայոց
Թէ Նըվլիրակն է հաշտելոց,
Որ տեղ որ կայր հանած վարած՝
Շուտ մէկմէկի արին իմաց.
Եկեալ ասեն Նըվլիրակին.
Թէ, « Աղա ի՞նչ բան քո արածնին.
Հաշտի՞լ կամիս ընդ մեր թշնամին՝
Ընդ բազմամեղ չարագործին.
Եւ թէ հաշտիս դու ընդ նըմին՝
Մենք կ'ուրանամք զէջմիածին.
Զքեզ կու ձգեմք վրայ երեսի,
Կ'առնեմք նըման Նիկօլայի :
Մեք ժողովեցաք բազում դեկան
Յոլով ղուռուշ և շատ դրամ,
Գիտոր բերեմք ըզնա յատեան,
Առնումք ըղկարգն, ձըգեմք կոշ-
[խան » :
Եւ այլ բազում չար խօսեցան,
Իբր ըղՀրեայս, թէ Ի խաչ հան.
Ապա թէ ո՞չ չես բարեկամ
Ազգիս Հայոց՝ որ ի Լեհ կան :
Իսկ Նըվլիրակն երկչոտ հոգին՝
Հաւանեցաւ խօսից նոցին.

Հրաման արար տանս ամենին,
Թէ մի՛ ոք ընդ նա խօսեսցին :
Ամենեքեան ազգ և ազին
Լըւան խօսից Նըվլիրակին.
Բանադրանացն ալ վախեցին,
Ընաւ այլ մօտըն չըգնացին :
Լըսեց՝ թէ շատ են դատախազք,
Ունին շատ գանձ և դատաստանք (1).
Վասն այն եղեւ տարակուսած,
Զի ազգն յիւրմէն եղան դարձած.
Այլ և տեսաւ որ չիմնաց մին,
Ի յօտարաց և յիւր տոհմին.
Հառաչեց ի լաց ողորմագին,
Եւ վայ կարգաց իւրոյ անձին.
Ասաց. Ամբօխն է թշնամի
Եւ Նըվլիրակն կողմն նոցին.
Ազգականաց եմ ատելի,
Քահանայք ատեն վըճիռ ինձի :
Ունէր փեսայ մի նա բարի,
Սահակն որդի Յակոբշայի,
Խիստ երկիւղած եւ անուանի
Շինող վանացըն Սուրբ Խաչի.
Նա խըղճացաւ պարոնտիրին,
Խօսեցաւ դրամ Նըվլիրակին,
Հինգ հարիւր ղուռուշ էջմիածնին.
Խաչ և սկիհ սուրբ սեղանին :
Տէր Խաչատուրըն չիմըռեց,
Աղաչանացըն չի լըսեց.
ԸզՍէֆէրն ալ ի դատ քաշեց,
Զայլ բարեխօսըն նըզովեց :
Յետոյ սթարոստան քաղաքին
Եւ մեծ տիկինըն Գըլըէցքին,
Ղրկեցին խնդիրք Նըվլիրակին,
Թէ, Թող զյանցանս իւր ճահիլին :
Նա չիլըսեց ամենեւին,
Զըկատարեց զխնդիր նոցին.
Ինքն արաւ ի յիւր մըտին.
Այլ և ասանք նըմա հէլ (2) տային :

1. Թուրք՝ Դատաստանաց, իբր avocat : — 2. Թր. Զար խըրտա, նենգութիւն :

Դարձեալ հրաման եհան կրկին
  Որ ամէնքը գան վըկայ լինեն,
  Քաղաքացիք և գիւղացին
  Ասեն զամէն ճշտա Նիկոլին.
Ժողովեցան ամենեքեան.
  Նզովից Ներվիրակին երկեան,
  Եւ զինչ վըճռա վըրան դըրին՝
  Գըրեալ՝ ի դըռան ժամուն զարկին ։
Զայն լսեալ քոյրքըն Նիկոլին՝
  Յաւագերէցըն վազեցին.
  Առ ոտսն անկեալ աղաչէին,
  Թէ, Թողէք մեր եղբայրս հօտին ։
Նա և այլք ու երիցանին
  Անփոյթ արին զխնդիր Նոցին.
  Ներվիրակին չիմացուցին.
  Զկորուստ Նորա զի հոգային.
Քանզի գոռոզք հըպարտք էին,
  Զամէնքըն՝ ցած գէշ ունէին.
  Ասեն. Կ՚ուզէ Թող Թուրք լինի.
  Մէկ մարդու պակսելն ի՞նչ լինի ։
Դարձեալ խորհուրդ մի չար արին
  Հայոց աղայք և քահանին.
  Զեկեղեցիս ամրացուցին,
  Մեծ մեծ կողպայք դըրանցն եդին ։
Իբրեւ վաղուըն լուսացաւ՝
  Տեսաւ զդըրունս կպղեալ ժամին.
  Առեալ զէմրէրն Թարիղանին ([1]),
  Գնաց Նա մօտ ի Եէղվիրդնին.
Լալով ասաց զիւր գանգատնին,
  Թէ, Հայք իմ գլուխս զինչ ան-
  լցուցին ։
  Ասեն[2]. «Թէ լինիս Թաղի փաշին,
  Եւ ընդ մեզ գնես ուխտ և դաշին,
Մեք օգնական լինեմք քեզի.
  Փրկեմք ըզքեզ ամէն վտանգի,
  Ըզքեզ առնեմք մեծ անուանի.
  Զգուեմք ըզՀայք ազգի ազգի».
Եպիսկոպոսն այն խիստ Թերի
  Հարեզայիւքն ամենայնի՝
  Մըտան Լեհու եկեղեցին,
  Երդուան լինել կրօնըս Ֆռանկին ։
Կային անդ Լեհու փանոց հարք,
  Մեծ գաւառաւորք բանիս վըկայք.
  Գրեցին ի Թուղթ զայն դաւանանք,
  Թէ, Հայոց մեծն եղեւ Ֆռանկ ։
Դարձեալ եկաւ Նիկոլն ի տուն,
  Խնդայր՝ Թէ ունիմ չար օգնական.
  Թողի զհաւատն ոսս և ունայն,
  Որ Հայոց գլուխն բերեմ չար բան ։
Ո՜վ եղկելի Նիկոլ Թերի,
  Ներմանեցար Պօղ երիցի, (?)
  Կամ Վարդակայ չար իշխանի,
  Եւ այլ բազմաց ուրացողի.
Վա՜յ և եղուկ քոյ գլխի,
  Եւ որք պատճառք եղեն քեզի.
  Թողեր զՀաւատն Լուսաւորչի,
  Եղար յօրինացըն Հայի.
Է՞ր չի գնայեր յԷջմիածին՝
  Որ մնայիր ի քո հաւատին.
  Այլ ուրեցեր զփառս աշխարհի
  Առաւել քան զփառս արարչի.
Շատ ոք քեզի խրատ տըվին՝
  Թէ հնազանդիր դու Գրիգորին.
  Այլ դու չար մարդկաց լսեցիր,
  Եւ զհոգիդ մարմնով կորուսիր.
Ինատ արիր հետ ամենին,
  Զիլըսեցիր բարեկամին.
  Նստար ի ձին սատանային,
  Սկսար առնել չար գէմ լաւին ։
Թէ կամենից չէիր գնացել,
  Վասն մարդկանց չէիր հեռացել,
  Զարեաց Թղթերն չէիր առել,
  Ի քո հաւատդ էիր մնացել ։
Ո՛հ, ո՛հ, Թէ ի՞նչ բան քեզ արին.
  Հազար ափսոս քո սուրբ հաւատին.
  Աստուած առնէ վրէժ Նոցին՝

1. Թըք. Թուրէէ. Պայմանագիր, օրէնք։ — 2. Ցիտաւսեանք կ՚ասեն զայս առ Նիկոլ։

Որ զքեզ ի քո հուստէն հանին։ ,
Նախանձ մտաւ ի չար երիցնին
Որպէս յառուրս Յիսուս Փրկչին,
Զքեզ չկամեցան նման նմին,
Կորեան կորուստ յաւիտենին։
Յետոյ յղեաց մարդ յ'աղանին,
Թէ, Թող բանան զեկեղեցին.
Թէ չէ՝ կտրեմ զմեծ կպղաքնին,
Բռնութեամբ մտնեմ յեկեղեցին։
Աղանին զայս ճուզապ տըվին,
Թէ, «Դու եկած ես մեր միջին.
Ժամն է Հայոց և մեր ձեռին.
Թող նա երթայ ժամըն Լեհին »։
Երբ զայն ասին պարոնտիրին,
Էառ զ'էմրէրն, եդ ի ծոցին,
Գնաց ի աէրայն սթառոստին
Եւ յարքեպիսկոպոսն Լեհին.
Ապա ի ռաթուշըն քաղքին,
Ուր մեծ դատաւորք նստէին.
Ասաց. «Ունիմ էմր արքային.
Ժամերն և Հայք՝ իմ ձեռս պիտին.
Բայց Հայքն չեն հնազանդ ինծի,
Զթողուն մտնել յեկեղեցի »։
Երետ զ'էմրէրն և կարդացին,
Գազին և ճակտնին դրին։
Մարդ ղրկեցին առ աղանին,
Թէ թող բանան ժամին դըռվին։
Նոքա ինատ արին, չբացին, [ցին։
Թէպէտ քանի հետ մարդ ղրկե-
Նոք' ալ Հայոց յոյժ բարկացան,
Արքեպիսկոպոսըն և փաշան.
Զինուորքն ալ դուռըն գնացին,
Զերկաթի դրունս կործանեցին.
Բացեալ՝ զօռով ի ներս մըտին.
Թէսլիմ արին պարոնտիրին։
Իսկ Հայոց ազգն որ անդ կային՝
Վա՜յ և եղուկ անձանց տային։
Իսկ Նըվիրակն յորժամ լըսեց,
Զմազն և զմօրուքն իւր ճողեց.
Քավըն նստած զՀայքըն վարեց,
Զպատճառ եղողնին անիծեց։
Հայերն լալով հառաչէին
Առ Նըվիրակն երթային,
Ողբալով յոյժ յոյժ կոծագին
Աղիողորմ զայս ասէին.
«Տէր Խաչատուր, այդ զի՞նչ արիր,
Դու մեր գլուխն ի՞նչ բան բերիր.
Միթէ առ մեզ վասն այ՞ն եկիր՝
Որ զմեր ժամերն խլել տայիր.
Է՞ր դու չար մարդկանց լսեցիր,
Նոցա խրատովն ի չուրջ եկիր.
Միշտ ընՆիկօլն դատ քաշէիր,
Եւ հազար գէշ նմա ասէիր.
Քեզ ի՞նչ պիտէր ի Լով գալու,
Կամ թէ զնա կարգէն ձգելու։
Գիտէիր դու զնա շահելու,
Եւ զայս չար բանս չերկարելու։
Քէմ լսեցիր դու ի Սամպօլ,
Թէ մրչափ չարիս արար Նիկօլ.
Բաժանեալ էին Հայք որ ի Լով.
Զի մեռցեր, հասար փութով.
Եկիր ու եղար կողմ չար մարդկան.
Կանչէիր, կ'առնեմ դատաստան.
Այժմիկ եղար խիստ փոշէման.
Տեսնուս՝ գլխուդ ի՞նչ բաներ գան։
Լաւ էր զմին չարն շահէիր,
Քան զմեզ զամէնքըս կորուսիր,
Յեկեղեցեացըն զրկեցիր, [ցիր։
Զմեզ այլազգեաց ձեռք մատնե-
Իջմիածինն այլ խատր (1) արիր,
Քու մուրատիդ այլ չհասիր.
Զմեզ հոգւով մարմնով կորուսիր.
Մեծ փոթորիկ թողիր գնացիր »։
Նիկօլն սկսաւ ոճիրս գործել,
Վտանգ Հայոց գլուխն անցընել,
Ըզքահանայսըն չարչարել,

1. Եթէ Թրք. Խըտր, քող, պատրուակ։

Զեօթըն խորհուրդըն արգիլել։
Զոմանս ի բանտ կու ձըգէր,
Զայլս բռնաւորաց ձեռս մատնէր.
Զոմանս ծեծէր և հարկանէր,
Դատաւորքըն տուգանէր.
Լեհցոց առջեւ զՀայք նախատէր.
Գեղծ հերձուածող զնոսա կոչէր,
Անհաւատ ու՛ուրացող ասէր,
Եւ եւտիքեան զՀայս անուանէր։
Եւ յիւր ազգերն ինչ աղջիկ կայր՝
Լեհաց կտրիճներուն կու տար.
Որ քան ըզօր կու զօրանայր,
Ցեռոյ ի դուռն արքային գնար։
Կամէր զնվիրակն ալ տանել
Ցերկաթի շղթայս զնա ածել։
Ապա Հայերն շատ դրամ տըվին,
Հազիւ ձեռացն զնա թափեցին։
Խորհուրդ մ՚ալ չար եդ ի մըտին,
Թէ ի՞նչ բան ունի նա յիւր թեմին.
Ղրկեց ի վրայն զիւր հայտուքնին,
Թէ, թո՛ղ կորչի իմ թշնամին։
Դարձեալ Հայերն դրամ ժողվեցին,
Մեծ պարոնաց պարգեւք տըվին.
Մինչ երեք օր հազիւ կարցին
Ըզնա պահել իւրեանց միջին.
Զի էր յաւուրըս ձմերայնի
Սաստկասառոյց և ցրտայնի.
Ցունվարի մէկն՝ օրըն կաղանդի՝
Հանին ըզնա խեղճ և լալի։
Գնաց Կամենից տրտմագին.
Զօր և անտից ալ վարեցին.
Մեք մնացաք Լով լալագին.
Զմեր քահանայըն փախուցին։
Թագաւորէն էմրէր հանեց,
Զիշխանութիւնս Հայոց խըլեց.
Զվանորայն յափշտակեց,
Զվախիֆ տըներն առաւ յիւրմէնց։
Երեք տարի յայս վիշտ կացաք.
Ի յօրինացըս հեռացաք,
Անհաղորդ ու՛անխոստովանանք.
Մեռեալք մեր մնացին անթաղք։
Այս ամեն չարքս որ մեզ դիպան,
Սեւագլխացըն մեր եղան.
Մեք եմք չարեացս այս պարտական,
Ի այս ամէն չարքըս մեզնէ ելան։
Վա՜յ և եղուկ հազար բերան
Ազգիս Հայոց որ ի Լով կան.
Ամեն քաղքնին են հանգըստեան,
Միայն աթոռ է գեգերման։
Մինչ մեք էաք ի յայս վըշտի
Ի տառապանս ազգի աղգի,
Խուլ պատրիարգն Ըստամպօլցի,
Մեք մեղքն եբեր քաղաքն Լովի.
Որ միաբան հետ Նիկօլի՝
Մտան երկուքն յեկեղեցի.
Հնազանդեցաւ Քաղկեդոնի,
Ի արար ընդ մեզ բազում տաւի։
Ի ծերութեան ժամանակի
Ընկեց զօրէնս Լուսաւորչի.
Գովէր զգործըն Նիկօլի՝
Դառնալ ի կրօնըս Ֆռանգի։
Նա զՀայերն հերձուածող կոչէր,
Ի ամէն ազգաց բաժնած ասէր.
Գարոնտիրին հետըն շրջէր,
Ցոր տեղ նստէր՝ զՀայս հայհոյէր։
Լեհ կարգաւորքն երբ զնա տեսան՝
Մեծ որովայնին հաճեցան.
Ասին. «Ի Հայք չկայ քեզ նման.
Ե՛կ դու ընդ մեզ լեր միաբան»։
Պատասխանեաց նա ամենին,
Թէ պարոնտէրն է իմ որդին.
Եւ եմ գլուխ և մեծ՝ Հային,
Սա իմ օրհնածս է և չրախ ([1]) իմ։
Իսկ Իլախնուն երեցանին՝
Որպէս ըզսուրբ զնա պաշտէին.
Ցեկեղեցիս շուրջ ածէին,

1. Աշակերտ։

Դարձընելոյ մեզ զեկեղեցին։
Դարձան Հայք ի տուն լալագին.
Նիկոլ խրոխտայր ի վերայ Նոցին.
Թերի կոչէր զհաւատ Հային
Եւ նախատէր զամենեսին։
Ապա Աստուածն ողորմած՝
Եղեւ Հայոց ազգին գըթած.
Զի Թագուհին գնաց առ Աստուած,
Խոստովանահայրն ալ յետեւանց։
Դարձեալ Հայերն զափին գնացին,
Ասեն. Զօռ մի անել Հային.
Թէպէտ չըտաս զեկեղեցին,
Կարգ կատարել տուր քահանային։
Արքայն տրար պատասխանի.
Է՞ր չըհաւնիք դուք մեր հաւտին.
Ես չեմ ի տալ զեկեղեցին՝
Մինչեւ չհնազանդիք ձեր մեծին։
Բազում պարոնք և իշխանքնին
Միջնորդ եղան Հայոց ազգին,
Թէ հաշտեցնեմք ընդ եպիսկոպոսին.
Հայք չկամեցան ամենեւին։
Եպիսկոպոսըն զօրացաւ.
Եւս առաւել նա զայրացաւ.
Զերիցանին՝ զորն որ գըտաւ՝
Ի շղթայս և ի բանդն արգելաւ.
Պահնորդ եդիր քաղքին դըռվին՝
Որ յայլ տեղ զմեռեալս չըտանին.
Ոչ զերախայըն մկրտեն,
Եւ ոչ զհիւանդըն հաղորդեն։
Այսպէս չարիք ո՞վ է տեսել՝
Որ այժմ ի մեր գլուխս եկել.
Ով որ պատճառ այսմ է եղել
Նա Յուդայի է նըմանել.
Ամեն քաղաք Լէհ՝ ուր Հայք կան՝
Են յիւրեանց ժամս և հանգըստ-
[եան.
Միայն Հայերն որ ի Լով կան՝
Են չարչարանս մեծ նեղութեան.
Ոչ տօն գիտեն, ոչ պահք շաբթին,
Եւ ոչ ըզկարգ ժամատեղին.

Ոչ լսեմք զձայն աւետարանին,
Եւ ոչ զպաշտօն պատարագին.
Ոչ գնան ի թաղումն մեռելին,
Եւ ոչ կնունք երախային. [նին։
Զտեսանունք զպսակ սուրբ ամուս-
Վայ և եղուկ եկ մեր գլխին.
Հիւանդք անկեալ ի մահճին
Յոյժ փափագին քահանային.
Բայց հնար չըկայ գալոյ Նոցին,
Զի Նիկոլէն երկնչէին։
Յորժամ մարդիկ մեռանէին՝
Անթաղ մնային մինչ կէս տարին.
Դնեն մաղազան և պըլէփնին,
Զայլըն տանին յայլ քաղըքնին.
Տըղայք ծընեալք յորովայնին՝
Մնան անկնունք՝ ոչ մկըրտին.
Պսակ, թաղում ոչ կատարին
Եւ ոչ խորհուրդ պատարագին։
Ոմանք հոտեալ. են և նեխին,
Կէսըն փըտեալ, մարդիկ զարշին.
Զայլոցըն ծածուկ գիշերային
Տարեալ թաղեն յանսարգ փոսին.
Հաղորդ չըտան քահանային,
Եւ ոչ թաղեն ըզմեռելնին.
Անտուկըն դնեն համալնին,
Զայլս փախցնեն գիւղաքաղքնին։
Դարձեալ հրաման եհան կրկին
Եպիսկոպոսն Ո.Նիաթին,
Թէ, կալմայք զտար երիցնին,
Որ չգան տան պսակ Հային։
Բազում ունէր նա օգնական
Կարգաւորք և աշխարհական,
Դատաւորք և պարոն և իշխան,
Արք և կանայք որ ի Լեհ կան։
Այսպէս եղաք մեք ատելի,
Լեհաց ազգին մեծ թշնամի,
Որպէս ի հնումն Իսրայելի
Ազին Հրէից՝ Սամարացի։
Յետոյ սկսաւ այլ չար գործել,
Եկեղեցւոյ զինչըն վատնել,

Խաչ և բուրվառք՝ սկիհք ծախել,
Շուրջառ և գթագոն վաճառել.
Այնչափ խաղնան ուանդատան
Ոչընչացոյց զամենեսեան.
Չըմնաց կաղի, ոչ խատիֆան,
Ոչ աթլասի և ոչ քիմխան։
Ապա զվանքերն ալ կողոպտեց,
Ոսկին և արծաթ զանօթս թալնեց.
Զայնքան անթիւ գանձըն ցըրվեց
Որ քանի բիւր գեկան աժեց։
Յետոյ զամեն գրեանս ժողովեաց
Որ ի գրատան էին պահած,
Աւետարանք ոսկով գըրած
Արծաթապատ կողքով կազմած.
Անգիւտ գըրեանքն որ Լով կային՝
Սըսայ խաղնիցն եկեալ էին,
Ազնիւ գրքեր, շարակնոցնին,
Ցըրուեաց կորոյս զամենեսին։
Յետոյ էառ ըզվախըֆնին,
Եկեղեցեաց քար դարպասնին,
Ըզդպրոցներն և զհօգէտներն,
Զայգիս, դրախտս և զպարտէզնին։
Էր յոյժ պճնող փառնող դրամին.
Կորոյս զամէնն և զիւր հոգին.
Նախնեացըն մեր յիշատակնին,
Ոչ մին չմնաց յեկեղեցին։
Սուղ ժամանակ մի վրայ անցին,
Մեռաւ Զիկմունտ արքայն Լեհին.
Զօրքն ամէն և մեծ իշխանքնին՝
Զմեծ որդին կու կամէին.
Նստաւ յաթոռըն հայրենի,
Արժանաժառանգ այն թախտի՝

. . . . . . .

. . . . . . .

Վլատիսլաւուս անուանի,
Որ էր հըզօր քաջ և արի.
Որ շուտափոյթ գնացեալ Մոսկով
Զյոլով քաղաքս աւերելով,
Զոմանս եսպան, զայլս գերելով
Եւ զապստամբս հնազանդելով.
Շատ քաջութիւն անդ առնելով
Աղեքսանդրու նըմանելով,
Էառ զքաղաքն, զաւառս յոլով,
Տիրեաց թախտին՝ որ է Մոսքով։
Սա գնաց ընդդէմ Օսմանին՝
Հզօր և յաղթող խոնդքարին
Յորժամ եկեալ էր նա խօթին՝
Տիրել բոլոր Լեհաց ազգին.
Ունէր բազում հեծել և անթիւ
Եօթըն հարիւր հազար ի թիւ.
Իսկ նա չունէր վաթսուն հազար.
Ջնջեաց եսպան զամէնն իսպառ.
Փաշայք ամէն և վէզիրնին,
Եէնկիչէրիք և սպահինին,
Պէկլէր պէկիք և սէրտարնին,
Եայապաշիք և սոլախնին.
Աճէմօղլանքն և չօրպաճիքն,
Խառնիճաղանջքն և չուրանին,
Թօփճիքն և ըզդապաննին,
Բնաջինջ եղեն ի միասին։
Ապա Օսմանըն շըվարեալ,
Ինքն և իւր զօրքն նկուն եղեալ,
Վլատիսլաւին պատգամ յըղեալ,
Թէ, եկ, լեր դու ընդ մեզ հաշ-
[տեալ։

. . . . . . .

. . . . . . . .

. . . . . . . .



# ՅԱՒԵԼՈՒԱԾ Ժ

## ԿՈՆԴԱԿՔ ԵՒ ԹՈՒՂԹՔ



### Գ.[1]

### ԿՈՍՏԱՆԴԻՆ Գ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՊԻԴ=1375. ՅՈՒՆՈՒԱՐ 15.

*(Հաստատէ զՏէր Գրիգոր յարքեպիսկոպոսութեան Լեհահայոց)։*

 Այս մեր գիր հոգևորական հրամանի աւրհնութիւն է և կրկին հաստատութիւն. ԿՈՍՏԱՆԴԵԱՑ շնորհաւքն Քրիստոսի՝ կաթողիկոսի ընթհանուր ամենայն Հայաստանեայց.

Գիտութիւն լիցի ձեզ ամենեցուն, Մեք ի Քրիստոս Աստուած հաւատարիմ ըստ հոգոյ որդիք՝ բնակիչք աստուածապահ մայրաքաղաքիդ Լաւին՝ և ամենայն սահմանեալ վիճակին իւրոյ. քահանայք և աստուածասէր ժողովուրդք մեծ և փոքր, այր և կին. Զոր երեկ առ մեզ՝ պատուելի արքեպիսկոպոս ձեր՝ և մեր ըստ հոգոյ պարծանաց որդին՝ Տէր Գրիգորս՝ ի հնազանդութիւն մերոյ սուրբ աթոռոյս. զոր և մեք յոյժ սիրով և մեծաւ պատուով ընկալաք զինք՝ որպէս զմեր քաջ սիրեցեալ որդի. Այլ և ունէր ընդ իւր՝ զմեր նախնոյն տուած շուրջբերականն, որ և ղփառաւոր մայրաքաղաքդ՝ ըզԼօվզ՝ և զԱւլաստեմիրտ՝ և զԼուցկայդ՝ մեր որդւոյդ Տէր Գրիգորիդ էր պարգևել. Մեք մեծաւ պատւով ընդունեցաք զմեր նախնոյն հաստատած շուրջաբերականն, և վասն մեր սիրեցեալ պարծանաց որդոյդ Տէր Գրիգորիդ արժանաւորութեանն՝ հաւանեցաք ի յինք. Եւ մերով հոգևորական, առաքելական և հայրապետական բարձր հրամանաւ՝ կարողութեամբն Աստուծոյ և աղաւթիւք Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, վերստին հաստատեցաք զսրբազան արհիեպիսկոպոսդ զՏէր Գրիգորդ ձեզ եպիսկոպոս. և պարգևեցաք դարձեալ իր՝ Տէր Գրիգորիդ՝ զամէնաւրհնեալ ականաւոր քաղաքդ՝ զԼօվտ՝ զԼուցկայն

1. Ա և Բ թիւ նամակներն կոնդակքն Մեսրովպայ և Թէոդորոսի կաթողիկոսաց. տես ի սկիզբն գրոցս, երես 5 և 9։

և զԱւլատեմիրդ՝ մեր որդւոյդ Տէր Գրիգորիդ՝ անփոփոխական թէմ և վիճակ, աթոռ և հանգստեան տեղի. Կալ աւրհնենք զձեզ զամենեսեան՝ ի մեծամե_ծաց մինչև ցփոքունս, զի աստուածապատիւ և զառաքելաշնորհ գերիմաստ եպիսկոպոսդ ձեր զՏէր Գրիգորդ՝ փառաւք և պատուով ընկալարուք, որպէս ի գրանէ սուրբ և երկնահանգէտ աթոռոյս աւրհնութեամբ առ ձեզ առաքած. և ամենայն խրատու զորայ որ ի չահ և յաւգուտ լիցի ոգոց ձեր, դուք մե_ծաւ հնազանդութեամբ ունկնդիր լերուք նմայ որպէս մեր անձին: Եւ զա_մենայն աւրհնաւոր հաւս և գիրաւունք ձեր՝ անթերի տուք ի ձեռս դորա՝ զվարթառատ սրտիւ. վասն զի որ ոք Տէր Գրիգորիդ հնազանդ է, նայ մեզ և Աստուծոյ աւրինացն և մեր Սուրբ Լուսաւորչի հնազանդ, և հնազանդեալքն աւրհնեալ եղիցին. իսկ հակառակողք և անհնազանդք նմայ և հրամանիս մեր, կրեսցեն պատիժ և պատուհաս յԱստուծոյ: Եւ վասն առաւել հաստա_տութեան և վստահութեան սրտի ձեր՝ ձեռնագրեցաք մերով սովորական կարմիր ձեռագրովս: ԺԵ ի յունվ. ի Թվ. ՊԻԳ:

✠ ԿՈՍՏԱՆԴԻՆ ՇՆՈՐՀԱՒՔՆ ԱՍՏՈՒԾՈՅ՝ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ:

## Դ.

## ԹԷՈԴՈՐՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՊԼԲ = 1384. ԱՊՐԻԼ 2.

*(Վերահաստատէ զՏէր Յովհաննէս յարքեպիսկոպոս Լեհահայոց տալով ընդ նմին նուիրակ զՆերսէս աւագ սարկաւագ)։*



*ՅՍ մեր գիր հոգեւորական բարձր հրամանի հաստատութիւն է և աւրհնութիւն, **ԹԷՈԴՈՐՈՍԻ** ծառա ծառայից Քրիստոսի Յիսուսի Աստուծոյ Տեառն մերոյ, Շնորհաւք և ողորմութեամբ նորին կաթողիկոսի ընթհանուր ամենայն Հայաստանեաց. Զոր աւրհնութեամբն Աստուծոյ հայրական հոգաբարձութեան գթով՝ գրեմք ի յամէնաւրհնեալ և յաստուածապահ յանուանի և յականաւոր թագաւորական և քրիստոնէական մայրաքաղաքն Լովն և յամենայն վիճակն իւր, ի Լուցկայն, ի Մանքրմանն և ի բնակիչքն իւր. Որոց այդոցիկ ամենեցուն բնակչացդ ի միասին, Մեր ի Քրիստոս Աստուած հաւատարիմ ըստ հոգւոյ յոյժ սիրեցեալ բարեպաշտ և քրիստոսասէր թագաւորիդ թագաւորաց՝ և ակնկալիդ ամենայն քրիստոնէից ինքնակալիդ արիականաց՝ և մեր պարծանաց աչեաց[1] չափ սիրեցեալ եղբաւրդ Ըռէ Տինգուռելիդ[2] և արքայիդ. քրիստոսասէր և փառաւոր ամէնամեծ պարոնիդ Լովիդ և Մեստեչնուդ. Գովելի և հաւատարիմ պարոն Շաւլթիսիդ Աբրահամիդ. Իմաստուն վաճառականացդ՝ ծովայնոցդ և քաղաքայնոցդ առհասարակ. Հարկաւոր և բարեգործ տանուտրացդ, պարոն Փանոսի որդեցդ՝ պարոն Ավրանիդ և պարոն Ալլանիդ և այլոցն ամենեցուն. Ջեռնահմուտ արուեստագէտացդ. Աշխատասէր հողագործացդ, և համաւրէն ի Քրիստոս Աստուած ճշմարիտ հաւատացելոցդ՝ արանց և կանանց, ծերոց և տղայոց, երիտասարդաց և կուսից, մեծամեծաց և փոքունց, և ամենայն չափո հասակի։ Ի ձեռն Հոգւոյն Սրբոյ, մեծաւ փափաքմամբ ի շնորհացն Քրիստոսի, կարողութեամբն Աստուծոյ Հաւր, աղաւթիւք Սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի,*

1. Այսպէս էր ի բնագրին։

2. Շատ հետաքրքրական է գիտնալ, թէ ո՞վ է այդ թագաւորդ և ինչ անունն. զի յետ մահուան Լուդովիկոսի Ունգարաց թագաւորին (1382) որ և Լեհաց տիրէր, քանի մի տարի շփոթութիւն էր ի Լեհաստան, և ջանային [illegible] թագը կորզել, մինչև որ տուին զայն Հեդուիգի՝ դստեր Լուդովիկոսի. այս միջոց ժամանակին գրուած է կոնդակս. զուցէ թագաւոր Ունգարաց նշանակէ Re (Roi) d'Hongrois.

Առաքեալք ողջոյն սիրո ի մէնջ և ուրախութիւն առաքելական ի յատուածըն-կալ սուրբ Նշանէս Վանկկոէ, և ի շնորհաբաշխ աջոյս մեր Սուրբ Լուսաւորչին Գրիգորի, և յերկնահանգէտ սուրբ աթոռոյս առաքել(ակ)ան․ որոց արտգահաս աքանչելագործ կարող զաւրութեամբն և ուրախութեամբն պահպանեալ փրկեսջիք յամենայն վտանգից փորձանաց հոգոյ և մարմնո, տամբ և որդովք և ամենայն գոյիւք․ ամէն։

Գիտութիւն լիցի ձեզ ամենեցուն մեր ի Քրիստոս Աստուած հաւատարիմ ըստ հոգո յոյժ սիրեցեալ ցանկալի և պարծանաց որդիք և եղբարք, բազմաչարչար երկեամբք ծնունդք ավետարանաւն ի Քրիստոս Աստուած Սրբոյն Գրիգորի․ զի յորժամ կամաւքն Աստուծոյ և մեր Սուրբ Լուսաւորչին աւժընդակութեամբն՝ հաստատեցաք ի վերայ գահոյից սուրբ աթոռոյ՝ կաթողիկոս ամենայն Հայաստանեաց, Նայ մեք ըստ հայրական հոգաբարձութեան[1] զթո մեր կամեցաք սիրովն Քրիստոսի զամենայն մեր ի Քրիստոս Աստուած հավատարիմ սիրելի որդիքդ հայրաբար հոգալ, եթէ ո՞րպէս կամ զիարդ էիք ուղղափառ ավրինաւք Սրբոյն Գրիգորի․ քննել իսկ զամենայն վիճակս եպիսկոպոսաց և զաթոռունսն, թէ որք են այրի՝ կամ ո՞ր եպիսկոպոս ոչ ունի վիճակ և աթոռ եպիսկոպոսութեան։ Յաղագս որո իմացաք որ իմացաք[2] զի մեր Նախնին ի Քրիստոս հանգուցեալն Տէր Կոստանդին՝ ձեռնադրեալ էր զպարոն Նասրատնին որդին զՏէր Յոհանէսն՝ եպիսկոպոս Լոռից, Լուցկային և Մանքրմնա, և պարգեւեալ էր ձեզ զամենեսեան Տէր Յոհանէսիդ՝ ժողովուրդ ռեփակոն, և շուրջաբերականաւ հաստատեալ։ Իսկ մեք իբրև ստուգիվ իմացաք որ այնպէս յոյժ սիրով էր ընկալ(եալ) մեր Նախնին զՏէր Յոհանէսն, Նայ եւ մեք լիւրի յոյժ պատվեցաք զհրամանս մեր Նախնոյն Տէր Կոստանդնա՝ իբրև զառաջին սուրբ հարցն․ և ծանեաք զի արժան էր Տէր Յոհանէս, որո զշնորհս զայս առնէաք նմա։ Ընդ որս և սոյն աղագավ, և մեք իսկ մերով իսկ հոգեւորական բարձր հրամանավս վերըստին հաստատեցաք զսիրելի և զհավատարիմ որդիս զՏէր Յոհանէս ձեզ եպիսկոպոս և հոգեւոր առաջնորդ։ Եւ որպէս էր յայնժամ, սոյնպէս և այժմն եղիցի։ Եւ մերով հայրապետական բարձր հրամանավս դայ Տէր Յոհանէսս է ձեզ զատիմ[3] եպիսկոպոս սեփհական, և ոչ այլ ոք։ Վասն որոյ դուք ամենեքեան զպարծանաց և ըղսիրեցեալ որդիս մեր զՏէր Յոհանէսս՝ այնպէս կալջիք, որպէս թէ եկեալ առ մեզ, և աւգնականութեամբն Աստուծոյ Նոր եկեալ առ ձեզ․ եղեալ ի գրկաց մաւրս կաթուղիկէ, սիգաճեմ ընթացիւք որպէս զփեսա ելեալ յառագաստէ, զալ հրճուել ի վերա լանջաց Նոր Սիոնի․ և առաքելաբար շրջեսցի ի միջի ձերում, վարդապետ(ե)լ, խրատել և ուսուցանել յուրքենս և ի պատուիրանս Տեառն, կալ անարատութեամբ ի տուէ և ի գիշերի․ Տալով զանձն

1. Բն. գրած է հօգւոյն, յետոյ Ն գիրն փոխեր է ի Ր. և բառին ծայրը գրեր է յութեամբ, մոռնալով Կ տառն ալ փոխելու ի Բ, որպէս զի կարդացուէր հօգաբարձութեան։

2. Այսպէս կրկնած է իմացաք։

3. Թրք. ղուրեժ, արժանաւոր, յաջողակ, կամ առաջնորդ։

ուրինակ բարեաց ձեզ ամենեցուն. ինքն արասցէ և ապա զձեզ ուսուսցէ սրբութեամբ, արդարութեամբ, խոնարհութեամբ, երկիւղիւ, սիրով առ Աստուած և առ ընկերս. եղբայրսիրութեամբ, աղքատսիրութեամբ, ողորմածութեամբ և աղաւթիւք, լինել այցելու որբոց և այրեաց՝ և ամենայն կարաւտելոց կարեկից սիրովն Քրիստոսի: Կոչեսցէ զարժանաւորսն և զվկաեալսն ի կարգ և յաստիճան կէս սարկաւագութեան, սարկաւագութեան և քահանայութեան: Կալցի և հրամանաւս մեր ի վերա ձեր իշխանութիւն առաքելական, կապել և արձակել յերկինս և յերկրի: Զմեղուցեալսն և զապըստամբեալսն յաւրինացն Աստուծոյ և ի կանոնաց սրբոց հարցն՝ կշտամբել և յանդիմանել, և ըզզղջացեալսն ընդունել ապաշխարութեամբ: Որով և դուք ամենեքեան առ ի դմանէ հովեալք և արածեալք ի վայրս դալարոյ առաքինութեան, և ի ջուր հանգստեան պատուիրանացն Աստուծոյ, զաստուածապատիւ և զառաքելաշնորհ արքեպիսկոպոսդ ձեր զՏէր Յոհանէսդ՝ մեծաւ պատւով և յոյժ սիրով ընկալարուք, որպէս զհրեշտակ Աստուծոյ՝ և որպէս զառաքելական այր. և ամենայն հոգեւորական խրատոյ դորա՝ որ ի շահ և յաւգուտ է ոգոց ձերոց՝ հնազանդութեամբ անկնդիր լերուք: Այլ և զամենայն կանոնեալ հաս և զիրաւունք զոր պարտիք տալ Աստուծոյ՝ բաժին աթոռո, զհաս տանց քահանայից և զամենայն ընտանեաց նոցա, զերախայրիս կալոց և զհնձանաց, զտէրունականս և զբրբանվէրս, զիրաւունս մատաղաց կենդանեաց և զյանկարծամահից, և զամենայն իրաւունս կենաց և մահու, լիով անթերի տուք ի ձեռս դորա զուարթ և առատ սրտիվ, որպէս զուարթառատ սիրէ Աստուած: Եւ մի՛ ոք իշխեսցէ հակառակիլ սըմա, կամ հրամանիս մեր՝ և արգելցէ յիրաւանց տալո կամ խորեսցէ կամ յայլազգիք անկանի և ուժ հասուցանէ Տէր Յոհանէսիդ: Իսկ որ ոք հակառակ լեցի մեր հրամանիս, կամ սիրեցեալ որդոյս մեր Տէր Յոհանէսիդ, նայ այնպիսի հակառակողն առցէ յԱստուծոյ զանէծսն Կայենի, զմասն Յուդայի, և զխաչահանուացն, նոյ եւ զպատիժսն Կորխա և զԴադանայ: Որով աւրհնեալքն ի Տէր Յոհանէս ի պատուելի արքեպիսկոպոսէդ ձերմէ, աւրհնեալ եղիցին յԱստուծոյ և ի մէնջ. կապեալքն և որոշեալքն՝ ի նմին մնասցեն մինչև զղջասցին, և առցեն զարձակումն ի Տէր Յոհանէսէդ, կամաւ և ոչ ի հարկէ կամ բռնութեամբ,

Վասն որո՛ ի մտանել դորա և գրաւորական աւրհնութեան հրամանիս մերո առ ձեզ և սուրբ մեռոնիս՝ ի ձեռն Ներսէս ավագ սարկավագի և եվիրակի մերոյ, իջցէ և շնորհք ողորմութեանն Աստուծոյ յերկնից ի վերա ձեր եաւթընպատիկ, և լցուսցէ զձեզ ամենայն հոգեւոր և մարմնաւոր բարութեամբ. Բարձցէ ի ձէնջ զամենայն ցասումն, զպատուհաս և զտարաժամ մահ. Տացէ ձեզ շինութիւն, անդորրութիւն և խաղաղութիւն. Բուսոյ և տնկոց և ամենայն անդէոց ձեր՝ աճողութիւն և քաղցր պտղաբերութիւն. պաճարեղէն անասնոց ձեր անսղալ ծնընդականութիւն. և ամենայն բարեաց ձեր՝ լիութիւն և առատութիւն: Արասցէ և զքանուար երկիրդ ձեր՝ գործնականս և արդիւնականս. գործել զարդարութիւն և զամենայն զովելի տեսակս առա-

քինութեան. և աւրհնեսցէ զձեզ Տէր Աստուած մեր. որպէս զի զաւուրեա կեանս ձեր վայելիցէք և երկնից թագաւորութեանն հասանիցէք ընդ ամենայն սուրբս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

Շնորհեցաք ի ձեռն դորայ ձեզ պարգեւս հոգեւորական զեղն աւծութեան զսրբալոյս և զաստուածագործակ սուրբ մեռոնն, ի լուսաւորութիւն նորածնելոցն աւազանաւն յորդեգրութիւն Հաւրն երկնաւորի՝ և ի ժառանգակցութիւն Քրիստոսի յուսոյն մերոյ. զնոյն ի նախանշան հաստատութեան, յաւծումն քահանայութեան՝ ի նորոգութիւն սուրբ եկեղեցւոյ Քրիստոսի Աստուծոյ մերոյ։

Գրեցաւ գիր աւրհնութեան բարձր հրամանիս մեր ի յլսա ի մեզ մարդեղութեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ ՌԳՃՋԳ ամի, և ի Սրբոյն Գրիգորէ ՌՋԳ ամի, ի մեր նստիլս ի սուրբ աթոռս՝ որ է ամ Բ և ամիս Գ, և աւր Ա, ի մեծ թվիս հայոց ՊԼԲ ամի, յապրիլ ամսոյ ԲԺՆ[1]։ Եւ վասն առաւել հաստատութեան և ավտալո ձեր՝ ձեռնագրեցաք մեր ասվորական կարմիր ձեռնագրովս. կնքեցավ վերոյ ծաղկաւետ մեծ մատանաւս. կամաւք բարերար մարդասէրին Աստուծոյ, որ է աւրհնեալ ի յաւիտեանս. ամէն։

## ✠ ԹԷՈԴՈՐՈՍ ԾԱՌԱՅ ԾԱՌԱՅԻՑՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԵՐՈՅ ԵՒ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲ ՆՈՐԻՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։

1. Աւրեմն 1382 տարւոյ առաջին օրն (կաղանդի) օծուեր է կաթողիկոս։

# Ե.

## ՅԱԿՈՎԲ Գ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՊԾԸ = 1410. ՅՈՒՆԻՍ 26.

ՅՍ մեր գիր հոգեւորական բարձր հրամանի՝ հաստատութիւն է և աւրհնութիւն, ՅԱԿՈԲԱՅ ծառայի ծառայիցն Քրիստոսի Յիսուսի Աստուծոյ Տեառն մերոյ. Շնորհաւք և ողորմութեամբ նորին Եպիսկոպոսապետի Մեծաց Հայոց և պատրիարքի ամենայն արեւելից[1] և Վաղարշապատու.

Զոր աւրհնութեամբ և հայրական հոգեբարձութեան գթով գրեմք ի յամենաւրհնեալ և յաստուածապաշտ յանուանի և յականաւոր թագաւորանիստ քրիստոսական մայրաքաղաքն ի Լոռէ եւ յամենայն վիճակն իւր բոլորովին, Սերաթն, ի Ձեչոռէ, ի Կամենիցն, ի Լուցկայն, ի յԱւլատէմուրն, ի Մանքրման ի Վըլախաց երկիրն և ի Պըտինն, ի յԸնկիաւլայն եւ ի յայլ ամենայն թէմն իւր առհասարակ։ Սէր ի Քրիստոս Աստուած հաւատարիմ ըստ հոգւոյ յոյժ սիրեցեալ ցանկալի և պարծանաց որդւոցդ, Պատվական և սրբասէր քահանայիցդ, աստուածասէր և բարեպաշտ պարոնացդ և ավագաւորացդ, փառաւոր խաւճանոյդ և պուռճէսնոյդ[2], իմաստուն վաճառականացդ, հարկաւոր և բարեգործ տանուտրացդ, ձեռնահմուտ արուեստագէտացդ, աշխատասէր հողագործացդ, եւ ամենայն հայասեռ և քրիստոսաստուածադաւան մերոց ժողովրդականացդ, արանց և կանաց, ծերոց և տղայոց, երիտասարդաց և կուսից, մեծամեծաց և փոքունց և ամենայն չափոյ հասակի։ Որոց այդոցիկ ամենեցուն ի միասին առ հասարակ, մեծավ փափաքմամբ՝ կարողութեամբն Աստուծոյ Հաւր, զաւրութեամբ Որդոյն միածնի Յիսուսի Քրիստոսի, ի ձեռն Հոգւոյն Սրբոյ, Առաքեմք ձեզ ողջոյն սիրոյ ի մէնջ և աւրհնութիւն առաքելական, ի յաստուածընկալ սուրբ Նշանէս Վանկկոյ և ի շնորհաբաշխ աջոյս մեր Սուրբ Լուսաւորչին Գրիգորի, և յերկնահանկէտ սուրբ աթոռոյս առաքելական, և մեր սուրբ առաքելոցն Թադէոսի և Բարթողիմէոսի, և ի յայլ սուրբ նշխարացս առաքելոց և մարտիրոսաց՝ որք աստ են։ Յորոց սոցա արագահաս աքանչելագործ կարող զաւրութեամբն և աւրհնութեամբն պահպանեալ փրկեսջիք յամենայն վտանգից փորձանաց հոգւոյ և մարմնոյ տեամբ[3] և որդովք և ամենայն գոյիւք. ամէն։ Գիտութիւն լիցի ձեզ ամենեցուն սիրելի որդիք մեր ի

1. Տես ծանօթութիւնն յերես 9։
2. Տես ծանօթութիւնն ի նոյն 9 երես։
3. Տամբ, տնով։

Քրիստոս, բազմաչարչար երկամբք ծնունդք աւետարանաւն ի Քրիստոս Ա-
տուած Սրբոյն Գրիգորի. զի ըստ աղէտալից հայրական ջերմն սիրո մեր
զոր ունիմք ի վերա ձեր՝ հանապազ դուք էք հոգ մեր ի Տէր, եթէ որպէս՝
կամ զիարդ էք ի ժամանակիս չար բերմանց ներքուստ և յարտաքուստ ներ-
հակաց։ Զոր և աղաւթիւք հայցեմք յԱստուծոյ և ի մեր Սուրբ Լուսաւոր-
չէն՝ պահել զձեզ խաղաղութեամբ՝ հոգւոյ և մարմնոյ, առողջութեամբ և ա-
մենայն բարութեամբ։

Եւ այլ ծանիք, մեր ըստ հոգոյ որդիք, զոր երեկ առ մեզ մեր սիրեցեալ
և պարծանաց որդիս պատուելի եպիսկոպոս ձեր՝ Տէր Յոհանէս՝ Լափիդ. ի
յողջոյն և ի համբոյր սուրբ աթոռոյս, եւ ի չնորհաւորել զմեր նըստիլս ի
սուրբ աթոռս. և մէք զինք սիրով ընկալաք և հարկեւորեցաք. և եկեաց բա-
զում աւուրք մի առ մեզ. Եւ ուղայորեցաք զՏէր Յոհանէս արքեպիսկոպոս
ձեր և զիւր եղբայրն ըզԳրիգոր աբեղայն, որ գնացին Աստուծոյ առաջնոր-
դութեամբն զերկայնաձիգ ճանապարհն բազում աշխատանաւք ի յաստուա-
ծաբնակ մայրաքաղաքն ի յԵրուսաղէմ, ի տեսութիւն Սուրբ Յարութեանն
Քրիստոսի Աստուծոյ մերոյ. և կատարեցին զիւրենց ուխտն. Եւ դարձեալ
Տէր Յոհանէս արքեպիսկոպոս յԵրուսաղէմայ և իւր եղբայրն Գրիգոր աբե-
ղայն, և եկին առ մեզ։ Նայ եւս առաւել զինք և զիւր եղբայրն սիրով ըն-
կալաք և հարկւորեցաք. զի վայել էր Տէր Յոհանէսի պատուելի արքեպիս-
կոպոսիդ ձեր՝ և իւր եղբաւրն՝ զինչ որ սէր առնէաք դոցա։ Զի մեր նախ-
նեացն սիրած է և հարկւորած, և բարեկամ սուրբ աթոռոյս, և հրամանա-
կատար որդի է։ Աստուծով և մէք հաճոյացաք ի բարիոք վարս և իմաստու-
թիւնս սորա, որ է սուրբ և աղաւթարար, կարգապահ, և առաքինի եպիս-
կոպոս է և առա(տա)ձեռն։ Նայ որպէս մեր նախնիք՝ տէր Թէոդորոս և
տէր Կարապետ կաթողիկոսն պարգևել էին ըզձեզ իւր թէմ և վիճակ, ըստ
նըմին աւրինակի նոյնպէս և մեք պարգևեցաք մեր բարձր հրամանաւս՝ և աւրհ-
նութեամբ գրովս, զԼոռն իւր բոլ(որ)ովին երկրով Տէր Յոհանէսի, դառ-
մի սեփական թեմ և վիճակ աթոռ և հանգըստեան տեղի, ի վերայ ան սահ-
մանին՝ զոր առաջին սուրբ և երջանիկ կաթողիկոսքն են հաստատել, որ ոչ ոք
կարէ խորել ի Լոռին երկրին թեմեն։ Եւ առաքեցաք գալ առ ձեզ՝ հրամա(յա)-
կան և աւրհնութեան գրովս մեր, խրատել և ուսուցանել զձեզ, գնալով յաւ-
րէնս և ի պատուիրանս Տեառն Աստուծոյ՝ անարատութեամբ և սրբութեամբ,
ըստ աւրինի սուրբ և առաքելական եկեղեցոյս մեր. ի տուէ և ի գիշերի,
և ոչ յաջ խոտորիլ և ոչ յահ(ե)ակ. Տալով զանձն աւրինակ բարեաց ձեզ ամե-
նեցուն. ինքն արասցէ և ըզձեզ ուսուսցէ, սրբութեամբ, արդարութեամբ,
երկեղիւ՝ սիրովն առ Աստուած և առ ընկերս. եղբայրսիրութեամբ, աղքատ-
սիրութեամբ, ողորմածութեամբ և աղաւթիւք, լինել այցելու որբոց և այ-
րեաց, և ամենայն կարաւտելոց՝ կարեկից սիրովն Քրիստոսի։ Նոյնպէս զարժա-
նաւորսն և ըզվկայեալսն ի կարգ և յաստիճան կիսասարկաւագութեան,
սարկաւագութեան և քահանայութեան, եօթն աստիճանաւք։ Կալցի հրամա-

նովաւ մեր առաքելաբար ի վերա ձեր իշխանութիւն կապելոյ և արձակելոյ՝ յերկինս և յերկրի. Զմեղուցեալսն զապըստամբեալսն յաւրինացն Աստուծոյ, և ի կանոնաց սրբոց հարցն՝ կըշտամբել և յանդիմանել, խրատել, սաստել, պատժել, մինչև ցուցանիցեն ըղտուղս ապաշխարութեան. Զզղջացեալսն և զհնազան(դ)եալսն՝ սիրով Քրիստոսի ընդունել ապաշխարութեան։ Որով և դուք ամենեքեան, սիրելի որդիք իմ ի Քրիստոս, զաստուածապատիւ և զըրբասէր առաքելաշնորհ արքեպիսկոպոսդ ձեր ըզՏէր Յոհաննէսդ, զիմ սիրելի և զհաւատարիմ որդիդ զպատուելի արքեպիսկոպոսդ ձեր՝ զսրբասէր այրդ, մեծաւ պատւով և յոյժ սիրով ընկալարուք, իբր զորդի իմ սիրելի և որպէս զհրեշտակ Աստուծոյ և զառաքելական այր, զի յայսմ հետէ իմ յաւժարական հրամանաւս ինքդ Տէր Յոհաննէսդ է ձեզ ղատիմի սեփական եպիսկոպոս և ոչ այլ ոք, որ է այր ընդիր։

Այլ և զամենայն կանոնեալ հաս և զիրաւունք՝ զոր պարտիք տալ Աստուծոյ՝ բաժին աթոռոյ, զհաս տանց քահանայից և զամենայն ընտան(ե)աց նոցա, զերախայրիս կալոց և հնձանաց, զտերունականս և զսրբանուէրս, զիրաւունս մատաղաց կենդանաց և զանկարծամահից, և զամենայն իրաւունս կենաց և մահու, լիով անթերի տուք ի ձեռս դորա զըւարթ և առատ սրտիւ, որպէս զի զտուրս զուարթառատս սիրէ Աստուած։ Եւ մի՛ ոք կամ մեծ և կամ փոքր՝ յանդգնաբար իշխեսցէ հակառակիլ սըմա կամ բարձր հրամանիս մեր, և արգելցէ յիրաւունց տալոյ կամ խորեսցէ կամ յայլազգի անկանի և ուժ հասուցանէ Տէր Յոհանէսիս՝ պատուելի արքեպիսկոպոսիդ. Զի որ ոք հակառակ լիցի սմա՝ նայ այնպիսին առցէ յԱստուծոյ զանէծան Կայենի, զմասն Յուդայի և զխաչահանուացն, և մնասցէ ի ներքոյ կապանաւք բարկութեանն Աստուծոյ և Սրբոյն Գրիգորի և մեր։ Որով աւրհնեալքն ի յարժանայպատուեալ արքեպիսկոպոսդ ի Տէր Յոհաննէսէդ աւրհնեալ եղիցին յԱստուծոյ և ի մէնջ. կապեալքն և աւրոշեալքն՝ ի նմին մնասցեն մինչև զղջասցին հնազանդութեամբ, և առցեն զարձակումն ի Տէր Յոհաննէսէ արքեպիսկոպոսէդ։

Վասն որոյ ի մտանել դորա և գրաւորական հրամանիս մերոյ առ ձեզ և սուրբ մեռոնիս, իջցէ և շնորհք ողորմութեանն Աստուծոյ յերկնից ի վերա ձեր եւթնպատիկ, և լցուսցէ զձեզ ամենայն հոգևոր և մարմնաւոր բարութեամբ։ Բարձցէ ի ձէնջ զամենայն ցասումն և զպատուհաս և զտարաժամ մահ ի ձէնջ և յաշխարհէդ ձեր։ Տացէ ձեզ շինութիւն անդորրութիւն և խաղաղութիւն. Բուսոյ և տնկոց և ամենայն անդէոց ձեր այճողութիւն և քաջաբերութիւն. Պաճարէղէն անասնոց ձեր անսղալ ծննդականութիւն. և ամենայն բարեաց ձեր լիութիւն և առատութիւն. Ննջեցելոց հանգիստ և ողորմութիւն։ Եւ աւրհնեսցէ զձեզ զամենեսեան առ հասարակ հոգով և մարմնով Տէր Աստուած Յիսուս Քրիստոս։ Որպէս զի զաւաւրեա կեանս ձեր բարիոք վայելելով, և երկնից արքայութեանն հանդերձ ձերաւք ննջեցելաւքն հասանիցէք ընդ ամենայն սուրբս, ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։

Շնորհեցաք և ի ձեռն դորա՝ ձեզ պարգևս հոգևորականս զեղն աւծութեան,

զօրհնալոյս և զաստուածագործակ սուրբ մեռոնն, զոր Հոգին Սուրբ արարացէ ի լուսաւորութիւն նորածնելոցն աւազանաւն յորդեգրութիւն Հաւրն երկ-նաւորի և ի ժառանգակցութիւն Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ։ Զնոյնն ի ճակատն նշան հաստատութեան, եւ ի յաւծումն քահանայութեան, և ի նորոգումն սուրբ եկեղեցոյ, շնորհաւք Սուրբ Հոգւոյն և Քրիստոսի Յիսուսի Աստուծոյ Տեառն մերոյ աւրհնելոյն ի յաւիտեանս յաւիտեանս. ամէն։

Գրեցաւ գիր աւրհնութեան բարձր հրամանիւ մերոյ ի յլոռ ի մեզ մար-գեղութեանն, ի մարմնով ծննդեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, ՌԴՃԹ ա-մին։ Եւ ի սորայն Գրիգորէ՝ ՌՃԹ ամին, եւ ըստ գումարին ի մեծ Թվ. Հայոց ՊԾԸ ամին, եւ ի մեր նստելս ի սուրբ աթոռս որ է ամ Բ, և ամիս Է, և աւր ԻՋ. ի Յունիս ամսոյ ԻՋ.[1] ի հայրապետանիստ ի Սըսոյ կլայն։ Եւ վասն առաւել հաստատութեան ավալոյ ձեր ձեռնագրեցաք մեր սովո-րական կարմիր Ձեռնագրովս։ Կնքեցաւ վերոյ ծաղկաւէտ ոսկեական ամէնե-րեկլի մեծ մատանեաւս։ Կամաւք բարերար մարդասիրին Աստուծոյ աւրհ-նելոյն յաւիտեանս. ամէն։ — Գրեցաւ ձեռամբ Յոհաննէսի գրագրի։

## ✠ ՅԱԿՈԲ ՇՆՈՐՀԱՒՔՆ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ԿԱԹՈ-ՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։

1. Ըստ այսմ՝ 1408 Թուականի Փրկչին՝ յառաջին օր նոյեմբերի (ասն Ամենայն Սրբոց. ըստ Յայսմաւուրաց) օծուեր է կաթողիկոս։

## Զ.

## ԱՐԻՍՏԱԿԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — 1457-60.

*(Ձեռնադրեալ եպիսկոպոս զխաչատուր վարդապետ՝ առաքէ առ Լեհահայս)։*



*ՇՆՈՐՀԻՒՔ և ողորմութեամբ կամաւք և ընտրութեամբ ամենակալին Աստուծոյ Հաւրն երկնաւորի արարչին ամենայն արարածոց, և կարողութեամբ և զաւրութեամբ միածնի Որդւոյ Նորա Յիսուսի Քրիստոսի, և հաճութեամբ Հոգւոյն Սրբոյ Աստուծոյ ճշմարտի. Այս մեր գիր հոգևորական հրամանի, և ուրհնութեամբ ամենասուրբ Երրորդութեան և միոյ աստուածութեանն, նամակ ողջունի սիրոյ և խաղաղութեան, քրիստոսաւանդ և առաքելական. Առաքեալ յընթանուր ամենայն ծագս երկրի, ի փառաւոր և յերջանիկ գիտապետէ, նոր և ընտրեալ հայրապետէ, և զերիմաստ պատրիարգէ. Տէր Արիստակէսէ կաթողիկոսէ ամենայն Հայոց, եւ Վաղարշապատու քաղաքի Հայոց Մեծաց տեղապահ և յաջորդ, աթոռակալ և փոխանորդ Սրբոց առաքելոցն Թադէոսի և Բարթողիմէոսի և Սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչին. Զոր գրեմք ի դրանէ աստուածադիր սուրբ աթոռոյս երկնանման խորանէ և լուսակիր տաճարէ Կաթուղիկէ սուրբ Էջմիածնիս. ի յաստուածամուխ Գեղարդէ ներկեալ արեամբն Յիսուսի, եւ շնորհաբաշխ աջէ մեր Սուրբ Լուսաւորչին. Եւ ի կենդանաթաղ գերեզմանէ Սրբոյն Գրիգորի հրաշագործ խոր վիրապէ. Եւ ի սուրբ կուսանաց գերեզմանացս՝ Հռիփսիմեանց և Գայիանեանցս, եւ յայլ բազմահաւաք սրբութեանցս՝ աստուածազարդ և մեծապայծառ սուրբ աթոռոյս Էջմիածնի։ Զոր գրեմք և առաքեմք ի յաստուածապահ մայրաքաղաքդ Լով կոչեցեալ, ի Սեչովն, ի կամենեցն, ի Սերաթն, ի Փօրիշան, Մանքերմանն, ի Փեշտան. Որոց այդոցիկ բնակչացդ ի միասին, նախ՝ պատուական քահանայիցդ ըստ կարգի, բարեպաշտօն տանուտերացդ և խօճայնոյդ, աստուածասէր ազատորդեացդ, աշխատասէր հողագործացդ, հաւատարիմ ձեռնաւորաց, փառաւոր և մեծ խօճայնոյդ, իմաստուն վաճառականացդ, ձեռնահմուտ արուեստաւորացդ, համեստ և երկեղած տանտիկնացդ, և համօրէն ամենայն ժողովրդականացդ, արանց և կանանց, ծերոց և տղայոց, երիտասարդաց և կուսից և ամենայն չափու հասակի. որոց անուանք ձեր գրեալ են և գրին ի գիրն կենաց՝ յանմոռաց յիշատակութիւն Աստուծոյ. ամէն։*

*Գիտութիւն լիցի ձեզ ամենեցուն եղբարք որդիք մեր ի Քրիստոս. Ողորմութեամբն Աստուծոյ և շնորհիւ մեր սուրբ Լուսաւորչին նստաք յաթոռ*

Սուրբ Էջմիածնիս, ի յուղղել և ի կարգաւորել զկարգ և զկրաւնս Հայաստանեայց սուրբ եկեղեցոյ․ Եւ այս եղև ի շնորհաց Սուրբ Հոգւոյն և ի խնդրոյ հայկազեան տոհմի, և կամակցութեամբ արևելեան վարդապետաց․ Շմաւոն վարդապետէ, Սարգիս վարդապետէ, Դաւիթ վարդապետէ, Դանիէլ վարդապետէ, (և) Ազատորդեաց և համայրէն ամենայն ազգիս։ Զոր և մեք ի հարկէ ապաւինելով յամենակալ նախախնամութիւնն Արարչին ամենեցուն՝ ի Տէր մեր Յիսուս Քրիստոս, եւ յանձն առաք զայս անտ(ան)ելի հոգաբարձութիւնս սուրբ եկեղեցւոյս Աստուծոյ․ և բազում շնորհաբաշխութիւնս առարաք ի յայսմ ժամանակիս։ Եւ ընդ սոցին եկն և Խաչատուր վարդապետն ի հնազանդութիւն սուրբ աթոռոյս Էջմիածնիս, և մեք մեծ սիրով և պատուով ընկալաք զդա ըստ տէրունական հրամանին․ և եբեր առ մեզ զթուղթն ինքնակալ Թագաւորին Գազեմիրին, եւ Լովի տանուտերացդ և զկամենէցիդ։ Եւ մեք միաբանութեամբ վարդապետաց և եպիսկոպոսաց՝ ձեռնադրեցաք և աւրհնեցաք զդա եպիսկոպոս մայրաքաղաքիդ Իլովի աթոռոյն և իւր ամենայն բոլոր վիճակին, որ են այսոքիկ․ Աստուածաշէն մայրաքաղաքդ Իլովն, ի Սեչովն․ աստուածազգոյդ և գեղեցկայարմար քաղաքդ, Կամենէցն և յայլ շրջակայսն։ Որ և առաւնորդութեամբ միածնի Որդւոյն Աստուծոյ առաքեցաք առ ձեզ զհաւատարիմ և զսիրելի հոգևոր որդին մեր զՏէր Խաչատուր եպիսկոպոսս ձեր առ ձեզ՝ աւրհնութեան նամակաւ և բարձր հրամանաւ և սըրբալոյս սուրբ մեռոնաւ, քարոզել և խրատել և ուսուցանել զձեզ՝ գնալ յաւրէնս և ի պատուիրանս Տեառն, (անարատութեամբ) և սրբութեամբ։ Կալցին(ա) հրամանաւ մերով ի վերայ ձեր առաքելաբար իշխանութիւն կապելոյ և արձակելոյ զմեղուցեալսն և զապստամբեալսն ի յաւրինացն Աստուծոյ և ի կանոնաց սուրբ եկեղեցոյ, և զանհնազանդսն իրաւամբ խրատել սաստել յանդիմանել և մխիթարել։ Որով և դուք ամենեքեան սիրելի որդիք մեր ի Քրիստոս, զառաքելաշնորհ եպիսկոպոսդ զԽաչատուր վարդապետ՝ մեծաւ սիրով և պատուով յոյժ ընկալարուք զդայ, որպէս զհրեշտակ Աստուծոյ և զառաքեալ Քրիստոսի ի դրանէ սուրբ աթոռոյս առ ձեզ առաքեալ։ Այլ և զամենայն կանոնեալ հասս և զիրաւունս, զոր աւրինաւք և կանոնաւք պարտիք տալ Աստուծոյ բաժին, լի և անթերի առանց խորելոյ տուք ի ձեռս նորընծա տէր Խաչատուր եպիսկոպոսիդ ձերոյ։ Եւ մի՛ ոք իշխեսցէ հակառակիլ դըմա կամ ընդդիմանալ հրամանաց դորա․ իսկ որք յանդըգնին և հակառակին, ի ներքոյ դատապարտութեան և պատժոյ լիցին։ Իսկ հնազանդեալք դորա և հրամանիս մեր՝ աւրհնեալ լիցին յԱստուծոյ և յամենայն Սրբոց և ի մէնջ։ Ամէն։ Իսկ կապեալք և բանադրեալք ի դմանէ՝ ի նմին մնասցեն, մինչև հնազանդեսցին, և ապա առցեն զարձակումն և զթողութիւն ի Տէր Խաչատրէ եպիսկոպոսէ վարդապետէ, կամաւ և ոչ ի հարկէ կամ բռնութեամբ։ Վասն որոյ ի մտանելն դորա ի յաւրհնեալ վիճակդ իւր, իջցէ և շնորհք ողորմութեանն Աստուծոյ յերկնից ի վերայ ձեր եւթնպատիկ, և լցուսցէ զձեզ ամենայն բարութեամբ։ Բարձցէ ի ձէնջ և յաշխարհէդ ձեր՝ զամենայն ցա-

սումն և զպատահար. զսով, զսուր, զգերութիւն, զմահտարաժամ, զթրթուր, զդալուկ, զժանգ, զմարախ, զկարկուտ, զկայծակն, զերաշտութիւն և զամենայն պատիժ պատուհասի՝ որ գան ի վերայ աշխարհի վասն մեղաց: Այլ և աւրհնեսցէ զձեզ Քրիստոս Աստուած մեր. տացէ ձեզ շինութիւն, անդորրութիւն և խաղաղութիւն. բուսոյ և տնկոց ձերոց և ամենայն անդէոց աճողութիւն և քաջ պտղաբերութիւն տացէ, և ամենայն բարեաց լիութիւն և առատութիւն: Արասցէ և զբանաւոր երկիրդ ձեր գործնականս և արդիւնականս: Ամէն:

Շնորհեցաք և ի ձեռն դորա ձեզ պատուական պարգև հոգևորական զեղն սուրբ աւծութեան, զաստուածունակ և զօրբալոյս սուրբ մեռոնն, զոր Հոգին Սուրբ արասցէ ի լուսաւորութիւն նորածնելոցն սուրբ աւազանաւն՝ յորդեգրութիւն Հաւրն երկնաւորի և ժառանգակցութիւն Քրիստոսի, ի յաւծումն քահանայից՝ և նորոգումն սուրբ եկեղեցւոյ, զնոյն ի ճակատ հաստատութեան: Եւ յամենայն ամի նոր առցէ, և զհինն ի նոր խառնեսցէ: Ամէն: Գրեցաւ գիր աւրհնութեան հրամանիս մերոյ....[1]

1. Պակասի ի բնագրին վերջն, որով և թուականն և ստորագրութիւն անուանն:

## Է.

# ԹՈՒՂԹ ՀԱՅՈՑ ԼՈՎԱՑ ԱՌ ՄԻՔԱՅԵԼ ԿԱԹՈՂԻԿՈՍ

## 15 ԱՊՐԻԼԻ, 1572.

**(Պատուէն զնուիրակն Տէր Մարտիրոս Ղրիմեցի. խնդրեն թղթատուութիւն մեր- ձաւոր խնամութեան, փառն ակնածութեան ազգայնոց։)**



ՈՒՐ մաքրութեան և տեղի հանգստեան, լայնատարած բուրաս- տան և այգի ցանկապատ՝ լրմամբ բոլորեալ, և կենաց հանգստա- րան, օտարաց և կարօտելոց ապաւինական. արև լուսատու և Գ[1] եր- կրի. զամենեսեան լիացուցանէք. անուամբ բարի և առաւելեամբ գեղե- ցիկ, բարեմիտ և իմաստուն.

Դուք աղբիւր էք գովելի,
Ցօղ բարեհամ անճառելի.
Անմուտ արև էք աշխարհի.
Քննող տառից աստուածային,
Լուծող անյայտիմաստ բանին,

Լցեալ շնորհօքն աստուածայնին.
Նման ովկիանոս ծովին,
Ոռոգանելոյ մեծ աղբեւրին,
Սաղարթախիտ փթթեալ վարդին,
Վարսաւորեալ նման նմին։

Երևելի և ականաւոր և ամենայն ուրեք ցանկալի, յամենայն լեզուէ գո- վեալ և յամենայն բերանոյ բարեբանեալ, յամենայն սրտից սիրեցեալ և ա- մենայն մտաց տենչացեալ. պարծանք պարծանաց և պսակ ամենայն Հայաս- տանեայց, հզօր հայր մեր, Տեառնդ մերոյ Տէր Միքայէլ, կաթողիկոս ա- մենայն Հայաստանեայց։

Այս ձեզ սակայն գովեստ և բան
Փոքր ի շատէ ձեզ բաւական.
Զի ձեզ հրեղէն պիտի բերան՝
Զիրաւացին տալ և զարժանն.
Բայց դուք միշտ լոյս էք անխափան
Գործով մաքուր և սրբազան,

Ի գիշերի և ի տուընջեան.
Միջօրէի լուսոյ նման.
Եւ ոչ լուսինն է ձեզ նման,
Զի նուաստանայ և առնու զվաղջան.
Բայց դու հաստատ կաս և փարթամ
Միշտ անապակ և անվախճան.

1. Այս փոխադրութիւնս բացատրելու կարօտի. նման ձեւք նշանակեն լուսին, արեգակ, բայց այս տեղ մտադրութեամբ վարդն այլ՝ չի յարմարիր այս բանաստեղծութեան։

Եւ ոչ տառեղքն է քեզ նման,
Զի չերևին ի տուընջեան.
Բայց դու փայլես միշտ անսասան
Լցեալ լուսով արփիական.
Ի յայս միջի փորուածս որ կան,
Ոչ ոք գտայք ի ձեզ նման.
Որ թէ զծաղկունքդ առեմ նման՝
Որ տերևով և պտղով կան,
Այլ և ոսկս ի դէմ աշնան
Թափեն զտերևն և մերկանան.
Ի յայս զգալեացըս տարրական
Դասք արդարացն է ձեզ նման.
Ցորանայ անապական
Պայծառ պտղով անմահական.
Նոյնպէս և դու սեռ օրհնութեան
Յաւէտ պտղով միշտ անծորան.
Առատաձեռ գետոց նման
Որ առոգմամբ զազդումըն տան.
Այլ և աղբիւր ես անմահութեան,
Արբեր զբաժակն ուրախութեան.
Սերովբէիցն ես դու նման,
Քերովբէիցն առեմ պարծանս.
Զձեզ ի՞նչ գովեմք մեք աննման
Տէր Միքայէլ կաթողիկոս, հայր պատուական։

Եւ ընդ կատար գովասանութեան՝ աստուածային սիրով հարցումն ի մօտակայ հեռաստանէ, ամենիմաստ, հաւատարիմ, բարեպաշտ, աստուածասէր և երկիւղած, բարեմիտ և հոգիընկալ, հեզահոգի և առաքինի, բազմաց ցանկալի և մեզ յոյժ ըղձալի, հոգւոյս բաղձալի և սրտէ սիրելի, հոգևոր հայր մեր բարի։ Իլախաց երկրիս Իլով քաղաքիս համասար քահանայք և երեսփոխանք և ժողովուրդ.ք, հարուստ և ռամիկ, այր և կին. Մեք անարժան հնազանդ ծառայքս մեղաք ի լի և պարտապան բիւր քանքարի, չեմք արժանի զքեզ գովելոյ, քանզի և չեմք հմուտ բանի. այլ զսէր սրտիս մերոյ փոքր ի շատէ իմաց լինի։ Զսակաւ գիրս գրեցաք, զի յիշեսցես դու ի բարի. և հարցումն ի խորոց սրտէ բազմատենչ բաղձանօք և անձկատոչոր սրտիւ. ի մայր մածուցմամբ երկրպագութիւն և համբոյր մատուցանեմք, և ձեր փարշապաբացդ գլուխ ի գետին դնեմք. Թէ, ո՞րպէս կեաք ի բերմանց կենցաղոյս և ի վշտաշատ ժամանակէս. և հայցեմք յԱստուծոյ որ հանապազ վասն ձեր մեզ բարիս լսել. բայց թէպէտ մարմնով հեռի եմք ի ձէնջ, այլ հոգով մերձ եմք։ Եւ թէ խոնարհիք ի ձեր բարձրութենէդ ի մեր նուաստութիւնս հարցման աղագաւ, ըստ բնածին բարուց ձերոց զոր ունիք առ հոգևոր որդիքդ, մինչ ի հասանել ժամն՝ լաւ կամք, առողջ մարմնով և տարտամ հոգով. և առաջիկայն Աստուծոյ եմք անձին և ձեր սուրբ երկնաբացիկ աղօթիցդ. յուսամք յաղէնիաղն Աստուած, որ ողջ և բարով և խաղաղութեամբ կենայք ի պարծանս մեր և ի յամօթ ամենայն ներհակաց. ամէն։

Եւ ընդ ողջունաքեայ նամակիս ծանուցումն լիցի վեհ իմաստութեանդ քո, հոգևոր հայր մեր, Տէր Միքայէլ կաթողիկոս ամենայն Հայաստանեայց ազգիս, որ յուղարկած նվիրակն Ցամթեցի Տէր Մարտիրոս եպիսկոպոս՝ ծաղկաւէտ կնքեալ շուրջաբերականաւ և սրբալոյս մեռոնաւ հասաւ Իլով քաղաքս, առ վարատեալ ազգս հայոց, որ եմք ի հայրենական գաւառէ որոշեալ և ի մէջ այլասեռ ազգաց բնակեալ. և ըստ հայրենական աւանդութեան մե-

րոյ ընդունեցաք զինքն իբրև պատուելական այր. որպէս ի շուրջաբերականն գրեալ կայր, թէ հաւկ և թէ չհաւկ, զանկարծամահն և զկամաւորն, և զամենայն որ Սուրբ Էջմիածնի մուտքն էր՝ առաք լիով անթերի ի ձեռն Տէր Մարտիրոս եպիսկոպոսին. զատածն ինքն իւր հոգամբ թող պատմէ ձեզ: Դարձեալ առաք հրամանագիր ք[1] արծաթ կրօշ ողահամբայր, և մէկ լաւ չուրջառ բոլոր զգեստիւ առանց վարշամակի, առաք Սուրբ Էջմիածնին: Խ. Ծ.[2] տուն հայ կամք բնակեալ ի մէջ Իլով քաղաքի: Աստուած իւրեանց բարաքա[3] տայ. աղէկ ընդունեցին, և աստուածապէս հարկիս արարին, և աղէկ ողորմութիւն տուին ի մարմնաւոր ընչից իւրեանց, որն շատ, որն սակաւ ըստ կարեաց իւրոց, և զինքն աղէկ սիրով ճանապարհորդեցին: Տէր Մարտիրոս եպիսկոպոսն ինչպէս որ տեսաւ աչօքն՝ այնպէս թող պատմէ:

Դարձեալ ծանուցանեմք հօգևոր տէառնդ մերոյ զմեր տկարութիւնս ի մէջ այլազգեաց. ամէնքս աղքատ եմք, խառնակեալ եմք հետ միմեանց, ամն ազգակցութեամբ և ամն խնամութեամբ. չի լինիր որ այս բանս ի մեր մէջն չլինի: Երթամք ի Յունիկէ և յՌուզէ աղջիկ առնումք և աղջիկ տամք, հաւատոց պատասուամ կը լինի, և յետին չար կու լինի քան զառաջինն. լաւ է մանաւանդ չար լինալու քան զբուն չար: Տէր Մարտիրոս եպիսկոպոսն ինչպէս որ զմեր նեղութիւնս աչօքն տեսաւ՝ հոգամբ թող պատմէ: Հրամանքդ մեզ հօգևոր հայր ես և մեք քո հնազանդ ծառայքս. խղճայ մեր անճարակութեանս. ժողովք արա, զլուխ եպիսկոպոսաց և զլուխ վարդապետաց, և մեր բանն առաջի ձեր առնուք և աղէկ քննութեամբ մեզ բարի ճանապարհ ցուցանէք. որպէս սուրբ հարցն կանոնքն կու հրամայէ, «Առաջնորդ ըստ ժամանակին իւրոյ տատացի զյառաջնորդութիւնն իւր»: Ցայժմ ժամանակի ի վերջին յաստուածային օրինացն սառուցեալ են ազգք մարդկան. տան ի վրայ սառի դնես՝ եղանակս ձմերան է, պինդ կու սառանայ յերկուց կողմանց. ինչպէս որ Հոգին Սուրբ տնօրինէ՝ այնպէս արէք: Ի մեր յառաջին հարցն աւանդութեան կայր ի մեր մէջն՝ Սալմաստեցւոյն ի վեր[4]: Որ բան որ յառաջ եղել է՝ մերձաւորութեամբ, հիմի այլ թող լինի: Այս մեր Տէր Մարտիրոս եպիսկոպոսն հօգևոր տէրոջն մօհրովն թուղթ եգիր ի միջիս, որ բան Էջմիածնի աթոռոյն շահ և օգուտ է՝ զայն հաստատեց. կու խնդրեմք ի քո Սրբութենէդ, որ այն կարգին և սահմանքին վերայ ձեր ձեռնագրովն և ձեր ծաղկաւէտ մօհրովն մէկ լաւ թուղթ գրես, որ մեր բանն աղէկ հաստատի. և թողութիւն տաս այս բանիս վերայ. զմեր խնդիրն անտես չառնես. հանապազ մեք սուրբ Էջմիածնի ծառայն եմք, և ի ձեր ծառայութեան կանգնել եմք հոգով և մարմնով. և զսուրբ Էջմիածնի մուտքն և զնուիրակին

1. Բանն հարիւրի կամ հազարի թուանշան է:
2. Այսինքն իբրև 40 կամ 50 տուն:
3. Թրք. պէրէքէթ, առատ արդիւնք:
4. Որ է Ստեփաննոս Ե կաթողիկոս, 1542–51:

մուտքն՝ լիով անթերի կու տամք, և աղէկ սրտով. կ՚ուղարկաւորեմք։ Ձեր հրամանքդ այլ մեր ազգիս որ ի հօս եմք բնակեալ՝ մէկ բարութիւն արէք, որ անջինջ յիշատակ մնայ ի միջի մերում. որպէս զքաջ հովիւ զհօտդ արածէ, և զմեր կեր[1] գայլու մի՛ տար. որ յանաչառ ատենին առեւ, թէ Ահա ես և մանկունք իմ։ Եւ այդ բաւէ աստուածիմաստ և խոհեմամիտ անձանցդ։

Ողջ լերուք ի Տէր յամենայն ժամ, վասն մեր։

Գրեցաւ քարտէզս ի յաշխարհս Իլախաց ի քաղաքս Իլով, ըստ ի մեզ մարդեղութեանն Քրիստոսի՝ ՌՇՀԲ ամի, և ի մերում յաբեդական տումարի ի յոբելինի և ԻԱ աւելի,[2] յամսեանն ապրիլի Հառամայեցոց ամսի, ԺԵ համարի յօրն։ Ձեռամբ Թերավարժ գրչի Ի. Բ. Գ. Ժ. Ի. Բ. (?)

---

# Ը.

## ԹՈՒՂԹ ԱՍՏՈՒԱԾԱՏՐՈՅ ՊԱՏՐԻԱՐՔԻ Ի ԼԵՀՍ

վասն Ծռազատկին և վասն Լուսոյն. Երուսաղեմի. 1589.



Տէր Աստուածատուր վարդապետէ և պատրիարգ Կոստանդնուպօլսի մայրաքաղաքի աթոռակալէ, և Երուսաղեմայ Քրիստոսի գերեզմանին լուսարար Տէր Սամուէլ եպիսկոպոսէ. Սիրով Աստուած Սուրբ Հոգոյն ժամանեալ հասցէ ողջոյն և խաղաղութիւն և առաքելական աւրհնութիւն, ի յամէնաւրհնեալ, և յաստուածապահ երկիրն Իլախաց. ի Լօվն և ի Կամէնիցն և յայլ ամենայն թէմն իւր առ հասարակ. ի Քրիստոս Աստուած հաւատարիմ ըստ հոգոյ յոյժ սիրեցեալ ցանկալի և փափաքելի պարծանաց որդոցդ. Նախ և առաջին, Տէր Գալուստ եպիսկոպոսին, և քահանայիցն և երեսփոխաններուն, և տանուտէրացն, հաւասար մեծի և փոքու, մեծաւ փափաքմամբ ի շնորհացն Քրիստոսի, աղօթիւք Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, կարողութեամբն Աստուծոյ Հօր, ի ձեռն Հոգոյն Սրբոյ, առաքեմք ողջոյն սիրոյ ի մէնջ և աւրհնութիւն առաքելական։

Գիտութիւն լիցի ձեզ ամենեցուն, սիրելի որդիք մեր ի Քրիստոս, զի ըստ

1. Մեր կերակուրն, մեր ուտելիքն։
2. Այսինքն ՌԻԱ Հայոց, 1572։

աղերսալից գթոյ մերոյ զոր ունիմք առ ձեզ, հանապազ հոգ մեր դուք էք ի Տէր, եթէ որպէս կամ զիարդ էք ի ժամանակիս չար բերմանց ներքուստ և յարտաքուստ ներհակաց։ Զոր և մխրամած դիմօք և արտահոսաց արտասուօք խնդրեմք յԱստուծոյ, հանդերձ միաբան եղբայրութեամբս. մինչդեռ ունելով ի մաղթանս մեր՝ զամէնօրհնեալ սուրբ զԱստուածածինն և զՍուրբ Գրիգոր Լուսաւորիչն և զամենայն Սուրբս Աստուծոյ. զի իւր արարչական խնամովն և եռանդնաչարժ սիրովն գթասցի ի վերայ ձեր. ամէն։ Եւ զամենայն պատահմունս տարերաց և տարադէպ փորձութիւնս սատանայի՝ որ զան ի վերայ աշխարհի՝ վասն ծովացեալ մեղաց մերոց, բարձցէ ի ձէնջ և յամենայն սահմանաց ձերոց. ամէն։ Եւ լցուսցէ զձեզ ամենայն բարութեամբ հոգոյ և մարմնոյ, տամբ և տեղօք, զարմօք և զաւակօք, որդովք և դստերօք, սիրելեօք և բարեկամօք, այգօք և բուրաստանօք և ամենայն գոյիւք. ամէն. Այլ և ժողովրդապետն ամենեցուն Յիսուս Քրիստոս՝ օրհնեսցէ զբոլոր ժողովուրդդ. զքահանայսդ ընդ սուրբ քահանայիցն Մելքիսեդեկի և Ահարոնի օրհնեսցէ. զմեծատունսդ՝ ընդ մեծատանցն ողորմածաց ընդ Աբրահամու և ընդ Յոբայ համբերողին. զտանուտէրսդ՝ ընդ տանուտերանցն բարեպաշտից. զաղքատսդ՝ ընդ կամաւոր աղքատին Ղազարու. զծերսդ՝ ընդ ծերոյն Սիմէոնի, զերիտասարդսդ՝ ընդ Սահակայ և Յովսեփայ. զմանկունս ձեր՝ ընդ Երից մանկանցն. զտղայս ձեր՝ ընդ տղայիցն մատուցելոց առ Քրիստոս. զճանապարհորդս ձեր՝ ընդ Մարխասայ և Կոսփարայ՝ շահավաճառ և արդիւնաւոր արասցէ. ամէն։ Զարվեստաւորս ձեր ընդ Բերսելիելի հանճարեղս արասցէ. ամէն։ Զհողագործսդ՝ ընդ ճշմարիտ և քրտնաջան աշխատողացն պսակեսցէ. ամէն։ Զկանայս ձեր ընդ իւղաբերից կանանցն օրհնեսցէ. և ամենայն ուրախութեամբ բարեաց զտունս և զշտեմարանս ձեր լցուսցէ. ամէն։ Այլ և հայցեմք յամենասուրբ Երրորդութենէն, զի պատճառն բոլորից՝ ահեղն Աստուած Հայր երկնաւոր հաշտեսցի ընդ ձեզ. Ծագումն ի Հօրէ անճառ ծննդեամբ Որդին Միածին ծագեսցէ ի ձեզ զլոյս անճառ շնորհաց իւրոց. Հոգին Աստուած ահեղութեամբ շրջի ի վերայ ձեր, և բաշխէ զպարգևս անապական փառաց իւրոց. ամէն։ Եւ տացէ ձեզ շինութիւն, անդորրութիւն, խաղաղութիւն, հիւանդաց առողջութիւն, գերելոց ազատութիւն, մեղաւորաց թողութիւն, անզղջիցն դարձ և ապաշխարութիւն, սգաւորաց մխիթարութիւն. անդաստանաց ձերոց պտղաբերութիւն. բուսոց և տնկոց աճողութիւն. անասնոց ձերոց անսխալ ծննդականութիւն և ամենայն կենդանեաց առողջութիւն. Ննջեցելոց ձերոց հանգիստ և արքայութիւն պարգևեսցէ Քրիստոս Աստուածն մեր. ամէն։ Այլ և բարեխօսութեամբ Սուրբ Աստուածածնին և Ս. Կարապետին և Ս. Լուսաւորչին, բացցէ Տէր Աստուած զդուռն հրաշից անճառ ողորմութեան իւրոյ ի վերայ ձեր. իբրև զցօղս դարնանային, և իբրև զճառագայթս արեգականն, զկանուխն և զանագանն, ի տուէ և ի գիշերի, ի նստել ի տան և գնալ ի ճանապարհ, ի ննջել և ի յառնել, յուտել և ի յըմպել, յասել և ի լռել, գնել և ի ծախել, շինել և ի տնկել, գործել և ի հանգչել,(ի) կեանս և ի մահ

*ի վերայ երկրի և հող տապանի, սատ և ի հանդերձելումն և յամենայն ժամու. ամէն։ Այլ և տացէ ձեզ Տէր Աստուած կրկնակի բարութիւն, առատութիւն և լիութիւն, խաղաղութիւն և խնդութիւն, առողջութիւն և կարողութիւն, զաւրութիւն և արիութիւն, հաստատութիւն և անշարժութիւն, ուրախութիւն և բերկրութիւն, սէր և միաբանութիւն, և ամենայն բարի իրաց աջողութիւն և կատարելութիւն. ամէն. Այլ և ի հասանել բանիս առ ձեզ, զամենայն ներհակս չարին՝ ի բարին փոխարկեսցէ. զնեղութիւն՝ ի յարձակութիւն, զշարչարանքն՝ ի հանգիստ, զդառնութիւն ի քաղցրութիւն, ըզտրտմութիւն՝ յուրախութիւն, զսուգն ի խնդութիւն, զարտասուքն՝ ի ծաղր, զհիւանդութիւն՝ յառողջութիւն, զմահն՝ ի կեանք, զնուազութիւն՝ յառատութիւն, զպակասութիւն յոլովութիւն, զթերութեան ի լիութիւն, զխռովութիւն՝ ի խաղաղութիւն, զատելութիւն՝ ի սէր, զթշնամութիւն ի հաշտութիւն, զծուլութիւն՝ ի յարիութիւն և յաստուածային օրհնութիւն. ամէն։*

*Եւ ընդ օրհնութեանս ծանուցումն լիցի ձեզ վասն Ջատկին համար, թէ լոյսն գերեզմանին որպէս ելաւ։ Ի զատկէն ծէ աւուր յետև Երուսաղէմայ պարոնին քօֆխայեան*[1] *Ուլախով յըՍտամբօլ եկաւ, և եկաւ ի Մահմուտ փաշային քարվանսարայն իջաւ. և Հոռոմին եկան ի մօտն գնացին և ասացին, թէ յԵրուսաղեմէ ինչ խապար ունիս. նայ ասաց այն քօֆխայեան Հոռոմներուն, թէ դուք ինչ ազգ էք. և նոքա ասացին թէ մեք Հոռոմ եմք։ Եւ քօֆխայեան ասաց, թէ ձեզ մասլահաթ չկայ, գնացէք դուք, թող հայ ազգն գայ։ Եւ յՍտամբօլ քաղաքս համբաւն վերացաւ, թէ յԵրուսաղեմայ մարդ եկեր է։ Եւ Հայոց ազգն քահանայք և տօլվաթորնի ի միատեղ ժողովեցան և գնացին մօտ ի այն քօֆխայեան. և եհարց, թէ ինչ ազգ էք. և նոքա ասացին, թէ մեք Հայ եմք. Եւ ասաց, թէ ձեզի ուրախութեան խապար եմ բերեր. և Հայոց ազգս առին զքօֆխայեան, և բերին ի պազատանն։ Եւ հանեց ի դուրս մէկ յարապի գիր, հօքում*[2] *մի, որ յԵրուսաղեմայ սանճախպակուն մօհրն ի վերայ էր, և ղատուն մօհրն ի վերայ էր, և սուպաշուն և էմենին մօհրն ի վերայ էր. և հետն մէկ ալէկ կարդացող ղատի մի այլ կայր. երետ ի նորա ձեռքն, թէ կարդա. և այն ղատին այլ առաւ ի ձեռքն, և բարձր կարդաց ի պազատանին մէջն, որ տաճիկ և ճհուտ և հոռոմ և հայ և ՀԲ (72) միլաթ ամէնն լսեցին. և գրած էր այսպէս. Թէ, յԵրուսաղէմ քաղաք՝ Հոռոմ և Յոանկն, Հապաշն և Կուրճին և Խպթին, այս Ե ազգս՝ ապրիլի Զ զատիկ են ասայեր. և Հայ, և Ասորին և Նեստորն և Մարոնին, այս չորս ազգս ապրիլի ԺԳ զատիկ են ասացեր. և շատ ազմուկ է եղեր. և Հոռմին պատրիարքն ի յամէն աշխարհ թուխթ է ղրկեր, թէ ինչ ղատար որ գլուխ մարդ կայ՝ նայ թող գայ. Հայերն մեզ այսպէս բան կ՚այնեն։ Եւ հոռոմ ազգն հանց շատ եկեր է՝ ԺԲՌ (12,000) հոգի եղեր է. և*

1. Թր. Բեհեա. սատէկան, գլխաւոր։
2. Հրամանագիր։

գնացեր են Ծաղկազարդին շաբաթ օրն մօտ ի ղատին և էմինին և ի պարոնն, թէ եկէք զՅարութեան դուռն բացէք, որ ի ներս մտնեմք։ Ղատին և էմինն և պարոնն՝ ասցեր են Հոռմին պատրիարգին, թէ թող հայ ազգն այլ գայ, և ապա զդուռն բանամք. և հոռոմին ասցեր են, թէ այն չորս ազգն չեն ի գար. մեզի բաց որ ի ներս մտնեմք։ Եւ յամէն մարդոյ գլուխ Հոռոմին չորս չորս ֆլորի են ժողովեր և տվեր են էմինին. և ապա թողեր են որ ի ներս են մտել. և ճաշուն՝ ի Յարութիւն կու մտնուն ուրախութեամբ. և յետ ժամ եղեր՝ և լոյս չէ ելեր. և ճրագվառք եղեր է՝ և լոյս չէ ելեր. և պաակել ժամ եղեր է՝ և լոյս չէ ելեր։ Եւ յետոյ պարոնին մարդիքն և ենկիչարիքն և ղատուն մարդիքն և սուպաշուն և էմինին մարդիքն զՀոռոմին ծեծեր և ի դուրս են արեր. և զՀոռմին պատրիարգն և զգլուխ եպիսկոպոսնին, և զգլուխ աքապուռնին՞ զամմէնն ի զնտան կու ձգեն, և կ'առեն, թէ ի ձեր հաւատոցն վերայ պակասութիւն գտաք. և զամէնն կու տուգնեն[1]. ի պատրիարգէն՝ Ռ և ԵՃ (1500) ֆլորի կ'առնուն, և ի ժողովուրդնէն՝ յորմէ Ճ ֆլորի կ'առնուն, յորմէ Եճ ֆլորի, և յորմէ Ծ, յորմէ Կ, յորմէ Ժ. զՀառոմներուն մեծ ու փոքր՝ զամէնն կու տուգնեն. և հոռոմ ազգն սեւերես լինալուն՝ մէկ շաբաթ ի դուրս չեն ելեր. և ոչ ի մարդոյ յերես են նայեր։ Այս հոռոմ ազգն պիզմի[2] ազգ է. ոմանք զատիկ արեր են և յոմանք հետ Հայոց ապրիլի ԺԳ զատիկ են արեր. և երբ մեր զատիկն եկեր է՝ նայ գնացեր են հոռոմին ի ղատին և ի պարոնն, թէ մեք այլ կրկին ի Յարութիւն կու մտնեմք. և Հայերն ասցեր են ղատուն, թէ նոքա զիրենց զատիկն արին, հետ մեզ թող ի ներս չմտնուն. և ղատին այլ կ'ասէ, թէ խիստ աղէկ, թող չի մտնուն. և Հայոց ազգն և Ասորին և Նեստորն և Մարունին մըտեր են ի Յարութիւն. և յԵրուսաղեմայ քաղաքին պարոնն և էմինն, և բերդին ենիչարիքն և ութ ղատի և տաճարին մեծ չեխն, և Երուսաղեմայ քաղաքին գլխաւոր տաճկնին, ամէնն իրենց մարդուցմովն կու մտնուն ի Յարութիւն, և զկանթեղնին կու մարեն, և կու նստին ի Քրիստոսի գերեզմանին դուռնն ի վերայ, թէ տեսնումք թէ ո՛րպէս կ'ելնէ լոյսն։ Եւ Հայոց ազգս ուրախութեամբ ի շուրջ են եկեր. և երբ լուսն ելնելու ատեն եղեր է, և հանդարտ որոտում եղեր է. և Սուրբ Լուսաւորչին աղաւթիւքն և բարեխօսութեամբն լոյսն բխեր է, և Լուսաւորչին կանթեղն ինքն ընդ ինքն վառեր է. և պարոնն և էմինն և ղատեստանն և այլ տաճկինին զլոյսն տեսեր են, և ասցեր են մեր եպիսկոպոսին, թէ լոյսն ելաւ. և կու մտնեն ի ներս, մեր լուսարար Տէր Սամվել եպիսկոպոսն, և զլոյսն ի դուրս կու բերէ Հայոց ազգիս. և տաճկանց ազգն ամէն կու տեսնուն և կու զարհուրին և կ'առեն, թէ հաւատքն Հայուն է։ Եւ Հայոց ազգս խիստ ուրախացան որ Աստուծոյ ողորմութեամբն պարզերես եղաւ, և Հոռոմաց ազգն սեւերես եղաւ, և գլխիկոր։ Եւ յԵրուսաղէմ քաղաք տաճկաց ազգն հոռմին կ'առեն եղեր, թէ

1. Տուգանք կ'առնուն։ — 2. Հակառակող։

Ծոյ չներ, լոյսն այնպէս կու լինի. դուք մոլորեցաք և հետ ճշտին զատիկ արիք. և հռոմին ի յամօթացն չեն զրուցեր։ Եւ երբ տեսան որ այսպէս հրաշք եղաւ, նայ Երուսաղեմայ ղատին ինքն իւր ձեռօքն տասն Թուխթ կու գրէ, և գիւր մօհրն ի վերայ կու կոխէ, և զպարոնին և զէմինին, կու տայ պարոնին քօֆխային, թէ ան և տար Հայոց ազգին բաժանէ. և քօֆխայեան զթխթերուն զորն ի Հալապ կու տայ, զորն ի Ամիթ, զորն ի Դայսարի և զորն ի Թոխաթ և ի Սեաստ, և զմէկ Թուխթն յԸստամպօլ բերին. և զայս բաներս ամէնն ի մէջն գրած էր. և յետոյ գրած էր, թէ Հայոց ազգն հանց ազգ է՝ որ զԺԱ (11) ազգն կոխեց և սեւերես արաւ։ Եւ յԵրուսաղեմայ մինչև յԸստամբօլ զինչ քաղաք որ կայ՝ զամէննն զհռոմին տուգներ են, թէ դուք զձեր հաւատն մոլորեցաք. և Հայոց ազգ խիստ ուրախացեր են, և տավուլով և զուռնայով կերեխում են արեր. և ամէն ազգ հռոմին յետևանցն կու կանչեն, թէ զզատիկն մոլորեցաք և ճուհուտ եղաք. նոքա այլ ի յամօթնացն և սեւերեսութենէն մարդու երես չեն նայեր և ճուապ չեն ի տար։

Եւ երբ մեզի այս բարի խապարս որ եկաւ և զթուխթն կարդացին, ՀԲ (72) միլլաթ լսեց, և Հայոց ազգն խիստ ուրախացան, և հռոմին սեւերես եղան և գլխիկոր. և արարիչն Աստուած զՏէր Աստուածատուր վարդապետին աւուրքն շատ այնէ, որ ժողովեց զԸստամբօլու զքահանայքն և զտանուտէրքն, և ասաց. թէ, Այս տարի հաղար տարու գլուխ է. զինչ որ ձեր նամուսն է՝ նա զայն արէք։ Եւ ապա զԵրուսաղեմայ եկած քօֆխայեան իւր մարդոցմովն, և տավուլով և զուռնայով, նաղարով և պօռուով, ի Ուլու մանաստիրն ի պատիւ բերաք իւր մարդոցմովն, և երեք օր հարկեցաք։ Եւ վարդապետն մէկ աղէկ կապայ մի փէշքաշ երետ, և Ըստամբօլու տօլվաթօրքն մէկ արծաթի ուրահեր մի տվին և արծաթի մոշտապայ[1] մի և արծաթի թաս մի, և արծաթի գաւաթ մի. և թող զայլ փլորիքն որ տվին, և ի տավուլէն և ի զուռնայէն, ի նաղարայէն և ի պոռուէն հանց եղաւ, որ Ըստամբօլ քաղաք ի դունդ (թունդ) ելաւ։ Եւ տաճկաց ազգն կ'ասէին թէ այս ինչ ուրախութիւն է. նայ կ'ասէին թէ Հայոց ազգին յԵրուսաղեմայ խապար եկեր է՝ որ լոյսն Հայուն ելեր է, և հռոմին լոյս չէ ելեր. և հռոմ ազգն ի սեւերես լինալուն մէկ շաբաթ ի դուրս չելան։ Եւ այսօր յետև գնաց քօֆխայեան ինքն իւր բանն. և մէկ շաբթու յետև հռոմի դարձած տաճիկ եկաւ, որ զԵրուսաղեմայ բերդին դուռն կու պահէ եղեր է, նայ այլ այսպէս զրուցեց. և հռոմներուն յերեսն կու թքնուր. և կ'ասէր, թէ զհաւատքն ձեր մոլորեցաք։ Եւ յետոյ յայլ կանանչ գլուխ եկաւ, և ճուհուտ եկաւ, և արապ եկաւ, և ենկիչարի եկաւ, և Հոռոմ եկաւ. և նոքա այսպէս վկայութիւն տվին, և Հայոց ազգս առաւել ուրախացան։ Եւ յետոյ յուլիսի ԻԲ, Երուսաղեմայ Քրիստոսի գերեզմանին յարութեան լուսարարն եկաւ, որ զլոյսն ինքն իւր ձեռաւքն է

1. Կամ. Ջրի ամանի։

հանէր և աչաւքն զամենայն բան տեսեր է, և նայ այլ այսպէս վկայութիւն երետ, Տէր Սամվէլ եպիսկոպոս։ Եւ Հայոց ազգիս կրկին և երեքկին ուրախութիւն եղև. որպէս ասէ աստուածային գրեանքն, թէ Բ և Գ վկայիւք հաստատեսցի ամենայն բան։ Հայոց ազգն այլ այնպէս հաստատուն և անշարժ եղօ ի վերայ հաւատոց։

Եւ յառաջմէ ի ձեզ մէկ այսպէս մօհրով թուխթ մի դրկեցաք, վասն զատկին համար. և յետոյ որ այս Տէր Սամվէլ եպիսկոպոսն եկաւ՝ որ զլոյսն ինքն իւր ձեռօքն էր հաներ և զամենայն բան աչաւքն էր տեսեր, և վկայեց, և այսպէս կրկին ձեզ այլ իմացուցաք որ պինտ ըստուգ է, հաւատայք եւ Սուրբ Լուսաւորչին փառօքն փառք տայք Աստուծոյ, և ուրախացիք հոգով և մարմնով, որ Հայոց ազգն պարզերես եղաւ ԺԱ ազգին ի մէջն։ Բավ (բաւ) է։

Եւ ի հին և ի նոր գրեանքն շատ բան գտաք վասն Ծաղզատկին համար. դուք այլ իմացիք։ Ի թվին Հայոց ՈԽԶ (1197) խանկարեցին զզատիկն և ընդ աստուածապանան արարին այլազգիքն. 'ի գլուխ կատարման սուրբ յարութեան աւուրց՝ բերին եղբարց մերոց զաւետիս լուցման կանթեղի գերեզմանին ի մեր զատկին, և յամօթ եղեն հակառակքն որպէս և այժմայս որ յամօթ եղեն Հոռոմներն. այլ բաւէ։ Եւ ի մէկ գիրք մն այլ այսպէս գրած էր. Սրբոյն Գրիգորի վերադիտողի Հայոց Վկայասէրի՝ բան յորդորական, վասն մոլորման զատկին. Ի թվականութեան Հայոց ՇԼԱ, (1081–2) ի սուրբ զատկէն մոլորեցան Ժ ազգ հաւատացելոց, և Հայք և Ասորիք միայն մնացին հաստատուն, և Հոռոմք և Ֆռանկք հետևեցան Իռիոնի, որ արկանէր զտումարն յապրիլի Ե, և զլրումն լուսնին հանդիպեցուցանէր ի տօնն Ղազարու. զոր Հայք և Ասորիք և Եբրայեցիք արկանէին ապրիլի Զ, որ հանդիպեցուցանէր ի տօն Ծաղզարդարին. յորժամ ժողով արարին զԻռիոնն ոչ կոչեցին. և նայ Նախանձեալ և եկեալ պաղտ առեալ զգիրն, և քերեաց և արար զվեցն հինգ. վասն որոյ յամէն ՂԵ (95) ամի մոլորին Յոյնք ի զատկին։ Յայնժամ դասք քահանայիցն որ էին ի քաղաքն յՈւրհայ, ազդ արարին Տեառն Գրիգորիոսի Վկայասէրի Հայոց կաթողիկոսի. և նայ գրով ձեռին իւրոյ հաստատեաց զնոսա անշարժ կեալ ի հաւատս ուղղափառութեան։ Եւ էր պատճէն գրոյն այսպէս, զոր գրեաց Ուրհայ. «Քրիստոսի ճշմարիտ սիրողացդ և դաւանողացդ Սրբոյ Երրորդութեան, քահանայիցդ և իշխանացդ և այլ ամենայն հաւատացեալ ժողովրդոցդ, ողջոյն։ Զաստուածասիրութեան զգիրս ձեր ընթերցաք և զխնդիրս ձեր լուաք վասն ստուգութեան սուրբ զատկին, և յոյժ գոհութիւն մատուցաք Աստուծոյ՝ որ շարժեաց զձեզ յայդ։ Եւ արդ, Տէր Յիսուս Քրիստոս պահպանեսցէ զձեզ ի նոյն կեալ հաստատուն և տալ պատասխանի ընդդիմողաց։ Գիտէ ինքն ամենագէտն ողորմութեամբն իւրով և ամենաքննին զօրութեամբն իւրով, որ թէպէտ և գործովք միշտ մեղանչեմք Աստուծոյ, այլ հաւատովս և հաւատքս (հօտքս) իմ ամենեքեան զուղիղն և զճշմարիտն ունիմք։ Եւ եթէ ի վերայ ճշմարտութեան՝ պատժոց հանդիպիմք, մի՛ զանգիտէք և մի՛ երկնչիք, զի վարձս ի Տեառ-

նէ առնուլք, և մերձ է ժամանակ փրկութեան, և պարտ է այսմ ամենայնի կատարել, զի երևեսցին ճշմարտեալքն։ Եւ ես որ խրախոյս տամ ձեզ և քաջալերեմ համբերել ամենայն խնդութեամբ, կամաւորութեամբ մահակից և ես զատանիմ յամենայն գործս և ի տեսակս տանջանաց. և եթէ բանիւք և քննութեամբ էր մեզ նեղութիւնս կամ հարցափորձութեամբ, ապա պատրաստ կամք յամենայն իրս տալ պատասխանի՝ զոր ինչ և հարցանիցեն. և եթէ տանջանաւք և կամ բռնութեամբ, և ոչ յայնմանէ յուսաստ կամք. և գոհանամ զԱստուծոյ յամենայն ժամ, որ մինչև ցայժմ յանաստուած հեթանոսաց զատեաք, և այժմ ի քրիստոնէից նոյնպէս։ Բայց դուք մի՛ վհատիք. կարող է Աստուած ընդ փորձութեանցն և զելսն առնել. սակայն որչափ կար մեր է՝ ամենեքեան արդէն զքաջ զինուոր Քրիստոսի մարտիք զբարիոք մարտ ի վերայ ճշմարտութեան։ Վկայէ ինձ Տէր Աստուած իմ, վասն զի չեմք ի սղալումն ինչ, և ոչ եմք ի թիւրութիւն հաւատոց, և կամ յանդգնաբար իրաւ զմեզ կարծեմք. վասն զի այդ անզգամաց է գործ և անմտաց. այլ շնորհաւքն Աստուծոյ և սրբոց լուսաւորչացն, զարքունական զճշմարիտն ունիմք զճանապարհն որ ի Քրիստոս Յիսուս, և ոչ յաջ խոտորելով մեր և ոչ յահեակ, և ի պատուիրանացն Աստուծոյ ոչ օտարացեալ, և ոչ հպարտացեալ և ամբարտաւանեալք, որպէս զայլս ոմանս։ Եւ արդ եթէ խարդախութեամբ ինչ ունիմք զթերութիւն հաւատոց, վասն է՞ր չարչարիմք իբրև զպատժապարտս և ոչ ունիմք հանգիստ, այլ տագնապաւ շրջիմք ընդ ծով և ընդ ցամաք. որպէս և Պաւղոս պատմէ զինքենէ, զնեղութիւնս, զվիշտս, զչարչարանս, զհալածանս, և զայլսն ամենայն. և թէ անտի յուսով էր այս ամենայն շրջագայութիւնս, և զիմ հայրենի տունն ի խաղաղութեան ժամանակ թողի, և փախուստ և զնեղութիւնս և անձուկս ինձ տարապարտ է անցանել. եթէ պարաւելի հաւատոյ[1] զայս գործեցի, և քառասուն ամ[2] իմով շրջագայութեամբ և յայս փախեցայ, ապայ ուրեմն խաբեալ եմ միայն եղէ. բայց յուսամ Աստուծոյ եմ վկայութեամբ սուրբ գրոց. վասն զի զուղղափառ և զանթերին ունիմ զհաւատն։ Արդ, ամենեքեան որ իմում հայրապետութեանս և հաւատոյս կցորդ էք, մի՛ թուլութեամբ և կամ աշխատանաւք պատկառէք կամ երկնչիք, և զԱստուած վաճառէք վասն անտի կենացս. վասն զի այս է ժամանակ ընդունելոյ և առնուլ պսակ ի Քրիստոսէ. և երաշխաւոր եմ ձեզ առ Քրիստոս. վասն զի որ սուրբ հարց զցանկն ոչ պատառէ՝ ընդ սուրբսն պսակիցի. ապա թէ ոք զմարդկան փառս առաւել սիրեսցէ քան զԱստուծոյն, ի դատաստանի Որդւոյն Աստուծոյ ընդ ուրացողսն գտցի, որք զՔրիստոս Աստուած ոչ խոստովանեցան և ի մեր հաւատոյս և յօրհնութենէն անմասն եղցէ։ Իսկ հաւատացեալքն ի հաւատս մեր՝ օրհնեալ եղիցին յերկնաւորաց և յերկրաւորաց, ի մէնջ և յԱստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

1. Պէտք է ըսել, դաւանակից հաւատոյն, կամ վասն դաւանակից հաւատոյ

2. Ցորքանակէն ի անձամ։

Իսկ այս են պատճառք լռմանցն՝ զոր ամէն ՂԵ (95) ամի սղալին Հռոմք ի սուրբ զատկին, որ է լրումն ապրիլի Զ խորանին ինննեւտասներեակացն. զի յորժամ եգին զհինգհարիւրեակն՝ Իւրիոն ավարիկ գիտնականն Հռոմոց՝ ոչ կոչեցաւ ի ժողովն. և յորժամ եկն ի հեռի ճանապարհէն յոր երթեալ էր, մախացեալ ընդ իրան ընդ այն, և զապրիլի վեց՝ հինգ առաջ և եւլից զկոստանդինուպոլիս[1]: Իսկ յապրիլի Զ յայնմ ամի ի կիրակի հանդիպի. բայց մեք ի միւս կիրակի անցուցանեմք զզատիկն. իսկ Ե (հինգերորդ) օրն շաբաթ լինի, և նոքա զլրումն ի տեղն առնեն, և ուտեն զխաչելութեան շաբաթն: Պատրաստ կացէք որ չի սխալիք, դուք այլ հեա նոցա զատիկ առնէք: Ի հին գիրք մի այսպէս գրած էր, և մեք ձեզ այլ ծանուցաք. որ յամէն ՂԵ տարի՝ կու մոլորին տասն ազգ, բայց ի Հայոց և յԱսորոց. թէ չէք հաւատար, նայ զխառնայփընտուրին[2] զտարէգիրն համբրեցէք, և տեսէք որ կենայ գիրն[3] Շ կու գայ յայսկից ՂԵ տարի, և կրկին ՂԵ տարոյ յետև կրկին Շայ կու գայ, և երեքկին ՂԵ տարոյ յետև Ոյ (Ո) կու գայ նահանջն ավլի, ապրիլի ԺԳ զատիկ կու լինի. և ի տումարն այլ գտայք, որ երկու անգամ առանց նահանջի կու մոլորին, և յետինն նահանջով. և յամէն մոլորած տեղն գրած է, թէ Ցայսմ ամի մոլորին Յոյնքն. տեսէք և զգուշ կացէք: Հռոմի և Ֆռանկի հետ դըրեր եմք խառնայփընտուրով, յամէն ՂԵ տարի զոր կու գայ նոցա զատիկն և Հայոցն ի ԺԳ, և յետոյ ԲՃ և ԽԶ (246) տարի չեն մոլորիր. հինգհարիւրեկին մէջն՝ չորս տարպայ կու մոլորին, երեք առանց նահանջի և մէկն նահանջով. այս տարինս յետև՝ երեք ՂԵին այլ կու մոլորին: Դուք այլ ամէն գիրք գրեցէք, որ ի մեր յանցմանն յետև[4] մեր որդիքն այլ իմանան և հեռոյ[5] հռոմինչ չմոլորին, և զհայրապետաց անէծքն ընդունին: Այլ բաւ է ձեր վեհ իմաստութեանցդ. ողջ լերուք ի Տէր, Լուսաւորչին փառօքն: Փառք Աստուծոյ:

Գրեցաւ գիրս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, ի դուռն Սուրբ Յակոբայ. Թվ. ՌՂԸ, նոյեմբեր Ը:

1. Պակսի բառ մի խոստովանութեամբ կամ հաւատարմութեամբ:
2. Թուլին Աղիւսակք տումարագրոց:
3. Կիրակագիրն:
4. Այսինքն, յետ մեր մահուանս:
5. Թերեւս՝ յետոյ, կամ հետ, Հռոմայ հետ:

Թ·

## ՄԵԼՔԻՍԵԴ ԿԱԹՈՂԻԿՈՍ· — ՌԾԹ = 1611·

(*Նուիրակս առաքէ զԶաքարիա վարդապետ և զԴաւիթ եպիսկոպոս*)·



*գերայգոյ ի գերակա եւ ի գերադրական ի գերահրաշ ի գերազանց և ի գերաճառ յամենասուրբ Երրորդութենէն, ի յանսկիզբն Հօրէն, ի յանհաս Բանէն, ի Հոգոյն ճշմարտէն, և ի միակութենէն և ի մի բնութենէն և մի գոյութենէն, և ի միապէս բարոյն, ի մի Աստուած գոլոյն, անձամբ և անուամբ բաժանելոյն, այլ ամենայնիւ մի կալոյն· Եւ ի գերագայ ի մեծահամբաւ ի բազմալուր սուրբ մենաստանէս, ի Վաղարշապատու սուրբ աթոռոյս Էջմիածնա աստուածակազմ լուսոյս· Եւ ի սոցին սպասաւորէ ի Տէր Մելքիսէթ Կաթողիկոսէ ամենայն Հայոց, և ի Տէր Ստեփաննոս վարդապետէ, և ի Տէր Ստեփաննոս եպիսկոպոսէ, և ի Տէր Կարապետ վարդապետէ, և ի Տէր Յովհաննէս վարդապետէ· Նա և Ստեփաննոս արհի եպիսկոպոսէ, այլ և ի Զաքարիայ վարդապետէ, և յայլ միեղէն եղբարցս՝ որ աստ կան հաւագեալ ի Ս· Էջմիածինս· Հասցէ յիսուսաւանդ ողջոյն և առաքելական աւրհնութիւն ի վերայ տիրախնամ և աստուածապահ քաղաքացդ· Նախ և առաջին Իլախաց երկրիդ մայրաքաղաքիդ Իլովա· եպիսկոպոսացդ, քահանայիցդ և Բժն (երկոտասան) Դատաւորացդ, և պարոն տոլվաթաւորացդ, և հաւատար քրիստոնէիցդ, մեծի և փոքու առ հասարակ· ամէն։ Երկրորդ, Կամէնիտու քահանայիցդ և պարոն տոլվաթաւորացդ և հաւատար քրիստոնէիցդ· ամէն։ Երրորդ, Սէչովու քահանայից և պարոն տոլվաթաւորացդ, և բովանդակ քրիստոնէիցդ· ամէն։ Չորրորդ, Եաչու քահանայիցդ և պարոն տոլվաթաւորացդ, և հաւատար քրիստոնէիցդ· ամէն· եւ Յանկատանու քրիստոնէիցդ առ հասարակ ամենեցուն ամենայնի· ամէն։*

*Աւրհնեալ է Հայրն Աստուած անեղածին անժամանակ· գովեալ Որդին միածին Բանն Հաւր, ծագումն անճառ, լոյս և ճառագայթ· բարեբանեալ Հոգին Աստուած ճշմարիտ, բխումն անսպառ և բաշխող բարութեան· որպէս աւրհնեաց զդասս հրեշտակաց և զկարգս անմարմնոց, նոյն աւրհնութեամբն և զձեզ աւրհնեսցէ արարիչն Աստուած, զդասս և զգումարս ձեր, զազգս և զտոհմս ձեր, զարկս (զյարկս) եկեղեցեաս ձեր, զտունս և զբնակութիւնս ձեր· Եւ որպէս աւրհնեաց զդրախտն Ադենեա և ի նմա զմարդն առաջին և զմայրն մեր*

Եւայ, նոյն արարիչն Աստուած աւրհնեսցէ զբախտս ձեր, զայգիս և զբուրաստան ձեր. ամէն։ Գառնառ թէ չէն ու պայծառ լինի՝ ձեզ է պարծանք և ճոխութիւն. և թէ աղքատ և նուաստ, դարձեալ ձեզ է պակասութիւն։ Ձեզանէ խնդիրք ունիմք, որ զայս աթոռս ի մտաց չի հանէք և անտես չառնէք. և դուք աւրհնեալ լինիք յԱստուծոյ բարձրեալոյն. ամէն։

Տ. Կ. Ես յաթոռակալ Մարտիրոս եպիսկոպոս վկայ եմ այս բանիս։

Տ. Կ. Ես Համազասպ եպիսկոպոս առաջնորդ Ս. ուխտին Փրկչական պական[1] պատկերին վկայ եմ այս բանիս։

Տ. Կ. Ես Միքայէլ առաջնորդ Ս. ուխտին Աղչկուց վանացն, որ է նահատակ Ս. Ստեփանոս քահանային, վկայ եմ այս բանիս և նամակիս։

Տ. Կ. Ես Մանուէլ եպիսկոպոս առաջնորդ Ս. Աստուածածնին վկայ եմ այս նամակիս։

Տ. Կ. Ես Աստուածատուր եպիսկոպոս առաջնորդ Ս. ուխտիս Այրվանաց վկայ եմ այս նամակիս։

Այս հինգ վանաց առաջնորդս առաջի Աստուծոյ և սուրբ աթոռոյս գրանն՝ այս նամակիս համախոհ եմք այս բանիս. որ զՋաքարիա վարդապետն և Դաւիթ եպիսկոպոսն՝ հազիւ կարացաք հաւանեցուցանել առ ձեզ գալոյ. այլ մարդոյ հրամանք չկա այդ տեղեացդ նուիրակ կամ իշխանութիւն առնելոյ. դոցանէ ի զատ այլ մարդ չընդունիք. Աստուած ըզձեզ աւրհնէ. Սուտ և խաբեբայ մարդ շատ շուրջ գայ. բայց ինչ մարդ որ զայս նամակս ու ձեր նշանն առ ձեզ բերէ՝ ըստոյգ և ճշմարիտ նուիրակն նա է։

Գրեցաւ սակաւ գիրս դուռն Ս. Էջմիածնա. Թվին ՌՀԹ, մայիս ամսոյ ի մէկն։

(Ի ստորեւ գրեալ) Ես Աւագ եպիսկոպոս առաջնորդ սուրբ ուխտին Անկուրիոյ տեսի զնամակս և հաւատացի, այս այսպէս է ըստուգ ճշմարիտ։

1. Այսպէս պակաս գրուած, փոխանակ պատուական։

## Ժ.

## ՄՈՎՍԷՍ Դ. ԿԱԹՈՂԻԿՈՍ

*Թուղթ առ Վլատիշլաւ Է արքայ Լեհաց*[1]. ՌՁԱ = 1633, ՕԳՈՍ. 30.



ՍՏՈՒԱԾԱՊԱՐԳԵԼԻ և Քրիստոսապսակ՝ ծիրանածին և չքնաղաշուք, ի գերագոյն տոհմէ ընտրեալ՝ և ի պանծալի շառաւիղէ երևեալ, պսակ և զարդ քրիստոնէից և ահարկու Թշնամեաց խաչին Քրիստոսի, ով նազելի և սիրասնունդ հոգեզարդ արքայից արքայ Վլատիշլավ։

Որ թէպէտ ամենայն կենդանեաց թագաւորք ի չորս բաժանեալ են, այսինքն Մարդ և Առիւծ, Եզն և Արծիւ, որ զչորս Աւետարանչացն ունի զխորհուրդ, որք են չորեքկերպեան աթոռ անմահին Աստուծոյ. սակայն ներքին նկատմամբ՝ ի քեզ տեսանի լիապէս գործառնութիւն չորեսին թագաւորութեանցս այս. քանզի անհամեմատ քանակութեամբ ի պատկեր Աստուծոյ յօրինեալ ես, ձևամբ անհուն հզօրին՝ մարդ. և անյաղթելի արիութեամբ և հզօր զօրութեամբ Ձեր և ահարկու դիմեցմամբ ի թշնամիսն խաչին Քրիստոսի, բերես զնմանութիւն առեւծու. Եւ շինարար և փառակաւոր գոլով միշտ՝ յայգի Տեառն գործելով, բերես ի Քեզ զնմանութիւն եզին. Եւ բարձրաթռիչ և արիական գոչմամբ քո՝ ցուցանես ի քեզ զնմանութիւն արծուոյ։ Վասն որոյ յարաժամ հանգչի ի քեզ Հոգին Աստուծոյ, ըստ համեմատութեան չորեքկերպեան աթոռին։ Ո՜վ պանծալի պետ և ակնկալութիւն ամենայն քրիստոնէից. պահող և պատսպարան բանաւոր հօտին Քրիստոսի։

Նուաստ ծառայ ծառայից Աստուծոյ, Մովսէս կաթողիկոս ամենայն Հայոց, յաջորդ և վերադիտող գահոյից պարթևազին Գրիգորի, ի վիճակ Թաթէոսի սուրբ առաքելոյն՝ ի վերայ արամեան տոհմի. ի հեռաստանէ իբր առ ընթեր գոլով մեծարգոյ և բարձրաբերձ գահոյից Ձերոց, զսրբարար և զաստուածային մատուցանեմք ողջոյն, նորընծայ և քրիստոսապարգև Թագաւորիդ մերոյ Վլատիշլաւի, հանդերձ ամենայն ընտրելագոյն աշակերտօքն մերովք. Քեզ և ընդ քեւ եղեալ մեծամեծ և քրիստոսասէր իշխանացն, յամենեսեան և յամենայնի ի Տէր խնդալ։ Եւ հարցանելով հարցանեմք զանօթդ

1. Հրատարակուած էր Թուղթս ի Ճռաքաղ օրագրի, Բ, 72, որպէս և Թուղթ Փիլիպպոսի կթղ. առ նոյն Թագաւոր. Ն. 90։

պատուական ի տան անմահ Թագաւորին Յիսուսի. զոր Տէր Աստուած անփորձ և անսայթաքելի պահեսցէ զմեծութիւն ձեր մինչև ի խորին ծերութիւն, հանդարտ և խաղաղարար Թագաւորութեամբ, ի հաճոյս բարերարին Աստուծոյ, ըստ մեծին Կոստանդիանոսի և Թէոդոսիցն. և յետ աստեացս վճարման՝ անմահ Թագաւորութեան արժանի արասցէ, դասակցիլ ի կայանս Սրբոցն յարադրուարճ բերկրանօք և մշտակաց ուրախութեամբ, ի տեսութիւն փառացն Քրիստոսի. ամէն։

Եւ յետ սիրալիր ողջունական բանիցս, ծանիր ո՜վ ամենայաղթ Թագաւոր, զի Թագաւորք երեսփոխան են անմահ Թագաւորին. և որպէս նա ծագէ զարեգակն իւր ի վերայ չարաց և բարեաց, և ածէ անձրև ի վերայ արդարոց և մեղաւորաց, այնպէս Թագաւորք պարտին գորովագութ սիրով [illegible] և խնամածու լինել ի վերայ ամենայն քրիստոնէից, ըստ առակին Սողոմոնի. «Մի՛ ցրկեր զաղքատն՝ որ յեցեալ և յուսացեալ իցէ ի քեզ»։ Քանզի սակաւ ազգս մեր՝ որ վասն աւերման աշխարհիս Հայոց և այլեկոծութեան՝ ցիր և ցան սփռեալ եղեն ընդ ամենայն երեսս երկրի, ոմանք առ Վիրս, ոմանք առ Խազրին Պարսիկս, իսկ ոմանք յարևմուտս, նաև ի Միջագետս Ասորւոց, կան նշդեհացեալք և պանդխտացեալք։ Իսկ սակաւս ի բազմաց յազգէս մերմէ եղեն ընդ հովանեաւ Թագաւորութեան ձերոյ, իբր աւանդ ինչ ի պատուական տեղւոջ զգուշաբար շինեալք և պատուասիրեալք ի նախնեացն և ի խնամոց ձերոց մինչև ցայսօր։ Եւ մեր լսելով յարաժամ զնոցայն ապահովութիւն՝ և զշնորհակալութիւնն որ ի ձէնջ, գոհանամք զբարերարէն Աստուծոյ և մարդասիրէն, և փառս մատուցանեմք նմա, և յաղօթս հայցեմք միշտ տալ երկարակեցութիւն ձերոց Թագաւորութեանց։ Եւ զնոյն սէրն և զխնամքն՝ հայցեմք ի քէն, ո՜վ ծիրանածին մեծ բարեպաշտ Վլատիսլաւ Թագաւորդ Լեհաց, պահել և ոչ նուազել. զի ամենայն Թագաւորք երկրի տեսցեն զբարիոք խնամարկութիւնն որ ի վերայ նոցա, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է. մինչև այց արասցէ Աստուած՝ մեզ, և դարձուսցէ զգերութիւնն Յակոբայ, և յիշեսցէ զդաշինքն զայն՝ զոր եդին մեծամեծ հայրապետքն և Թագաւորքն մեր. այսինքն Սուրբն Սեղբեստրոս և Գրիգորիոս, Կոստանդիանոս և Տրդատիոս, և վասն հաստատագոյն [illegible] ուխտին՝ զարիւն Կենարարին ի մելան խառնեալ, նովիմբ գծագրեցին և հաստատեցին դաշինս։ Զնոյն սէրն հայցեմք ի Ձէնջ, և ոչ զանոտի հակառակութիւն։

Զի սակաւ մի կարճ ի կարճոյ յուշ առնեմք քոյին սուրբ Թագաւորութեանդ. զի եկն եհաս լուր ի լսելիս մեր վասն նեղութեան ազգին մերոյ՝ որ կան ընդ հովանեաւ Ձերում Թագաւորութեանն, մանաւանդ ի մայրաքաղաքն Լէվ. Թէ, զեկեղեցիս առեալ են բռնութեամբ ի ձեռաց ազգիս մերոյ, և քահանայք և ժողովուրդք շրջին իբրև զոչխարս մոլորեալս՝ որոց ոչ իցէ հովիւ. զոր ոչ կարեմ մի ըստ միոջէ յերկարել քո սուրբ Թագաւորութեանդ, վասն աղէտից։ Եւ մեք յորմէ հետէ զայսպիսի իրս լսեալ եմք, կսկիծ և տրտմութիւն և նեղութիւն շատ ունիմք, քան զայս՝ որ յայլասեռիցս կու կրեմք։ Վասն որոյ

հարկ եղեւ ինձ գրել առ Աստուածապաշտ Նորածին Թագաւորութիւնդ, շնոր-հաւորել: Եւ խնդրեմք ի քէն լալագին պաղատանօք, լուր աղաչանաց մե-րոց և խնդրուածոց. մի՛ և մի՛ եղիցի այսպիսի իր ի միջի Ձերում. և մի՛ դը-նել զմէրս ի վերայ միրաց, և խարան ի վերայ խոցից. եղիցի սէր և խա-ղաղութիւն ի միջի մերում. «Քանզի Աստուած սէր է, և որ կայ ի սէրն՝ բնակի յԱստուած, և Աստուած ի նմա». քանզի կան բազումք, որք ոչ են տեղեակ սիրոյս այս, հակակայ բանիւք միճեն ընդ միմեանս, ասելով. «Ես Պօղոսեան եմ, և (միւսն) ես Ապօղոսեան եմ, և միւսն՝ թէ՛ ես Կեփայեան»: Իսկ մեզ պատուէր Սրբոյն Պօղոսի լսել հայցեմք ի ձէնջ. «Որք միանգամ ի Քրիստոս մկրտեցարուք, զՔրիստոս զգեցեալ էք. չիք խտիր՝ ոչ Հրէի և ոչ Հեթանոսի, ոչ ծառայի և ոչ ազատի, ոչ արուի, և ոչ իգի. զի ամենեքեան դուք մի էք ի Քրիստոս Յիսուս»: Քանզի և ի մերումս երկրի ի մեր վի-ճակս՝ ֆռանգ դաւանութեամբ քրիստոնեայք շատ կան. մեք՝ յիւրեանք բան չենք ասել, քաւ լիցի, այլ իբրեւ զեղբարս ընդունեմք և պատուեմք. այլ և եկօղ պատրիքն երբ առ մեզ կու գան, որչափ մեր կարս է՝ պատիւ և մե-ծարանս կ՚առնեմք, վասն սիրոյն Քրիստոսի: Նոյնպէս հայցեմք ի մեծութե-նէդ ձերմէ՝ զփոքրիկ հօտն զայն, այսինքն զազգս մեր, խնամով և սիրով պահեսցես, վասն սիրոյ Նախնեացն քոց, և մի՛ սուտակապապասաց բանիւք վի-րաւորեսցես զնոսա. զի գրեալ է. «Զեղէգն ջախջախեալ՝ մի՛ բեկցես, և զպատրոյգն առկայծեալ մի՛ շիջուցես»: Զի անկեալ ի Թագաւորութենէ և ի վերջին սորկութիւն եմք հասեալ. և ըստ Յոբայ՝ ձայնեմք առ Ձեզ. «Ո-ղորմեցարուք ինձ, ո՛վ բարեկամք իմ». և մեք և ամենայն ազգս մեր հայ-ցեմք ի յաղէնիազ բարերարէն Աստուծոյ, զի անփորձ և անսասան պահես-ցէ զԹագաւորութիւն Քո, և բազում իմաստութեամբ և մեծութեամբ լցուս-ցէ զքեզ հոգեկան և մարմնական առաքինութեամբ, որպէս երբեմն զմեծն Սողոմոն և զաստուածասէրն Կոստանդիանոս. և պարագայց ամօք և յամե-րամ ժամանակօք վայելեսցես զաստուածապարգև Թագաւորութիւն քո, որդ-ւովք և դստերօք, ընչիւք և ապրանօք, ծառայիւք և աղախնաւք, մինչեւ ի խո-րին ծերութիւն. և յետ աղցաւոր յաւիտենից՝ ի ժամանել բնութեանս կետի դասեսցէ զքեզ Տէր ընդ սրբազան Թագաւորաց՝ բազմել ընդ Քրիստոսի ի սե-ղան Հօր իւրոյ. Որում փառք և երկրպագութիւն ընդ Հօր իւրում և Հոգ-ւոյն Սրբոյ, յարակայ խոստովանութեամբ անզրաւ յաւիտեանս. ամէն:

Գրեցաւ գիրս ի դուռն Ս. Էջմիածնայ, ի Թվին ՌՁԱ, յաւգոս. ամսոյ Լ:

ԵՍ ՄՈՎՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԳՐԵՑԻ ՁԵՌԱՄԲ ԻՄՈՎ:

# ԺԱ.

## ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. ՌՂԸ = 1640. ՀՈԿՏ. 12.[1]

*(Յորդորէ զԼեհահայս օգնել իրերաց, և յանել Մուշաբեկի՝ որ ի շահէն Պարսից դեսպան գնայր առ թագաւորն Լեհաց)։*

Է́



ՅԻՍՈՒՍԻ Քրիստոսի ծառայ Փիլիպպոս կաթողիկոս ամենայն Հայոց, ի վիճակէ սրբազան Առաքելոյն Բարդուղիմէոսի, յաջորդ Սրբոյ Առաքելոյն Թադէոսի, և փոխանորդ Սրբոյն Գրիգորի Հայոց Լուսաւորչի և բազմաչարչար նահատակի և սրբազնակատար հեղինակի, և պատրիարգ Վաղարշապատու քրիստոսաշէջ և լուսանկար երկնահանգէտ սրբոյ աթոռոյն Էջմիածնի. Յորմէ ժամանեալ հասցէ գիր աւրհնութեան և նամակ պահպանութեան, շնորհք առաքելական և աստուածային աւրհնութիւնն ի վերայ տիրապահ և քրիստոսախնամ քաղաքացդ, Իլովայ, Կամենիցու, Եազլովցայու, Զամոշցայու և Լուծկայու. Լուսաւորչի աւրհնեալ հօտի ժողովրդեանդ. որքանուէր քահանայցդ, տեառնափոխ դատաւորացդ, պերճապատիւ ազատացդ, արգասապատիւ մեծատանցդ, և այլոց ամենեցունց, աղքատաց և աւմկաց, մեծամեծաց և փոքունց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, երիտասարդաց և կուսից, և ամենայն չափու հասակի, միագումար ամենեցուն. Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ և ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, և ի Ս. Հոգւոյն կենարարէ և բարերարէ. ամէն. Աւրհնութիւն Հօր, պահպանութիւն Որդւոյ, և նախախնամութիւն ամենասուրբ Հոգւոյն, միշտ և հանապազ ի վերայ ձեր լիցի, և որ ըստ օրէ լցուսցէ զձեզ փառօք և արգասալիր ճոխութեամբ, իբրև զորթս և զոստ սաղարթախիտ և պտղալից դրախտ տնկեալ ի գնացս Հոգւոյն վտակաց. կալ մնալ ձեզ խաղաղական կենօք և պարագայց ամօք մինչ ի խորին ծերութիւն, ի կամս բարերարին Քրիստոսի Աստուծոյ մերոյ. անքասիր և անքռնադատ կենօք, յարազուարճ ուրախութեամբ. ամէն։ Այլ և աւրհնեսցէ զձեզ Տէր Աստուած մեր և զարգա-

1. Բնագրին վրայ թուականն պակսի. բայց կոնդակին ետեւը՝ ընդունողաց ձեռքին գրեր է այլ-ազգերէն. «Գու ալդըք եօղլումըզ Սուրբ Էջմիածինտա. Թվ. ՌՂԸ, հոկտէմբեր ԺԲ»։

բնացէ հոգւով և մարմնով, տամբ և տեղեաք, գործաք և զաւակաք, որդւովք և դստերաք, սիրելեաք և բարեկամաք, ընչիւք և ապրանաք, և ամենայն գոյականաք փարթամացուսցէ զձեզ. ամէն։

Եւ ընդ աւրհնութեանս՝ այս ես յայտ լիցի սիրելեացդ և ջատագովացդ ճշմարտութեան, որ ի վաղուց հետէ ըղձամ տեսութեան ձերոյ, բայց խափան որ (ոչ) սակաւ եղեւ և լինի. քանզի երկք ամ վասն խառնակման տեղւոյս և աւերակաց շինութեան՝ եղեւ անհանգստութիւն. և այս երկու ամ է՝ որ ի դրան արքայի էաք. և թէպէտ յայսքան վշտի մէջ էաք, այլ բաղձանքս որ առ սիրելիքդ՝ ոչ բնաւ դադարի, այլ օր ըստ օրէ հալէ և մաշէ զիս. և չափ ըղձանացս այնքան՝ որքան ծարաւեցելոյն առ զովացուցիչն։ Եւ արդ, գինք արեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի և հարազատ որդիք Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, և իմ աշորեալ հօրս զաւակք, խնդրեմ ի ձէնջ զի միմեանց յօգնութիւն հասանիցէք յամենայն գործս բարութեան. և մանաւանդ առ ձեզ է բանս իմ, որդեակք իմ քահանայք, դատաւորք և ամենայն ժողովուրդք Կամէնցոյ, Եազլովցոյ և Ջամօչեացոյ, որ եղբարց ձերոց Իլովացւոց պարտիք ձեռնտու լինել յամենայն իրակութիւնս. եթէ ընչիւք, եթէ խօսիւք, եթէ աղօթիւք, և եթէ աշխատութեամբ մարմնոյ. այսինքն, թէ ի դուռն արքայի գնալ, և թէ այլ ինչ այսպիսի գործ, անյապաղ պարտիք յօգնութիւն հասանել. զի «Եղբայր յեղբօրէ օգնեալ՝ իբրեւ քաղաք ամուր»։ Եւ գործեալ, վասն նամակաց ձերոց, մեծահաւատ և բազմաջան որդիք իմ Իլովացիք, ծանիք. զի յորժամ նամակն ձեր եկն եհաս առ մեզ, ընդ նմին և զբօթ գալստեան թագաւորին՝ որ ի վերայ երկրիս եռոսն. և յետ այնորիկ զկտակարանս մեր զուարթ կախէաք և ի յուս մեր բառնայաք. ոչ տեղի հանգստեան և ոչ ժամ աղօթից, ոչ դադար կարասեաց և ոչ երեւումն զերապայծառ կարգաւորութեան մերոյ. վասն որոյ ոչ կարացաք զմիտս և զխորհուրդս մեր ի մեզ բերել, զի ծանեացուք զմեզ, մինչեւ յերիս ամս, որ զաւերական սակաւ շինեցաք և զետեղեցաք. և ապա ի մէջ բերեալ զնամակսն ընթերցաք. յայնժամ տրտմութեան ոչ սակաւ և մթութիւն ոչ դիւրագնեաց և ցաւ ոչ հեշտափարատ պատեաց զիս. թէպէտ և յառաջագոյն վասն իրիդ այդորիկ գոյր տրտմութիւն, բայց ասէաք, թէ տուեալ իցեն արգեաք զեկեղեցիսն, և կամ սակաւ ինչ թողացուցեալ իցեն վասն եկեղեցւոյ խորհրդոյ կատարման։ Եւ յորժամ ընթերցեալ իմացաք և ստուգեցաք տրտմութիւնն կարծական, այնքան առաւելաւ տրտմութիւնս, մինչ զի ոչ ինչ թուէր նեղութիւն և աւեր տեղեացս՝ որ եղեալ էր ի պատերազմացն անօրինաց. և ապա զկնի ընթերցմանն՝ խորհուրդ արարեալ վասն այդորիկ, յարուցեալ գնացաք ի դուռն արքայի. թէպէտ և մասնաւորաբար վասն այլ իրաց. և մինչ յայսմ խորհրդի էաք և երիթացեալ արտիւ սպասէաք վասն համբաւոյ բարւոյ այդ իրաց, եթէ թերեւս անդորրութիւն ինչ եղեալ իցէ, լուաք երեք անգամ, թէ տուեալ են զեկեղեցիսն. բայց վասն ոչ գոլոյ ի ձէնջ առ մեզ թուղթ և մարդ, ի կարծիս էաք. քանզի յառաջագոյն անորոշակի

առաջին՝ զեկեղեցիսն տուեալ են. և յետոյ լսաք, թէ զայլ եկեղեցիսն ու-նեալ են, բայց զպաւագ եկեղեցին ոչ են տուեալ. և վասն այնորիկ մարդ են առաքեալ առ Պապն: Եւ մինչ յայսմ տարակուսի էաք՝ սրտիւ տրտմեալ և-ղեալ իցէ, լուաք զգալուստ դեսպանին, և ծնացաք զալստեան նորա. և յոր-ժամ եկն՝ նա ևս զայն ասաց, թէ զայլ եկեղեցիսն տուեալ են, բայց զպաւագ եկեղեցին ոչ են տուեալ, և վասն այնր մարդ է գնացեալ առ Պապն: Նա և ոչ սակաւ յուսադրութիւն ետ մեզ, ասելով, եթէ յորժամ հասանիցեմ առ թագաւորն՝ դիւրին է այդ. և մեք այնմ դեսպանին՝ որ Պապուց արքունւոյն առ ձեր արքայն առաքիւր, թուղթ տուաք. մի՝ առ թագաւորն, և միւս առ ձեզ. զի քրիստոնէից զաւակ է և հաւատարիմ քրիստոնէից, որոյ անուն Մու-սարէկ յորջորջի: Բայց զայս գիտասջիք, սիրելիք. զի դեսպանին այսպէս եմք ապսպարեալ, թէ յորժամ գայցէ այդր, յինքենէ թուղթ առաքեսցէ յառա-ջագոյն առ ձեզ. զի դուք եկեալ առջիք ի նմանէ զնամակն ձեր՝ որ ի մէջ է տուեալ. զի այսպիսի թղթոյ դիտաւորութիւն ունի այն թուղթն. Թէպէտ սակաւուք զանազանին ըստ բառին չարադրութեան: Եւ դուք պատասխանա-կացջիք, որ զկնի առնլոյ զձեր նամակն՝ ընդ դեսպանին ի միասին մատուցա-նիցէք զթուղթ թագաւորին առ թագաւորն: Եւ դարձեալ, յորժամ զաւեր տեղւոյս լսէք, մի այժմ ևս այնպէս կարծէք, այլ ողորմութեամբ Տեառն և աղօթիւք ձեր՝ քան զառաջինն ևս պայծառագոյն է բիւրապատիկ, և է ցու-ցեալ պաշտօնէիւք Քրիստոսի, որք զցայգ և զցերեկ հանապազամատոյց աղօ-թիւք և հաշտարար պատարագօք՝ զձեզ ունին ի մտի. և յաղագս ձերոյ կար-ծրագոյն վշտացն՝ աղաղակեն առ Բարձրեալն: Որ և կողկողագին պաղատա-նօք խնդրեմք յամենազօր Տեառնէն՝ հանդերձ վերոյ գրեցելովքս, բարեխօս ունելով զյոքնաչարչար նահատակն Քրիստոսի զՍուրբն Գրիգորիոս. զի ա-մենակարող զօրութեամբն և ամենատես զթութեամբն՝ ազատեսցէ զձեզ յայսմ դառնագոյն վշտաց. և փոխանակ այդմ նեղութեան՝ մխիթարեսցէ զձեզ Հոգ-ւովն Սրբով, աստ և ի հանդերձեալն. և ինքն ուրհնեալ եղիցի յաւիտեանս յաւիտենից. ամէն:

ԵՍ ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԻՄՈՎ ՁԵՌԱՄԲ[1] ԳՐԵՑԻ:

1. Այսպէս է ի բնագրին:

# ԺԲ.

## ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — 1644, ՅՈՒԼ. 27։

*Թուղթ Առ Վլատիսլաւ Դ. արքայ Լեհաց*

ՔՐԻՍՏՈՍԱՊՍԱԿ *և ծիրանածին աւգոստափառ և տիեզերակալ, Տէրամբ զօրացեալ և Յիսուսիւ բարձրացեալ, և առաքինութեամբք աստուածայնովք և մարդկայնոք բարեձայնելուչ զարդարեալ, որ և ուղղափառ հաւատով ծայրագոյն ճշմարտին հասեալ, և աներկեան յուսով ի ծայրագոյն բարձին յեցեալ, և սպասեալ հանդերձեալ երանութեան, և խանդակաթ սիրով ծայրագոյն բարւոյն բաղձացեալ, և յար ցանկութեամբ նորին զմայլեալ. խոհեմութեամբ պերճացեալ, արիութեամբ քաջացեալ, ողջախոհութեամբ և ժուժկալութեամբ զամենայն ցանկութիւն ընդ բանականին լծով նուաճեալ. արդարութեամբ հաւասարակշիռ լեալ առ ամենայնս, ազատականութեամբ ուռճացեալ և մեծահոգութեամբ բարգաւաճեալ, պարիսպ ամրութեան հաւատացելոց, և վէմ անվանելի ընդդէմ թշնամեաց խաչին. եղջիւր եկեղեցւոյ և պարծանք համայնց քրիստոնէից. ի ծայր նիզակի և ի վահան հաստակառոյց ընկալեալ զսահմանս երկրի. միայնոյ թագաւորին երկնի և երկրի աթոռակալի և երկրորդ խնամողի, Քրիստոսասէր և ինքնակալ արքայի՝ Վլատիսլաւի Չորրորդի։*

*Յիսուսի Քրիստոսի ծառայ Փիլիպպոս կաթողիկոս ամենայն Հայոց, և փոխանորդ սրբոց առաքելոցն Բարթուղիմէոսի և Թադէոսի, եպիսկոպոսական և վարդապետական դասուք և ամենայն վիճակելովք մերովք՝ զքրիստոսաւանդն մատուցանեմք ողջոյն և օրհնութիւն աստուածապարգև մեծազօր թագաւորութեանդ։ Եւ հայցեմք արտասուալից մաղթանօք ի միայնոյ թագաւորէն, զի զինքնակալ թագաւորութիւնդ ձեր անսասանելի և անվանելի պահեսցէ անկէտն յաւիտենիւ, հանդերձ արքայազուն և քաջազարմ աստուածասէր թագուհեաւդ և ծիրանածին զաւակօք, և ամենայն նախարարօք և մեծամեծօք, զօրապետօք և զօրօք, հնազանդելովք ձերովք, ըստ հաճոյից և բարեսէր կամաց իւրոց, պարագայց ամօք և երկարաձիգ խաղաղական կենօք։ Եւ յետ աստեացս թագաւորութեան՝ անվախճան թագաւորութիւնն արժանի արասցէ հանդերձ նախնի թագաւորօք ձերովք, ընդ սուրբ թագաւորացն դասակից և պսակակից առնելով. ամէն։*

Գիտութիւն լիցի մեծազօր և ինքնակալ Տէրութեանդ Ձերում, ով քաջազօր բարեյաղթ արքայ, զի զփոքրիկ հօտդ մեր տարակացեալ ի մէնջ ուղեաւ, որ ի բազում ամաց ընդ հովանեաւ հզօր Ձերոյ ինքնակալ Տէրութեանդ են ամփոփեալ, որ և հզօր Տէրութիւնդ Ձեր ոչ միայն հովուաբար է խնամեալ, այլ և հայրաբար սիրով. որ և մեք վասն դոցին բարեկեցիկ լինելոյն և որդիաբար խնամարկելոյն ի ձերմէ հզօր տէրութենէ, պանծացեալ եմք և պանծամք ի մէջ այլասեռից ազգաց, և հանապազ ազօթս մատուցանեմք վասն մեծազօր Տէրութեան ձերում, զի խաղաղութեամբ և հանդարտութեամբ վարեսցեն դոքա զկեանս իւրեանց, հանդերձ հայրենաւանդ կրօնիւք և սահմանօք իւրեանց։ Իսկ այժմու ժամանակիս զի՞նչ ասացից. զի ըստ աւալեան Սրբոյն Գրիգորի մերոյ Լուսաւորչի, զոր անխնայաբար գիշատեաց զհօտ իւր՝ գայլ եղեալ հովուին. Նոյնպէս և ողորմելեացդ այդոցիկ պատահեաց յանուանեալ հովուէ իւրեանց, որ և յայտնի է հզօր տէրութեանդ ձերում, զրկումն դոցին և անիրաւութիւն՝ գայլաբարոյ հովուին։ Զոր եթէ հզօր տէրութիւնդ ձեր ոչ էր ամփոփեալ զդոսա ընդ թեւօք խնամոց, վաղագոյն ուրեմն կլեալ էր անիրաւին զողորմելիսդ։ Վասն որոյ յոյժ շնորհակալ եմք ի ձերմէ ինքնակալ Թագաւորութենէ, որ այդպիսի բարերարութիւն և ողորմութիւն ցուցեալ էք և ցուցանէք զրկեալ և տառապեալ փոքրիկ հօտի մերում. և բարերարութիւնդ այդ՝ ոչ եթէ միայն մեզ է համարեալ, այլ մանաւանդ և Քրիստոսի, զի տեառնանման ամփոփեալ է ձեր զտառապեալ հօտդ, և ոչ է տուեալ թոյլ գայլաքատակ հովուին գիշատել զդոսա։ Որ և մեք տեսանելով զանչափելի գութ ձեր և ողորմութիւն որ ի վերայ տառապելոցդ, օրհնեմք հանապազ զքրիստոսապարգեւ Թագաւորութիւնդ Ձեր, և ցանկամք տոչորմամբ սրտիւ՝ տեսանել զիրաւասէր ինքնակալ Տէրութիւնդ Ձեր յայսմ աշխարհի. զի ոչ է այսմ հնար լինելոյ, ի հանդերձեալն ունիմք յոյս տեսանելոյ զմիմեանս։

Ահա, ըստ մերոցս սրտի բաղձանաց առաքեցաք առ ինքնակալ տէրութիւնդ Ձեր՝ զհոգեւոր որդեակքն մեր և զհաւատարիմ խորհրդակիցքն, զՏէր Գրիգորիոս եպիսկոպոսն ընդ միոյ կրօնաւորի. զոր ինչ վասն մեր է՝ ի նոցանէ լուիցէ ինքնակալութիւնդ Ձեր։ Եւ գիտեմք հաւաստեաւ՝ զի ինքնակալութիւնդ Ձեր ամենեւին անկարօտ է երկրային նիւթոց. ահա զանձ երկնային որ առ մեզ գտանիւր՝ զբազմաց փափաքելի նշխարաց Առաքելոց՝ Թադէոսի և Բարդուղիմէոսի և Թովմայի և Մատթէոսի աւետարանչի, և չքնաղագեղ օրիորդին Քրիստոսի սրբոյ կուսին Հռիփսիմեայ, առաքեցաք պարգեւ մեծազօր Թագաւորութեանդ, առ ի պահպանութիւն ինքնակալ Թագաւորութեան Ձերում, և ի բարեխօսութիւն վասն տառապեալ և զրկեալ հօտից մերոց. և ի միւսանգամ դալատեան Քրիստոսի անվթար առաջնորդող ինքնակալ Թագաւորութեանդ յանանց Թագաւորութիւնն։ Վասն որոյ սիրալիր մաղթանօք խնդրեմք ի մեծազօր Թագաւորութենէ Ձերմէ, զի որպէս նախնիքն ձեր մինչև Ձեր ինքնակալութիւնդ՝ զփոքրիկ հօտդ մեր պահեալ են իւրեանց կրօնիւքն և աւան-

դութեամբն, նոյնպէս և Ձեր ինքնակալութիւնդ վասն սիրոյն Քրիստոսի և Սրբոցդ բարեխօսութեան և աղաչանաց մերոց, զստուապեալ հօտդ այնպէս պահեսցէ. և որպէս մինչև ցայժմ՝ այց առնելով զրկանաց դոցին՝ զեկեղեցին իւրեանց յինքեանս դարձուցէ։

Եւ մեք հանդերձ ամենայն վանօրէիւք և անապատաւորօք և ամենայն վիճակեցելովք մերովք՝ օրհնող եմք և օրհնեմք զինքնակալ Տէրութիւնդ Ձեր, հանապազ աղօթս մատուցանեմք վասն Քրիստոսապարգև թագաւորութեանդ, զի խաղաղութեամբ վարեսջիք զկեանս դայս՝ ըստ Տեառն հաճոյից, խրոխտ և ահարկու ի վերայ ամենայն թշնամեաց խաչին։ Իսկ զդաւանութիւն Հայաստանեայցս եկեղեցւոյ՝ ըստ ուղղափառ սրբոց Հարցն, զոր խնդրեաց Պօղոս աստուածաբան վարդապետն, ի միւս թղթին ծանիցէ ինքնակալ տէրութիւնդ Ձեր։ Շնորհք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եղիցի ընդ քեզ և ընդ քոյսն ամենայն։

Գրեցաւ ի կենարարին մերոյ Թուականի հազար վեց հարիւր և քառասուն և չորս. Յուլիս ամսոյ քսան և եօթն։

## ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՑՆ ՀԱՅՈՑ.

Խնդիրք իմ այս են ի քէն, ով Աստուածապսակ արքայ, զի զայդ տառապելոց զդատաստանն դու դատես և տաս իրաւունս, և ոչ առ այլս ձգես. զի քո են ժողովուրդ։ Իմով ձեռամբս գրեցի։

բժիշկ։ Եւ որքան կարօղութիւն մեր էր՝ ջանացաք, եթէ թղթով և եթէ բանիւ, ընդ դեսպանաց Թագաւորաց. և զկնի, զայն Գրիգոր եպիսկոպոսն առաքեցաք, իբր թէ տեղացի է, և զտեղւոյն որպիսութիւնն գիտէ, լինի թէ հնար մի առնէ. Նովաւ ևս ոչ եղեւ հնար։ Եւ իբրեւ տեսաք թէ ուստեք հնար ոչ լինի, թէպէտ ի բազում ժամանակաց ունէաք փափագ զՍուրբ Տնօրինական տեղիսն Քրիստոսի տեսանել զգալի աչօք, ապա առաւելագոյն վասն ձեր՝ ելաք ի սուրբ աթոռոյն, ծերացեալ մարմնով, և կատարեալ զուխտ մեր իջաք ի Կոստանդինուպօլիս, զայս ունելով ի մտի, իբր թէ այլ հուպ է ձեզ, իցէ զի աստուստ բան հօգացուք. և աստ ևս բազում աւուրս զննեցաք. ձերոց հնարից, զայս գտաք ըմբռն. եթէ դուք ևս ըստ հրամանաց մերոց վարեսջիք։ Զի ահա զսիրելի և զհոգեւոր որդեակն մեր, աջ բազուկ և նեցուկ սրտիս՝ զՏէր Յոհան վարդապետն և արհեպիսկոպոս, որ էր կարի պիտանի և հարկաւոր մեզ, բայց վասն ձերոյ օգտի առաքեցաք՝ սակս այսքան պատճառաց։ Նախ, վասն եկեղեցեաց ձերոց հնարից. երկրորդ, վասն քարոզելոյ և ուսուցանելոյ. երրորդ, վասն Նուիրակութեան. չորրորդ, վասն կտակաց։ Վասն որոյ խնդրեմ ի հարազատ որդիութենէ ձերմէ, զի այս պատուէր՝ վերջին պատուէրն է. և ի մէնջ առաջին և յետին աւրհնութեան թուղթս այս. որ թէ կամիք զաւրհնութիւն ժառանգել, և զելս իրաց այդմիկ գտանել, ամենեքեանդ միաբան՝ եթէ եկեղեցականք թէ աշխարհականք, թէ դատաւորք թէ տօլմաթուորք և թէ ռամիկք, միակամ միախորհուրդ և միաբան լիցիք, և ի միջոյ ձերմէ զխեռ և զնախանձ անհետ առնէք. ընդ միմեանս սիրով լիցիք. և յամենայն զօրութենէ և յամենայն մտաց վասն այդ բանիդ հոգասջիք։ Զի ի ձէնջ երկու բան հարկիւ պահանջեմ. Նախ առաջին, միաբանութիւն. երկրորդ, հնազանդութիւն, որ զմեր պատուէրն կատարէք զոր պատուիրեալ եմք հոգեւոր որդւոյն մերոյ Յոհան վարդապետին. զի թէ զայս առնասջիք, յոյս ունիմք յԱստուծոյ՝ որ վերջ լինի տառապանաց ձերոց, և ուրախութեան ժամանեսջիք փութապէս։ Յայտնի լինի ամենեցունց, որ մեր այլ հնար ոչ մնաց այսուհետեւ. ահա վերջին հնար այդ էր, որ մեր հոգեւոր որդի Յոհան վարդապետն առաքեցաք, որ է մտերիմ խորհրդակից մեր և հարազատ որդի. զմեր ամէն խորհուրդ ի դմանէ տեղեկասջիք լիով. և զձերն ևս դմա ծանուցասջիք. և զոր ինչ սէր և հնազանդութիւն և պատիւ՝ զոր մեզ առնելոց էք, դմա արասջիք. զի դմա արարեալն՝ մեզ է արարեալ, ըստ Քրիստոսի հրամանին. և մանաւանդ ջանասջիք՝ որ մեր հոգեւոր որդւովդ բան ինչ առնիցէք վասն ձեր եկեղեցեացդ. զի ահա այսքան ժամանակ եանց, երկու թագաւորք գնացին, Պապն ևս գնաց, և մեր լուսահոգի Մովսէս հայրապետն գնաց առ Քրիստոս. և մեք ևս ի գրունս մահու եմք հասեալ։ Վասն որոյ խնդրեմ ի սիրելի որդւոցդ, զի որքան է հնար՝ ջանասջիք։ Թէ դաւանութեան կողմանէ բան ինչ խնդրէք, ահա ընդ Գրիգորի եպիսկոպոսին առաքեցաք. ի վերայ այդր դաւանութեան՝ ոչ առաւելացուցանելոց եմք և ոչ պակասեցուցանելոց. և որքան վասն անճարակութեան և հնար իցէ, որ թէ զիջանելոյ

*լինի՝ մեր հոգևոր որդոյն պատուիրեալ եմք. քան զայն՝ այլ ոչ կարեմք զեջանել։ Ողջ լերուք Տերամբ։*

*Գրեցաւ նամակս ի Թվիս Հայոց ՌՃԲ, նոյեմբեր ամսոյ Ն։*

ԵՍ ՓԻԼԻՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԻՄՈՎ ՁԵՌԱՄԲՍ ԳՐԵՑԻ։

---

## ԺԴ.

### ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՌՃԲ = 1654, ՓԵԲՐ. 12.

*(Գրէ առ Լովացիս, զի ընկալցեն զդեսպանն նոցա խոճայ Նիկողայոս. խրատէ անսալ Յովհաննու Նոտիրակի)։*

Է



ԻՍՈՒՍԻ *Քրիստոսի ծառայ Փիլիպպոս կաթողիկոս ամենայն Հայոց և պատրիարգ Վաղարշապատու տիրանկար և գերապայծառ սրբոյ աթոռոյ Էջմիածնի. Յորմէ ժամանեալ հասցէ գիր աւրհնութեան և նամակ պահպանութեան, շնորհք առաքելական, և աստուածային բազմապատիկ աւրհնութիւն ի վերայ Ս. Լուսաւորչի հարազատ որդւոց հայադաւան ազգաց մերոց, որք ի տիրապահ և ի քրիստոսախնամ քաղաքիդ Իլովայ կայք բնակեալ. մեղսաքաւիչ քահանայից, խորհրդաթիւ երկոտասան Դատաւորաց, արգասապատիւ տոլվաթաւորաց, և առհասարակ ժողովրդոց մեծի և փոքու. ամէն։ Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ և ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, և ի Հոգւոյն Սրբոյ կենարարէ և յառատաձիր բարերարէ և ամենազօր մարդասիրէ, և ամէնանակ բաշխողէ. ամէն։ Աւրհնեսցէ զձեզ Տէր Աստուած և նախախնամեալ պահեսցէ անխռով և անդաստան կենօք, և զարդարեսցէ հոգւով և մարմնով, տամբք և տեղօք, զարմօք և զաւակօք, որդւովք և դստերօք, սիրելեօք և բարեկամօք, ընչիւք և ստացանօք, հոգեկանօք և մարմնականօք. և փրկեսցէ յամենայն փորձանաց երևելեաց և աներևութից և ամենայն որոգայթից և ի ներհակաց ճշմարտութեան. ամէն։*

Ընդ սիրոյ ողջունիս յուշ լիցի վերոյգրեալ հօգեւոր որդւոց մեր, զի եկն առ մեզ առաքեալ դեսպանն ձեր Խօճայ Նիկօղայոսն՝ հանդերձ Թղթով ձե․ րով և խնդրուածովք և ընծայիւք։ Բայց մեր յառաջ քան ղգալուստ Խօճայ Նիկողայոսին, ըստ կանխագոյն խոստման մեր՝ առաքեալ էաք զսիրեցեալ որդեակն մեր զՑօհան վարդապետն․ որ է յոյժ հաւատարիմ մեր և գիտակ ամենայն խորհրդոց մերոց․ և վասն ձերոյ ուրախութեանն մի ըստ միոջէ պա․ տուիրեալ էաք․ քանզի վասն ձերոյ օգտի և ազատութեան եկեղեցեացն ուղար․ կեցաք։ Իսկ այժմ եկն առ մեզ Խօճայ Նիկողայոսն, և իմացեալ ծանեաք զամենայն ուրախութիւն ձեր և զխնդիր․ ըստ հայրական գրոյ յաղթեալ՝ զա․ մենայն խնդրուածս ձեր կատարեցաք․ մի ըստ միոջէ[1] Թուղթ ըստ սրտի ձերոյ՝ Թէ առ սրբազան Պապն և Թէ գերապայծառ Թագաւորն, և Թէ առ լուսապայծառ արքեպիսկոպոսն․ նա և զձեր առաքեալ Ձեռնադրութեան գիրքն եւս ձեռագրեցաք, ըստ հայցման ձեր։ Սիրեցեալ որդիք, որպէս բազում ան․ գամ գրեալ եմք, եթէ մերով մահուամբ եւս լինէր հնար փրկութեան ձերոյ և ազատութեան, ոչ խնայէաք, որպէս ծածկագիտին է յայտնի․ արդ ի մեր․ մէ կողմանէ զոր ինչ էր խնդիր ձեր՝ կատարեցաք, այսուհետեւ մնայ ձեր քաջութիւնն․ եթէ ճշմարիտ ցաւ ունիք այդ եկեղեցւոյդ ազատութեան, պար․ տիք յամենայն անձնէ, յամենայն զօրութենէ, յամենայն մտաց եռկապէս ջա․ նալ, զի Թերեւս լիցի վերջ տառապանաց ձերոց, և խաղաղոյն վճառացդ։ Վասն որոյ պատուիրելով պատուիրեմ և հարկաւորաբար պահանջեմ ի ձէնջ զայսքան բան․ Նախ և առջին, կատարելապէս միաբանութիւն և սէր առ միմեանս, մեծամեծաց և փոքունց, քահանայից և դատաւորաց, տոլվաթաւո․ րաց և ժողովրդոց, ամենեքեան միապէս ջանայք վասն ձերոյ ազատութեան․ քանզի առանց միաբանութեան անհնար է այդմ գործոյ աւարտ լինելն․ զի միաբանութիւնն մայր է ամենայն բարեաց, և անմիաբանութիւնն մայր ամե․ նայն չարեաց․ այդքան վիշտ որ առ ձեզ պատահեցաւ, պատճառն ամենայն՝ անմիաբանութիւնն էր․ զճաշակս առէք անմիաբան լինելոյն։ Թէ Ս․ Լուսա․ ւորչին հարազատ որդի էք, և զմեր աւրհնութիւնն կամիք, և այդ գործոյդ աւարտ կամիք լինել, պիտի որ ամենեքեան միակամ և միախորհուրդ լինիք․ այսուհետեւ ի ձեր մէջն այլ երկճղութիւն չլինի։ — Երկրորդ, պահանջեմ ի ձէնջ կատարելագոյն հնազանդութիւն առ սուրբ աթոռն և առ Ս․ Լուսա․ ւորչի փոխանորդն․ զի հանգոյն ամենայն աշխարհաց՝ ըստ սահմանի Հայաս․ տանեայց եկեղեցւոյ՝ զձեր հնազանդութիւնն ունիցիք, և եպիսկոպոս և ա․ ռաջնորդ ի նմանէ ընդունիջիք, և զամենայն հնազանդութիւն արդեամբ ցու․ ցանիցէք․ որպէս ի հայրենի սովորութեանց առ ձեզ հասեալ է՝ զամենայնն անԹերի կատարեսջիք։ — Երրորդ, պահանջեմ ի ձէնջ, վրէժխնդիր ի վե․ րայ ձերոյ հայրենի աւանդութեանն, որ ամենեւին եկեղեցական արարողու․ Թեան մէջն աւելի պակաս բան չխառնէք․ այլ որպէս է սահմանադրութիւն

1. Պակասէ բառն [illegible] կամ [illegible]։

Հայաստանեայցս եկեղեցւոյ՝ նոյն վարեսջիք առանց աւելման և պակասման. և մանաւանդ որպէս ի նախնեաց ձերոց առ ձեզ հասեալ կայ՝ անթերի ունիցիք. որ այսուհետև այլ աւելի պակաս բան չխառնէք. թէ պատարագի արարողութիւն և թէ ժամակարգութիւն, և այլն ամենայն՝ ըստ Հայաստանեայց եկեղեցւոյ լիցի։ — Զորրորդ, պահանջեմ որ ձեր եպիսկոպոսն ի սուրբ Էջմիածնայ հայրապետէն լիցի ձեռնադրեալ, և նորին հրամանաւ նստցի այ- գըլ. և դուք հպատակ և հնազանդ լինիք, ըստ կանոնաց սուրբ հարցն, և առանց մերոյ հրամանի և նշանի՝ թէ եպիսկոպոս անուն թէ վարդապետ, թէ այլ աստիճանաւոր, ամենեւին չթողուք ի ձեր մէջն։ Քաջ իսկ գիտակ էք, որ այդքան խռովութեան պատճառ յայդպիսեացդ եղեւ։ Եթէ պահպանէք մեր կատարեսջիք, յոյս ունիմ ի Քրիստոս՝ որ փութով խաղաղութիւն առցէ ձեզ։ — Եւս, ի մէնջ եպիսկոպոս և դպրապետ էիք խնդրեալ. ահա մեր հոգևոր և սիրելի որդի Յոհան վարդապետն՝ ձեզ շնորհեցի. որ կարող է զամենայն գործ ձեր կատարել. եթէ վարպետ եւս պիտոյասցի, զեկուսջիք որ առաքեմ։

Դարձեալ, պատուիրեմ, զի խօճայ Նիկողայոսի զերախտիսն չմոռանայք. վասն ձեր շատ ջանաց. ըստ իւր աշխատանացն երախտահատոյց լինիք։

Յանձն առնեմ զձեզ շնորհաց Ս. Հոգւոյն և Ս. Լուսաւորչի աղօթիցն։ Ողջ լերուք ի Տէր։ — Թվին ՌՃԲ. փետրվար ամսոյ Ժ։

ԵՍ ՓԻԼԻՊՈՍ ԻՄՈՎ ՁԵՌԱՄԲՍ ԳՐԵՑԻ։

## ԺԵ.

### ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՌՃԳ = 1654, ԱՊՐԻԼ 15.

*Զի եկն Նիկոլ առ ինքն ի հնազանդութիւն. և պատուիրէ ընդունել զնա)։*

### Է՛



ԻՍՈՒՍԻ Քրիստոսի ծառայ Փիլիպպոս կաթողիկոս ամենայն Հայոց և պատրիարգ Վաղարշապատու լուսակառոյց և քրիստոսամատոյց վեհափառ և հրեշտակապար սրբոյ աթոռոյ Էջմիածնի. Յորմէ ժամանեալ հասցէ գիր աւրհնութեան և նամակ պահպանութեան. շնորհք առաքելական և աստուածային օրհնութիւն ի վերայ տեառնապահ և քրիստոսախնամ մայրաքաղաքիդ Իլովայ, Ս. Լուսաւորչ ինհարազատ որդւոց հայազուն ազանց մերոյ. մեղսաքաւիչ քահանայից, հանճարաշատ երեսփոխանաց, խորհրդաթիւ դատաւորաց, արգասապատիւ տօլվաթաւորաց, և առհասարակ ժողովրդոց, արանց և կանանց, ծերոց և տղայոց, երիտասարդաց և կուսից, և ամենայն չափու հասակի հաւատացելոց ի Տէր, մեծամեծաց և փոքունց, միանգամայն ամենեցուն. ամէն. Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն յԱստուծոյ Հօրէ մերմէ և ի Տեառնէ Յիսուսէ Քրիստոսէ, և ի Հոգւոյն Սրբոյ կենարարէ և յառատաձիր բարերարէ, և յամենազօր մարդասիրէ և ամէնունակ բաշխողէ. ամէն։ Աւրհնեսցէ զձեզ Տէր Աստուած և Նախախնամեալ պահեսցէ անխռով և անսասան կենօք. և զարդարեսցէ հոգւով և մարմնով, տամբք և տեղօք, զարմօք և զաւակօք, որդւովք և դստերօք, սիրելեօք և բարեկամօք, ընչիւք և ապրանօք, այգեստանօք և բուրաստանօք, հոգեկանօք և մարմնականօք. և փրկեսցէ յամենայն փորձանաց՝ յերեւելեաց և յաներեւութից, մարդադէմ գազանաց, ի քարասիրտ բռնաւորաց. ամէն։

Ընդ սիրոյ աւրհնութեանս յուշ լիցի վերոյգրեալ սիրելեացդ մերոց. զի ահա այսքան տարի այդքան նեղութիւն և վիշտ որ ձեզ պատահեցաւ, թէ ի սատանայէ էր թէ ի չար մարդկանէ և թէ վասն մեղաց. այդքան նեղութիւն կրեցիք և որքան ջանացիք՝ ուստեք ելս իրաց ոչ գտէք. ոչ ի թագաւորաց, ոչ յիշխանաց, ոչ ի մէնջ, և ոչ այլ ուստեք։ Ահա ի գթութենէն Աստուծոյ եկեալ դիմեաց առ մեզ Նիկօղայոս արքեպիսկոպոսն բազում խոնարհութեամբ, և եցոյց մեզ զկատարեալ հնազանդութիւնն իւր. և մեք վասն օգտի ձերոյ և խաղաղութեան՝ ընկալաք բազում սիրով և յոյժ մեծարանօք, որպէս վա-

*յել է հարազատ որդւոյ դարձելոյ առ ծնողն. և վերստին շնորհեցաք զիւր եպիսկոպոսական պատիւն և իշխանութիւնն։ Այսուհետև իբրև զմի հարազատ և հնազանդ որդւոց մերոց է. վասն որոյ ընկալարուք զդա քաղցր սիրով և յոյժ մեծարանօք, և ամենայն կարողութեամբ հպատակ և հնազանդ լերուք դմա. և ի հոգևոր գործ մի խառնիք՝ որ ոչ վերաբերի առ ձեզ. դորայ է գործ։ Մի ոք իցէ ընդդիմացօղ կամ հակառակօղ դմա։ Եւ եպիսկոպոսական հաս և իրաւունքն յինքն հասուցանէք անթերի։ Այսուհետև ով ոք խռովութեան պատճառ լինի՝ թէ ի քահանայից թէ ի դատաւորաց և թէ յաշխարհականաց, չարաչար բանադրանս ընդունելոց է, և պատուհասակոծ լինելոց։ Սիրոյ և խաղաղութեան ջանացարուք. և վասն ամենայն մնասի և ընդունայն բանից մի վրդովիք և աղմկիք. այլ երկայնամիտ լերուք, և զօգուտն խորհեցարուք։ Ահա ամենայն խորհրդւոց մերոց անձնեակ Պարոն Խաչքօն դատաւոր ձեր. զմեր ամենայն խորհուրդ ի Պարոն Խաչքօէն իմանայք. և զոր ինչ ի մերմէ կողմանէ ասասցէ ձեզ՝ ունկնդիր լինիք։ Ահա ի մերմէ կողմանէ Ս. Էջմիածնայ երեսփոխան կարգեցաք զՊարոն Խաչքօն. որ զինչ Էջմիածնայ հաս և իրաւունք լիցի, թէ գանձանակ թէ օգտմութիւն, թէ յիշատակ, բովանդակն Պարոն Խաչքօն ժողովեսցէ. և պարոնտէրի և ձերով գիտութեամբ և կնքով ի Ս. Էջմիածինն հասուսցէ։ Ընդ սմին և զայս ծանուցանեմ, զի Թօխաթացի Խոճայ Մարկոսի որդի Սիմէօն չէլէպին՝ որ այս քարի բանիս պատճառ եղեւ, և պարոնտէրին՝ դրամով օգնեաց, որ եկն և խաղաղութիւն եղեւ, զնորա դրամն ըստ արժանոյն առաւելապէս յինքն հասուցանէք. և ըստ երախտեացն երախտահատոյց լինիք, պատուով և մեծարանօք։*

*Գրեցաւ Թուղթս ի Թվին Հայոց ՌՃԲ, յապրիլ ամսոյ ԺԵ, ի մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս։*

ԵՍ ՓԻԼԻՊՊՈՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԻՄՈՎ ՁԵՌԱՄԲՍ ԳՐԵՑԻ։

## ԺՁ.

### ՅԱԿՈՎԲ Դ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՌՃԺ = 1662, ՅՈՒՆՈՒԱՐ 12.

*(Նուիրակ առաքէ զՏէր Յովհ. վարդապետ առ Նիկողայոս արքեպիսկոպոս և առ Լեհահայս, խնդրելով և տուրս վասն պարտուց Էջմիածնի)։*



ԻՍՈՒՍԻ Քրիստոսի ծառայ Յակոբ կաթողիկոս ամենայն Հայոց և պատրիարգ Վաղարշապատու լուսապսակ և երկնահանգէտ գերապատիւ և հռչակաւոր վեհափառ և հրեշտակազգաց սրբոյ մեծի աթոռոյս Էջմիածնի. Յորմէ ժամանեալ հասցէ գիր աւրհնութեան և նամակ պահպանութեան, շնորհք առաքելական և աստուածային առատահոս աւրհնութիւն, համերձ նախախնամական գթութեամբն ի վերայ հաւատարիմ և իմաստուն ծառայիցդ Քրիստոսի և ճշմարտալէտ հոգեւոր մատակարարիդ, և խոհութեամբ ցաւակցաբար ցաւակցողիդ և մտերիմ հարազատազգոյն հարազատիցդ, և որոտ սիրեցեալ որդւոյդ մերոյ, և մեծափառ հոգեւոր ծնողիս աստուածընկալ սրբոյ աթոռոյս Էջմիածնայ փառք և պարծանք՝ Լեհաց երկրի աստուածապահ քաղաքացդ. Նախ, հաւատարիմ և սիրելի եղբօր մերոյ Նիկողայոս արհի եպիսկոպոսիդ, և քահանայիցդ և Բժ Դպրապետացդ, և առհասարակ ժողովրդոցդ առ հասարակ ամենայնի։ Շնորհք ընդ ձեզ և խաղաղութիւն անսկզբնական Էին, և ողորմութիւն Նորին էակից Բանին, Նախախնամութիւն և գթութիւն փառակից Հոգւոյն ճշմարտի գեաորէն ծաւալեսցի, անճառ բղխմամբ պարգեւեսցի, հրահոսան իջմամբ տեղասցի, անպահման պայմանաւ ցօղեսցի, անձրեւահեղ տարածեսցի, և միտագուարճ առեղիցի. ամէն։ Աւրհնեսցէ զձեզ Քրիստոս Աստուածն յաւիտենական, պահելով անփորձ և անսասան, երկարաձգեալ ամաւք յաքամնայական, զարդարեալ առաքինութեամբ հոգեկան, լրացեալ ընչեղիւք մարմնական, և ուռճացեալ փառաւք գերազանցական, պերճացեալ ուստերաւք յոգնական և պճնեալ դստերաւք զանազանս. Նախախնամեալ սիրելեաւք յարաձգական և բարեկամաւք միշտ յաւիտենական. Ննջեցելոց տացէ կեանս անթառամ յաւիտենից յաւէժ և առ յապագայն. ամէն։

Եւ ընդ սիրոյ նամակիս յայտնի լիցի սիրելեացդ իմոց, զի աճաւասիկ զսիրելի և զհաւատարիմ որդին մեր զՏէր Ովանէս վարդապետն առաքեցաք ի կողմանս ձեր, համերձ սրբալոյս մեռոնաւ, որ եկեալ նուիրակութեամբ և

վարդապետական իշխանութեամբ բաշխեսցէ զաստուածաշնորհ մեռոնն սրբութեամբ, ի մէջ աստուածատէր և բարեպաշտ ուղղադաւան հաւատացելոց հայկազան սեռից, սիրով Հօգոյն: Խնդրեմ ի հարազատ որդեկացդ, զի դուք էք մեծ սէրն և հաստատութիւն սուրբ աթոռոյս Էջմիածնայ, զի յամենայն ժամ ձեօք պարծիմք, և ձեր ընծայիւք և առատատուր ողորմութեամբն է շէն և պայծառ սուրբ աթոռս. վասն որոյ հայցեմ ի ձէնջ զի յորժամ հասցէ առ ձեզ սիրելի որդիս մեր, սիրով և քաղցրութեամբ ընդունիջիք. հարազատական լրջմտութեամբ պատուեալ մեծարեսջիք, զմիմեանս յորդորելով, դատաւոր առ դատաւորն, իշխան առ իշխանս, ժողովուրդք առ ժողովուրդն. ամենեքեան վառելով ի հոգեւոր նախանձն, յորդորիչք և յօժարեցուցիչք լինիջիք առ միմեանս. որ յորդառատ սիրով և հեշտալրական քաղցրութեամբ ընծայեցէք զձեր հոգւոյ նուէրն զոր առ մեզ շնորհէիք: Եւ մանաւանդ քան զնուիրակութիւնն կրկնակի օգնութիւն իմն կու խնդրեմ ի ձէնջ. քանզի յոյժ բազմացեալ է պարտքն ի վերայ սուրբ տանս, այս քան՝ զի պարտանացաթաղ կեամք ի մէջ պարտուցն. և այլ բազում վիշտք են մեզ, զորս ձանձրութիւն է թուելն. այլ ի հոգեւոր որդայս իմոյ լուիջիք. զի բերան առ բերան պատմեսցէ ձեզ զանցսն մեր: Եւ դարձեալ կրկին թախանձանօք խնդրեմ սիրելի եղբօրէդ իմոյ Պարոնտէրէդ և ի քահանայիցդ և ի մեծաշուք դատաւորացդ. զի փութանակի գործաւնութեան գործին օգնական և թելադիր լինիջիք, զի մի յետացի, և տոկոսն է վերայ պարտուցն բարդեսցի. զի կամքն մեր այս էր, զի բոլոր տունս Ցունաց ի դա էաք յանձնեալ, հանդերձ երեք վարդապետօք, զի նուիրակեսցեն. այլ վասն պարտուցն որ կարի նեղացուցին զմեզ, երկու երեք նուիրակ այլ առաքեցաք յամենայն կողմանս. զի մինչեւ Ցայտնութիւն աւարտեսցեն. և դուք ևս մի յամեցուցանէք, զի մինչեւ Ցայտնութիւն Քրիստոսի՝ զերկիրդ Լեհաց և Ռուսմէլու՝ աւարտեսցէ, և դարձցի և բերցէ զձեր հոգոյ պտուղն և հաւատոյ ընծայն՝ առ սուրբ աթոռս. և մի վեր ի վերոյ տեսանէք՝ թէ ըշտապեցուցեալ եմք: Այլ և խնդրեմ զի ամենայն ինչ լիապէս հոգասջիք, թէ Հոգէբաժին, թէ Փառատնից, թէ յիշատակ, լիապէս ընդ իւրաքանչիւր պարտիք հատուցանել. զի սրտին ակըն ի ձեռացն տուրքն կու երեւի. զի մինչեւ ցայժմ ամենայն նուիրակք մեր շնորհակալութեամբ և առատատուր արդեամբք (են) ուղարկել, և նորդեանս ևս քան ևս պարտիք զնոյն սէրն և գութն ցուցանել. զի ձեր առաջինն պըտուղն այս է որ գա(գայ) առ մեզ. որպէս վայել է ձեր աստուածասիրութեանդ՝ այնպէս արասջիք:

Գրեցաւ ի Թուականիս Հայոց ՌՃԺ. յունվարի ԺԲ, աւրն շաբաթ:

# ԺԷ.

## ՅԱԿՈՎԲ Դ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՌՃԻ = 1671, ՍԵՊՏ. 1.

*(Համարելով թէ ոչ դարձցի Նիկողայոս ի Հռովմայ՝ զԹէոդորոս վարդապետն ընտրէ արքեպիսկոպոս Լեհահայոց)*[1]:



ՅԻՍՈՒՍԻ Քրիստոսի Տեառն Յակոբ կաթողիկոս կաթողիկէ եկեղեցւոյ ամենայն Հայաստանեայց. վեհ և վերադիտող ամենայն հայկազեան սեռի և պատրիարգ առաքելական աթոռոյ ի Վաղարշապատ քաղաքի, ի տեղւոջ Իջման Բանին Աստուծոյ, գլխաւորեան և յաջորդ Սրբազնակատար և գերերջանիկ Տեառն մերոյ և հօրն Հասարակաց Գրիգորի Լուսաւորչին ի վերայ ընթհանուր հայկականաց տոհմից և Թորգոմեանց սեռից, և ամենայն առ հասարակ հաւատացելոց, որք 'ի քաղաք և ի գեօղս յաւանս և 'ի ծերպս վիմաց իցեն բնակեալ:

Գերափայլ իմանալի ճառագայթիւք և լուսով իմաստից արփիաւորեալ և դրոշմեալ ճշմարտաքարոզ վարդապետաց արհի և պանծալի եպիսկոպոսաց վառելոց լուսով աստուածագիտութեան և ի հովուապետութիւն բանաւոր հօտին հրաւիրելոց, երկնահրաւէր և աստուածանուէր քահանայից ի սրբազնագործութիւն կոչեցելոց, և համօրէն եկեղեցականաց և պաշտօնէից. ամենայն աշխարհականաց՝ ըստ պատույն արհեստին և որպիսութեանն կեցելոց, մեծաց և փոքունց:

Ցամսեան Օգոստոսի յաւուր երեքտասաներորդի ի Թուականութեան մարդացելոյն Աստուծոյ ՌՈՀԱ և Հայոց ՌՃԻ. յամի հայրապետութեանս մերոյ ԺԶի:

Լուեալ զեկեղեցի Հայոց ի Լեհաց երկրին և զբանաւոր հօտն մեր որբացեալ և զրկեալ յառաջնորդէն և հովուէն իւրեանց, վասն գնալոյն Նիկողայո-

1. Կաթողիկոսն յիշելով զսա և զՍտեփանոս՝ ծանօթ գիտնական թարգմանիչն, չըսեր, բայց ժամանակակիցք վկայեն՝ որ հարազատ եղբարք էին. Գր. Կար. Ջաղեանցի հրատարակած Բանի միութիւն անուն գրոց մէջ կան տեղեկութիւնք Թէոդորոսի վրայօք. թէ և կասկածոտ մտօք գրուած, և նոյն մտօք անընդունելի եղած է նա ի յաջորդութիւն Նիկոլի. գնացեր է ի Հռովմ, յետոյ ի Սպահան (ինչո՞ւ համար), և վերջապէս † է ի Հռովմ, յամի 1700 (12 փետր.), 60 տարուան, և թաղուած է ի Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյ Հայոց.

սի արքեպիսկոպոսին Նոցա ի մեծն Հռոմ, և անդրէն միւանգամ յետս ու դառնալոյն, արժանի երևեցաւ մեզ կոչել զԹէոդորոսն Վարդանեանց Բագրատունեանց ի սուրբ աթոռոյս՝ որ ի տեղւոջ Իջման Բանին Աստուծոյ, ի Վաղարշապատ քաղաքին Հայոց մեծաց՝ հիմնեցաւ հաստատակառոյց ի վերայ հիման առաքելոց, երկրաւոր և երկնաւոր բանալեաք, կապել և արձակել յերկինս և ի յերկրի։ Զայր խոհեմ և իմաստուն, ազնուատոհմ ծննդեամբ, քրիստոնէական սնընդեամբ և ամենայն առաքինութեամբ զարդարեալ, վարժեալ և տեղեկացեալ ի զանազան արհեստս գրոց և գիտութեանց և ի խորագոյն մակացութիւնս իմաստասիրական և աստուածաբանական հնարիւք և տեղեկութեամբք. Եւ զնա ձեռնադրել եպիսկոպոս Լեհաց երկրի՝ ըստ նախախնամութեան Աստուծոյ և օժանդակութեան ամենեցուն, ի կայսերանիստ քաղաքիս Կոստանդինուպոլսի, ի տօնի և տաճարի Վերափոխման մօրն լուսոյ Ս. Աստուածածնի։ Վասն որոյ ամենայն առհասարակ հաւատացելոց մեծաց և փոքունց՝ յայտ եղիցի. զի մեք առ ի վերուստ հրաւիրեալք ի հովուապետութիւն Հայոց ազգին, գլխափոխան և յաջորդ լինել սրբոց Առաքելոցն Թադէոսի և Բարդողիմէոսի, և երիցս երանելոյն Գրիգորի Լուսաւորչին, առաքելական և հայրապետական իշխանութեամբ երկնաւոր և երկրաւոր բանալեաք, ռահմաննեմք կարգեմք և հաստատեմք զԹէոդորոս Վարդանեանցն՝ առաջնորդ հովիւ և տեսուչ Լեհաց երկրին, ի վերայ Հայոց ազգին. ամենեցուն ընդ հովուապետութեամբ և հոգաբարձութեամբ դորա՝ սիրով և հանդարտութեամբ հաստատ և անսասան մնալ, ամենեցուն հնազանդ լինել, և լսել ձայնի դորա. զոր դա ընդունի՝ և մեք ընդունիմք. և զոր դա մեկնէ և ի բաց մերժէ, և մեք մերժեմք և հաւանիմք. զոր օրհնէ՝ օրհնեալ եղիցի, և զոր դա կապէ և արձակէ երկրաւոր և երկնաւոր բանալեաք՝ կապեալ և արձակեալ եղիցի։ Ոչ ոք այսուհետեւ իշխեսցէ տիրել ի վերայ Նոցա, ոչ խրատել և ուսուցանել, ոչ յանդիմանել կամ մխիթարել, բաց 'ի զմանէ, և կամ դորա հրամանաւ. ամենեքեան իբրև զմի 'ի մէջ Նոցա ըստ կարգի և որպիսութեան եկեղեցական կանոնաց. Վարդապետն քարոզութեան պարտապեսցի. այլ ոչ սնոտիապատուաստ ունայնութեամբ կամ մարդահաճութեամբ և ներհակ վարդապետութեամբ հարցն սրբոց. Երիցունք և քահանայք սրբազնագործութիւն կատարեսցեն. աբեղայքն և կրօնաւորք զմիաբանակեցութիւն ընկալեալք՝ հաստատ և անսասան ճգնեսցին ի կրօնս իւրեանց, հնազանդութեամբ, յօժարութեամբ և աշխատութեամբ, և մանաւանդ ընթերցմամբ սրբոց գրոց և վարդապետութեամբ հարցն սրբոց։ Եւ ամենայն եկեղեցականքն և աշխարհականքն ըստ կարգին և որպիսութեանն շարժեսցին, սիրով և ամենայն հնազանդութեամբ առ հովիւ և տեսուչ իւրեանց։ Եւ եթէ ի պահպանութիւն պատուիրանացս այսոցիկ եկեղեցական կանոնաց անշարժ մնասցեն, կեցեալք ըստ հաճոյիցն Աստուծոյ, ընկալցին զվարձս 'ի Քրիստոսէ առատապէս և բիւրապատիկ. իսկ եթէ ուխտազանց և պատուիրանազանց եղիցին, պատժեսցին յառաջնորդէ իւրեանց հոգւով և մարմնով, առա և 'ի

հանդերձելումն, ըստ քանակութեան և որակութեան յանցանացն։ Եւ որպէս զդա եղիցի ոչ միայն վեհ և վերակացու լինել ժողովրդեան, այլ և նմանիլ անարատ և անբիծ հարսին իւրոյ՝ սրբութեամբ վարուց և ուղիղ վարդապետութեամբ արածել զհօտն իւր, այսպէս դորա եղիցին ընտրել և կարգել զայնոսիկ՝ որք առաքինութեամբ և իմաստութեամբ պայծառացեալք արժանի և ընդունակ եղիցին սպասու և սրբազնագործութեան եկեղեցոյ, ըստ կանոնաց և աւանդութեան հարցն սրբոց։ Դորա եղիցի սահմանել և հաստատել զդպրատուն ի վարժումն երիտասարդաց և ի տեղեկութիւն սուրբ գրոց. զի մի ի խաւարի շրջեսցին, այլ լուսով աստուածգիտութեան զարդարեալք զօրասցին ի պահպանութիւն պատուիրանացն Աստուծոյ, և հայրենաւանդ սուրբ և ուղիղ դաւանութեան հաւատոցն։

Դարձեալ, հաստատեմք և սահմանեմք ըստ եկեղեցական կանոնաց, ոչ ումեք իշխանութիւն լինել ի վերայ հօտին և ժողովրդեան դորա, ոչ կարգել և ոչ ձեռնադրել առանց դորա հրամանի. այլ և ի սուրբ աթոռս մեր ոչ զոք ընդունել և ոչ զոք ձեռնադրել, և ոչ ումեք վարդապետական կամ եպիսկոպոսական իշխանութիւն տալ՝ առանց դորա խնդրոյ և յանձնարարութեան, որքան կենդանի եղիցի, ի դատաւորաց քաղաքին։

Բայց այս ամենեցուն յայտ եղիցի, զի որպէս մեք առաքելական և հայրապետական իշխանութեամբ երկրաւոր և երկնաւոր բանալեօք ընտրեցաք և ձեռնադրեցաք զդա՝ եպիսկոպոս Լեհաց երկրի՝ ի վերայ ժողովրդեան մերոյ, նոյնպէս և դա որքան կենդանի է՝ ամենայն հնազանդութեամբ առ մեզ շարժեսցի, և ով ոք ընտրողութեամբ և օժանդակութեամբ ամենեցուն՝ զաթոռն հայրապետութեան մերոյ յաջորդեսցէ։ Եւ եթէ Թէոդորոս Վարդանեանց եպիսկոպոս Լեհաց երկրին, կամ ներհակ և օրինազանց ճանապարհացն Աստուծոյ կամ անհնազանդ առ սուրբ աթոռս երևեսցի, եկեղեցականքն և ժողովուրդքն Լեհաց երկրի բողոքեսցեն առ մեզ, և մեք ըստ քանակութեան և որպիսութեան յանցանացն՝ դատեմք զնա։ Իսկ եթէ հաստատ և անշարժ ի պահպանութեան պատուիրանաց Աստուծոյ և աւանդութեան հարցն սրբոց մնասցէ, մի պակասեսցի ի դմանէ լիութիւն աստուածային շնորհաց, և բազմապարգև օրհնութիւն՝ զոր միանգամ ընկալաւ. և արժանի եղիցի իբրև ըղժիր մշակ և քաջ հովիւ յեկեղեցւոջն Քրիստոսի, լսել ձայնի օրհնութեան և հրաւիրման յերկիր աւետեաց, այսինքն՝ յիմանալի և յաստուածանուէր յանդիմանատես երանութեան և կենսաբեր բնակութեան վերինն Երուսաղեմի. ամէն։

Դարձեալ, գիտելի եղիցի ամենայն առհասարակ հաւատացելոց մեծաց և փոքունց. զի դա ինքն Թէոդորոս Վարդանեանց՝ յերկրէն Լեհաց՝ ի զարմէն Բագրատունեանց, անեալ ի տիս մանկութեան, վարժեալ և տեղեկացեալ առ ոտս մեր՝ գիտութեան աստուածային գրոց, ըստ չափոյ և կարողութեան իւրոյ. զի որպէս մեծն Մեսրովպ զվարդապետական իշխանութիւնն ընկալաւ ի Սըրբոյն Ադտիկոսէ աշակերտէ երանելոյն Յովհաննու Ոսկեբերանի, որ և զհայ.

## ԺԸ.

### ՅԱԿՈՎԲ Դ ԿԱԹՈՂԻԿՈՍ. — ՌՃԻ. = 1672 ՕԳՈՍՏ. 28.

*(Լուեալ զի Նիկող. արքեպիսկոպոս կոչեցեալ է ի Հռովմ, և ոչ գիտելով եթէ դարձցի, առաքէ զԹէոդորոս եպս. վարդապետեաց՝ ի տեղակալ, և յաջորդ)։*



ԻՍՈՒՍԻ Քրիստոսի ծառայ Յակոբ կաթողիկոս կաթողիկէ եկեղեցւոյ Հայաստանեայց, վեհ և վերադիտող ամենայն Հայկազեան ազգի, և պատրիարգ ի Վաղարշապատ քաղաքի առաքելական աթոռոյ, ի տեղւոջ Իջման Բանին Աստուծոյ. տեղապահ և յաջորդ աթոռակալ և փոխանորդ մեծահռչակ տեառն մերոյ և հօրն հասարակաց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին. Յորմէ ժամանեալ հասցէ Նամակ աւրհնութեան և քաղցրեց պահպանութեան, հանդերձ լիութեամբ վերնահոս շնորհաց և յաստուածուստ առատաբուխ պարգևացն, ի վերայ ընդհանուր հայկականաց տոհմից և Թորգոմեանց սեռից, որք ի Լեհաց երկրին բնակեալ են. մանաւանդ ի տէրապահ և ի քրիստոսախնամ քաղաքին Լովայ, երկնահրաւէր և սրբանուէր քահանայից, արդարադատ և խորիմաստ դատաւորաց, և ամենայն առհասարակ եկեղեցականաց և ժողովրդոց, մեծաց և փոքունց. Առաքելական աւրհնութիւն և լիութիւն աստուածային շնորհաց. Շնորհք և բազմապարգև աւրհնութիւնն ծագեսցէ ի վերայ ձեզ և ամենայն գոյականացդ, և ամենայն ազգականաց և բարեկամաց ձերոց, յանսպառ աղբերէն աստուածութեան և յանմատոյց լուսոյ եռալուսեան զուգակցութեանց հանգունատիպ Երրորդութեանն, Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. ամէն։ Այլ և բարեխօսութեամբ և մաղթանօք ամենասուրբ Կուսին Մարիամու Աստուածամօրն, և որոց իշխանութիւն ի վերուստ տուաւ ի վերայ երկրի՝ երկրաւոր և երկնաւոր բանալեօք տիրել ազգաց և ազանց, մանաւանդ երից երանելոյն Լուսաւորչի մերոյ Սրբոյն Գրիգորի, և ամենայն երկնազումար խմբից. գերալոյս և գերահրաշ մէգն աստուածութեան ի ներքոյ վարագուրին բնակեալ, և ճառագայթիւք անճեղ բարձրութեան պարածածկեալ ծաւալեսցէ ի ձեզ զլոյս աստուածգիտութեան; և առատանուէր հոսմամբ և բազմամանեայ յաճախութեամբ մեծին երախտեաց ի ձեզ ամե

նեսեան՝ իբր ի ձեռակերտն իւր և ի նմանութիւն, զամբաւութիւնս համբարեալ գումարեսցէ. Հաստատ և անսասան մնալ ի պահպանութեան և պատուիրանացն Աստուծոյ, և արժանի լինել երկնահրաւէր ձայնի աւրհնութեան. ամէն։

Եւ ընդ աստուածապատիւ և առատածաւալ աւրհնութեանս, գիտելի եղիցի սիրելի և հոգեւոր որդւոցդ, զի մեք իբրև զհովիւ և տեսուչ բանաւոր հօտիդ, միշտ և հանապազ փոյթ ունիմք ամենեցուն ձեզ խնամ տանել, մանաւանդ ըստ երանելոյն Պօղոսի՝ Ուխտիւք խնդրէի ի Քրիստոսէ նզով լինել վասն ձեր, զի եղիջիք բնակարան վերնահօս շնորհացն և պահօղք պատուիրանացն Աստուծոյ։ Ահա ձեզ ամենեցուն յայտնի եղեւ թէ որքան միշտ և նեղութիւն յամենայն դիմաց պատեաց զմեզ՝ վասն ի միջոյ բառնալոյ զանկարգութիւն Եղիազարին, և զպարտս վճարելոյ. եօթն տարի է որ ի սուրբ աթոռոյս հեռացեալ՝ աւր ըստ աւրէ հաշիմք և մաշիմք ի տառապանս, և ոչ կարեմք սատ ելանել, զի մի՛ կաշառօք աւերեսցեն զուղղեալն մեր, այլ տիրով շահեսցուք զնոսա։ Խարձեալ, գիտելի եղիցի ձեզ, զի բազում կերպիւ վիրաւորեաց զմեզ Յովհաննէս վարդապետն. զոր մի ըստ միոջէ պատմելն՝ անպատեհ է, զոր արար յԵրուսաղէմ, ի Լիվօռնոյ, և յայլ տեղիս. մանաւանդ թէ որչափ հրամանաւ եկն առ ձեզ. կամ է՞ր արդեօք զպատճառ գնալոյն ի մեծն Հռոմ Նիկօղայոս եպիսկոպոսին և անդ յամելոյն ոչ զեկոյց մեզ, և ի տեղէն՝ առանց մերոյ հրամանի ինքնագլուխ նստաւ, և դուք ոչ խնդրեցիք ի մէնջ, այլ և զստոյգն ոչ ծանուցիք վասն առաջնորդին ձերոյ, թէ ի՞նչ պէտս ի սրբազան Պապէն կոչեցաւ ի մեծն Հռոմ. և է՞ր արդեօք այդքան ժամանակս անդ յամենայ։ Ճշմարիտ գրեմք, զստոյգն և զիրաւն ոչ գիտեմք։

Արդ, որովհետեւ եպիսկոպոսն ձեր անդ յամեցաւ, և ամենեւին ոչ գիտեմք թէ միւսանգամ յետ դառնալոց է, կամեցաք զՍտեփանոս վարդապետն շնորհել ձեզ, իբր զայր հանճարեղ և տեղեակ ամենայն ճանապարհացն Աստուծոյ, լի շնորհօք և աստուածապաշտութեամբ. բայց նա յանձն ոչ առեալ, զմիաբանակցութիւն՝ առաջնորդութեանն նախադասեաց. վասն որոյ կոչեցաք ի Ս. Էջմիածնայ ի Կոստանդինուպօլիս՝ զհոգեւոր և զսիրելի որդին զՏէր Թէոդորոսն Վարդանեանց, զայր խոհեմ և իմաստուն, որպէս և ձեզ յայտնի է. և զնա ձեռնադրեցաք եպիսկոպոս, և վարդապետական իշխանութեամբ առաքեցաք առ ձեզ. զի եղիցի փոխանակ Նիկօղայոս եպիսկոպոսին, և երկրորդ նմին, այսինքն աթոռակալ և տեղապահ, որքան նա կենդանի է. իսկ զկնի մահուան Նիկօղայոս եպիսկոպոսին՝ Թէոդորոս եպիսկոպոսն՝ ձեզ առաջնորդ հովիւ և տեսուչ է։ Եւ գիտեմք զի անադորոյնք և անուղղայք ոչ են պակաս. զի ոմանք ասելոց են, թէ մեք զնա ոչ խնդրեցաք. իսկ թէ ցաւ լինէր ձեզ՝ վաղ ուրեմն խնդրեալ էիք. զի հօտն առանց հովուի կերակուր է գազանաց։ Ահա ետու ձեզ հովիւ ըստ սրտի իմում, որ հովուելով հովեսցէ զձեզ իմաստութեամբ. վասն որոյ պարտ է ձեզ ամենեցուն հնազանդ լինել. զի որպէս ասէ վարդապետն մեր Քրիստոս, « Որ ձեզ լսէ՝ ինձ լսէ, և որ զձեզ ընդ-

ունի՝ զիս ընդունի. և որ զիս ընդունի՝ զառաքիչն իմ ընդունի»: Ոչ ոք այսուհետև իշխեսցէ տիրել ի վերայ ձեր, ոչ եպիսկոպոս և ոչ վարդապետ, բայց ի Նիկոլէն. [illegible] ամենեքեան զմա հնազանդ լիցին. ամենեքեան իբր զմի ի միջի ձերում. զոր դա ընդունի և մեք ընդունիմք. և զոր դա արտաքսէ և ի բաց մերժէ՝ և մեք հաւանիմք. զոր դա աւրհնէ՝ աւրհնեալ լիցի, և զոր դա կապէ և արձակէ երկրաւոր և երկնաւոր բանալեաք, կապեալ և արձակեալ եղիցի. ամէն: Տէրն տերանց հովանասցի ի ձեզ և ամենայն ազգականաց և բարեկամաց ձերոց, լինել անօթ ընտրութեան և տաճար բնակութեան անմահէին:

Գրեցաւ սիրոյ և աւրհնութեան Նամակս՝ հազար հարիւր քսան Թուին Հայկազեան տոհմի, և յամսեանն օգոստոսի քսան և ութերորդում աւուր, ի Կոստանդինուպօլիս մայրաքաղաքի և արքայարանի. ընդ հովանեաւ Սուրբ Աստուածամօր Կուսի և քրիստոսաբնակ տաճարի:

ՔՐԻՍՏՈՍԻ ԾԱՌԱՅ ՅԱԿՈԲ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՋԵՌԱՄԲ ԻՄՈՎ ԳՐԵՑԻ ԱՌ Ի ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ԹՂԹՈՅՍ:

